АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
СЕКТОР ВОСТОКОВЕДЕНИЯ

# АРАБСКИЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И СОПРЕДЕЛЬНЫХ СТРАНАХ

*Йакут ал-Хамави, Абул-Фида, Ибн Шаддад*

Составил
А. Т. НАЛБАНДЯН

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1965

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ԱՐԵՎԵԼԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՍԵԿՏՈՐ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՐԵՎԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Յակուտ ալ-Համավի, Աբուլ-Ֆիդա, Իբն Շադդադ

Կազմեց
Հ. Թ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

ՀՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1965

# ՅԱԿՈՒՏ ԱԼ-ՀԱՄԱՎԻ

*Արաբ աշխարհագիր Յակուտ Աբու Աբդալլահ Շահաբադդինը ծնվել է 1178 թվականին՝ Փոքր Ասիայում, հունական ընտանիքում։ Մանուկ հասակում նա գերի վերցվեց արաբական մի արշավախմբի կողմից և տարվեց Բաղդադ, որտեղ վաճառվեց Համա քաղաքից մի վաճառականի, որը հաստատված էր խալիֆայական մայրաքաղաք Բաղդադում և կոչվում էր Ասկար իբն Իբրահիմ ալ-Համավի։ Այդ է պատճառը, որ Յակուտը կոչվում է նաև «ար-Ռումի» (հույն), «ալ-Համավի» (Համացի՝ իր տիրոջ ծննդավայրի անունով) և «ալ-Բաղդադի» (Բաղդադցի՝ այնտեղ բնակվելու համար)։*

*Առևտրական գործերով երիտասարդ տարիքից նա սկսում է ճամփորդել. 1213—1214 թվականներին այցելում է Թավրիզ, Մոսուլ, Ասորիք, Եգիպտոս, 1215 թվականին ուղևորվում է դեպի Խորասան և հասնում մինչև Հնդկաստան։*

*Վաղ հասակից Յակուտն սկսեց զբաղվել ընթերցանությամբ։ Կարդաց Մերվ քաղաքի մատենադարանի գրքերը։ Այդ ժամանակ էր, որ նա ծրագրեց գրել աշխարհագրական մի բառգիրք։ Երկու տարի Մերվում մնալուց հետո նա գնաց Խիվա և Բալխ։ Այս վերջին քաղաքումն էր գտնվում, երբ նա լսեց մոնղոլների կողմից Խիվայի և Բուխարայի գրավման լուրը։ Այդ աղետը խորը սարսափ պատճառեց նրան և իր ամբողջ ունեցվածքը թողնելով Բալխում, 1220 թվականին նա փախավ Մոսուլ։ Այստեղ 1224 թվականի մարտի 13-ին նա ավարտեց իր աշխարհագրական բառգիրքը, իսկ սրբագրական ու խմբագրական աշխատանքները վերջացրեց 1227 թվականին։ Մեռավ 1229 թվականի օգոստոսի 29-ին Հալեպում։*

*Յակուտի գործերն են։*

*1. Քիթաբ Մուջամ ալ-Բուլդան (Աշխարհագրական բառգիրք)։*

*2. Մարասիդ ալ-Իթթիլա (Նախորդի ամփոփումն է)։*

3. Իրշադ ալ-Ալիբբա լի Մոկտադիր մին Ջամհարատ ան-Նասաբ (Քերականագետների ուղեցույց կամ բառարան)։

4. Մոշտարիք (Աշխարհագրական տեղեկությունների բառարան)։

5. Մուջամ աշ-Շուարա (Բանաստեղծների բառարան)։

6. Մի համառոտ արաբական ցեղերի ճյուղագրության և այլն։

Ստորև տալիս ենք «Քիթաբ Մուջամ ալ-Բուլդան»-ի («Աշխարհագրական բառգրքի») այն հատվածների թարգմանությունը, որոնք տեղեկություններ են պարունակում Հայաստանի և հարևան երկրների, հատկապես Ադրբեջանի և Վրաստանի մասին։

Հրատարակությունը, որից կատարված է ներկա թարգմանությունը, բաղկացած է 6 հատորից և կրում է հետևյալ խորագիրը.

كتاب معجم البلدان تأليف الشيخ الامام شهاب الدين ابى عبدالله ياقوت بن عبدالله الحموى الرومى البغدادى

Jacut's Geographisches Worterbuch aus den Handschriften zu Berlin, St. Petersbourg und Paris herausgegeben von Ferdinand Wustenfeld, Leipzig, 1924.

Տեղանունները տրված են նախ հայերեն տառերով՝ ըստ արաբական հնչման և ընդունված տառադարձությամբ, կողքին՝ ըստ բնագրի՝ արաբական տառերով, հետո միայն տրված է տեղանվան ծանոթ և ընդունված ձևը հայերի մոտ՝ այն դեպքում, եթե տարբերվում է արաբական ձևից։

Արաբական մի շարք բաղաձայն և կիսաձայն կոկորդային հնչյուններ անհնար է հարազատորեն արտահայտել հայերեն տառերով։ Հետևել ենք ընդհանուրի կողմից ընդունված տառադարձությանը, իսկ ծանոթ և արդեն գործածության մեջ մտած բառերի ուղղագրությունը պահել ենք նույնությամբ։

Այսպես, տառադարձել ենք՝ ب = Բ, ت = Թ՝ բառի սկզբում, և Տ, երբեմն, բառամիջում, ث = Ս կամ Թ, ج = Ջ կամ Ճ, د = Դ, ذ = Զ կամ, [illegible] եղած պարագայում՝ Դ, ض = Դ, ط = Թ, ع = Օ կամ Ա. համաձայն ձայնանշին, ق = Կ կամ Գ, ك = Ք։

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԲԱՌԳԻՐՔ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐ

*էջ 58*

1. Ատիլ[1] — أتبل

*Բերդ է Ջավազանի մարզերում, որը պատկանում է Բուխտիա քրդերին։*

*էջ 64*

2. Ալիս[2] ألس *(Ալիս)*

*Ռումի երկրում գտնվող գետի անուն։*

*Մի այլ Ալիս գետ էլ կա Սելևկիայում և գտնվում է ծովի մոտ։ Նրա և Տարսոնի միջև մի օրվա ճանապարհաչափ հեռավորություն է։ Այս գետի վրա էին կատարվում գերիների փոխանակման գործողությունները մուսուլմանների և հույների միջև։ Այս վայրը հիշատակվում է Մոտասիմի օրերում տեղի ունեցող բազմաթիվ արշավանքների, ինչպես նաև Սայֆադդաուլայի արշավանքների կապակցությամբ։*

*էջ 66*

3. Ամիդ[3] — آمد *(Ամիդ)*

*Դիարբաքրի մեծագույն և կարևորագույն քաղաքն է, նրա հրոչակը տարածված է։ Հին քաղաք է, խիստ ամրակառույց, շինված սև քարերով։ Գտնվում է բարձր դիրքի վրա և Տիգրիսը այն շրջապատում է մեծ մասով, կազմելով մի մահիկ։ Քաղաքի կենտրոնում կան աղբյուրներ և շրջակայքում ջրհորներ՝ հազիվ երկու արմնկաչափ խորությամբ, որտեղից ջուրը կարելի է ձեռքով վերցնել։ Շուրջը կան բանջարանոցներ։ Մի գետակ էլ պարսպի շուրջն է պատում։*

*Իբն ալ Ֆակիհն[4] ասում է, թե Ամիդի մոտ լեռան մի ծերպում կա մի թուր. ով իր ձեռքերը մտցնի ճեղքից և բռնի այդ թրի դաստակից, ստանում է մեծ ցնցում և սարսափը պատում է նրան, ինչքան էլ այդ մարդը անվախ լինի։ Այդ թրի քաշողական ուժը երկաթի*

նկատմամբ շատ ավելի մեծ է, քան մագնիսի ուժը։ Այսպես, երբ նրա հետ շփեն մի ուրիշ թուր կամ դանակ, այն էլ է մագնիսանում և ստացած ուժը չի նվազում անգամ հարյուր տարի անցնելուց հետո։ Այդ ծերպի քարերը սակայն երկաթը չեն ձգում։

Ամիդը գրավվեց հիջրի 20 թվականին (640—641)։ Նրա դեմ գնաց Իյադ իբն Ղանմը՝[5] Ջազիրան գրավելուց հետո ու հարձակում գործեց քաղաքի վրա, որի բնակիչները գիմադրեցին։ Կպա հաշտություն կնքվեց այն պայմանով, որ իրենց ունեցած տաճարները պահեն շրջակայքով, սակայն նոր եկեղեցի չկառուցեն։ Պետք է օժանդակեին մուսուլմաններին և նրանց ճանապարհ ցույց տային, նորոգեին կամուրջները։ Այդ պայմաններից որևէ մեկը չգործադրվելու դեպքում շնորհված պաշտպանությունը վերացվում էր։

Այստեղ բնակություն հաստատեցին Ջազիրայից եկած արաբական նախիսլամական ցեղախմբեր, որոնց մեջ կային Կուդաաներ[6] ցեղին պատկանող մարդիկ։

Մուսուլմանական աշխարհում հայտնի են Ամիդից դուրս եկած տարբեր բնագավառների նշանավոր անձնավորություններ։

էջ 70

4. Անի[7] آني (Անի)

Ամուր բերդ և քաղաք Հայաստանում Խլաթի և Գանձակի միջև։

էջ 78

5. Աբխազ[8]— أبخاز (Աբխազ)

Կովկասյան լեռներում գտնվող երկրի անունն է, որ հասնում է մինչև Բաբ ալ Աբվաբ։ Ունի դժվարանցանելի լեռներ, որտեղ ձիերով ճամփորդելն անգամ անհնար է։ Գտնվում է Ալանաց երկրի կողքին, որտեղ բնակվում են քրիստոնյա ժողովուրդներ՝ Քուրջ (վրացի) կոչված։ Սրանք այդտեղ հավաքվեցին և շարժվեցին Թիֆլիսի վրա, որտեղից հեռացրին մուսուլմաններին և տիրեցին այն հիջրի 515 թվականին (1121—1122)։ Նրանք թագավորեցին այնտեղ անընդմեջ, հենված Աբխազի ամրության վրա, մինչև նրանց դեմ եկավ Խորեզմշահ Ջալալէդդինը հիջրի 621 թվականին (1224)... և կռվելով նրանց դեմ, գրավեց Թիֆլիսը. Թագուհին փախավ Աբխազիա ու այդ արքայական տնից ուրիշ ոչ ոք չմնաց։

էջ 80

6. Արրաշտասիմ[9] — ابرشتویم

Մի սար է ալ-Բադում Մուղանի երկրի մեջ Ադրբեջանի մարզում, որտեղ ապաստանում էր խուրամյան Բաբեկը։

(Հետևում է մի բանաստեղծություն նրա մասին)։

էջ 91

7. Աբսուս[10] — ابسس (Եփեսոս)

Ավերակ քաղաքի անուն է, որը գտնվում է Աբլուստայնի մոտ, Ռումի երկրում։ Ասում են, թե այնտեղից են ծագել Քահֆի տերերը և Ռակիմը։ Ասվում է, որ դա Դակիանոսի քաղաքն է։ Այնտեղ կան ավերակ վիճակի մեջ հրաշալի հուշարձաններ։

էջ 93

8. Աբուլուստայն[11] — ابلستین (Ալբիստան)

Հռչակավոր քաղաք է Ռումի երկրում, որ այժմ մուսուլմանների ձեռքն է գտնվում։ Նրա սուլթանն է Կլըչ Արսլանը, Սելջուկի որդին։ Այն մոտ է Աբսուսին, որը Քահֆի տիրոջ քաղաքն է։

էջ 171

9. Ադասա-կամ Ազասա[12] اذاسا (Եդեսիա)

Ուռհա քաղաքի անունն է, որը գտնվում է Միջագետքում։ Յահիա իբն Ջարիր Թաքրիտցի քրիստոնյա բժիշկն ասել է, թե այն կառուցել է Ալեքսանդրի մահից վեց տարի հետո Սելևկոս թագավորը. նա իր թագավորության 16-րդ տարում կառուցեց նաև Լադաքիան, Սելևկիան, Աֆամիան և Բարուան, որը Հալեբն է. նա ավարտեց նաև Անտիոքի կառուցումը։

էջ 171

10. Ադրաբիջան[13] — اذربیجان (Ատրպատական)

Հնչում են նաև Ազրիբեջան։

(Բառի ուղղագրական և այլ կարգի ստուգաբանական նկատողություններից հետո՝ շարունակում է).

Աբու Ավն Իսհակ իբն Ալին ասում է, թե Ադրբեջանը գտնվում է հինգերորդ գոտու մեջ։

Ասում են, թե բառը ծագած է «Ադր»-ից, որը պահլավերեն նշանակում է կրակ և «Բայքան-ից, որի իմաստն է պահպանել կամ մթերող, նույն լեզվով։ Ուրեմն՝ նշանակում է կրակի տուն կամ կրակի շտեմարան. և ինձ թվում է, թե այս է ուղիղ մեկնաբանությունը, որովհետև այգ կողմերում շատ կրակատներ կային։

Ադրբեջանի սահմաններն հասնում են՝ արևելքից մինչև Պարտավ, արևմուտքից մինչև Արզնջան, հարավից սահմանակից է Դայլամի, Ջիլի և Թարմի երկրներին։

Մի ընդարձակ երկրամաս է սա, որի ամենահայտնի քաղաքն է Թավրիզը, որը ներկայումս նրա մայրաքաղաքն է և ամենամեծ քաղաքը, իսկ հին մայրաքաղաքն էր Մարաղան։ Նրա քաղաքներն են Խոյը, Սալմաստը, Ուրմիան, Արդաբիլը, Մարանդը և ուրիշներ։ Մի ընդարձակ բարեբեր ու պտղառատ երկիր է, և չեմ տեսել մի այլ վայր ավելի մրգաստաններ ունեցող, հոսուն ջրերով ու աղբյուրներով ավելի առատ։ Ուղևորը պետք չունի այս երկրում ճամփորդելիս իր հետ ջուր վերցնելու, որովհետև իր ոտքերի տակ արագորեն հոսում են զովասուն ջրերը։ Ժողովուրդը գեղադեմ է, կարմրայտ ու նրբակազմ, խոսում է «ալրիե» լեզվով, որն իրենցից դուրս ոչ ոք չի հասկանում։ Ժողովուրդը հեզահամբույր ու քաղաքավարի է։ Այդ երկրում թշնամությունների ու պատերազմները անպակաս են, այդ պատճառով քաղաքները մեծ մասով ավերակ վիճակի մեջ են, գյուղերն էլ ամայի։ Մեր օրերում երկրի տիրակալն է Ջալալադդին Մանքուբարդի իբն Ալայադդին իբն Մուհամմադ իբն Դուքուշ Խորեզմշահը[14]։ Առաջին անգամ նվաճվեց Օմար իբն ալ Խաթթաբի[15] ժամանակ։ Նա գրություն ուղարկեց Մուղիրա իբն Շոբա ալ Իակաֆու[16] միջոցով, որով Ադրբեջանի կառավարիչ էր նշանակում Խուզայմա իբն Յամանուն[17]։ Այս վերջինը գտնվում էր Նեհավենդում ու մեծ բանակով այնտեղից առաջացավ Ադրբեջանի վրա և հասավ մինչև Արդաբիլ, որը այն ժամանակ Ադրբեջանի մայրաքաղաքն էր։ Քաղաքի մարզպանը Բաջարվանից, Մայմազից, ալ-Բադից, Սարայից, Շիզից, Մայանաջից ու այլ կողմերից հավաքել էր բազմաթիվ մարդկանց։ Մուսուլմանները մեծ կոտորած տվին նրանց։ Մի քանի օր անց մարզպանը ամբողջ Ադրբեջանի անունից հաշտություն կնքեց Հուզայֆայի հետ, հանձն առնելով ութ հազար դիրհեմ վճարել, պայմանով, որ մուսուլմանները ոչ ոքի չսպանեն, երկրի ժողովրդից գերի չվերցնեն, կրակատուն չքանդեն և ոչ էլ հարձակվեն Բալասաջանի, Սաբիլանի և Միան-Ռուզանի քրդերի վրա և չարգելվի Շիզի ժողովրդին՝ տոնական օրերին պար բռնելու

և իրենց արարողությունները ազատորեն կատարելու։ Հուզայֆան ապա արշավեց Մուղանի և Ջիլանի վրա, որոնց հետ համաձայնություն եկավ տուրք առնելու պայմանով և հաշտություն կնքվեց։ Երբ Օմարը պաշտոնից հեռացրեց Հուզայֆային և Ադրբեջանի վրա կառավարիչ կարգեց Օտբա իբն Ֆարկադին[18], այս վերջինը Մուսուլից, կամ ըստ ոմանց Շահրզուրից առաջացավ և մտավ Արդաբիլ։ Ժողովուրդը հավատարիմ էր մնացած ուխտին. մի քանի գյուղեր էին միայն ապստամբել, ընկճեց նրանց ու ավարի մատնեց։ Իրեն ընկերանում էր իր որդին՝ Ամրու իբն Օտբա իբն Ֆարկադը։

Վակիդին[19] գրում է, թե հիջրի 22 թվականին (642—643) Քուֆայից Ադրբեջանի վրա առաջացավ Մուղիրա իբն Սոբան և երկիրը գրավեց կռվով ու տուրք դրեց։

Աբուլ-Մունզիր Հիշամ իբն Մուհամմադը պատմում է, քաղելով Աբու Միխնաֆայից[20], թե Մուղիրա իբն Շոբան 20 թվականին գրավեց Ադրբեջանը, բայց հետո Աշազ իբն Կայիս ալ Քինդին[21] նրա վրա հարձակվեց և գրավեց Ջաբրվանի բերդը և հաշտությունը վերահաստատվեց Մուղիրայի գրած պայմաններով։

Ալ Մադայնին[22] գրում է, թե արևապաշտների պարտությունից հետո Նեհավենդում, մուսուլման զինվորները իրենց քաղաքները վերադարձան և Հուզայֆայի մոտ մնացին միայն Քուֆացիները, և նա այդ ուժով հարձակվեց Ադրբեջանի վրա և հաշտություն շնորհեց 8000 դիրհեմ տուրք հաստատելով, և երբ Օթման իբն Աֆանը[23] Ադրբեջանի վրա կառավարիչ նշանակեց Վալիդ իբն Օկբային[24] ու պաշտոնազրկեց Օտբա իբն Ֆարկադին, Վալիդ Օկբան իրեն առաջնորդ նշանակելով Աբդալլահ իբն Շուբայլ ալ Ահմասուն, հարձակվեց Մուղանի, Թաբրիզի և Թայլասանի բնակիչների վրա 25 թվականին (645—646)։ Ավար ու գերիներ վերցնելուց հետո Ադրբեջանի ժողովրդի հետ հաշտությունը վերահաստատեց Հուզայֆայի պայմանների հիման վրա։

էջ 179

11. Ադանա[25]— اذنة (Ատանա)

Սահմանային հռչակավոր քաղաք է Մսիսի մոտ, որտեղ ծընվել կամ բնակվել են բազմաթիվ գիտնականներ։ Ահմադ իբն Յահյա իբն Ջաբիրն ասել է, որ Ադանան հիմնված է հիջրի 141 կամ 142 թվականին (758—759—760) Սալիհ իբն Ալի իբն Աբդալլա իբն

Աբասի հրամանով, երբ Խորասանի զորքը բանակել էր այնտեղ։ Հետո Ռաշիդը կառուցեց բերդը, որը քաղաքին կից, Սայհան գետի կամուրջի մոտերքումն էր, երբ նրա հայրը, ալ-Մահդին ողջ էր դեռ հիջրի 165 թվականին (781—782)։ Իսկ հիջրի 193 թվականին (808—809), Աբու Սուլայմ Ֆարաջ ալ-Խադիմը կառուցեց Ադանայի նոր շինությունները և ամրացրեց այն ու Խորասանից մարդ բերել ավեց Մուհամմադ ալ-Ամին խալիֆի հրամանով։

Իբն ալ-Ֆակիհն ասում է, թե Ադանան կառուցված է Հարուն ար-Ռաշիդի թուրք ներքինիներից Աբու Սուլայմի[26] կողմից, որ սահմանագլխի քաղաքների կառավարիչ էր կարգված։ Նա էր, որ կառուցեց նաև Թարսուսն ու Անարզաբան։

Ահմադ իբն ալ-Թայիբը[7] պատմում է. «Միսիսից ճանապարհվեցինք Բաղդադ վերադառնալու համար և հասանք Ադանա, դաշտագետիններով, իրարամերձ գյուղերով ու բազմաշեն վայրերով անցնելուց հետո։ Այդ երկու կայանները չորս փարսախով հեռու են իրարից։ Ադանայի մոտ կա Սայհան կոչված գետը։ Քարաշեն մի զարմանալի կամուրջ է ձգված գետի վերև, քաղաքի և Միսիսից այս կողմ կառուցված ամրությունների միջև։ Կամուրջը հենված է միակ կամարի վրա»։ Ըստ նույնի վկայության Ադանան ունի ութ դռներ. պարիսպ, շուրջը խրամով։

էջ 183

12. Առան[28]— اران (Առան)

Պարսկերեն անունն է ընդարձակ նահանգի, որ բազմաթիվ քաղաքներ ունի։ Դրանցից է Ջանզան (Գանձակը), ժողովրդի կողմից Քանջա է կոչվում, Պարտավը, Շամքորը և Բայլաքանը։ Իսկ Ադրբեջանի և Առանի միջև կա Ար-Ռաս կոչված գետը, որի հյուսիսային և արևմտյան ափերի վրա տարածված երկրները Առանի մասն են կազմում, իսկ արևելյան եզերքի երկրամասը պատկանում է Ադրբեջանին։ Նասրը ասում է, թե Արմինիայի գավառներից մեկն է Առանը, որը Սիսականի հետ միատեղ է հիշատակում։

էջ 196

13. Արճիշ[29]— ارجيش (Արճեշ)

Հին քաղաք մեծ Արմինիայում, Խլաթի մոտ։ Նրա բնակիչները մեծ մասամբ հայ քրիստոնյաներ են։ Երկայնությունն է 96,3/4, իսկ լայնությունը 40,8 1/4։ Այստեղ ծնվել են ականավոր մուսուլման ուսյալներ։

(Հեղինակը տալիս է նրանց անունները)։

Էջ 197

## 14. Արդաբիլ[30]— أردَبيل (Արտավիլ)

Ադրբեջանի անվանի քաղաքներից մեկն է. Իսլամի հայտնվելուց առաջ այն եղել է այդ երկրամասի մայրաքաղաքը։ Մի շատ մեծ քաղաք է, որտեղ այցելեցի հիջրի 617 թվականին (1220—1221) և գտա այնտեղ քաղաքի ներսի և դրսի կողմերը հոսող մեծ թվով վտակներ։ Բայց հակառակ ջրի առատության, ամբողջ շրջակայքում ոչ մի պտղատու ծառ չկա և եթե տնկվի նման մի ծառ չի աճի, և այդ՝ հակառակ օդի մաքրությանը, ջրերի քաղցրությանը և հողի հարմարությանը։ Նման տարօրինակ երևույթի չեմ հանդիպել և դրա պատճառն անհայտ է։ Բայց և այնպես պտուղ ներմուծվում է այնտեղ լեռան մյուս կողմից, մի օրվա կամ ավելի հեռավորություն ունեցող վայրերից։ Այդ քաղաքի և Բահր ալ-Խազարի[1] միջև հեռավորությունը երկու օրվա ճանապարհաչափ է և երկուսի միջև մի ծառախիտ անտառ կա, որտեղ վտանգի ժամանակ ապաստանում են բնակիչները։ Այդ անտառից կտրում են կեչու ծառեր, որից սարքում են տաշտեր և ափսեներ։ Քաղաքում կան բազմաթիվ արհեստավորներ, որոնք շինում կամ նորոգում են այդ առարկաները. բայց նրանցից ավելի լավորակները տեղում չկան, այլ դրսից են ներմուծում։ Անթերի պատրաստված նույնիսկ մի օրինակ հնարավոր չի գտնել այնտեղ։ Ես անձամբ գնացի արհեստավորների մոտ և խնդրեցի, որ ինձ տան մի անթերի կտոր։ Ինձ տեղեկացրին, թե ընտիր և անթերի տեսակը Ռեյից է ներմուծվում։

Իմ մեկնումից հետո թաթարները արշավեցին այնտեղ և նրանց ու բնակիչների միջև կռիվներ տեղի ունեցան։ Ժողովուրդը դիմադրելով հետ մղեց թաթարներին երկու անգամ, իսկ երբ նրանք երրորդ անգամ հարձակվեցին, բնակիչները չկարողացան այլևս դիմադրել։ Մտնելով քաղաք, թաթարները կոտորեցին հանդիպած մուսուլմաններին և չխնայեցին ոչ մեկին։ Ազատվեցին միայն նրանք, ովքեր կարողացել էին թաքնվել։ Թաթարները ավերեցին վայրագորեն, և շատ քիչ բնակիչ մնաց այնտեղ։ Հիմա, սակայն նախկինից ավելի բարգավաճ վիճակի է հասած և գտնվում է դեռ թաթարների ձեռքում։

Ասում են, թե քաղաքի առաջին կառուցողը եղավ Պերոզ թագավորը և անվանեց այն Ապան Ֆիրուզ։ Իսկ Աբու Սայիդն ասում է,

---

[1] Կասպից ծով։

թե հավանաբար այդ քաղաքն իր անունն առել է Յունանի որդի, Լանթայի որդի, Արմինիի որդի՝ Արդաբիլից։ Այնտեղ ռաթլը* ծանր է կշռում՝ 1040 դիրհեմ։

էջ 199

15. Ա ր դ ա շ ա թ[31]— أرْدَشاط (Արտաշատ)

«Նվաճումների գրքում»** գրված է, թե Հաբիբ իբն Մասլաման[32] առաջացավ Արճեշից և հասավ Արտաշատ, որը Կիրմիզի*** գյուղն է, ապա անցնելով Նահր ալ-Աքրադը,**** նա իջավ Դվինի դաշտը։

էջ 205

16. Ա ր զ ա ն ջ ա ն[33]— أرْزَنْجان (Երզնկա)

Ժողովուրդը անվանում է Արզանքան։ Շատ հաճելի, անվանի, ճոխ ու բազմամարդ քաղաքներից մեկն է։ Գտնվում է Ռումի երկրների և Խլաթի միջև՝ Էրզրումի մոտ։ Բնակչությունը մեծ մասամբ բաղկացած է հայերից, կան նաև մուսուլմաններ, որոնք քաղաքի երևելիներն են կազմում։ Արբեցությունն ու անբարոյականությունը ակներև կերպով տիրում են այնտեղ։

էջ 205

17. Ա ր զ ա ն[34]— أرْزَن (Արզն)

Նշանավոր քաղաք է Խլաթի մոտ, որն ունի ամուր բերդ և անցյալում Արմինիայի ամենածաղկյալ շրջաններից մեկն էր կազմում, բայց այժմ, տեղեկանում եմ, որ հետզհետե ավերակ վիճակի է վերածված։ Այնտեղ ծնվել են գիտնական մարդիկ, որոնց մեջ Յահյա իբն Մուհամմադ Արզնցին, գրականագետ, գեղագիր, ուղիղ ձայնանշանագիր, ճարտասան, բանաստեղծ, քերականագետ։ Նրա մասին է ակնարկում իբն Հաջաջը իր բանաստեղծության մեջ, որտեղ ասված է.

---

* Կշռաչափ՝ արաբական երկրներում — ռաթլ — 327, 450, գր.։

** «Քիթաբ Ֆութուհ ալ-Բուլդան» արաբացի պատմիչ Բալազորու (մեռ. 892) գիրքը, որտեղ պատմում է արաբական առաջին արշավանքների և նվաճումների մասին։

*** որդան կարմիրն է։

**** Քրդերի գետ։

«Դրոշմված է իմ տետրակում
Յահյա Արղնցու գրով»։

Քաղաքը գրավվեց Իյադ իբն Ղանմի ձեռքով՝ Միջագետքի գրավումից հետո հիջրի 20 թվականին (640—641) և հաշտություն կնքվեց Ուռհայի հաշտության հար և նման պայմաններով։

էջ 206

18. Արզան ար-Ռում[35] — أرزن الروم (Էրզրում)

Ուրիշ քաղաք Արմինիայում, որի բնակիչները նույնպես հայեր են և այն այժմ ավելի ծաղկյալ է, քան նախորդը։ Ունի անկախ սուլթան, որի աթոռը այնտեղ է հաստատված և ունի սեփական ընդարձակ գավառներ։ Գովելի է նրա բարեսրտությունը և կատարած օգտակար գործերը։ Նա արդարությամբ է վարվում բնակիչների հետ, բայց նրանց մեջ այնքան տարածված է անբարոյականությունը, արբեցությունը, որ մարդ չի կարող պատկերացնել. և այդ բոլորը այնտեղ կատարվում է այն աստիճան բացեիբաց, որ տեսնողներին նողկանք է պատճառում։

էջ 208

19. Արշակ[36] — أرشق

Մուղանի երկրում մի սար է և Ադրբեջանի մասն է կազմում Ալ-բադի կողմերում, որը խուրամյան Բաբեկի քաղաքն էր։

էջ 216

20. Ուրմ — أُرْم

Գավառ Ադրբեջանում, որտեղ հավաքվեցին շատ մարդիկ հայերից և ուրիշներ, սպանելու համար Սայիդ իբն ալ-Ասուն, երբ նա արշավեց այնտեղ. Սայիդը նրանց դեմ ուղարկեց Ջարիր իբն Աբդալլահ-ալ-Բաջալուն, որը նրանց պարտության մատնեց և խաչի վրա սպանեց նրանց առաջնորդ իշխաններին։

էջ 219

21. Ուրմիա[37] — أُرْمِيَة

Ադրբեջանի հին և ընդարձակ մի քաղաք է, նրա և նույնանուն լճի միջև մոտավորապես 3 կամ 4 մղոն* հեռավորություն կա։ Են-

* Արաբական մղոնը=1,9 կիլոմետրի։

*թագրում են, թե կրակապաշտների մարգարեի՝ Զրադաշտի քաղաքն է եղել։ Անձամբ տեսա 617 թվականին (1220—1221)։ Բարեբեր, պտղառատ ու ընդարձակ այգեստաններով, առողջարար կլիմայով օժտված և ջրառատ քաղաք է, սակայն ներկայումս լքյալ վիճակ ունի սուլթանի՝ Ուզբեկ Իբն Բահլավան իբն Ելտկուզի[38] հիվանդության հետևանքով։ Թավրիզից երկու օրվա ճանապարհաչափ հեռավորության վրա է։ Այդ քաղաքից սերած են ուսումնական բազմաթիվ անձնավորություններ՝ «Ուրմավի»* անունը կրող։*

*(Հիշատակված են բազմաթիվ անուններ)։*

*էջ 219*

22. Արմինիա[39] — أرمينية

*(Շեշտը թեթևորեն վերջին ի-ի վրա)։*

*Մի ընդարձակ երկրամասի անուն է, որը տարածվում է դեպի հյուսիս։ Ավանդում են, թե [Հայաստանը] Արմինիա է կոչված Նոյի որդի, Հաբեթի որդի, Ավմարի որդի, Լանթայի որդի՝ Արմինիայից։ Նա էր, որ առաջին անգամ եկավ այնտեղ ու բնակություն հաստատեց։*

*Ասված է, թե կան Մեծ ու Փոքր Արմինիաներ. մի կողմից Պարտավից մինչև Բաբ ալ-Աբվաբ և մյուս կողմից մինչև Ռումի երկիրը և Կաբկի** լեռներն ու Սարիրի տիրոջ երկիրը։*

*Ասում են ոմանք, թե Մեծ Արմինիան բաղկացած է Խլաթից և նրա շրջակայքից։ Իսկ Փոքր Արմինիան՝ Թիֆլիսից ու նրա շրջակայքից։*

*Ասողներ էլ կան, թե գոյություն ունեն երեք, մինչև չորս Արմինիաներ։ Առաջինը կազմում է Բայլականը, Կաբալան*** և Շիրվանը՝ իրենց ենթակա շրջաններով։ Երկրորդը կազմում են՝ Ջուրզանը, Սուղդաբիլը, Բաբ Ֆիրուզ-Կուբադը և ալ-Լաքզը։ Երրորդը կազմում են Բասֆուրջանը, Դաբիլը, Սիրաջը, Բայրը, Բաղրավանդը և Աննաշավան։ Չորրորդի մեջ կա մարգարեի ընկերներից Սաֆվան իբն ալ-Մուաթթալի գերեզմանը։ Այդ գերեզմանը Հիսն Զիադի մեջ է և նրա վրա կա մշտադալար մի ծառ, որի ինչ լինելը ոչ ոք չգիտի։ Ծառը ունի նուշի նմանող մի պտուղ, որն ուտվում է կեղևով և շատ համեղ է։ Չորրորդի մեջ է նաև Շիմշաթը, Կալիկալան, Արճեշը,*

* Նշանակում է Ուրմիացի։

** Կովկասյան լեռներ։

*** Կապաղակ։

Բաջունայիսը։ Առանի, Սիսականի, Դաբիլի, Նաշավայի, Սիրաջի, Թայրի, Բաղրավանդի, Խլաթի և Բաջունայիսի շրջանները նախօրոք հույների տիրապետության տակ էին գտնվում, բայց ումերո միայրին Շիրվանի իշխանության։

Պարսից մատենագրերի մոտ կա, որ Ջուրզանը և Առանը անցյալում խազարների ձեռքում էին, իսկ Արմինիայի մնացյալ մասը՝ հույների ձեռքում և այս վերջին մասի վրա էր իշխում Արմինակուս թագավորը, որին արաբները կոչում են Արմինակ*։ Խազարները ասպատակում էին երկրի խորքերը և հաճախ առաջանում մինչև Դայնավար։ Սրա վրա Կուբազ իբն Ֆիրուզ** թագավորը մի զորավար ուղարկեց իր մեծագույն զորավարներից՝ 12 հազար զորքով, որը Առանը ընկճելուց հետո հասավ առ-Ռաս կոչված գետի մոտ և գրավեց այնտեղից մինչև Շիրվան տարածվող երկրամասը։ Կուբազը ինքը իր զորավարի ետևից հասնելով, խազարներին տեղահան անելուց հետո, Առանում կառուցել տվեց Բայլական և Բարզաա քաղաքները, որը ամբողջ սահմանային քաղաքների կենտրոնն էր, նաև Կաբալան՝ խազարների դեմ։ Ապա նա կառուցեց Սուդ ալ-Լաբանը՝ Շիրվանի և Ալանաց երկրի մեջտեղը և Սուդ ալ-Լաբանի շուրջը կանգնեցրեց 360 քաղաքներ, որոնք քանդվեցին Բաբ ալ-Աբվաբի շինվելուց հետո։ Կուբազից[40] հետո թագավորեց իր որդին՝ Անուշիրվանը[41], որը կառուցեց ալ-Շաբրան քաղաքը, ինչպես նաև՝ Մասկատ քաղաքը։ Հետո կառուցեց Բաբ ալ-Աբվաբը, որը Աբվաբ կոչվեց, որովհետև շինված էր լեռնային անցքի վրա և այդ վայրերում բնակեցրեց Սայասիջին*** կոչված մի ժողովուրդ։ Հետո կառուցեց Առանի երկրի մեջ Շաքիի և Կամիրանի դռները, ինչպես նաև Ալ-Դուդանիա[42] կոչված դուռը, որը այդպես է անվանվում Բանու Դուդան ժողովրդի անունից։ Այդ ժողովուրդը սերած է Ադնանի որդի, Մաադի որդի, Մուդարի որդի, Իլյասի որդի, Մադրաքայի որդի, Խուզայմայի որդի, Ասադի որդի՝ Բանու Դուդանից։ Նա կառուցեց նաև Դուրզուկիաները՝ 12 դռներից բաղկացած, ամեն մեկ դռան առաջ կառուցեց քարաշեն մի ամրոց։ Ջուրզանի նահանգի մեջ կառուցել տվեց նաև Սուղդաբիլ[13] կոչված քաղաքը, որը ամրացնելուց հետո բնակեցրեց Սուղդ կոչված ժողովրդով ու պարսիկներով և գինանոցի վերածեց։ Շինել տվեց նաև հույների երկրի

---

* ارمیناق
** Պերոզի որդի Կավատ։
*** Սայսականք կամ Սիսականք։

դիմաց Ջուրզանի նահանգում՝ Բաբ Ֆիրուզ Կուբադին և բերդեր, որոնք կոչվում են Բաբ Լազիկա և Բաբ Բարիկա և գտնվում են Տրապիզոնի ծովի վրա։ Կառուցեց նաև Բաբ Ալլանը և Բաբ Սամսախին, ինչպես նաև Ջարդմանի ամրոցը և Սամշուլդայի[44] ամրոցը։ Նա հույների ձեռքից գրավեց Արմինիայի ամբողջությունը և նորոգեց Դվին քաղաքը և Նաշավան, որ Նախչուանն է և Բասֆուրջանի մայրաքաղաքն է։ Հիմնեց նաև Վայսի բերդը, Սիսաջանի նահանգում կառուցեց բերդեր, որոնց մեջ Քիլաբի բերդը և Շահրուզի բերդը[45] և այլ բերդերը բնակեցրեց քաջարի մարտիկներով։

Արմինիան մնաց հույների ձեռքում մինչև Իսլամի երևալը։ Իսկ Արմինիայի գրավման մասին խոսել եմ արդեն ամեն մի քաղաքի գրավման հիշատակության առիթով։

Իբն Վադիհ ալ-Իսպահանին[46], որը երկար ժամանակ մնացել է Արմինիայում, ասել է, որ իշխանությունների քանակով և տարածությամբ Արմինիայից ընդարձակ և կամ ավելի բարգավաճ երկիր չկա։ Նա ասում է, թե իշխանությունների թիվն է 118, դրանց մեջ է Սահիբ աս-Սարիրի երկիրը, որի մեջ է Բաբ Ալլանը և Բաբ-ալ-Աբվաբը և ունի միայն երկու ճանապարհ. մի ճանապարհ դեպի խազարների երկիրը և մի ճանապարհ՝ դեպի Արմինիա, և պարունակում է 18 հազար գյուղ։ Առանը՝ առաջին երկիրը Արմինիայում, ունի 4 հազար գյուղ, որոնց մեծ մասը Սարիրի տիրոջն են պատկանում, իսկ մյուս իշխանություններն էլ չորս հազարից ավելի կամ նվազ չափով գյուղեր ունեն։ Սահիբ աս-Սարիրի երկրի մեջ է Շիրվանը, որի իշխանը կոչվում է Շիրվանշահ։ Պարսիկ մի գիտնական ասել է, թե «Ահրարները»*, որոնք Արմինիայում են գտնվում, այդպես չէին կոչվում և նրանք կազմում էին այդ երկրի ազնվականությունը՝ պարսիկների տիրելուց առաջ, հետո երբ պարսիկները տիրեցին, նրանց ազատ թողեցին և վերահաստատեցին իրենց կալվածների իշխանության մեջ։ Նրանք տարբեր են պարսիկ ահրարներից, որոնք Պարսկաստանում էին, որովհետև իսլամից առաջ բնավ չիշխեցին և «ազատ» կոչվեցին պարզապես պատվի համար։

Արմինիայից են բազմաթիվ մուսուլման գիտնականներ, որոնց մեջ Աբու Աբդալլահ Իսա Իբն Մալիք իբն Շիմր ալ Արմանին՝ որ կատարել է ուղևորություններ դեպի Եգիպտոս և դեպի Մաղրիբ։

---

* Ազատանի, հավանաբար «Նախարարներ»։

Էջ 224

23. Ա ր վ ա խ[47]— اروخ

Բերդ է ադ-Զավադանի մարզում, որը պատկանում է Մուսուլի տիրոջը:

Էջ 239

24. Ի ս պ ի զ ր ու զ[48]— اسبيذروذ (Սփիդրուդ)*

Հայտնի գետի անունն է՝ Ադրբեջանի մարզերում, որ բխում է Փարսիսի կողմից և թափվում Ջուրջանի ծովը: Իսթախրին ասել է, թե Իսբիդրուդը գտնվում է Արդաբիլի և Զանջանի միջև: Գետը հնադհետե նվազում է իր ընթացքում, նրա մեջ նավեր էլ կան: Հոսում է Սալար կոչված բերդի ներքևից, որը Սամիրանն է:

Էջ 239

25. Ա ս բ ի ր ա ն[49]— أسبيرن

Հայտնի քաղաք է Արմինիայում, Էրզրումի կողմերում:

Էջ 245

26. Ո ւ ս բ ա ն[50]— أسطان (Ոստան)

Հայտնի բերդ է Խլաթի մարզում, Արմինիայի մեջ:

Էջ 254

27. Ի ս ք ա ն դ ա ր ու ն ա[51]— اسكندرونه (Իսքենտերուն)

Ահմադ իբն ալ-Թայիբը ասել է, որ Անթաքիայից արևելք գտնվող մի քաղաք է Շամի ծովի** եզերքին և նրա ու Բաղրասի միջև չորս փարսախ է, իսկ նրա և Անթաքիայի միջև՝ ութ փարսախ:

Էջ 272

28. Ա ս ի ու բ[52]— أسيوط (Ասիութ)

Հռչակավոր մեծ քաղաք: Բնակիչներից մի քանի քրիստոնյաներ ինձ հաղորդեցին, թե այնտեղ կան քրիստոնյաներին պատկա-

* Սպիտակ գետ:

** Միջերկրական ծով:

նող 75 եկեղեցիներ։ Հասան իբն Իբրահիմ ալ Մսրին ասել է, թե Ասիութը Եգիպտոսի քաղաքներից մեկն է։ Այնտեղ կան հայկական կտավ գործողներ։ Շաքարեղենի պատրաստության մեջ անմրցելի է այդ քաղաքը։

էջ 284

**29. Ուշնու**[53]— أشنه

Քաղաք Ադրբեջանում, որը տեսած եմ անձամբ և գտնվում է Արբիլի կողմը։ Այդ քաղաքի և Ուրմիայի միջև երկու օրվա ճանապարհ է, իսկ նրա և Արբիլի միջև՝ հինգ օրվա։ Ունի շատ բանջարանոցներ, աճեցվում է ընտիր տանձ, ավելի բարձր որակով, քան որևէ ուրիշ բան և որը տարածվում է շրջակայքի բոլոր վայրերում։ Ես այնտեղ այցելեցի 617 թվականին (1120—1121) գործի բերումով, Թավրիզից գալիս, քաղաքը գտա ավերակ վիճակի մեջ։

էջ 306

**30. Աթրաբազունդա**[54]— أطرابزندة (Տրապիզոն)

Հույներին պատկանող նշանավոր քաղաք, որը գտնվում է Կոստանդնուպոլսի ծովի արևելյան կողմում, որը ծանոթ է Պոնտոսի ծով անվամբ։ Այդ քաղաքի մոտ վերջանում է Կովկասյան լեռնաշղթան։ Կառուցված է ծովի ափի վրա. ջուրը շրջապատում է այն և սեղմում ինչպես ջրով լի խրամատ, որի վրա կա մի կամուրջ. երբ թշնամին անակնկալ կերպով հարձակվում է քաղաքի վրա, բնակիչները կտրում են կամուրջը։ Քաղաքն ունի բազմաթիվ գյուղերով շրջակայք, որը երկարում է դեպի արևմուտք մինչև Կիրասոն։ Բնակիչները մեծ մասամբ վանականներ են։ Կոստանդնուպոլսի ենթակա նահանգ է՝ ամբողջությամբ շրջապատված բարձր լեռներով։

էջ 330

**31. Ուֆսուս**[55]— أفسوس (Եփեսոս)

Թարսուսի սահմանի քաղաք է, և ասում են թե պատկանում է Քահֆի տերերին։

էջ 331։

**32. Աֆլուղունիա**[56]— أفلوغونيا

Մեծ քաղաք հայոց երկրում, Արմինիայի կողմերում։ Այս քաղաքն ունի գյուղեր և ամուր բերդեր, որոնցից է Վարիման կոչված

բերդը, լերկ լեռան գագաթի վրա և ծովի մեջտեղը։ Այնտեղ կա մի գետ, որի ջուրը կորչում է գետնի մեջ, և որը կոչվում է Նիգիբինի գետ։ Բնակիչների մեջ տարածված է բորոտությունը, որովհետև իրենց կերածի մեծ մասամբ կաղամբն է և իրենց մոտ սովորական է ժանտախտային ուռուցքը։ Նրանք շատ հյուրընկալ են և պատվում են ճաշով։ Շատ հարգում են իրենց կրոնավորներին։ Երբ նրանցից մեկր մահամերձ է լինում, կանչում է քահանային, նրան նվիրում է ինչքեր և խոստովանում իր գործած մեղքերը. իսկ քահանան թողություն է տալիս նրան և երաշխավորում, որ մեղքերը արձակված ու ներված են։ Ամեն անգամ, որ հիվանդը հիշում է իր գործած մի մեղքը, քահանան ձեռքերը երկարում է և երկու ափերով որպես թե մի բան է բռնում և գցում գետին։ Հետո երբ մեղքերի խոստովանությունը լրանում է քահանան երկու ձեռքերը իրար բերելով դուրս է գնում, այն իմաստով, որ բոլոր մեղքերն էլ հավաքած է ափերի մեջ և գնում է թափելու բաց վայրում։ Այս մի տարօրինակ և զարմանալի սովորություն է նրանց մոտ։

էջ 343

**33. Աֆշուքա**[57]— أشوثاء

*Մի ամրոց է, կարծում եմ թե Հայաստանում։*

էջ 350

**34. Օլթի**[58]— التي

*Ամուր բերդ է և քաղաք՝ Թիֆլիսի մոտերքում։ Նրա և Էրզրումի միջև երեք օրվա ճանապարհաչափ է։*

էջ 12 (Մարասիդից՝ 5-րդ հատոր)

**35. Ըսերդ**[59]— أسعرد (Սղերդ)

*Համբավավոր փոքր քաղաք վերին Դիարբաքրում, Հիսայնի և Հայզանի միջև։*

էջ 371

**36. Անճիլ**[60]— أنجل

*Քաղաք Դիարբեքրում։ Հիշատակվում է Սղերդի հետ, որը նույնպես քաղաք է այդ վայրում։*

Էջ 350

### 37. Ալլան[61] — ألّان (Ալանք)

Ընդարձակ և բազմարնակ երկիր է Կովկասյան լեռների մեջ, Դարբանդին կից։ Այնտեղ կան մեծ և անվանի քաղաքներ։ Այնտեղ ապրում են մուսուլմաններ, բայց բնակչության մեծամասնությունը քրիստոնյաներ են։ Ժողովուրդը բաժանված է ցեղախմբերի և չունի ընդհանուր թագավոր, այլ ամեն քաղաք ունի իր իշխանը։ Կոպիտ, անգութ և քիչ կրթված ժողովուրդ է։

Ալի իբն Հուսայնը գրում է, թե Ալլանը Սարիրի արքայի երկիրն է, որի թագավորը ընդհանուր բացատրությամբ Քերքունշահ է կոչվում։ Ֆիլանշահը Սարիրի թագավորի հատուկ տիտղոսներից մեկն է։ Ալլանի մայրաքաղաքը կոչվում է Մաղս, որ նշանակում է կրոն։ Այս քաղաքից դուրս թագավորն ունի պալատներ և զբոսավայրեր ուրիշ կողմերում ևս, որտեղ փոխադրվում է բնակվելու համար։

Ալլանների թագավորները նախապես հեթանոս էին, հետո Աբբասյանների օրով, ընդունեցին քրիստոնեությունը, սակայն հիջրի 320 թվականին (932), թողնելով այդ կրոնը, նրանք վռնդեցին եպիսկոպոսներին ու քահանաներին, որոնք հույն թագավորների կողմից էին ուղարկված։

Ալլանաց երկրի և Կովկասյան լեռների միջև մեծ լեռնաձորի վերև կառուցված է մի բերդ և կամուրջ։ Բաբ Ալլան կոչված այդ բերդը կառուցել է պարսիկների հին թագավորներից Սինդեբադիբն Բուշտասեֆ իբն Լուհրասեֆը, որը մեջը պահակազոր էր դրել ալլանների առաջացումը Կովկասյան լեռներից այս կողմ արգելելու համար։ Ապառաժի վրա կառուցված այդ անառիկ բերդի առջև է հիշյալ կամուրջը, որը այդ կողմերում միակ ճանապարհն է։ Այս նշանավոր բերդը ունի քաղցր ջրի աղբյուր, որի մասին հիշատակվում է պարսկական բանաստեղծություններում։ Այս բերդը գրավեց Մասլամա իբն Աբդլմալիք[62] զորավարը և արաբ պահապաններ բնակեցրեց այնտեղ։ Պահապանների ուտեստը ուղարկվում էր Թիֆլիսից, որը մի քանի օրվա հեռավորություն ուներ։

Այս բարձրադիր բերդը իշխում է ճանապարհի, կամուրջի և ձորի վրա, այնպես որ միայն մեկ պահակ կարող է փակել այդ անցքը աշխարհի բոլոր թագավորների առաջ։ Այդ բերդի վրա ոչ ոք չի կարող բարձրանալ առանց ներսը գտնվողների թույլտվության։

Ալլանի տերը 30 հազար ձիավոր զորք ուներ։ Այսպես է գրում մի պատմագիր, իսկ մենք քաղել ենք վերև տրված տեղեկություն-ները այնպիսի մարդուց, որն անցել է այդ երկրից։

էջ 352

38. Ալկի[63]— أَلْقِي (Ալկի)

Ամուր բերդ է ալ-Զավազանի մարզում, որը պատկանում է Մուսուլի տիրոջը։

էջ 367

39. Ուճար[64]— أُجَار

Փոքրիկ քաղաք Ադրբեջանին ենթակա՝ ջրառատ և բանջարա-նոցներով հարուստ։ Նրա և Արդաբիլի միջև յոթ փարսախ հեռա-վորություն կա, և գտնվում է լեռան վերև։ Այնտեղից է հայթայթ-վում Արդաբիլի պտուղների մեծ մասը։ Պատկանում է Ահարի* տիրոջ Բեշքինին։ Անձամբ այցելել եմ այնտեղ ուղևորությանս ըն-թացքում։

էջ 371

40. Ուճչ— أُزج

Զավազանի մարզում մի վայր է՝ Մուսուլի և Հայաստանի միջև։

էջ 399

41. Ուզ[65]— أُذ

Քաղաք Առանի կողմերում, որը գրավեց Սալման իբն Ռաբիան։ Ասվում է, որ Ուղը Ղազվինի նշանավոր բերդերից է։

էջ 407

42. Ավլա́ս[66]— أَوْلَاس (Ուլաշ)

Բերդաքաղաք, կառուցված Միջերկրական ծովի եզերքում, Թարսուսի մոտերքում։ Նրա մեջ է գտնվում մի բերդ, որը կոչվում է Հիսն ալ Զուհադ**։

---

* Ըստ Յակուտի, Արդաբիլի և Թավրիզի միջև քաղաք (I, էջ 409)։

** Ճգնավորների բերդ։

էջ 408

43. Ավնիք[67] կամ Ունիք — أونيك (Ավնիկ)

Ամուր բերդ է Բասեն Գավառում, Էրզրումի նահանգի մեջ։ Այնտեղ էր, որ տեղի ունեցավ բախումը, որի ընթացքում պարտվեց Ռուքնադդին իբն Կլըչ Արսլանը[68]։

էջ 437

44. Բաբ ալ-Աբվաբ[69] — باب الأبواب

Կոչվում է նաև Ալբաբ, առանց հատկացյալի և այն՝ Դարբանդ Շիրվանն է։ Ալ-Իսթախրին[70] հաղորդում է, թե Բաբ ալ-Աբվաբը մի քաղաք է, որի պարիսպը հասնում է գրեթե ծովի ջրին և որի մեջտեղ գտնվում է նավահանգիստը։ Ծովի երկու եզերքների վրա մի զույգ ամբարտակներ են կառուցված, որով մուտքը պատսպարված է։ Անցքի բերանը մի շղթա է գցված, այնպես որ ոչ մի նավ առանց թույլտվության չի կարող ներս ու դուրս անել։ Ամբարտակները կառուցված են ապառաժից և կապարից։

Բաբ ալ-Աբվաբը գտնվում է Թաբարիստանի ծովի վրա, որը կոչվում է նաև խազարների ծով։ Արդաբիլից ավելի մեծ քաղաք է այն, շուրջ երկու մղոնով երկու մղոնի վրա։ Մշակությունը առատ է, բայց պտուղները սակավ են և շրջակայքից են բերվում։ Քաղաքն ունի քարաշեն պարիսպ, որը հասնում է մինչև սարը։ Հիշյալ լեռը ուրիշ անցք չունի դեպի իսլամական երկրները, որովհետև մի կողմից մյուսը առաջնորդող ճամփաները եղծված ու անանցանելի են դարձած։ Պարիսպի մի ծայրը քթի ձևով երկարած է դեպի ծով, որպեսզի արգելվի նավերի մերձեցումը պարսպին։

Ամուր կառուցված ու հաստատ հիմքեր ունեցող այս քաղաքը շինել է Անուշիրվանը։ Սահմանագլխային այս հոյակապ քաղաքը շրջապատված է բազմացեղ և այլալեզու թշնամի ժողովուրդներով։ Նրա մոտ է բարձրանում Ջիբ կոչված սարը, որի գագաթի վրա ամեն տարի դիզում են մեծ քանակությամբ ցախ՝ կրակ վառելու համար, որպեսզի նշան տան Ադրբեջանի, Առանի և Արմինիայի ժողովուրդներին, երբ թշնամին հանկարծ հարձակում կատարի։ Ասում են, թե Բաբ ալ-Աբվաբի հարակից լեռնաշղթայի վրա 70-ից ավելի ցեղեր են ապրում և յուրաքանչյուր ցեղ իր լեզուն ունի։ Խոսրովները* շատ էին մտահոգված այդ սահմանագլխով և ի նկատի

---

* Պարսիկ թագավորները։

ուներին միշտ այդ կողմից գալիք սարսափներն ու մեծ վտանգները։
Ուստի թուրքերի, անհավատների և ուրիշ թշնամիների դեմ պաշտ-
պանվելու համար այնտեղ էին բերել զանազան երկրների վաշկա-
տուն ցեղերից վստահելի պահակներ, որոնք արտասովոր արտոնու-
թյուններ էին վայելում։ Պահպանությունը վստահված էր Թաբա-
րիստանի երկրի ժողովուրդներին և նրանց հարևան Ֆիլան, Ալ-լաքզ,
Ալ-լիրան, Շիրվան ու այլ ցեղերի պատկանող բազմաթիվ հետևակ
ու հեծյալ գնդերի, որոնցից յուրաքանչյուրը մի որոշ բաժնի պաշտ-
պանությունն էր ստանձնել։

Բաբ ալ-Աբվաբը հիշյալ ծովի նավահանգիստն է։ Այնտեղ են
հավաքվում խազարները, Սարիր, Սինդան, Խայզան, Քուրջ, Ռուկ-
լան, Զարանքիրան և Ամիք կոչված ժողովուրդները՝ հյուսիսից։
Այնտեղ են գալիս նաև Ջուրզանից, Թաբարիստանից, Դայլամից
և Ջաբալից։

Այս քաղաքում գործում են կտավյա շորեր և ոչ Առանում, ոչ
Հայաստանում և ոչ էլ Ադրբեջանում կտավ չկա բացի այստեղ և սրա
շրջակա գյուղերում գործածից։ Այստեղ կան քրքում և ամեն տեսա-
կի նուրբ արտադրանքներ։ Մոտերքում իսլամական երկրների դեմ
հանդիման է գտնվում Մասկաթ գյուղը, որից այն կողմը կա լաք-
զիների երկիրը, որոնք հաղթանդամ և բազմամարդ ժողովուրդ են և
բաժանվում են շատ ցեղերի։ Ունեն շատ ավաններ և բազմաբնակ
գյուղախմբեր, որոնց մեջ ապրում է ազատանին՝ «Խամաշիր» կոչ-
ված։ Սրանցից վեր բնակվում է ալ-Մուլուք ցեղը և ներքևը՝ ալ-
Մաշակ* ցեղը։ Սրանց և Բաբ ալ-Աբվաբի միջև կա Թաբարսարան
շահի երկիրը։ Այս ժողովուրդն էլ քաջարի և պատերազմիկ էր,
բայց լաքզիները ավելի բազմամարդ են ու նրանց երկիրը ավելի
ընդարձակ է։ Սրանցից վեր գտնվում է Ֆիլանը, որը մի մեծ երկիր
չէ, իսկ այս ծովի եզերքում, Մասկաթից այն կողմ՝ Շաբիրան քա-
ղաքն է, փոքր ու ամրացված, որը ունի շատ գյուղեր։ Խազարների
քաղաք Ատիլից մինչև Բաբ ալ-Աբվաբ հեռավորությունը 12 օրվա
ճանապարհաչափ է, Սամանդարից՝ չորս օրվա, Սարիրի երկրից
երեք օրվա ճանապարհաչափ։

Աբու բաքր Ահմադ իբն Մուհամմադ ալ-Համադանին[71] գրում է.
Թե Կովկասյան լեռնաշղթայի բերանումն է գտնվում Բաբ ալ-Աբ-
վաբը՝ որը շատ ամրոցներ ունի, ինչպես՝ Բաբ Սուլը, Բաբ Ալլանը*

* Այս բառը նշանակում է ոստաբեկ կամ տերևաթափ անող։
** Ալանաց դուռ։

Բար Շարիրանը, Բար Լազիքան, Բաբ Բարիքան, Բաբ Սամխսչանը, Բար Սահիր աս-Սարիրը, Բաբ Ֆիլանշահը, Բար Թարունան, Բար Թաբարսարանշահի և Բաբ Իրանշահը։

Բար ալ-Աբվաբի շինության մասին Աբուլ-Աբբաս ալ-Թուսին[72] հետևյալն է պատմում։

Խազարները մի ժամանակ ասպատակություններ էին անում պարսկական երկրների վրա և հաճախ առաջանում էին մինչև Համադան և Մուսուլ։ Երբ Անուշիրվանը թագավորեց, նա մարդ ուղարկեց խազարների թագավորին և նրա աղջկանը կնության ուզեց և խոստացավ փոխարենը իր աղջիկն էլ նրան կնության տալ, որպեսզի հաշտ և խաղաղ ապրեն իրար հետ փոխադարձ համաձայնությամբ և այս կերպով յուրաքանչյուրը կարողանա զբաղվել իր թշնամիներով։ Երբ հավանություն ստացավ, Անուշիրվանը ընտրեց իր հարճերից մեկին և ուղարկեց խազարներին որպես իր աղջկան՝ թագավորի աղջկա վայել օժիտներով։ Խաքանն էլ Անուշիրվանին ուղարկեց իր աղջկանը։ Այդ իշխանուհու ժամանումից հետո Պարսից թագավորը մի նամակ ուղարկեց՝ ցանկություն հայտնելով հանդիպում ունենալ Խաքանի հետ՝ իրենց բարեկամական կապերն ավելի ամրապնդելու մտումով։ Որոշված ժամադրավայրում նրանք հանդիպեցին միմյանց ու մի քանի օր մնացին*։ Մի օր Անուշիրվանը հրամայեց իր զորականներից մեկին, որ իր հետ վերցնելով երեք հարյուր հանդուգն մարդկանց, գիշեր ժամանակ գաղտնաբար հարձակվի խազար զորքերի վրա և հրդեհելուց ու անասունները ծանր կերպով վիրավորելուց հետո առանց հայտնվելու ետ վերադառնա։ Եվ այդպես էլ կատարվեց։ Երբ առավոտ եղավ, Խաքանը մարդ ուղարկեց բացատրություն պահանջելու համար նախորդ գիշերվա պատահածի համար, իսկ Անուշիրվանը պատասխանեց, թե քննություն է բաց արել, բայց ոչինչ տեղյակ չէ պատահածի մասին։ Մի քանի օր անցնելուց հետո նույն բանը կրկնվեց, և այդպես երեք անգամ։ Ամեն անգամ, որ Խաքանը մարդ էր ուղարկում բացատրության համար, պատասխան էր ստանում, թե Անուշիրվանը ոչնչով տեղյակ չէ պատահածի մասին։ Ի վերջո, Խաքանը բար-

---

* Բալազորին ասում է, թե այդ ժամադրավայրը Բարշալիան է (Բոլշալու) և մի քիչ տարբեր է ավանդում դեպքը. որպես թե ինքը Անուշիրվանը հրամայել է գիշեր ժամանակ հրդեհ գցել իր իսկ բանակի ծայրում, որտեղ չորացված խոտից շինված խրճիթներ կային միայն և հաջորդ օրը բողոքել է եղածի մասին, ամբաստանելով Խաքանին, որ իր բանակի վրա կատարված հարձակման փոխ վրեժն է առել այդ արարքով։

կանալով, իր զորականներից մեկին հրամայեց, որ նույն կերպով վարվի պարսիկների հետ։ Երբ նա գործադրեց այդ հանձնարարությունը, Անուշիրվանը լուր ուղարկեց և բացատրություն ուզեց գիշեր ժամանակ իր բանակը կողոպտելու մասին։ Խաքանը նրան պատասխանեց, որ չբարկանա դրա համար, քանի որ իր բանակները երեք անգամ նման հարձակում են կրել, մինչդեռ նրանը մի անգամ միայն։ Դրա վրա Անուշիրվանը լուր ուղարկեց խաքանին, թե իր կարծիքով թշնամու գործ է այդ՝ իրենց բարեկամությունը խանգարելու ցանկությամբ, հետևաբար խնդրում է խաքանից, որպեսզի թույլ տա մի պարիսպ կառուցելու երկու երկրների միջև, և մի կողմից մյուսը անցնելը թույլատրվի միայն բարեկամներին։ Խաքանն այդ մասին հավանություն հայտնելուց հետո վերադարձավ դեպի իր երկիրը։ Անուշիրվանը ապառաժից և արճիճից մի պարիսպ կառուցեց, որի լայնությունը 300 արմնկաչափ էր և բարձրությունը հասնում էր լեռների կատարին։ Հետո պարսպի ծայրը երկարացրեց մինչև ծովի մեջ։ Ասում են, թե նա գործածեց տիկեր, որոնց վրա խարսխեց բարձրացող պատը։ Երբ մի կողմից շինությունը բարձրանում էր, տիկերն հետզհետե ցած էին իջնում մինչև որ ամրացվեցին հատակի վրա։ Հետո շինությունը շարունակեց բարձրանալ, մինչև որ հասավ ցամաքի վրա կառուցված պարսպի բարձրությանը։ Կառուցումն ավարտելուց հետո Անուշիրվանը նրա վրա հաստատեց երկաթյա մի դուռ և հարյուր մարդկանց նշանակեց պահպանության համար, մինչդեռ այդ շինությունից առաջ հարյուր հազար մարդ էր հարկավոր անցքի պաշտպանության համար։ Այնուհետև թագավորը իր գահը զետեղեց ծովափի մոտ հատկապես շինված բարձրավանդակի վրա և ուրախությունից փառք տվեց աստծուն իր ձեռք բերած հաջողության համար և կռնակի վրա պառկելով գոչեց. այժմ կարող եմ հանգիստ քնել։

Նույն հեղինակն ավելացնում է, թե պարսպի դեպի ծով առաջացած մասը կապվեց մի անմատչելի վայրի։

Շինության համար գործածվեցին սրբատաշ քառակուսի և համաչափ քարեր, որոնց ամենից փոքրը 50 մարդ չէին կարող վերցնել։ Քարերը իրար միացվեցին բևեռներով և կապարով։ Այդ յոթ փարսախ երկարության վրա յոթ անցքեր թողնվեցին, յուրաքանչյուրը դեպի մի քաղաքի կողմը բացված, և նրանց մեջ հաստատվեց Ինշաստիքին կոչված պարսիկ դինվորներ։ Արմինիան պարտավոր էր հոգալու այնքան մարդկանց ծախսերը, որքան հարկավոր էր յուրաքանչյուր շարքը քսան մարդկանցից բաղկա-

ցած մի հեծելավոր գնդի, որը կարենա ազատ անցնել պարսպի վրայով:

Այդ հեղինակը հիշում է նաև, որ Բաբ ալ-Աբվաբ քաղաքի Բաբ ալ-Ջիհադ կոչված դռան վերևի մասում երկու փոքր սյուներ կան, որոնց յուրաքանչյուրի վրա զետեղված է սպիտակ քարից կերտված առյուծի մի արձան: Ներքևում կան երկու քարեր, որոնցից ամեն մեկը կրում է մի էգ առյուծի արձան: Դռան մոտ կա նաև քարաշեն մի ուրիշ արձան, որը ներկայացնում է մի մարդ, որի սրունքների մեջտեղ քանդակված կա մի աղվես՝ բերանում խաղողի ողկույզ: Քաղաքի մոտ կա ջրամբար, որտեղ իջնում են աստիճաններով, երբ ջուրը ցածրանում է: Այս աստիճանների երկու կողքերին զետեղված են առյուծ ներկայացնող քարի արձաններ, որոնք թվում է թե այդ պարսպի հմայեկներն են:

Իսլամական արշավանքների ժամանակ այս քաղաքը նվաճվելուց հետո, Սալման Իբն Ռաբիա ալ-Բահիլին[73] անցավ զույգ ամրոցները և մտավ Բալանջար քաղաքը: Բալանջար գետից այն կողմ իրեն դեմ բանակով ելավ խազարների խաքանը: Սալմանը և չորս հազար հոգուց բաղկացած իր հետևորդները նահատակվեցին այդ ճակատամարտի մեջ:

Մի ուրիշ տեղ կարդացի սակայն, թե հիջրի 19 թվականին Իսպահանը նվաճելուց հետո, Աբու Մուսա ալ-Աշարի զորավարը Բաբ ալ-Աբվաբի վրա էր ուղարկել Սուրակա իբն Ամրին[74], որի առաջապահ գնդերի հրամանատարն էր Աբդ առ-Ռահման իբն Ռաբիան[75]: Այս վերջինը զենքի ուժով գրավեց քաղաքը:

Էջ 444:

45. Բ ա բ ե ր դ[76]— بارت (Բաբերդ)

Մեծ ավան և գեղեցիկ քաղաք Էրզրումի նահանգում՝ Արմինիայի մարզերում: Նրա մասին ինձ տեղեկություններ տվեց քաղաքի բնակիչներից մի իմաստուն մարդ:

Էջ 446

46. Բ ա ր ղ ի շ[77] — بايغيش

Ադրբեջանի և Արզաբիլի միջև մի վայր է. այնտեղից է հոսում Վերին Զաբը:

էջ 454

**47. Բաջարվան**[78] — باجروان

*Բաբ ալ-Աբվաբի կողմերում, Շիրվանի մոտ, մի քաղաք է։ Նրա մոտ է գտնվում այն կենսաղբյուրը, որը գտավ Խըդր մարգարեն։ Պատմում են, թե այդ այն քաղաքն է, որտեղ Մովսես և Խըդըր (Եղիա) մարգարեները ասպնջականություն գտան։*

էջ 455

**48. Բաջունայս**[79] — باجنيس

*Հին քաղաք է, որի անունը հիշատակվում է Արճեշի հետ և գտնվում է Խլաթ գավառում ու Չորրորդ Արմինիայի մասն է կազմում։ Քաղաքը գրավեց Իյադ իբն Ղանմը։*

*Միսար իբն Մուհալհալն ասել է, որ Բաջունայսը Բանու Սուլայմի երկիրն է. այնտեղ կան ընդարձակ աղահանքեր, մագնեզիումի և պղնձի հանքեր։ Այնտեղ է գտնվում Մանբադ ալ-Տայխը*։*

էջ 459

**49. Բախավխա**[80] — باخوخا

*Ազ-Զավազանի մարզում բերդ է, որը պատկանում է Մուսուլի տիրոջը։*

էջ 461

**50. Բաղան Ֆայրուզ** — باذان فيروز

*Արդաբիլի անունն է, Ադրբեջանի այն հայտնի քաղաքի, որը կառուցվեց Պարսկաստանի առաջին թագավորներից մեկի՝ Պերոզի կողմից։*

էջ 466

**51. Բազ ալ-Համրա**[81] — باز الحمراء

*Ազ-Զավազանի մարզերում գտնվող բերդ, որը պատկանում է Բուխտիե քրդերին։*

---

* *Այս բառը նշանակում է տնկատան պառավի, կրոնավորի կամ պետի։ Ավելի ստույգ տեղեկություն չունենք, թե ինչ էր ներկայացնում այն։*

էջ 468

52. Բ ա ս ե ն[82]— باسين

Ինձ տեղեկացրին Մուհամմադ իբն Սադիկ բասենցի Ֆակիհը և ապա խանկահին, թե Վերին Բասենը ու Ստորին Բասենը գավառներ են, որոնց գլխավոր քաղաքն է Էրզրումը։

էջ 477

53. Բ ա կ ո ւ յ ա[83]— باكوية (Բաքու)

Քաղաք է Դարբանդի կողմում, Շիրվանի մարզում։ Այնտեղ կա նավթի մեծ աղբյուր, օրական 1000 դիրհեմ եկամուտ բերող։ Նրա կողքին կա մի ուրիշ աղբյուր, որտեղից հոսում է սնդկաճարպի նման մի սպիտակ նավթ, որը չի դադարում ոչ գիշեր և ոչ ցերեկ և նախորդի չափ հասույթ է տալիս։ Այնտեղ հաճախող վաճառականներից մեկը ինձ ասեց, թե տեսել է մի գետին, որի վրա կրակը անդադար վառվում է և այդ կրակը հանքային բխում ունի։

էջ 480

54. Բ ա լ ո ւ[84]— بالو

Ամուր բերդ և քաղաք Արմինիայի մարզերում, Էրզրումի և Խլաթի միջև, որտեղ կա երկաթի հանք։

էջ 500

55. Բ ա հ ր ա լ-Խ ա զ ա ր[85]— بحر الخزر

Նույնն է, որ կոչվում է նաև Բահր Թաբարիստան, Բահր Ջուրջան և Բահր Աբասքուն։ Շատ ընդարձակ մի ծով է, որն ուրիշ ծովի միացած չէ։ Կոչվում է նաև Խորասանի ծով, Ջիլի ծով, ոմանք էլ կոչում են Խորասանի ավազաբլուր։ Համդան ասում է, թե նրա պարսկերեն անունն է Զարահ Աքֆուդա, կոչվում է նաև Աքֆուդա—Դարիաու, իսկ Արիստոտելը կոչում է Հիրքանիա։ Ոմանք էլ կոչում են Խորեզմի ծով, և սա ճիշտ չէ, որովհետև Խորեզմի լիճն ուրիշ է։ Նրա ափին է կառուցված Բաբ ալ-Աբվաբը։ Նրա ափին են նաև Արևելյան կողմից Մուղանի և Թաբարիստանի լեռները, ինչպես և՝ Ջուրջանի լեռները։ Այս ծովը երկարում է մինչև Դահեստանի դիմաց, որտեղ է Աբասքունը։ Այնտեղից դառ-

նում է արևելք դեպի թուրքերի երկիրը, իսկ դեպի հյուսիս՝ խազարների երկիրը։ Նրա մեջ են թափվում բազմաթիվ մեծ գետեր, ինչպես Կուր, Արաքս և Ատիլ գետերը։

Իսթախրին ասում է, թե Բահր ալ-Խազարի արևելակողմում են գտնվում Դայլամի, Թաբարիստանի և Ջուրջանի որոշ մասերը, ինչպես նաև Ջուրջանի և Խորեզմի միջև տարածվող անապատի մի մասը, իսկ Ալանների արևմտակողմում, Կովկասյան լեռներից մինչև Սարիրի սահմանները, գտնվում է խազարների երկիրը և Ղուզերի անապատի մասը։ Ղուզերը թուրքական մի ցեղ են, որոնք ապրում են Սիահ Քուհի մարզերում։ Այս ծովի եզերքն են նաև Ջիլի հարավային մասը ու Դայլամի մի մասը։

Ասում է նաև, թե Բահր ալ-Խազարը երկրագնդի ուրիշ ոչ մի ծովի հետ հարաբերություն չունի, այնպես որ մեկը կարող է այդ ծովի շուրջը դառնալով հասնել իր մեկնած վայրը, առանց որևէ արգելքի հանդիպելու, բացի նրա մեջ թափվող գետերից։ Ջուրը աղի է, մակընթացություն և տեղատվություն չունի, խորքում շատ գորշ ցեխ կա, ի տարբերություն Կուլզումի* և Պարսից ծովի։ Պարսից ծովի մի քանի վայրերում ջուրը այնքան հստակ է, որ երևում են հատակի սպիտակ քարերը։

Այս ծովից դուրս չի բերվում ոչ գոհար, ոչ մարգարիտ, ոչ բուստ և ոչ էլ ուրիշ բան, որ օգտակար լինի, բացի ձկներից։

Այդ ծովով նավարկում են վաճառականները, մուսուլմանների երկրից գնալու համար դեպի Խազարների երկիրը դեպի Առանի, Ջիլի, Ջուրջանի և Թաբարիստանի երկրները։

Այդ ծովի մեջ չկան մարդաբնակ կղզիներ, ինչպես կան, օրինակ՝ Պարսից ծովում, Ռումի ծովում և այլ ծովերում։ Կան միայն մացառներով և ծառերով պատած ջրալի կղզիներ, որոնք անմարդաբնակ են։ Սրանց մեջ է Սիահ Քուհ կղզին։ Իսկ Կուր գետի մեջ կա մի կղզի, որը ունի թուփեր, ծառեր և ջուր և որը արտադրում է տորոն (համեմ)։ Այնտեղ նավերով կենդանիներ են փոխադրում արածելու համար, մինչև պարարտանան։ Կա նաև մի կղզի, որը ծանոթ է Ռուսերի կղզի անունով, և ուրիշ փոքրիկ կղզիներ։ Աբասքունից մինչև Խազարների երկիրը և մինչև ծովեզրը աջ կողմով ու դեպի առաջ չկա ոչ գյուղ, ոչ քաղաք, բացի Աբասքունից հիսուն փարսախ հեռու գտնվող Դահստան կոչված վայրը, որ ծովի ներսում է կառուցված և որտեղ ապաստանում են նավերը, երբ ծովը խռոված է լինում։ Ամեն կողմերից դեպի այդ

* Կարմիր ծովը։

վայրն են դիմում շատ մարդիկ և մնում են այնտեղ ձկնորսության նպատակով. այնտեղ խմելու ջուր կա։ Իսկ Աբասքունից դեպի ձախ, մինչև Խազարների երկիրը իրար կից շեներ են։ Այդ կողմից գնալով կանցնես Ջուրջանի, Թաբարիստանի, Դայլամի, Ջիլի, Մուղանի, Շիրվանի, Մասքաթի և Բաբ ալ-Աբվաբի սահմանագծով մինչև Սամանդար, ընդամենը չորս օրվա ճանապարհաչափ։ Սամանդարից մինչև Ատիլ գետը յոթ օրվա անապատ ճանապարհ է։ Սիահ Քուհի կողմում ծովը պղտոր է և վախ կա, որ երբ ուժգին քամի լինի, նավերը բեկվեն. իսկ երբ նավը խորտակվեց՝ ոչինչ չի կարող փրկվել, որովհետև Թուրքերը կգրավեն։ Ասում են, թե այդ ծովի շրջապատն է 500 փարսախ, իսկ տրամագիծը 100 փարսախ։

էջ 513

56. Բուհայրաթ Արճիշ[00] — بحيرة ارجيش

Նույնն է, ինչ որ Խլաթի լիճը, որի մեջ գտնվում է տառեխը։ Իբն ալ-Քալբին[87] ասել է, որ Խլաթի լիճը Հայաստանի հրաշալիքներից է։ Տասն ամիս նրա մեջ չեն երևում ոչ դորտեր և ոչ էլ ձկներ, իսկ տարվա երկու ամիսը նրա մեջ այնքան լիքն են, որ կարելի է ձեռքով բռնել[88]։ Տառեխն ուղարկում են շատ երկրներ, մինչև անգամ Հնդկաստան։

Ավանդում են, թե Կուբազ մեծը ուղարկեց Պլինիասին որպեսզի կախարդի երկիրը։ Նա կախարդել տվեց նաև այդ լիճը. այնպես որ մինչև այսօր տարվա մեջ տասն ամիս նրա մեջ ձուկ չի երևում։ Ասում են, թե դա պարսիկների մի խորհրդավոր գաղտնիքն է։

«Նվաճումների» գրքում ասված է, թե Հաբիբ իբն Մասլաման ուղարկվեց Օթման իբն Աֆանի կողմից, և հասնելով Արճեշ տիրեց այդ վայրերին, գլխահարկ նշանակեց բնակչության վրա, տուրք դրեց նաև հողի վրա։ Գալով տառեխի լճին, նա այնտեղ չհաստատվեց, մինչև որ Մուհամմադ իբն Մրվան իբն ալ-Հաքամը կառավարիչ նշանակվեց Ջազիրայի և Հայաստանի վրա և ձկնորսության արտոնություն տալու իրավունքը իրեն վերապահեց[89]։

էջ 513

57. Բուհայրաթ Ուրմիա[90] — بحيرة أرمية

Ինչ վերաբերում է Ուրմիային, նրա և լճի միջև մոտ երկու փարսախ հեռավորություն կա։ Այդ լիճը լեղի է և դարշահոտ։ Նրա

մեջ ոչ մի կենդանի չի ապրում, ոչ ձուկ և ոչ ուրիշ բան։ Նրա մեջ-տեղը կա մի լեռ, որը կոչվում է Կապուտան և մի կղզի, որի վրա կան չորս գյուղակներ, որտեղ ապրում են այս ծովի նավերի նավաստիները։ Բնակչությունը աղքատ է։ Այդ լեռան վրա կա նշանավոր մի ամուր բերդ, որի բնակիչները հաճախ ապստամ-բում են Ադրբեջանի կառավարիչների դեմ, ծովահենություն են անում, կողոպտում են ճանապարհորդներին և ապա ապաստա-նում բերդում, որտեղ ոչ ոք չի կարող մտնել։ Ես անձամբ տեսա այդ բերդը հեռվից, երբ հիջրի 617 թվականին անցնում էի այդ լճով դեպի Խորասան ճամփորդության ընթացքում։ Լճի շրջագիծը հիսուն փարսախ երկարություն ունի, իսկ լայնքը մի գիշերվա մեջ կարելի է անցնել նավով։ Այդ ծովակից հանում են անտիմոնի նմանող մի փայլուն աղ*։ Լճի արևելյան ափի դեմ հանդիման կան ակեր, որոնցից բխած ջուրը քարանում է օդի հետ շփման մեջ մտնելիս։ Այսպես է հավաստում Միսարը։

էջ 514

58. Բուհայրաթ ալ-Հադաթ[91] — بحيرة الحدث

Գտնվում է Մարաշի մոտ՝ Ռումի երկրի կողմերում։ Սկսվում է Իբն աշ-Շիր կոչված գյուղից, Հադաթից 12 մղոն հեռավորու-թյամբ և ուղղվում դեպի Մալաթիա վերջանալով Հադաթում, որը ամուր բերդ է։

էջ 526

59. Բադլիս[92] — بدليس (Բիթլիս)

Արմինիայում քաղաք Խլաթի մոտ. ունի բազմաթիվ մրգաս-տաններ, և նրա խնձորը որակով անմրցելի է, խիստ առատ ու էժանագին։ Արտածվում է դեպի շատ երկրներ։ Ահմադ իբն Յահ-յա իբն Ջաբիրն ավանդում է, որ երբ Իյադ իբն Ղանմը Ջազիրայի գրավումից հետո շարունակեց առաջանալ, նա հասավ Բիթլիս և գրավեց մինչև Խլաթ։ Քաղաքի պատրիկը հաշտություն կնքեց. ապա նա հասավ մինչև Թթու աղբյուրները, բայց այլևս առաջ չշարժվեց, վերադառնալով հարկ դրեց Բիթլիսի տիրոջ վրա հար և նման Խլաթի և նրա աղահանքերի վրա դրված հարկին։

---

* التوتيا — թութի. ցինկ, անտիմոն:

էջ 529

*60.* Բաղ կամ Բագ[93]— بذ

*Գավառ է Ադրբեջանի և Առանի միջև։ Այնտեղ էր, որ պաշարումից փախչելով դուրս եկավ Բաբեկը՝ Մոտասիմ խալիֆի օրոք։*

*Միսար բանաստեղծն ասել է, որ վայրը բաժանված է երեք հովիտների։ Ասողներ էլ կան, թե այնտեղ կա մի քարայր, որտեղ մարդիկ աղոթում են աստծուն մինչև իրենց խնդրանքի կատարվելը։ Այնտեղ են երդվում Մուհամմարաների* դրոշին, որոնք ծանոթ են Խուրամյան անվամբ։ Այնտեղ սպասում են Մահդիին**։ Ներքևում կա մեծ գետակ, որտեղ լողանում են հին ջերմ ունեցողները։ Բերդի կողքին Արաքս գետն է։ Այնտեղ կա զարմանալի նուռ, որի նմանը ամբողջ աշխարհում չկա։ Կա նաև սքանչելի թուզ։ Այնտեղ չամիչը չորացնում են թոնիրների մեջ, որովհետև այդ կողմերում մշուշի առատության հետևանքով երկինքը բնավ չի պայծառանում և արևը չի երևում։ Այնտեղ կա նաև ծծումբ, որից փոքր կտորներ են դնում քաղցր ջրի մեջ և կանայք խմելով գիրանում են։*

էջ 530

*61.* Բազանդուն[94]— بذندون *(Պոդանտի)*

*Սահմանային գոտում գտնվող մի գյուղ է, որ Թարսուսից մի օրվա հեռավորություն ունի։ Այնտեղ մահացավ ալ-Մամունը և փոխադրվեց Թարսուս ուր և թաղվեց։ Թարսուսում կա մի դուռ՝ Բաբ Բազանդուն կոչված, որի պարսպի մեջտեղ կա հավատացյալների ամիրապետ ալ-Մամուն Աբդալլահ իբն Հարունի գերեզմանը։ Նա գնացել էր արշավելու հույների երկրների վրա, երբ մահը վրա հասավ, հիջրի 218 թվականին (27 հունվ. 833—15 հունվ. 834)։*

էջ 551

*62.* Բարխու[95]— بـخو *(Փարխու)*

*Զավազանի կողմերում գտնվող մի բերդ է, որը պատկանում է Մուսուլի տիրոջ։*

---

* *Նշանակում է կարմիրների, ակնարկելով Բաբեկին։*
** *Սպասված մարգարեն։*

էջ 556

63. Բ ա ր դ ի ջ[96]— بردیج (Բերդիկ)

Քաղաք Ադրբեջանի ծայրամասում. այստեղից մինչև Պարտավ 14 փարսախ է։ Շրջապատված է մի գետի ջրով, որ իր կարևորությամբ մոտենում է Տիգրիսին և կոչվում է Կուր։

էջ 558

64. Բ ա ր դ ա ա[97]— برذعة (Պարտավ)

Համզան ասել է, թե Բարդաան արաբացված հնչումն է Բարդադարի, որը պարսկերեն լեզվով նշանակում է գերիների վայր։ Այսպես է կոչվել, որովհետև մի պարսիկ թագավոր Հայաստանի այն կողմից գերիներ բերելով բնակեցրեց այստեղ։

Հիլալ իբն ալ-Մոհսինն ասում է, թե Բարդաան Ադրբեջանի մայրաքաղաքն է, իսկ Իբն ալ-Ֆակիհն ասում է, որ Բարդաան Առանի քաղաք է, Ադրբեջանի սահմանածայրի վրա, որի կառուցումն սկսեց Կավատ թագավորը։ Այն շինված է հարթ դաշտի վրա, դաճից և կղմինդրից։ Իսթախրին էլ ասում է, որ Բարդաան շատ մեծ քաղաք է, ավելի քան մի փարսախի վրա։ Ծառաշատ, պտղառատ, հաճելի մի վայր է, և Ռեյ ու Սպահան քաղաքներից հետո՝ Իրաք և Խորասանի միջև չկա ավելի մեծ, ավելի բարեբեր և ավելի գեղեցիկ վայր՝ քան Բարդաան։ Քաղաքից մեկ փարսախից նվազ հեռավորության վրա է գտնվում Անդարաբ կոչված վայրը, այգեստաններով ընդելուզված, որն ունի մրգաստաններ, առատ պտղատու ծառեր և կանաչազարդ պարտեզներ։ Նա ունի պիստակ՝ ավելի պատվական, քան Սմբղանդի պիստակը, ունի շագանակ՝ ավելի ընտիր, քան Դամասկոսի շագանակը, ունի նաև մի տեսակ պտուղ «դավկալ» կոչված, որ հասունանալուց հետո խիստ քաղցրահամ է լինում, իսկ չհասունացած՝ դառնահամ է լինում։ Բարդաայում կա թուզ, որը գերազանց է բոլոր տեսակի թուզերից։ Մետաքսի արտադրությունը մեծ զարկ է ստացել այնտեղ, շնորհիվ անթիվ ու անտեր թթենիների. և արտածվում է դեպի Պարսկաստան ու Խուզիստան։

Բարդաայից երեք փարսախ հեռավորության վրա գտնվում է Կուր գետը, որի մեջ կա «Շուրմահի» ձուկը, որը արտածվում է աղա-

լուց հետո։ Այնտեղ կան նաև զանազան տեսակ ուրիշ ձկներ. դրանցից են՝ «գավակին» և «ուշբ» կոչված ձկները, որոնք ամենահամեղներն են այդ վայրերում։

Բարդաայում կա մի դուռ՝ Բաբ ալ-Աքրադ կոչված, որտեղ գտնվում է ալ Քուրդաքի* կոչված շուկան, որը տարածվում է մեկ փարսախի վրա։ Ամեն կիրակի օր այնտեղ են հավաքվում մարդիկ, և վաճառականները ապրանք են բերում մինչև անգամ Իրաքից։ Կուրի ամենամեծ տոնավաճառն է այդ և այնքան հռչակ է հանել, որ տեղացիները շաբաթվա օրերը համրելու ժամանակ շաբաթին հաջորդող օրվան ասում են կիրակի։ Հետո հաջորդ օրերը՝ երկուշաբթի, երեքշաբթի և այսպես մինչև շաբաթվա վերջին օրը։ Նրանց գանձատունը գտնվում է մզկիթի մեջ, որը կառուցված է Դամասկոսի մզկիթի նմանողությամբ, որովհետև Դամասկոսում էլ գանձատունը գտնվում է մզկիթի մեջ։ Շենքը արճիճով պատած տանիք ունի, ունի նաև մի երկաթե դուռ և ամբողջ կառուցվածքը հաստատված է ինը սյուների վրա։ Կառավարչի պալատը մզկիթի կողքին է, իսկ քաղաքի արվարձանում գտնվում է հասարակաց շուկան։

Այս ասվածները վերաբերում են քաղաքի հին վիճակին, բայց այժմ այդ բոլորը չկան։ Ադրբեջանում հանդիպեցի Բարդաայի բնակիչներից մեկին և տեղեկություն ուզեցի իր քաղաքի մասին։ Նա տեղեկացրեց, որ քաղաքը գտնվում է շատ ավերյալ վիճակում, բնակիչների թիվը շատ է պակասել, հավասարվել է մի գյուղի բնակչությանը։ Թշվառությունը հայտնապես երևում է, շենքերը կործանված են։

Բարդաայից մինչև Գանձակ 9 փարսախ հեռավորություն է։

Բարդաան նվաճեց, ինչպես պատմվում է, Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին, Օսման իբն Աֆանի ժամանակ։ Նա Բայլականը գրավելուց հետո արշավեց Բարդաայի վրա և բանակ դրեց Թարթուր գետի մոտ, որը քաղաքից հազիվ մեկ փարսախ հեռավորություն ունի։ Բնակիչները քաղաքի դռները փակեցին, դրա համար նա հարձակվեց շրջակա գյուղերի վրա, որտեղ բերքը քաղված էր արդեն։ Հետո հաշտություն կնքեց՝ Բայլականի հաշտության հար և նման պայմաններով, և մտավ քաղաք։ Այնտեղից ուղարկեց իր հեծելազորը՝ ուրիշ երկրներ գրավելու համար։

Բարդաայից ելած էին բազմաթիվ ականավոր գիտնականներ... (Սրանց անունները հիշատակում է հեղինակը)։

---

* Կիրակի բառի աղավաղումն է։

էջ 562

65. Բարզանջ[98]— برزنج

Մի քաղաք է Առանի մարզի մեջ. նրա և Բարդաայի միջև հեռավորությունը 13 փարսախ է՝ դեպի Բաբ ալ-Աբվաբ տանող ճանապարհի վրա։ Բարզանջում՝ Կուրի վրա կա մի կամուրջ, որի վրայով գնում են դեպի Շիրվանի Շամախի քաղաքը։

էջ 562

66. Բարզանդ[99]— بَرْزَنْد

Թիֆլիսի կողմերում մի քաղաք է, Ջուրզանի մարզում, Առաջին Արմինիայի մաս կազմող։ Առաջին անգամ այն կառուցեց Աֆշինը, որը զորակայան դարձրեց։ Նախապես ավերակ վայր էր։ Իսթախրին ասում է, որ Բարզանդի և Արդաբիլի միջև հեռավորությունը 15 փարսախ է։

Աբու Սայիդն ասում է, որ Բարզանդը գտնվում է Ադրբեջանի կողմերում, Թիֆլիսին ենթակա գավառի մեջ։ Կարծեմ Աֆշինը կառուցեց այն Բարզանդի նախկին վայրում կամ մի այլ վայրում և անունը դրեց Բարզանդ։

էջ 564

67. Բարզա[100]—بَرْزَة

Գավառակ Ադրբեջանում, որը հիշատակված է Բալազորու գրքի մեջ և գտնվում է Ավդիանների ձեռքում։

էջ 566

68. Ալբարշալիա[101]— البَرْشَلّية

Վայր է Առանում, որի մասին հիշատակություն կա պարսիկ թագավորների տեղեկությունների մեջ։

էջ 624

69. Բասֆուրջան[102]— بَسْفُرجان (Վասպուրական)

Գավառ է Առանի երկրում, որի քաղաքն է Նաշավան, որը Նախջավանն է։ Այդ բոլորը կառուցեց Անուշիրվանը, ինչպես և Բաբ ալ-Աբվաբը։ Այն համարվել է Երրորդ Արմինիայի մեջ։

էջ 626

70. Բ ա ս վ ա[103]— بسوى (Փասվե)

Փոքր քաղաք Ադրբեջանի մատույցներում, Ուշնուի և Մարաղայի միջև՝ խան Խասբեքի մոտ։

էջ 635

71. Բ ա շ ի ր[104]— قلعة بشير (Կալաաթ Բաշիր)

Բերդ ազ-Զավազանի կողմերում, որը պատկանում է Բաշնավիա քրդերին։

էջ 671

72. Բ ո ւ ա լ[105]— بعال

Խոշոր լեռ Արմինիայի կողմերում։

էջ 693

73. Բ ա ղ ր ա ս[106]— بغراس (Պաղրաս)

Քաղաք ալ-Լուքամ* լեռան ստորոտում։ Նրա և Անտիոքի միջև չորս փարսախ հեռավորություն կա և գտնվում է Հալեբից դեպի Անտիոք տանող ճանապարհի աջ կողմը, դեպի Թարսուս տարածվող երկրամասի վրա։ Բալազորին ասում է, թե Բաղրասի հողը պատկանում էր Մասլամա իբն Աբդլմալիքին, որ վակֆ արեց բարեգործական նպատակների համար։ Քաղաքը գտնվում էր ֆրանկների ձեռքում, բայց Սալահադդին Յուսուֆ իբն Այուբը գրավեց այն հիջրի 584 թվականին (2 մարտ 1188—18 փետր. 1189)։

էջ 694

74. Բ ա ղ ր ա վ ա ն դ[107]— بغروند (Բագրևանդ)

Քաղաք, որ համարվում է Երրորդ Արմինիայի մեջ։

էջ 704

75. Բ ա ք ա ս[108]— بكاس

Բերդ՝ Հալեբի կողմերում, ալ-Ասի** ափի վրա։ Բերդի ստորոտից բխում է մի աղբյուր։ Նրա և Մսիսի սահմանաբերդի միջև կա

* Իմա Ամանոս։

** Օրոնտես։

մի ուրիշ բերդ, որը կոչվում է ալ-Շուղր, երկուսը իրարից բաժանվում են խրամատի նման մի հովիտով։ Ասում են, թե Շուղրն ու Բաքասը այնպես են կցված իրար, որ չի կարելի անջատել մեկը մյուսից։ Մեր օրերում այդ բերդը պատկանում է Հալեբի տիրոջ, Սալահադդինի որդի՝ Մալիք ազ-Ջահիր Ղազու որդի, Մալիք ալ-Ազիզ Մուհամմադին։

էջ 708

76. Բ ա լ ա ս ք ի ր դ[109]— بلاسكرد

Կարելի է նաև ասել Բալազքիրդ։ Գյուղ է Արբիլի և Ադրբեջանի միջև։

էջ 770

77. Բ ա հ ա ս ն ա[110]— بهسنا (Բեհեսնի)

Անառիկ բերդ է Մարաշի և Սումայսաթի մոտ, Քախսում գավառի մեջ ընկնող, որը Խարիջի Նասր իբն Շաբաթի քաղաքն էր Ալ-Մամունի օրերում, և որին սպանեց Աբդալլահ իբն Թահիրը։ Բերդը գտնվում է մի բարձր սարի գագաթի վրա և այժմ ենթակա է Հալեբին։

էջ 772

78. Բ ա յ յ ա ս[111]— بياس (Փայաս)

Փոքր քաղաք է Անտիոքի արևելակողմում և Մսիսի արևմտակողմում, ծովեզերքի մոտ։ Նրա և Ալեքսանդրետի միջև երկու փարսախ հեռավորություն է։

էջ 782

79. Բ ա յ ջ ա ն Ք ո ւ ր դ[112]— بيجن كرد (Բջնկե՞րտ)

Քաղաք և բերդ Կարսի և Էրզրումի միջև, Հայաստանի հողի վրա։

էջ 787

80. Ա լ բ ի ր ա[113]— البيرة (Բերեջիկ)

Այս անունով բազմաթիվ վայրեր կան, որոնցից մեկը Շիմշաթի մոտ, Հալեբի և հունական սահմանագլխի միջև գտնված քաղաքն է։

*Այն ամրացված բերդաքաղաք է, որն ունի ընդարձակ գյուղախմբեր։ Ներկայումս գտնվում է Մալիք ազ-Զահիր Մուջիրադդին Աբու Սուլայման Դավուդ իբն Մալիք ան-Նասիր Յուսուֆ իբն Այուբի ձեռքում, որ ստացավ որպես ավատ՝ իր եղբայր Մալիք ազ-Զահիր Ղաղուց։*

*էջ 797*

81. Բայլական[114]— بیلقان

*Քաղաք է Դարբանդի մոտ. ոմանք ասում են, թե կազմում է Մեծ Արմինիայի մասը և գտնվում է Շիրվանի կողմերը։ Նրա հիմնադրողը եղավ Կավատ թագավորը Արմինիային տիրելուց առաջ։ Ոմանք էլ ասում են, թե նրա հիմնադրողն է եղել Յունանի որդի, Լանտայի որդի, Արմանի որդի Բայլականը։*

*Ահմադ իբն Յահյա իբն Ջաբիրը վկայում է, թե Սուլայման իբն Ռաբիան արշավեց Օթման իբն Աֆանի ժամանակ Առանի վրա և գրավեց Բայլականը ու հաշտության դաշնագրով ապահովեց նրանց կյանքն ու ինչքերը, ինչպես նաև քաղաքի շենքերը, պայմանով, որ ջիզիա և խարաջ վճարեն։ Հետո արշավեց Պարտավի վրա։ Իսկ հիջրի 617 թվականին (8 մարտ 1220—24 փետր. 1221) թաթարները եկան և սպանեցին ձեռքն ընկած բնակիչներին, կողոպտեցին, հետո այրեցին քաղաքը։ Երբ նրանք հեռացան, փախստական բնակիչները կրկին վերադարձան և վերստին բնակություն հաստատեցին այնտեղ։*

*էջ 822*

82. Թաբրիզ[115]— تبریز (*Թավրիզ*)

*Ադրբեջանի ամենանշանավոր քաղաքներից է, շքեղ ու բազմամարդ, շրջապատված ամրաշեն պարիսպներով, թրծված աղյուսից և գաճից կառուցված։ Նրա միջով այգեստանների կողմից անցնում են գետակներ։ Այստեղ պտուղները խիստ էժան են և ընտիր, պտուղների մեջ նշանավոր է ծիրանը, որը կոչվում է «մավսուլ»։ 610 թվականին (1213) այդ պտղից գնեցի ութ մաննա* բաղդադյան կես ցորենահատ ոսկիով։ Շենքերը նույնպես շինված են թրծված կարմիր աղյուսից և գաճից։ Գեղեցկորեն քանդակված են և խիստ*

---

** Մաննա—512 գրամ. Թավրիզի մանը կշռում է 3 կիլոգրամ։*

կանոնավոր ձև ունեն։ Թավրիզը մի գյուղ էր մինչև այն տարին, երբ գրավվեց Ադրբեջանի հաղթող Ռավադ ալ-Ազդու կողմից՝ Մուտավաքիլ խալիֆի օրով։ Ալ-Վաջնա իբն Ռավադն ու իր եղբայրները պալատներ կառուցեցին և ամրացրին պարիսպները, ու այնտեղ շատ մարդիկ բնակություն հաստատեցին։

Այս քաղաքի մեջ գործվում են թիկնոցներ, սակլաթուն, խաթայի, աթլաս և հյուսվածքներ, որոնք արտահանվում են արևելքի և արևմուտքի բոլոր երկրները։ Այդ քաղաքից անցան թաթարները, երբ ավերիչ արշավանք կատարեցին 618 թվականին (1221—1222)։ Ժողովրդին մեծ զոհողությամբ հաջողվեց հաշտություն ձեռք բերել և այլահր փրկեց քաղաքը նրանց ձեռքից։

էջ 857

### 83. Թիֆլիս կամ Թաֆլիս[116]— تفليس (Թիֆլիս)

Ջուրզանի մայրաքաղաքն է, Բաբ ալ-Աբվաբի մոտերքում։ Մի շատ հին քաղաք է։

Միսաար իբն-Մուհալհիլ բանաստեղծը իր նամակների մեջ գրում է, «Ճանապարհվեցի Շիրվանից, ու հասա Թիֆլիս..., որտեղից այն կողմ մահմեդականներ չկան։ Քաղաքի միջով հոսում է մի գետ, որ կոչվում է Կուր և թափվում է ծովը։ Ունի ջրաղացներ և մի մեծ պարիսպ։ Այնտեղ կան չափազանց տաք բաղնիքներ, որոնց ջուրը դրսից չի բերվում և ոչ էլ տաքացնում են։ Այս իրողությունը բացատրելը ավելորդ պիտի լիներ ուշիմ մարդու համար։ Այդ նշանակում է, որ գետնից բխող տաք ջուր կա այնտեղ, որի վրա բաղնիք են կառուցել, որով հարկ չի լինում դրսից ջուր բերել։ Թիֆլիսի բնակիչներից մի քանիսը ինձ պատմեցին այդ ջերմուկի մասին, ասելով, թե մուսուլմաններին է միայն հատկացված այն և նրանցից բացի ոչ ոք չի կարող մտնել այնտեղ։

Մուսուլմանները գրավեցին Թիֆլիսը Օթման Իբն Աֆանի օրով։ Երբ Հաբիր Իբն-Մասլաման արշավեց Արմինիայի վրա և նրա քաղաքների մեծ մասը նվաճեց, ճանապարհին իրեն մոտ եկավ Ջուրզանի պատրիկի կողմից մի պատգամավոր այն պահին, երբ Հաբիբը այդ երկրի վրա առաջանալու դիտավորություն ուներ և խնդրեց. որ հաշտության ու ապահովության թուղթ գրվի իրենց համար։ Հաբիբը գրեց. «Ձեր պատգամավորը ինձ ներկայացավ ինչպես և ինձ հետ գտնվող հավատացյալներին...։ Դուք հայտնած եք, թե

մեզ հետ հաշտություն եք ցանկանում։ Գնահատեցի ձեր նվերը, որը իբր գլխահարկ համարեցի։ Ձեզ գրեցի ապահովության թուղթ, որի մեջ պայմաններ դրի։ Եթե ընդունեք, ուրեմն կգործադրեք, ապա թե ոչ՝ իմացած եղեք, որ պատերազմ կունենաք ալլահի և նրա առաքյալի կողմից։ Ողջույն նրան, ով ուղիղ ճանապարհի հետևեց»։

Այս թղթի հետ նա գրեց նաև հաշտության և ապահովության հետևյալ պայմանագիրը։

«Հանուն ալլահի ամենագթածի և ամենաողորմածի։ Այս թուղթը Հաբիբ իբն-Մասլամայի կողմից ուղղված Ջուրզանի Ալ-Հուրմուզ Մանջալայս գավառի, Թիֆլիս քաղաքի բնակիչներին՝ առ ի ապահովություն նրանց անձերին, եկեղեցիներին, վանքերին, աղոթատեղիներին և կրոնին ու փոքրերին։ Գլխահարկը ամեն մի ընտանիքի վրա մեկ դինար է. չպետք է ընտանիքները իրար միացնեք՝ գլխահարկը նվազեցնելու համար, և ոչ էլ մենք իրավունք ունենք նրանց բաժանելու՝ գլխահարկը շատացնելու համար։ Մենք իրավունք ունենք, որ դուք ըստ ձեր կարողության օգնեք մեզ անկեղծ խորհուրդներով՝ ալլահի և նրա առաքյալի թշնամիների դեմ, կարող մահմեդականին մի գիշեր օթևան տաք և կերակրեք նրան այնպիսի ուտելիքներով, որ Գրքի հետևորդների համար օրինական է։ Եթե մի մուսուլման իր ճանապարհի վրա կանգ առնի ձեզ մոտ, դուք պարտավոր եք նրան հասցնել իսլամական ամենամոտ խմբին, բացի այն պարագայից, երբ արգելք կա։ Իսկ եթե ճշմարիտ կրոնն ընդունեք և մասնակցեք աղոթքներին, այն ժամանակ մեր եղբայրները կլինեք կրոնի մեջ։ Ապա թե ոչ՝ պարտավոր եք գլխահարկ վճարելու։ Եթե մուսուլմաններին պատահի մի այնպիսի դեպք, որի հետևանքով ձեր թշնամին կարողանա ձեզ հարստահարել, դրա համար մենք ոչ մի պարտավորություն չունենք և ոչ էլ այդ պարագան կարող է ձեր կողմից ստանձնված հանձնառությունը բեկանել։ Այս է ձեր իրավունքը, և այս՝ ձեր պարտականությունը։ Վկա են այդ մասին ալլահը և իր հրեշտակները և ալլահը՝ իբր վկա բավական է»։

Թիֆլիսը մուսուլմանների ձեռքում մնաց և բնակիչները իսլամ ընդունեցին մինչև հիջրի 515 թվականը (22 մարտի 1121—11 մարտի 1122), երբ մերձակա Աբխազ կոչված լեռներից քրիստոնյա մի ցեղ, Քուրջ կոչված, մեծ բազմությամբ դուրս գալով՝ արշավեց շրջակայքի մուսուլմանական երկրների վրա։ Քաղաքի կառավարիչները, որոնք սելջուկ թագավորների կողմից էին նշանակված,

*թուլացած էին՝ այդ թագավորների ներքին հակամարտությունների և գահի շուրջը հաճախադեպ կռիվների հետևանքով ։ Այդ դարում հակառակություն էր ծագել Մելիքշահի զավակների, Մահմուդի և Մասուդի միջև և այդ հակառակություններից օգտվում էին էմիրները, մերթ մեկ և մերթ մյուս կողմը հակելով, ու լքել էին սահմանագլխային գործերը։ Արմինիայում հաստատված էմիրների դեմ կռիվ մղելով, քուրջերը վերջնականապես հաղթական դուրս եկան և փախուստի մատնեցին մուսուլմաններին, ու պաշարելով գրավեցին Թիֆլիսը և այնտեղի բազմաթիվ մուսուլմաններին ջարդեցին։ Թիֆլիսի մեջ հաստատվելուց հետո նրանք քաղցրությամբ վերաբերվեցին ժողովրդի հետ և նրան հպատակ դարձրին։*

*Այս կերպով քուրջերը զորացան և մերթ Առանի, մերթ Ադրբեջանի և մերթ Խլաթի մուսուլմանների վրա էին հարձակվում, մինչդեռ մուսուլման իշխանները, փոխանակ այս վտանգով մտահոգվելու, անձնատուր էին եղել հարբեցության և ապօրեն արարքների, մինչև որ նրանց վրա հիջրի 623 թվականին 26 թ. հարձակվեց Ջալալադդին Մանքուբարդի իբն-Խորեզմշահը և տիրեց Թիֆլիսին[117] և նրանց դեմ մղած բոլոր կռիվների մեջ հաղթական եղավ ու զարհուրելի ջարդ տվեց քուրջերին։ Ապա կառավարիչ և հարկ նշանակելով, հեռացավ։ Այդ կառավարիչը վատ վարվեց բնակիչների հետ, որի պատճառով նրանք մնացած քուրջերին կանչելով հանձնեցին քաղաքը, և խորեզմյանները փախուստ տվեցին այնտեղից ու գնացին իրենց իշխանի մոտ։ Քուրջերը, սակայն, վախենալով, որ Խորեզմ շահը կրկին անգամ կհարձակվի իրենց վրա, հրդեհեցին քաղաքը և հեռացան այնտեղից հիջրի 624 թվականին (1226 թ. դեկտեմբերի 22—1227 թ. դեկտեմբերի 11)։*

*Այս է վերջին տեղեկությունը, որ քաղեցի Թիֆլիսի մասին։*

*էջ 864*

84. Թ ա լ բ ա շ ի ր[118] — تل باشر (*Թլպաշար*)

*Ամուր բերդ և ընդարձակ գավառ՝ Հալեբից դեպի հյուսիս տարածվող։ Նրա և Հալեբի միջև երկու օրվա ճանապարհ է։ Բնակիչները քրիստոնյա հայեր են։ Ունի արվարձաններ, շուկաներ ու բազմամարդ է։*

էջ 866

85. Թալ Ջուբայր[119]— تل جبير

Այս քաղաքի և Տարսոնի միջև 10 մղոնից պակաս հեռավորություն կա։ Անունն առնված է անտիոքացի մի կտրիճ մարտիկից, որը այդ վայրում կռվեց։

86. Թալ Համադ[120]— تل حامد

Միսիս սահմանակից բերդ է։

էջ 867

87. Թալ Հում[121]— تل حوم

Դարձյալ Միսիս սահմանագծում մի բերդ է։

էջ 869

88. Թալ Կուրադ[122]— تل قراد (Թլկուրան)

Հայտնի բերդ է Հայոց երկրում Շաբախտանի կողմերում։

էջ 895

89. Թավկատ[123]— توقات (Թոգատ)

Ռումի երկրում մի փոքր քաղաք՝ Կոնիայի և Սվաղի միջև։ Ունի ամուր բերդ՝ հաստատ կառուցվածքով։ Նրա և Սվագի միջև երկու օրվա ճանապարհ է։

էջ 921

90. Ալ Թուրթուր[124]— الثرثور (Թառթառ)

Զույգ գետեր Առանում կամ Արմինիայում, որոնք կոչվում են Մեծ Թուրթուր և Փոքր Թուրթուր։ «Նվաճումների գրքում» ասված է, թե Սալման իբն Ռաբիան իջավ այդտեղ, երբ Պարտավ հասավ։ Այդ գետը քաղաքից մի փարսախ հեռավորություն ունի։

Էջ 927

91. Ադ-Թաղր կամ՝ Աս—Սաղր[125]— الثَّغر

Այն բոլոր վայրերը, որոնք թշնամու երկրին մոտ են, կոչվում են «Թուղուր», և դրանք կազմում են սահմանային անցքեր։ Կան բազմաթիվ վայրեր, որոնց մեջ Շամի Թաղրը, որ թուղուրների մի ամբողջություն է, և այդ անվան ներքև բովանդակվում են բազմաթիվ երկրներ, որոնք ծանոթ են Բիլադ իբն-Լավուն* անունով։ Կենտրոնական գլխավոր քաղաք չունի այն, որովհետև քաղաքների մեծ մասը արժեքով հավասար են, և այդ քաղաքներից ամեն մեկը կենտրոնական քաղաք կոչվելու արժանի է ըստ ժողովրդի կարծիքի։ Թաղրի քաղաքներից մեկն է Բայասը, որտեղից մինչև Իսքենդերունա մեկ օթևան է և Բայասից մինչև Միսիս երկու օթևանի հեռավորություն է։ Միսիսից Անարզաբա՝ մեկ օթևան, և Միսիսից Ադանա՝ դարձյալ մեկ օթևան։ Ադանայից Թարսուս մեկ օրվա ճանապարհ է, իսկ Թարսուսից ալ-Ջուզաթ երկու օրվա ճանապարհ է։ Թարսուսից Ուլաս՝ նույնպես երկու օրվա ճանապարհ։ Բայասից մինչև Քանիսաթ աս-Սավդա՝ մի օրից նվազ. Բայասից Հարունիա նույն հեռավորությունն է և Հարունիայից մինչև Մարաշ, որը Միջադետքի Թուղուրից մեկ օրից նվազ ճանապարհ հեռու է, նույնպես նույն հեռավորությունն է։

Այդ շրջանի նշանավոր քաղաքներից են Անտիոքը, Բաղրասը և ուրիշներ, իսկ մեր հիշածները ամենից ավելի նշանավորներն են։

Ահմադ իբն Յահյա իբն Ջաբիրը վկայում է, որ Շամի Թուղուրը գրավվեց Օմար և Օթման խալիֆաների օրով, և ապա Անտիոքն ու մյուս հիշյալ վայրերը կոչվեցին «Ավասիմ»**։ Մուսուլմանները այդտեղից անցնում էին դեպի հույների երկիրը արշավելու համար։

Իսքանդարունայի և Թարսուսի միջև հույները ունեին բերդեր և զինապահեստներ, որոնք հետո մուսուլմաններն օգտագործեցին և մինչև այսօր էլ օգտագործում են այդ ճանապարհներով անցնելու համար։ Հերակլ կայսրը այդ բերդերի բնակիչներին տեղահանել և ցրել էր, և երբ մուսուլման բանակները արշավեցին, ոչ ոքի չէին գտնում այդ բերդերի մեջ, բայց մոտերքում դարան մտած հույները հանկարծակի հարձակվում էին բանակից հեռացող մահմեդականների վրա։

---

* Լևոնի որդու երկիր—Հայկական Կիլիկիա։

** Սահմանային նահանգ։

*Ձմեռային և ամառային արշավանքների հրամանատարները, երբ Ռումի երկիրն էին մտնում, պահակազոր էին դնում իրենց հասած վայրի և սահմանի միջև, մինչև իրենց վերադարձը։*

*Բաղրասի կիրճից այն կողմ անցնող առաջին զորավարի մասին կարծիքները տարբերվում են։ Ոմանք ասում են, թե Մայսարա իբն-Մասլուկ ալ-Աբսին, Աբու Ubայդայի զորավարներից մեկը առաջին անգամ անցավ այդ կիրճերից, որտեղ հանդիպեց հույներին, որոնց հետ էին Ղասան և Տանուխ ցեղերի պատկանող արաբացի գնդեր, որոնք հետևում էին Հերակլ կայսրին։ Նա հարձակվելով ջարդեց շատերին, ապա Աբու Օբայդան, որը գտնվում էր Անտիոքում, նրան օգնության ուղարկեց Մալիք ալ-Աշթար ան-Նախային։ Ուրիշները ասում են, թե կիրճից առաջին անգամ անցնողն եղավ Ումայր իբն-Սաադ ալ-Անսարին ձիավորներով։ Ապա Հալերի վրա հարձակվեցին հույները հիջրի 351 թվականին (962—963)։ Բնակիչներից ջարդեցին ինչքան որ կարողացան։ Սայֆ ադ-Դաուլան տկարացած լինելով Ասորիքը թողեց առանց պաշտպանության և վերադարձավ Մուֆարղին և այդպիսով Թաղրը մինչև Համաթ դատարկված լինելով՝ Նիկեֆորը եկավ դեպի Ասորիք պաշարեց Մսիսը, գրավեց այն, հետո Թարսուսը և շրջակա քաղաքները։ Եվ այս տեղի ունեցավ հիջրի 354 թվականին (965)։ Երկիրը մնաց նրանց ձեռքում, մինչև որ այդ վայրերի իշխանությանը տիրացավ Լևոն հայը, որի սերնդի ձեռքն էլ գտնվում է այն մինչև օրս։*

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐ

*էջ 20*

*92.* Ջ ա բ ա լ ջ ո ւ ր[126] — جبل جور *(ճապաղջուր)*

*Մի ընդարձակ գավառի անուն է Արմինիայում Դիարբեքրի սահմանակից։ Բնակիչները Քրիստոնյա հայեր են։ Ունի բերդեր և գյուղեր։*

*էջ 56*

*93.* Ջ ո ւ ր խ ա ր ա ն դ[127] — جرخبند.

*Փոքր քաղաք Հայաստանում կամ Ադրբեջանում, որտեղ մահացավ Օբայդուլլահ իբն Ալի իբն Համզան, որը ծանոթ է Իբն Մա-*

բաստանիա անվամբ, և որ պատգամավորի պաշտոնով Նասրի կողմից ուղարկվեց Թիֆլիս։ Վերադարձին, երբ հասավ այս քաղաքը, մահացավ հիջրի 599 թվականին (1202—1203) Ջիլկադե ամսում։ Նա ուսյալ և գիտնական մարդ էր։

Լջ 57

94. Ջուրզակիլ[128] — جرذقيل

Ազ-Զավաղանի կողմերում մի բերդ, որը Բուխտիե քրդերի պետության աթոռանիստ վայրն է, ինչպես տեղեկացրեց ինձ Իմամ Աբուլ-Հասան Ալի իբն Մուհամմադ իբն Աբդլքարիմ իբն ալ-Աթիր ալ-Ջազարին։

Էջ 58

95. Ջուրզան[129]— جرزان

Արմինիայի կողմերում մի երկիր է, որի մայրաքաղաքն է Թիֆլիսը։ Իբն ալ-Ֆակիհը վերցնելով իբն Կութամից պատմում է, թե Ջուրզանը և Առանը սահմանակից են Արմինիայի դռներին, իսկ Առանը, որը Պարտավի շուրջը գտնվող երկիրն է՝ կից է Դայլամին։ Ջուրզանի բնակիչները Նոյից սերած ցեղ են և որդիներն են Քասլուխիմ, իբն Լանթա, իբն Յունան, իբն Յաֆեթի։ Ալի իբն Հուսայնը ասում է «Մրուջում» թե աբխազների երկիրը պատկանում է Ջուրզիներին։ Իսկ Քուրջ և Ջուրզ նույն ժողովրդի տարբեր անուններն են։

Ասում են, թե նրանք մեծ ժողովուրդ են, ունեն իրենց թագավորը, որը ներկայումս կոչվում է Թանբաղի, և այդ թագավորի տերությունը կոչվում է Մասջիթ Ջիլ-Կարնայն։ Նրանք պատկանում են քրիստոնեական կրոնին։

Աբխազներն ու Ջուրզիները խարաջ էին վճարում Թիֆլիսի սահմանային կառավարչին այն օրից, երբ Թիֆլիսը գրավվեց, և մուսուլմաններն այնտեղ բնակություն հաստատեցին՝ մինչև Մուտավաքիլի օրերը, երբ այնտեղ կար մի մարդ՝ Իսհակ Իբն Իսմայիլ անվամբ, որ ապստամբեց և իր մոտ գտնվող մուսուլմանների օգնությամբ շրջապատի ժողովուրդներին ենթարկեց իր իշխանությանը և նրանցից ջիզիա գանձեց։ Նրանից այն կողմերում վախենում էին ամենքը, մինչև որ Մուտավաքիլը նրա դեմ ուղարկեց Բուղա Թուրքին՝ մեծ բանակով։ Նա արշավեց Թիֆլիսի սահմանի վրա, երկար ժամանակ կռվեց, մինչև որ սրի ուժով գրավեց քաղաքը և

սպանեց Իսհակին, որովհետև նա մերժել էր հպատակվել Սուլթանին։ Այդ օրվանից սկսած Սուլթանի հեղինակությունը նվազեց սահմանային այդ գոտում, որտեղ ըմբոստները իրենց հետապնդած նպատակներով և հարուցած թշնամություններով թուլացրին նրա հեղինակությունը շրջակայքի բնակիչների մոտ ու արգելք եղան ջիզիայի վճարման, այսպիսով, արագացրին Թիֆլիսի կորուստը, մինչև որ քուրջերը տիրացան Թիֆլիսին հիջրի 515 թվականին (1121 թ. մարտի 22—1122 թ. մարտի 11)։

Թիֆլիսի գրավման մասին արդեն խոսել ենք «Թիֆլիս» անվան տակ։ Մոտադիտ Ալա Ալլահ խալիֆի ժամանակ այդ վայրերում, ինչպես և Առանում, ապստամբեց մի մարդ, որը կոչվում էր Մուհամմադ իբն Արդալլահ ալ-վահիդ ալ-Տամիմի ալ Յամանի։

Հջ 65

96. Ջուրնա— جرني (Ճառնի)

Քաղաք Հայաստանի կողմերում, Դաբիլի մոտ, որը գրավեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին։

Էջ 72

97. Ջազնակ[130]— جَزْنَق (Գանձակ)

Բարգավաճ փոքր քաղաք Ադրբեջանում, Մարաղայի մոտ, որտեղ կան Խոսրովների ժամանակից մնացած շենքերի և կրակատների ավերակներ։

Էջ 72

98. Ջազիրա[131]— جزيرة

Այն երկրամասն է, որ գտնվում է Տիգրիսի և Եփրատի միջև, Ասորիքին սահմանակից։ Ընդգրկում է Դիար Մուդարը և Դիար Բաքրը։ Ալ-Ջազիրա* է կոչվում, որովհետև ընկնում է երկու գետերի՝ Տիգրիսի և Եփրատի միջև։ Այդ գետերը գալիս են Ռումի երկրից և առաջանալով, Բասրայի մոտ միանում են իրար, ապա միասին թափվում ծովը։ Միջագետքի կլիման առողջարար է, բուսականությունն ու արտադրությունը գերազանց, բարիքներով լիառատ։

---

* Նշանակում է կղզի։

*Այնտեղ կան մեծ քաղաքներ և բազմաթիվ բերդեր ու ամրոցներ։ Գլխավոր քաղաքներից հիշենք Խառանը, Ռուհանը, Ռակկան, Ռաս Այնը, Նիզիբինը, Սանջարը, Խաբուրը, Մարդինը, Ամիդը, Մուֆարկինը, Մուսուլը և այլն, որոնց յուրաքանչյուրի մասին խոսված է հատուկ գլխի տակ։ Բնակիչների մասին հորինված են պատմության գրքեր։*

*(Ավանդաբար տալիս է հին շրջանի պատմությունը.— ծանոթ. թարգմ.)։*

*Սայֆ իբն Օմրանը հիշատակում է, թե Սաադ իբն Աբի Վակասը, երբ հիջրի 17 թվականին հիմնեց Քուֆան, հույները հավաքվեցին և պաշարեցին Աբու Օբայդա իբն ալ-Ջարրահին և նրան ընկերացող մուսուլմաններին՝ Հիմսում։ Օմարը գրեց Սաադին, որ օգնության համար փութով ուղարկի Իրաքի մուսուլմաններից մի բանակ Աբու Օբայդային։ Նա էլ ուղարկեց բանակներ, որոնց հրամանատարների մեջ էր գտնվում Իյադ Իբն Ղանմը։ Երբ Հիմսում գտնվող հույները լսեցին Իրաքի ժողովրդի՝ իրենց վրա շարժվելու մասին, հեռացան Հիմսից և գնացին իրենց երկիրը։ Այն ժամանակ Սաադը գրեց Իյադին, որպեսզի արշավի Ջազիրայի վրա։ Նա արշավեց հիջրի 17 թվականին և գրավեց այն։*

*Պետք է ասել, որ Ջազիրան ամենահեշտ գրավված երկիրն է եղել, որովհետև երբ բնակիչները տեսան, թե իրենք գտնվում են Իրաքի և Ասորիքի միջև և այդ երկուսն էլ մուսուլմանների ձեռքն են գտնվում, հպատակություն հայտնեցին և հաշտություն կնքեցին ջիզիա և խարաջ վճարելու պայմանով։*

*(Հեղինակը տալիս է գրավման պարագաները՝ բաղելով ապար ծանոթ պատմագրերից.—ծանոթ. թարգմ.)։*

*Էջ 82*

### *99.* Ջիսր ալ-Վալիդ[132] — جسر الوليد

*Կամուրջը գտնվում է Մսիսից Ադանա տանող ճանապարհի վրա, 9 մղոն հեռավորությամբ։ Առաջին անգամ այն կառուցեց Վալիդ իբն Եզիդ Աբդլմալիք իբն Մրվանը[133]։ Հետո նորոգեց Մոտասիմը հիջրի 225 թվականին (839—840)։*

Էջ 97

*100.* Ջուլբար[134]— جلبار

*Լուքամ լեռներում մի վայր՝ Անտիոքի և Մարաշի միջև, որտեղ Սայֆ ադ-Դաուլա իբն-Համդանը զենքով չափվեց հույների հետ և փառք ստացավ։*

Էջ 132

*101.* Ջանզա[135]— جنزه *(Գանձակ)*

*Առանի մեծագույն քաղաքի անունն է, որ գտնվում է Շիրվանի և Ադրբեջանի միջև և որը ժողովուրդը կոչում է Քանջա։ Նրա հեռավորությունը Պարտավից 16 փարսախ է։*

Էջ 144

*102.* Ալ Ջուդի[136]— الجوديّ

*Լեռ է Տիգրիսի արևելյան կողմը, Մուսուլի ենթակա քաղաքներից Ջազիրաթ իբն Օմարի վրա իշխող։ Նրա վրա կանգ առավ Նոյի տապանը, երբ ջրերը իջան։*

*Թավրաթի* մեջ գրված է, թե ամենազոր մեծն Աստված հրամայեց Նոյին, որ մի տապան շինի 300 արմնկաչափ երկայնությամբ և 50 լայնությամբ և 30 խորությամբ։ Այդ տապանը տոսախ փայտից էր շինված ու ձյութով ծեփված։ Ջրհեղեղը պատահեց Նոյի կյանքի 600-րդ տարում, երկրորդ ամսվա 15-րդ օրում։ Անձրևը տևեց 40 օր և 40 գիշեր և ջուրը մնաց երկրի երեսում 150 օր։ Երկրորդ ամսվա 17-րդ օրը տապանը նստեց Ջուդի լեռան վրա։ Իսկ Նոյի կյանքի 601-րդ տարվա առաջին ամսվա օրում ջուրը քաշվեց երկրից ու երկրորդ ամսվա 27-րդ օրում գետինը չորացավ։ Նոյը դուրս եկավ տապանից իր հետ գտնվողներով, խորան և տաճար կանգնեցրեց և բարձրյալ աստուծո դոհ մատուցեց։*

*(Այս բոլորը բառ առ բառ Աստվածաշնչի արաբերեն թարգմանությունից է մեջբերված.—ծանոթ. թարգմ.)։*

*Նոյի տաճարը մինչև հիմա մնում է Ջուդի լեռան վրա։*

Էջ 170

*103.* Ջայհան[137]— جيحان

*Մսիսի գետն է, Ասորիքի սահմանագլխի վրա, բխում է Ռումի երկրից և հոսում մինչև Քաֆրաբիա քաղաքը՝ Մսիսի վերևում։ Այդ*

* Աստվածաշունչ։

քաղաքում գետի վրա կա մի կամուրջ՝ ռումի քարից կառուցված. զարմանալի շինություն է դա, հին ու լայն: Գետը Մսխսից անցնելուց հետո բաժանվում է չորս ճյուղերի և թափվում Ասորիքի ծովը:

էջ 183

104. Ալ-Հարիթ ու Ալ-Հուվայրիթ[138]— الحارث و الحويرث

Արմինիայի մեջ երկու լեռներ են, որոնց վրա են գտնվում Հայաստանի թագավորների շիրիմները իրենց գանձերով: Ասում են, թե Պլինիաս իմաստունը[139] կախարդել է այդ լեռները՝ որպեսզի մարդիկ չկարողանան բարձրանալ վերև: Մադայինին ասում է, որ Հարիսը և Հուվայրիթը, որոնք Դվինի մոտ են գտնվում, իրենց անունն ստացել են Հուվայրիթ իբն Օկբայից և Հարիթ իբն Ամրուից, որոնք Սալման իբն Ռաբիայի հետ Հայաստան են եկել, և նրանք առաջիններն են, որ մուտք գործեցին այդ լեռները, որոնք կոչվեցին նրանց անուններով:

Իբն ալ-Ֆակիհը պատմում է, թե Արմինիայում Արաքսի եզերքին հազար քաղաքներ կային, և Աստված նրանց ուղարկեց մի մարգարե Մովսես կոչված (բայց ոչ Ամրանի որդի Մովսեսը), որպեսզի նրանց աստծու հավատին հրավիրի, բայց նրանք մերժեցին ու քարկոծեցին և նրա հրամանն անսաստեցին. նա էլ անիծեց նրանց ու Աստված նրանց վրա շրջեց Հարիսը և Հուայրիթը և ասում են, թե այդ բնակիչները թաղված են նրանց տակ:

էջ 188

105. Հանի[140]— حانى

Մի ծանոթ քաղաքի անունն է Դիարբաքրում, որտեղ երկաթի հանք կա, որը արտահանվում է դեպի ուրիշ երկրներ:

էջ 218

107. Ալ Հադաթ[141]— الحدث

Ամուր բերդ է Մալաթիայի, Սումայսաթի և Մարաշի միջև և մաս է կազմում սահմանային գոտում: Կոչվում է նաև «Ալ Համ-

բա»*, որովհետև հողը ամբողջությամբ կարմիր գույն ունի։ Բերդը սարի գագաթին է գտնվում և կոչվում է Ալ-Ուհայդաբ։

էջ 234

108. Ալ Հարբիա[142]— الحربية

Հայտնի թաղամաս է Բաղդադում, որ իր անունը առել է քաղաքի կառավարիչ Հարբ իբն Աբդալլահ Ալբախլի ար-Ռավանդի զորավարի անունից։ Աբու Ջաֆար ալ-Մանսուր խալիֆի ժամանակ հիջրի 147 թվականին (764—765) նա կռվեց թուրքերի դեմ, երբ Աշտարխան Խորեզմին խազարների և թուրքերի հետ անցավ Դարբանդից և ասպատակեց Արմինիայի սահմանները. շատ մուսուլմանների սպանեց, շատերին էլ գերի վերցրեց ու գրավեց Թիֆլիսը։

էջ 246

109. Հարնակ[143]— أحرنق

Արմինիայում մի հանքավայր։

էջ 276

110. Հիսն Զիադ[144]— حصن زياد

Գտնվում է Արմինիայի հողի վրա և ներկայումս ծանոթ է Խարտաբերդ անվամբ։ Գտնվում է Ամիդի և Մալաթիայի միջև և ավելի մոտ է վերջինին։

էջ 277

111. Հիսն Թալիբ[145]— حصن طالب

Հայտնի բերդ է Հիսն Քայֆայի մոտ, որտեղ գտնվում էին Ալ-Ջուբիա կոչված բերդերը, որոնց հաղթեց Կարա Արսլան իբն Դավուդ իբն Սուկման, Հիսն Քայֆայի տերը՝ հիջրի 560 թվականից հետո։

էջ 277

112. Հիսն Զի-լ-Քիլաա[146]— حصن ذى الكلاع

Գտնվում է հունական սահմանագոտում, Մսիսի մոտ։ Ասում

* Կարմիր։

են, թե այն կոչվում է Քիլա*, որովհետև կառուցված է երեք բերդերի վրա։ Ասում են, թե այդ վայրի հունարեն անունն է «աստղերի մոտ բերդ»։

էջ 277

113. Հիսն Քայֆա[147]— حصن كيفا

Այս քաղաքը Քայրա էլ է կոչվում, որը կարծեմ նրա հայերեն անունն է։ Դիարբաքրի նահանգում, Տիգրիսի վրա իշխող մի մեծ բերդաքաղաք է, որ տարածվում է գետի երկու ափերի վրա։ Ունի Տիգրիսի վրա կառուցված կամուրջ, որը հենվում է մի զույգ կամարների վրա։ Ինձ ծանոթ քաղաքների մեջ նրանից ավելի մեծ կամուրջ ունեցող չեմ տեսել։

Հիսն Քայֆան պատկանում է Ամիդի տիրոջը, որը Դավուդ իբն Սուկման իբն Օրտոկի զավակներից է։

էջ 278

114. Հիսն Մանսուր[148]— حصن منصور

Դիար Մուդարի նահանգում՝ Եփրատի արևմտյան կողմը, Սումայսաթի մոտ։ Նախապես քաղաքն ուներ պարիսպ, խրամ և երեք դռներ, կենտրոնում՝ դղյակ ու բերդ կրկնակի պարսպով։ Հիսն Մանսուրից մինչև Զիբաթրա մի օրվա ճանապարհաչափ է։ Քաղաքը կոչվում է այս անունով՝ Մանսուր իբն Ջավանա իբն ալ Հարիթ ալ-Ամիրի ալ-Կայսիի անունով. սա այնտեղ էր հաստատված Մրրվան իբն Մուհամմադի[149] օրերում դիմադրելու համար թշնամուն, և հավաքել էր շատ զորագնդեր Ասորիքից, Ջազիրայից և Արմինիայից։ Մանսուրը Ուռհայի բնակիչների վրա դրվել էր այն ժամանակ, երբ սկզբնական շրջանում նրանք դիմադրում էին Աբբասյան խալիֆայությանը։ Նրանց պաշարեց Աբու Ջաֆար ալ-Մանսուրը[150], նա՝ որ իր եղբորը—Ալ-Սաֆֆահին[151] Արմինիայի և Ջազիրայի վրա կառավարիչ էր կարգել։ Երբ քաղաքը գրավվեց՝ Մանսուրը այնտեղից փախավ։

էջ 279

115. Ալ-Հուսուս[152]— الحصوص

Քաղաք Միսիի մոտ, Ջայհան գետի արևելյան կողմում։ Այն հիմնեց Հիշամ իբն Աբդլմալիքը։ Շրջապատված է խրամով։

---

* Բերդեր։

էջ 341

116. Ալ-Համմա[153]— الحمة

Հոսուն ջրի ակ է Սղերդի և Ջազիրա իբն Օմարի միջև, Տիգրիսի վրա։ Այստեղ գալիս են հեռավոր վայրերից՝ նրա ջրերի մեջ բուժվելու համար։ Այստեղ լինում է տարեկան տոնավաճառ և ուխտագնացություն։

էջ 380

117. Հայզան[154]— حيزان (Խիզան)

Գավառ, որն ունի ծառաստաններ և բանջարանոցներ, արագահոս աղբյուրներով։ Գտնվում է Սղերդի մոտ, Դիարբաքրում։ Արտադրում է շագանակ և կաղին։ Իսկ արքակաղինը, բացի այստեղից, հնարավոր չէ գտնել ոչ Իրաքում, ոչ Ջազիրայում և ոչ Ասորիքում։ Նասրն ասում է, թե Հայզանը Արմինիայի քաղաքներից է, Շիրվանին մոտիկ։ Այն գրավվեց Սալման իբն Ռաբիայի կողմից։

էջ 383

118. Ալ Խաբուր[155]— الخابور

Ռաս ալ-Այնի և Եփրատի միջև գտնվող մի մեծ գետակի անուն է, որը իր անունը տվել է բազմաթիվ քաղաքներ պարունակող միջագետյան մի ընդարձակ նահանգի։ Այս նահանգի մասն են կազմում Կարկիսիա, Մաքսին, Միջդալ, Արաբան քաղաքները։ Գետակը բխում է Ռաս ալ-Այնում գտնվող ակերից, հետզհետե ընդլայնվում է Նիզիբինի և Հերմասի գետակների միացումով, ոռոգում է այդ նահանգի դաշտերը և թափվում Եփրատ գետի մեջ՝ Կարկիսիայի մոտ։

Կա մի ուրիշ մեծ գետակ ևս Խաբուր կոչված, Տիգրիսի արևելյան կողմում Մուսուլի ենթակա ալ-Հասանիա գավառում։ Այն բխում է ալ-Զավազանից և ոռոգելով այդ գավառի դաշտերը թափվում է Տիգրիսի մեջ։ Մասուդին ասում է, որ այս գետը բխում է Արմինիայից և թափվում Տիգրիսի մեջ քրդական հողում Բասուրայն և Ֆիսաբուր քաղաքների միջև, որոնք ենթակա են Մուսուլին։

էջ 407

119. Խ ա զ զ ա դ ո ւ ն ա[156]— خلقدونه

Կոչվում է նաև Խալկադունա։ Այն սահմանակետին է, որի մեջ են գտնվում Միսիսը, Տարսոնը, Ադանան և Անարզաբան։ Կոչվում է նաև Ղաղգադունա։

էջ 417

120. Խ ա ր տ բ ե ր դ[157]— خرتبرت (Խարբերդ)

Հայերեն անունն է ծանոթ այն բերդի, որը Հիսն Զիադ անվամբ է ճանաչված և որը Բանու Համդանի ստացվածքն է և գտնվում է Դիարբաքրից հեռու։ Նրա ու Մալաթիայի միջև երկու օրվա ճանապարհաչափ կա և երկուսի միջև Եփրատ գետն է անցնում։ Ուսամա իբն Մունկիդը[158] գրում է մի բանաստեղծության մեջ, ղանց առնելով տարը.

«Խարբերդի հիվանդանոցները սև են։
Կրակը զգեցուցած է նրանց սուգի զգեստներ» և այլն։

էջ 422

121. Խ ի ռ ս[159]— خرس

Արմինիայում Բերդաքաղաք է, Շիրվանի ծովեզրում, որտեղի բնակիչների հետ Մրվան իբն Մուհամմադը հաշտություն կնքեց։

էջ 423

122. Խ ա ր շ ա ն ա[160]— خرشنة

Ռումի երկրի մեջ, Մալաթիայի մոտ մի քաղաք է, որի վրա արշավանք կատարեց Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանը։

էջ 427

123. Խ ո ւ ռ ա մ[161]— خرم

Այս բառի պարսկերեն նշանակությունն է ուրախություն։ Գավառ է Արդաբիլում։ Նասրն ասում է, թե իր կարծիքով խուրամյանները, որոնցից էր Բաբեկը, այստեղից են վերցրել իրենց անունը։

*Պարսկերեն լեզվով «խուռամիա» կոչվում են նրանք, որոնք օրինավոր և թույլատրելի են համարում ամեն կարգի հաճույքներ հետապնդելը։*

*էջ 436*

*124.* **Խազար**[162]— خزر

*Դարբանդից այն կողմ, Ջիլկարնայնի պատնեշի մոտերքը, թուրքական երկիր է, որը ըստ ոմանց Նոյի թոռան անունով է կոչված։ «Քիտաբ ալ-Այն»-ը ասում է, որ փոքր աչքեր ունեցող մի ժողովուրդ են խազարները։*

*Ահմադ իբն Ֆադլանը, որ Մուկտադիր*[163] *խալիֆի կողմից պատվիրակ էր ուղարկված ալանների մոտ, իր տեսածները նկարագրելով մի թղթակցության մեջ գրում է, թե խազարների երկիրը ունի մայրաքաղաք՝ Իտիլ* կոչված։ Իսկ Իտիլ գետն** էլ հոսում է այդ երկրով և գալիս է ռուսների և բուլղարների երկրից։ Իտիլ քաղաքը բաժանվում է երկու մասերի։ Ընդարձակագույն մասը ընկնում է գետի արևմտյան կողմը, իսկ մյուս մասը՝ դեպի արևելյան կողմը։ Թագավորը բնակվում է քաղաքի արևմտյան մասում, իսկ թագավորի անունը իրենց լեզվով «Յալաք» կամ «Բաք» են ասում։ Քաղաքի այս արևմտյան մասը գրեթե մի փարսախ երկարություն ունի և շրջապատված է պարսպով։ Նրանց բնակարանները կապերտից վրաններ են, կան նաև փոքրաթիվ հողաշեն տներ։ Ունի շուկաներ և բաղնիքներ։ Այնտեղ ապրում են բազմաթիվ մուսուլմաններ, և ասում են, թե նրանց թիվը տասն հազարից ավելի կլինի, և մոտ երեսուն մզկիթներ ունեն։*

*Թագավորի պալատը գետեզերքից հեռու է գտնվում և շինված է թրծված աղյուսից. բացի թագավորից ուրիշ ոչ ոք չի կարող աղյուսից տուն կառուցել։ Պարիսպն ունի չորս դռներ, մեկը դեպի գետն է բացվում և մեկ ուրիշը՝ դեպի անապատը, որը քաղաքի հետևում է տարածվում։ Իրենց թագավորը հետևում է հրեական կրոնին։*

*Խազարները բաղկացած են մուսուլման, քրիստոնյա, կռապաշտ և հրեա հատվածներից։ Մեծամասնությունը մուսուլման և քրիստոնյա են. փոքր մասը միայն հրեա են։ Հակառակ այդ բանին,*

---

* *Աստրախան։*

** *Վոլգա։*

թագավորը և մեծ պաշտոնյաները հետևում են հրեական կրոնին։ Բնակիչները կռապաշտական սովորություններ ունեն և իրար են պաշտում ի նշան հարգանքի։ Երկրի օրենքները հակառակ են մուսուլմանական, հրեական և քրիստոնեական օրենքներին։

Թագավորի բանակն ունի տասներկու հազար հեծյալ զինվոր, և երբ նրանցից մեկը մահանում է, նրա փոխարեն մի նորն են առնում, որով հիշյալ թիվը չի նվազում երբեք։ Պարենաբաժինը քիչ է և բաշխվում է երկար ընդհատումներով։ Պատերազմի կամ ծանր վտանգի դեպքում այդ բանակը հավաքվում է։

Խազարների եկամուտն է կազմում առևտրի վրա դրված տասանորդ տուրքը և մաքսատուրքը, որը գանձվում է բոլոր ճանապարհների, ծովերի և գետերի երթևեկներից։ Տուրքեր են դրված նաև ուտելիքի, ըմպելիքի և այլ առարկաների վրա։ Տուրքը գանձում են նաև թաղերի և շրջակայքի բնակիչներից։

Թագավորը նշանակել է ինը դատավորներ՝ հրեա, քրիստոնյա, մուսուլման և կռապաշտ, որոնք ժողովրդի դատական գործերով են զբաղվում։

Ժողովրդից որևէ անհատ չի կարող թագավորին ներկայանալ որևէ խնդրի համար. դատավորներն են, որ թագավորի հետ հաղորդակցում են մի դեսպանի միջոցով, որին տեղեկագիր են ներկայացնում դատաստանական գործերի վերաբերյալ։ Դեսպանը թագավորի հրամանը հաղորդում է դատավորներին, որոնք գործադրում են այդ հրամանը։

Այս քաղաքը շրջապատված չէ գյուղերով, բայց ունի բազմաթիվ ընդարձակ դաշտեր։ Ժողովուրդը դաշտ է գնում ամառը, մինչև 2 փարսախ հեռավորությամբ, ցանում է, ապա քաղում է բերքը և բերում քաղաք՝ մասամբ գետի ճամփով, մասամբ էլ անապատի ճամփով, սայլերի վրա։ Ժողովրդի սնունդը սովորաբար բաղկացած է բրնձից և ձկնեղենից։ Իրենց պետք եղած մյուս առարկաները ներմուծում են ռուսների, բուլղարների և Քույաբայի երկրից։

Խազարների մայրաքաղաքի արևմտյան կիսում է գտնվում վաճառականների մեծ մասը, որոնք մուսուլման են։ Այստեղ են նաև վաճառանոցները։

Խազարների լեզուն տարբեր է թուրքերի և պարսիկների լեզվից և ոչ մի ուրիշ լեզվի չի նմանում։ Խազարներն իրենք էլ չեն նմանվում թուրքերին։ Նրանք սև մազեր ունեն և բաժանվում են երկու ցեղերի։ Կարախազար կոչվածները, որոնք խիստ թուխ են, սևին մոտեցող և հիշեցնում են հնդկական ցեղը, իսկ մյուս տեսակը սպիտակամորթ է, գեղեցիկ ու վայելչակազմ։

Կռապաշտ խազարների մոտ թույլատրված է գերառությունը և գերեվաճառությունը. նրանք վաճառում են իրենց զավակներին, մինչդեռ հրեաներն ու քրիստոնյաները մեղք են նկատում գերի վերցնելը, նույնը և մուսուլմանները։

Խազարների երկիրը ոչինչ չի արտահանում, իսկ ալյուրը, մեղրը, մեղրամոմը, հյուսվածքները, այծի կամ ուղտի մազը այնտեղ ներմուծում են դրսից։

Խազարների թագավորը կոչվում է մեծ Խաքան։ Նա չորս ամիսը մի անգամ է տեսանելի լինում, այն էլ պտույտի պահին։ Նրա փոխանորդը կոչվում է Խաքան-բեհ։ Նա է, որ վարում է բանակը, տնօրինում պետական գործերը, դուրս է գալիս արշավանքների և հրամայում իր շուրջը գտնվող իշխաններին։ Նա ամեն օր ներկայանում է Մեծ Խաքանին, որի առաջ յուր խոնարհում է իր գլուխը ի նշան հնազանդության։ Նա ներկայանում է թագավորին բոկոտն և ձեռքի մեջ մի ցախ բռնած, որը վառում է իբրև բարևի նշան, և որի սպառումից հետո գնում նստում է թագավորի աջ կողմը, գահի վրա։ Նրա փոխանորդն է մի ուրիշ անձ՝ Քունդուր-Խաքան կոչված, իսկ սրան էլ մի ուրիշը, որ կոչվում է Ջավշիղար։

Օրենք է, որ այդ անձերից բացի ոչ ոք չի կարող ներկայանալ թագավորին կամ խոսել նրա հետ։ Նահանգների վարչությունը, պատիժների տնօրինությունը և պետական գործերի ղեկավարությունը ընկած են Խաքան-բեհի վրա։

Երբ Խաքանը մեռնում է, նրա համար կառուցում են մի պալատ, որը բաղկացած է լինում քսան սենյակներից։ Այդ սենյակներից յուրաքանչյուրի մեջ փորում են մի գերեզման, որի հատակը ծածկում են փշրված քարերով և վրան էլ սև ձյութ են սփռում. մի վտակ է անցնում այդ տան վերևից և ներքևից. գերեզմանը շինվում է այս երկու հոսանքների միջև, որպեսզի, ըստ իրենց համոզումի, նրան չմոտենա ո՛չ սատանա, ո՛չ մարդ, ո՛չ որդ և ո՛չ էլ սողուն։ Թաղումից հետո մեռելաթաղին գլխատում են, որպեսզի հայտնի չլինի, թե որ սենյակի մեջ է թաղված թագավորը։ Գերեզմանը կոչվում է ջեննա, և ասում են, թե նա դրախտ մտավ։ Սենյակների հատակում սփռված են լինում ոսկեզարդ մետաքսյա դիպակներ։

Խազարների թագավորը ունենում է քսանհինգ կին, որոնք պետք է լինեն արքայազուն իշխանուհիներ և ձեռք բերվեն կամ հոժար կամքով կամ բռնի կերպով։ Ունենում է նաև վերին աստիճանի գեղեցիկ վաթսուն հարճեր։ Կանայք ու գերուհիները պալատի

մեջ առանձնացվում են վարագույրով ծածկված տաղավարների մեջ, որոնց ամեն մեկի մոտ կա մի փոքր վրան։ Ամեն կին ունի մի ներքինի, որը իր պահապանն է։ Երբ թագավորը ցանկանում է գիշերել մի կնոջ հետ, լուր է ուղարկում համապատասխան ներքինուն, որը պահանջված գեղուհուն անմիջապես բերում է մինչև թագավորի անկողինը, իսկ ինքը սպասում է թագավորի տաղավարի դռան առաջ։ Երբ թագավորը կամենում է կնոջը պահել իր մոտ և չթողնել շուտով, աչքով է անում և հրամայում ներքինուն հեռանալ։

Երբ խաքանը ծիրգնացության է ելնում, նրան հետևում է պահակախումբը, սակայն պետք է թագավորից մեկ մղոն հեռու մնա։ Եթե մի հպատակ տեսնի թագավորին, պարտավոր է երեսի վրա ընկնելով երկրպագություն անի և գլուխը չվերցնի մինչև նրա անցնելը։

Թագավորի իշխանությունը տևում է քառասուն տարի։ Եթե մի օր անգամ ցանկանա ավելի մնալ իշխանության վրա՝ իր հպատակները կամ պաշտոնյաները նրան կսպանեն, որովհետև նրան խելագարված կհամարեն։

Անհաջող արշավանքից փախչող զինվորը սպանվում է։ Եթե փախստականը փոխարքա կամ զորական է, նրան իր կանանց և երեխաների հետ հանում են թագավորի առաջ և կնոջն ու երեխաներին հանձնում են ուրիշի, ինչպես և նրա կենդանիները, զենքերն ու տները, իսկ հանցագործին երկու կտոր անելով կամ խաչում են կամ ծառի ճյուղից կախում։ Պատահում է, որ թագավորը ներողամիտ է գտնվում և նրան կառավարիչ է նշանակում որևէ տեղ։

Մուսուլմանների վրա մի դատավոր է կարգված. նա կոչվում է «խազզ» և լինում է մուսուլման կրոնից և թագավորի ղուլամներից։ Նա տեղացի և առևտրով ճամփորդող մուսուլմանների դատն է տեսնում։ Քաղաքում մուսուլմաններն ունեն մի մզկիթ, որտեղ ուրբաթ օրերը հավաքվում և աղոթում են։ Մզկիթն ունի մի բարձր մինարե և մի քանի աղոթակոչներ (մուեզզին)։

Հիջրի 311 թվականին (923 թ. 21 ապրիլ—924 թ. 8 ապրիլ) խազարների թագավորը լսելով, որ մուսուլմանները քանդել են Դար ալ-Բաբունջի եկեղեցին, ինքն էլ քանդել տվեց մզկիթի մինարեն և սպանեց աղոթակոչին։ Ասում են, որ մզկիթն էլ պիտի քանդեր, եթե չվախենար, որ մուսուլմաններն էլ իրենց երկրում գտնվող եկեղեցիները կքանդեն։

Խազարների թագավորի հպատակ են սլավները ու շրջակա մյուս ժողովուրդները, որոնց նա դիտում է որպես իր գերիները։

Ոմանք կարծում են, թե նույն ինքը խապարներն են Աջուջ-Մաջուջ[164] կոչված ժողովուրդը։

էջ 415

### 125. Ալ Խաշարիա[165] — الخشّة

Ծագում է խաշար՝ բառից։ Մսիսի մոտ մի լեռ է սահմանագոտու մեջ, որտեղ մուսուլմանների հատուկ բանակատեղի է։

էջ 457

### 136. Խիլաթ[166] — خلاط (Խլաթ)

Ամուր և հռչակավոր քաղաք, օժտված ամեն տեսակ բարիքներով, ընդարձակ ու պտղառատ։ Երկարությունն է 64 և 1/2 և 1/3, իսկ լայնքը 39,2/3։ Այն գրավեց Իյադ իբն Ղանմը, արշավելով Միջագետքից, և քաղաքի պատրիկը հաշտություն կնքեց գլխահարկ և արյան տուրք վճարելով։ Հետո Իյադը վերադարձավ։

Միջին Հայաստանի քաղաք է, ունի բազմաղան պտուղներ և պատվական ու առատ ջրեր։ Իսկ նրա ձմեռային ցուրտը՝ առածի կարգն է անցել։ Ունի մի լիճ[167], որի նմանը աշխարհում չկա. այնտեղ որսում են տառեխ կոչված ձուկը, որն արտահանվում է ուրիշ երկրներ։ Ես հանդիպեցի Բալխում և ինձ ասացին, թե Ղազնեում էլ կա, և այդ վայրերի միջև հեռավորությունը չորս ամսվա ճանապարհ է։

Իբն ալ-Քալբին ասում է, որ աշխարհի հրաշալիքներից է Խլաթի լիճը, որովհետև տասն ամիս շարունակ այնտեղ ոչ գորտ, ոչ խեցգետին, ոչ էլ ձուկ է երևում, իսկ տարվա երկու ամիսներում ձուկ է հայտնվում։ Ասում են, թե երբ Կավատ մեծը հմայեց իր երկրները, հմայողների պետը գնաց դեպի Արմինիա և երբ հասավ Խլաթի լիճը, նա հմայեց այն՝ տասն ամսվա համար, ինչպես հիշատակեցինք։

էջ 459

### 127. Խալխալ[168] — خلخال

Բառը նշանակում է կանանց ապարանջաններից մեկը**։ Քաղաք և գավառ է Ադրբեջանի կողմում, Ջիլանի սահմանակից, լեռ-

* Արաբերեն նշանակում է փայտ։

** Խալխալը արծաթե ապարանջան — օղակն է, որը Արևելքի կանայք կրում են իրենց թևերին կամ ոտներին։

ների մեջտեղ, որի գյուղերն ու մշակված հողերը գտնվում են բարձ-րադիր սարերի վրա։ Նրա և Ղազվինի միջև յոթ օրվա ճանապարհ է, իսկ դեպի Արդաբիլ՝ երկու օրվա ճանապարհ։ Այս նահանգում կան ամուր բերդեր։ Այցելեցի այնտեղ, երբ թաթարների առջևից փախուստ տվի գալով Խորասանից 617 թվականին (1220—1221)։

էջ 463

128. Ալ-խալկադունա[169] — الخلقدونة

Նույնն է, ինչ որ Խազկագունան, որի մասին խոսեցինք իր տեղում, և որը կազմում է այն երկրամասը, որն ընդգրկում է Մսիսն ու Տարսոնը։

էջ 470

129. Խամրաբերդ — [170] خرتبرت

Քաղաք է Խլաթի կողմերում, որը նույնը չէ Խարբերդի հետ։

էջ 474

130. Խունան[171] — خنان

Ջուրզանի երկրում քաղաք է, որը գրավեց Հաբիբ իբն Մասլաման։ Իսթախրին ասում է, թե Խունանը բերդ է, որը ծանոթ է «Հոդի բերդ»* անվամբ որովհետև կառուցված է բարձր բլրի վերև։

էջ 498

137. Խավշաբ[172] — خوشب (Խոշաբ)

Ջավաղանի մարզում գտնվող բերդերից մեկն է։

էջ 499

139. Խունա[173] — خونا (Քաղաք Քոնան)

Ճիշտ անունը Խունաջ է, քաղաք է Ադրբեջանի երկրում, Մարաղայի և Զանջանի միջև Ռեյի ճանապարհի վրա, և որ Ադրբեջանի վերջին նահանգն է։ Ներկայիս կոչվում է Քաղեդ Քունան, այսինքն՝ թղթագործ արհեստավորներ։ Այդ քաղաքի բնակիչները խորշում են իրենց քաղաքը Խունա** կոչելուց, այդ բառի պիղծ իմաստի պատճառով։

---

* Կալաաթ աթ Թուրայ — قلعة الثريا

** Նշանակում է ամուսնուն անհավատարիմ կին։

Էջ 500

133. Խ ո ւ ն տ[174] — خونت

Երկրամաս Էրզրումի մոտ, որն ունի լեռներ և Արմինիայի մասն է կազմում։

Էջ 501

134. Խ ո ւ ա յ թ[175] — خوث (Խույթ)

Լեզվական իմաստով խավթի* նվազական անունն է։ Կարևոր ներքին երկրամաս է Դիարբաքրի մարզում։

Էջ 502

135. Խ ո ւ ա յ[176] — خوى (Խոյ)

Հայտնի քաղաք Ադրբեջանում, խիստ բարեբեր և պտղառատ։ Արտադրում է «Խուլիա» կոչված կերպասներ։

Էջ 507

136 Խ ա յ զ ա ն[177] — [illegible]

Արմինիայի մարզերում գտնվող վայր է, որի մասին հիշատակություն կա «Նվաճումների գրքում»։

Էջ 549

137. Դ ա բ ի լ[178] — دبيل (Դվին)

Քաղաք Հայաստանում Աղվանքի սահմանակից։ Հաբիբ իբն Մասլաման գրավեց այն Օթման իբն Ամանի ժամանակ, երբ Մուավիան Ասորիքի կառավարիչ էր։ Իր անցած վայրերը գրավելուց հետո, Հաբիբը հասավ մինչև Դվին, գրավեց քաղաքը ու շրջակայքի գյուղերը և բնակիչների հետ հաշտություն կնքեց և նրանց պաշտոնագիր տվեց, որի պատճենը հետևյալն է.

«Այս է ապահովագիր՝ Հաբիբ իբն Մասլամա ալ Ֆիհրիի կողմից տրված Դվին քաղաքի քրիստոնյաներին, մաջուսներին** և հրեա բնակիչներին, նրանց ներկաներին ու բացականերին։ Ապա-

* خوث Նշանակում է թույլ։ Բայց այստեղ իմաստ չի տալիս։

** Մոգական կրոնի հետևողներին, կրակապաշտականներին։

հովությունն եմ տալիս ձեզ՝ ձեր անձերի, ձեր ինչքերի, եկեղեցիների և տաճարների և քաղաքի պարսպի համար։ Ապահով եղեք դուք. մենք պարտավոր ենք գործադրել ձեր հանդեպ մեր հանձնառությունը, պայմանով, որ դուք էլ գործադրեք ձեր հանձնառությունը վճարելով ջիզիա և խարաջ։ Ալլահը թող լինի վկա և նա լավ է իբրև վկա։

Կնքված՝ Իբն Մասլամայի կողմից»։

Բանաստեղծն ասել է.

«Կալիկալայում, կամ Դարիյի հետևից
Արծվի զորշ փետուրները ողջունում են արևածագը»։

Էջ 551

138. Դիջլար[179]— دجلة (Տիգրիս)

Բաղդադի գետն է, որի առաջին ակը գտնվում է մի վայրում, որը կոչվում է Այն Դիջլաթ, Ամիդից երկուս ու կես օրվա ճանապարհով հեռու։ Այդ վայրը ծանոթ է Հալուրաս[180] անվամբ և գտնվում է մի մութ քարայրի մեջ։ Տիգրիսին խառնվող առաջին գետը դուրս է գալիս Շիմշաթի վերևից, Հոռոմների երկրից, և կոչվում է Նահրալ-Քիլաբ։ Այդ գետի մեջ են թափվում, բացի մի շարք վտակներից և հոսուն ջրերից, Սալիբ կոչված գետակը, որը Մուֆարղինի և Ամիդի միջից է հոսում, և ասում են, թե Հալուրասը այն վայրն է, որտեղ մարտիրոսացավ Ալի Արմանին[181]։ Կա նաև Սատիդամա կոչված գետակը, որի մեջ է թափվում աղ-Ջուր կոչված գետակը, որը հոսում է Քալքից, որը մի վայր է Արմինիայի կողմերում և կազմում է Իբն Բուկրաթ[182] պատրիկի նստավայրը։ Սատիդամայից են նույնպես սկիզբ առնում Մուֆարղինի գետակը, ինչպես և Սարբաղ գետակը, որը հոսում է Արզնի ետևից և որի ակը գտնվում է Արմինիայի լեռներում՝ Խույթում։ Այնուհետև Տիգրիսին է խառնվում Տալ Ֆաֆան կոչված վայրում ար-Ռազմ կոչված գետակը, որը բխում է Արմինիայից՝ պատրիկ Մուշալիկի[183] երկրից։ Ռազմ գետակին խառնվում է Բադլիսի գետակը, որը բխում է Խլաթի կողմերից։ Այնուհետև Ջազիրա կոչված լեռների առջև Տիգրիսի մեջ է թափվում մի մեծ գետ՝ Յարնա կոչված, որ բխում է Հայաստանի սահմանամերձ մի վայրից։ Հետո Տիգրիսին է խառնվում մի ուրիշ մեծ գետ՝ Բայինաթա կոչված։ Հետո գետը հոսում է Ջազիրա իբն Օմա-

րի կողմից և այնտեղ նրա մեջ է թափվում Արմինիայի կողմերից բխած մի գետակ՝ Բուլար կոչված։ Հետո հոսում է Բասուրայնի և Զագիրայի միջով և այնտեղ նրա մեջ է թափվում Դուշա կոչված գետը։ Այս վերջինը բխում է ազ-Զավազանից, որ Հայաստանի և Ադրբեջանի միջև է գտնվում։ Հետո նրա մեջ է թափվում Խաբուր գետը, որը դարձյալ ազ-Զավադան կոչված վայրից է բխում, մի վայր՝ որը պատկանում է Ջարջիղ[184] կոչված պատրիկին։ Այս կերպով գետը հասնում է Մուսուլ և այնտեղ արևմտյան կողմից նրա մեջ է խառնվում մի ուրիշ գետ։ Այնուհետև նա ոչ մի կաթիլ ջուր չի ընդունում մինչև որ Մեծ Զաբը թափվի նրա մեջ, որը Ադրբեջանի լեռներից է բխում։

Մինչև հիմա մեր պատմածները քաղված են Քասրավիից, բայց ասողներ էլ կան, որ Տիգրիսի բուն աղբյուրը Ամիդի մոտ Հիսն Զիլ-Կարնայն կոչված բերդի մերձակա լեռների ցածումն է գտնվում և ընդունում է ջրի հոսանքներ Դիարբաքրի լեռներից ու հետզհետե լայնանալով ծովի մոտ հազիվ աչքով տեսանելի լայնություն է ստանում։ Ամիդի մոտ Տիգրիսը կարելի է անցնել ձիով, այնուհետև գետր եզերում է Մուֆարղինը, Հիսն Քայֆան, Ջազիրա իբն Օմարը, Բալադը և Մուշլը, հետո Տիկրիտը, որտեղ ասում են, թե Մեծ ու Փոքր Զաբերը միանում են։ Ապա ընթանում դեպի Բաղդադ, Վասիթ, Բասրա, Աբադան ու թափվում Հնդկաց ծովը։ Վասիթից անց գետը բաժանվում է հինգ ճյուղերի, որոնք են. Նահր Սասի, Նահր ալ-Ղարաֆ, Նահր Դակլաթ, Նահր Ջաֆար և Նահր Միսան։ Հետո այս ճյուղերը խմբվելով միանում են Եփրատին՝ Մաթարա կոչված գյուղի առաջ, Բասրայից մի օրվա ճանապարհի վրա։

Էջ 563

139. Դ ա ր բ  ա լ - Ք ի լ ա բ — درب الكلاب

Գտնվում է Սատիդամայի լեռներում, Դիարբաքրի մեջ, Մուֆարղինի մոտ։

Էջ 504

140. Դ ա ր բ ա ն դ[185] — دربند (Դերբենտ)

Նույնն է, ինչ որ Բաբ ալ-Աբվաբը, որի մասին խոսեցինք։

էջ 583

141. Դ ո ւ լ ո ւ ք[186]— دلوك (Դլոք)

Փոքր քաղաք Հալեբի Մարզերում, Ավասիմների մաս կազմող, որտեղ Աբի Ֆարաս Իբն Համդանը բախում ունեցավ հույների հետ։

էջ 612

142. Դ ո ւ ն ա յ ս ի ր[187]— دنيسر

Միջագետքի մեծ ու հռչակավոր քաղաք, որը գտնվում է Մարդինից երկու փարսախ հեռավորության վրա և որ կոչվում է նաև ուրիշ անվամբ Կոչ Հիսար։ Երբ մանուկ էի, այցելեցի այդ քաղաքը, որն այն ժամանակ դեռ գյուղ էր։ Ապա մոտավորապես երեսուն տարի անց մի անգամ ևս այցելեցի, երբ իր ընդարձակությամբ, հսկա բնակչությամբ և մեծ շուկաներով մի աննման քաղաք էր դարձել։ Հոսուն ջուր չունի այդ քաղաքը, խմելու համար հստակ ու մաքուր ջուր են հայթայթում ջրհորներից։ Հողը քարոտ է, իսկ օդը առողջարար։

էջ 629

143. Դ ո ւ մ ի ս[188]— دومیس

Վայր է Առանում, Պարտավի և Դաբիլի միջև։

էջ 632

144. Դ ա վ ի ն[189] — دوين (Դվին)

Առանի կողմերում քաղաք է Ադրբեջանի ծայրասահմանի վրա: Թիֆլիսի մոտ։ Այնտեղից են սերած Սիրիայի Այուբյան թագավորները[190]։

Այնտեղից է դուրս եկել Աբուլ ֆոթուհ Նասրալլա իբն-Մանսուր իբն-Սահլ Դվինցին և ուրիշ հռչակավոր անձեր մուսուլմանական աշխարհում (տալիս է բազմաթիվ ականավոր անձնավորությունների անուններ—ծանոթ. թարգմ.)։

էջ 636

145. Դ ա հ ն ա խ ի ր ջ ա ն[191] دهخوارقان (Դեհխարկան)

Ադրբեջանում մեծ քաղաք, Թավրիզից և Մարաղայից հավասարապես երկու օրվա հեռավորություն ունեցող։ Ոմանք անվանում

են Հարական, որը այստեղ թարգմանվում է Նախիրչանի գյուղ իմաստով։ Իսկ Նախիրչանը Խոսրովի գանձատունն էր, և շրջակայքի գավառները կցված էին նրան։

էջ 636

146. Դիար Բաքր[192]— ديار بكر (Դիարբեքիր)

Ընդարձակ երկրամաս է, որը իր անունն ստացել է Բաքրից... (Դուրս ենք թողնում մի շարք սերնդաբանական անուններ— Հ. Ն.)։ Սահմանը սկսվում է Տիգրիսի արևմտակողմում Նիզիբինի վրա նայող լեռից մինչև Տիգրիս, նրանում են Հիսն Քայֆը, Ամիդը և Միաֆարկինը։ Նրա մասն են կազմում նաև Տիգրիսի հանդիպակաց ափի վրա Սղերդը, Հիզանը և Հինին և նրանց շրջակայքի դաշտային մարզը։

էջ 637

147. Դիար Ռաբիա[193]— ديار ربيعة

Այն երկրամասն է, որը տարածվում է Մուսուլից մինչև Ռաս ալ-Այն և պարունակում է Նիզիբինը, Ռաս ալ-Այնը, Դունայսիրը, Խաբուրը և նրանց շրջակա քաղաքները։ Հաճախ Դիար Բաքրի շրջանն էլ է կոչվում Դիար Ռաբիա, որովհետև բոլորն էլ Ռաբիա են։ Այնտեղ էր բնակվում արաբական այդ անունը կրող ցեղախումբը, իսլամից էլ առաջ։ Այդ ամբողջը ամփոփվում են Ջազիրա անվան տակ։

էջ 637

148. Դիար Մուդար[194]— ديار مضر

Եփրատի արևելակողմում տարածվող ամբողջ երկրամասն է, որի մեջ մտնում են Հառանը, Ռակկան, Շիմշաթը, Սրուջը և Թիլ Մավզանը։

էջ 641

149. Դայր ալ-Աբիադ[195]— دير الابيض

Այս անունով վանքեր կան երկու տեղում. առաջինը՝ Ուռհայի վրա նայող լեռան բարձունքում։ Որը այստեղից հնչեցնեն կոչնակը, այնտեղ (Ուռհայում) կլսվի։ Մյուսը գտնվում է Սայիդում*։

* Հարավային Եգիպտոս։

էջ 641

### 150. Դայր Ահվիշա[196]— دير أحويشا

«Ահվիշա» բառը ասորական լեզվով նշանակում է մենաստան։ Այդ վանքը գտնվում է Սղերդում, որը Դիարբաքրի քաղաքներից է՝ Էրզրումի և Խիզանի մոտ և Արզնի վերև։ Մի շատ ընդարձակ վայր է, որտեղ գտնվում են խցիկների մեջ ապրող չորս հարյուր վանականներ։ Շուրջը կան մրգաստաններ և այգիներ։ Այդտեղից դեպի շրջակա երկրները արտահանվում է գինի։ Մոտը կա մի գետակ՝ Նահր առ-Ռում կոչված։

էջ 646

### 151. Դայր Բարսումա[197]— دير برصوما

Այն վանքն է, որտեղ մեծ բազմությամբ ուխտի են գնում Ասորիքից, Ջազիրայից, Դիարբաքրից և Ռումի երկրից։ Գտնվում է Մալաթիայի մոտ, սարի գագաթի վրա, բերդի նման։ Ունի մենաստաններ, որտեղ ապրում են բազմաթիվ կրոնավորներ, որոնք ամեն տարի ուխտի եկամուտներից Ռումի մուսուլման թագավորին վճարում են տաս հազար դինար։

Աֆիֆ Մուրաջա ալ Վասիթի վաճառականը ինձ տեղեկացրեց հետևյալը. «Այնտեղից անցա դեպի Ռումի երկիր գնալու ժամանակ։ Երբ մոտեցա այդ վայրին, լսեցի նրա բարիքների մասին ի միջիայլոց, թե ուխտավորների ուխտերը հազվադեպ է լինում, որ չեն կատարվում։ Այնտեղ կար մի ճգնավոր, որին, Ալլահի ներշնչմամբ ասացի, թե մոտս ունեմ հինգ հազար դիրհեմ արժեքով կերպաս։ Եթե կարողանամ վաճառել այն յոթ հազար դիրհեմի, Բարսումայի վանքին կնվիրեմ հիսուն դիրհեմ։ Գնացի Մալաթիա, կերպասը վաճառեցի յոթ հազար դիրհեմի մեծ գոհունակությամբ ու վերադարձիս, ըստ խոստմանս, վանքին հանձնեցի հիսուն դիրհեմ իբրև նվեր»։

էջ 647

### 152. Դայր Բասա[illegible][198]— [illegible]

Սա մի բերդ է, ոչ թե վանք, որտեղ բնակվում են քրիստոնյաները։ Գտնվում է Անտիոքի մոտերքում և ենթակա է Հալեբին։

*էջ 695*

**153. Դայր ալ-Մուհալլա[198] — دير المحلى**

*Ջայհանի եզերքին, սահմանային գոտում, Մսիսի մոտ բերդ է*։ Կառուցված է բարձունքի վրա։ Կանաչազարդ ծաղկավետ ու պտղալից վայր է։*

*էջ 697*

**154. Դայր Մար Թումա[200] — دير مرتوما**

*Գտնվում է Մուֆարղինում, քաղաքից երկու փարսախ հեռավորությամբ, բարձր լեռան վրա։ Ունի հատուկ տոն։ Ուխտի նպատակով, մարդիկ հավաքվում են այդ օրը մեծ բազմությամբ։ Ընդհանրապես անգործ ու արկածախնդիր մարդիկ են գնում այնտեղ ամեն կողմերից։ Ներքևում կա մի ջրհոր, որտեղ հավաքում են անձրևների ջրերը։ Այնտեղ է թաղված Թովմաս առաքյալ վկան, որը քրիստոնյաների հալածանքների ժամանակ նահատակվեց Մեսիայի համար ավելի քան հազար տարի առաջ։ Նրա մարմինը դրրված է փայտյա արկղի մեջ, որն ունի դռներ, որոնք բացվում են տոնական օրերին։ Երևում է նրա մարմնի վերին կեսը, կանգնած վիճակում, քիթն ու շրթունքները կտրված։ Մի կնոջ հաջողվել է մտնել նրա մոտ և կտրելով տանել քիթն ու շրթունքները. դրանց վրա նա կառուցել է մի շենք Բարիայում Տիքրիտի ճանապարհի եզերքին, որը կոչվում է Շաբուշտա։*

*էջ 739*

**185. Առան[201] — الران**

*Պարսկերեն անունն է մի ընդարձակ նահանգի, որի մեջ մըտնում են բազմաթիվ քաղաքներ, դրանցից՝ Ջանզան, որն ընդհանրապես կոչվում է Գանջա, նաև Բարդաան, Շամքորը և Բայլականը։ Իսկ Ադրբեջանի և Առանի միջև հոսում է ար-Ռաս կոչված գետը, որի հյուսիսային և արևմտյան ափերի վրա տարածվող երկրները Առանի մասն են կազմում, իսկ արևելյան ափի երկրամասը պատկանում է Ադրբեջանին։ Նասրը ասում է, թե Արմինիայի դա-*

---

** Տեքստում حسن, որը նշանակում է գեղեցիկ։ Հավանաբար տառասխալ է և պետք է լինի حصن «բերդ» իմաստով։*

վառներից մեկն է Առանը, որը Սայսաչանի հետ միատեղ է հիշվում։

Էջ 776

156. Վ ա դ ի ա ր-Ռ ա զ մ[202]— وادى الرّزم

Հայաստանի հողի վրա է գտնվում, ունի առատ ջուր և թափվում է Տիգրիսի մեջ Թալլ Ֆաֆանի մոտ։ Եվ նրա ջրերից Տիգրիսն այնքան է բարձրանում, որ նավեր են գնում այն կողմից, որի վրա իշխում էր Մուշալիք պատրիկը։

Վադի Ռազմի մեջ է թափվում Մշտակ գետակը, որը բխում է Խլաթի կողմերից։

Էջ 778

157. Ա ր-Ռ ա ս[203]— الرّس (Արաքս)

Ադրբեջանի հովիտը ար-Ռաս գետի այն կողմի ափի վրա է տարածվում։ Պատմում են, թե Առանում, Ար-Ռասի շուրջը հազար քաղաք գոյություն ուներ։ Ալլահը նրանց ուղարկեց Մովսես կոչված մի մարգարե, որը տարբեր է Ամրանի որդի Մովսեսից։ Սա հրավիրեց նրանց աստծո հավատքին, բայց նրանք չհավատացին նրան, ուրացան և դեմ գնացին նրա հրամաններին։ Այն ժամանակ մարգարեն անիծեց նրանց և ալլահը Մեծ ու Փոքր Մասիսները* փոխադրեց Թայիֆից** դեպի Առան և նրանց տակ թաղվեցին ար-Ռասի բնակիչները։

Ար-Ռասը բխում է Կարինից, Առանից հետո անցնում է Վարդանից, հետո հոսում է անորոշ կերպով, մինչև որ նրան միանում է Կուրը և երկուսի միջև մնում է Բայլական քաղաքը, և երկուսը միասին թափվում են Ջուրջանի ծովը։

Այս ար-Ռասը մի զարմանալի գետ է. Նրա մեջ բազմատեսակ ձկներ կան, և ասում են, թե ամեն ամիս մի նոր տեսակ ձուկ է երևում այնտեղ։ Ունի մի տեսակ ձուկ, որ կոչվում է Շուրմահի և որը որսում են ամեն տարի մի որոշ եղանակում։

---

* Բնագրում Հարիթ և Հուայրիթ։

** Հիջազում։

Միսար իբն Մուհալհիլը[204], Բադգա Բաբեկ գավառի մասին տեղեկություն տված ժամանակ ասում է, թե այդ գավառով է անցնում ար-Ռասը, որի ափերի վրա մշակում են աննման նուռ և հրաշալի թուզ։ Այնտեղ խաղողը չորացնում են թոնիրների մեջ, որովհետև մշուշի առատության պատճառով զրկված են արեգակից, և երկինքը երբեք պայծառ չի լինում։

Ար-Ռասը, ոռոգում է Բալասաջանի[205] դաշտային շրջանը, որը երկարում է գետի ափի վրա, սկսելով Բարզանդից դեպի Բարզա երկարող գծից մինչև ծով և ընդգրկում է Վարդանը և Բայլականը։ Այդ դաշտային շրջանում հինգ հազար գյուղեր կան, և մեծ մասամբ ավերակ են. միայն պատերն ու շենքերը մնում են տակավին և չեն այլայլված հողի ընտիր որակի շնորհիվ։

Ասում են, թե Ար-Ռասի մարդիկ սերած են Գողիաթից և բնաջնջվեցին Դավիթի և Սողոմոնի ձեռքով, երբ դադարեցին հարկ վճարելուց։ Գողիաթն էլ սպանվել է Ուրմիայում։

Էջ 791

### 158. Ռաաբան[206] — عبان

Քաղաք սահմանային նահանգում՝ Հալեբի և Սումայսաթի միջև, Եփրատի մոտ։ Ունի բերդ սարի ստորոտում, որն ավերվեց հիջրի 340թվականին (951—952), երկրաշարժից։ Սայֆ ադ-Դաուլան Աբուֆիրաս իբն Համդանին բանակի մի գնդի հետ փոխադրեց այնտեղ, քաղաքը վերաշինելու համար, և հաջողվեց 37 օրվա մեջ վերակառուցել այն։

Էջ 861

### 159. Ար-Ռում[207] — الروم

Այս հանրածանոթ մի ժողովրդի անուն է, որին պատկանող լայնատարած երկիրը կոչվում է Բիլադ ար-Ռում։

Այս ժողովրդի ծագման մասին զանազան կարծիքներ գոյություն ունեն։ Ոմանք ասում են, թե այս ժողովրդի նախահայրն է Ռում իբն Սամահիկ իբն Հարինան իբն Ալկան. իբն ալ-Այս* իբն Իսհակ իբն Իբրահիմը, իսկ ուրիշները ցույց են տալիս իբրև նա-

* Եսավ։

նախահայր Ռումիլ իբն ալ-Ասֆար, իբն ալ-Յաֆազ* իբն ալ-Այս իբն Իսհակին։

Իբն ալ-Քալբին իր կողմից ասում է, թե Աբրահամի որդի Իսհակը ուներ երկվորյակ որդիներ՝ Հակոբը, որն Իսրայելն է և Եսավը։ Այս վերջինը անդրանիկն էր, դրա համար էլ մյուս եղբայրը հետևող (Յակուբ) կոչվեց, որովհետև առաջինից հետո դուրս եկավ մոր արգանդից։ Հիշյալ Եսավից սերել են Կոստանդնուպոլսի հույները և հույների թագավորները։

Ոմանք պատմում են, թե ծննդյան պահին պայքար տեղի ունեցավ Հակոբի և Եսավի միջև անդրանիկությունը շահելու համար։ Իսհակը, որը ներկա էր իր կնոջ ծննդաբերությանը, խոսքը ուղղելով Հակոբին, բացականչեց «հետևիր ով Հակոբ»։

Նույն հեղինակները հույների նախահայր են նկատում Ռումի իբն Բուզանթի իբն Յունան իբն Յաֆիզ իբն Նուհին և ասում են, թե Եսավը, որ մի շեկ մարդ էր, ամուսնացել էր Իսմայիլի աղջկա՝ Բասմայի հետ և ունեցել Ռում անունով մի որդի։

(Հեղինակը տալիս է ուրիշ ավանդություններ ևս հույների ծագման մասին)։

Բիլադ ար-Ռումի սահմաններն են. արևելքից ու հյուսիսից թուրքերը, խազարների և ռուսների երկրները, հարավից՝ Ասորիքը և Ալեքսանդրիան. արևմուտքից՝ ծովն ու Անդալուսը։ Հին ժամանակներում կայսրերի օրերին, հույների երկրի մաս էին կազմում Ռակկան, ասորական երկրները, նույնիսկ հույների արքայանիստ քաղաքն էր Անտիոքը. բայց մուսուլմանները հեռացրին նրանց մինչև իրենց երկրի ծայրագույն մասերը։

Ահմադ իբն Մուհամմադ ալ-Համադանին Բիլադ ալ-Ռումը բաժանում է 14 նահանգների, որոնցից երեքը նեղուցից այն կողմն են գտնվում, իսկ 11-ը՝ նեղուցից այս կողմ։

Անդրնեղուցյան նահանգներն են.

1. Թալայա, որը Կոստանդնուպոլսի շրջակա երկրամասն է։

Սրա սահմաններն են, արևելքից՝ այն նեղուցը, որը երկարում է Սև ծովից մինչև Միջերկրական ծովը, հարավից՝ Միջերկրական ծովը, արևմուտքից՝ Միջերկրականից մինչև Սև ծովը երկարող մի պարիսպ, որը «Մակրուն տայխուս» է կոչվում, այսինքն՝ երկար պարիսպ։ Այս պարիսպը չորս օրվա ճանապարհաչափ երկարություն ունի և գտնվում է Կ. Պոլսից երկու օթևան այն կողմ։ Սույն

---

* Հարեթ։

նահանգը բաղկացած է առավելապես թագավորին և պատրիկներին պատկանող դաշտերից և արոտավայրերից։

Հունական երկրների տեղագրության մեջ չկարողացա ստուգել մի քանի անունների ճշտությունը, հետևաբար խնդրում եմ իրականության տեղյակ անձերից սրբագրել հավանական սխալները՝ եթե կան։

2. Տարակիա, տարածվում է նախորդ նահանգից այն կողմ և որի սահմաններն են, արևելքից՝ վերոհիշյալ երկար պարիսպը, հարավից՝ Մակեդոնիան, արևմուտքից՝ Բուրջանի երկիրը։ Այս նահանգի երկարությունն է տասնհինգ օրվա ճանապարհաչափ, իսկ լայնությունը՝ Սև ծովից մինչև Մակեդոնիայի սահմանը՝ երեք օրվա ճանապարհաչափ։ Ստրատեգոս տիտղոսը կրող նահանգապետը Կոստանդնուպոլսից յոթ օթևան հեռավորության վրա Արկադա կոչված բերդում է բնակվում։ Նահանգը ունի հինգ հազար զինվոր։

3. Մակադունիա, որի սահմաններն են, արևելքից՝ հիշյալ երկար պարիսպը, հարավից՝ Միջերկրական ծովը, արևմուտքից՝ սլավների երկիրը և հյուսիսից՝ Բուրջանիի երկիրը։ Նահանգի լայնությունն է հինգ օրվա ճանապարհաչափ, երկարությունը՝ տասնհինգ օրվա ճանապարհաչափ, իսկ նահանգապետ ստրատեգոսի բնակարանն է Բանդուս կոչված գյուղը։ Ունի բանակ, բաղկացած հինգ հազար զինվորներից։

Նեղուցից այս կողմ տարածվող տասնմեկ նահանգներն են.

1. Աֆլաջունիա, որը տարածվում է Սև ծովից մինչև նեղուցը, առաջին սահմանն է Անթիմաթը, երկրորդը՝ Սև ծովը, երրորդը՝ Արմինիակը, չորրորդը՝ Բուկելարը։ Ստրատեգոսի բնակավայրն է Ալլա արվարձանը և Նայկուս կոչված գյուղը։ Նա ունի նաև Սամաս կոչված մի ուրիշ բնակավայր։ Բանակի թիվն է հինգ հազար։

Նրան կից է —

2. Անթամաթ նահանգը, որի առաջին սահմանն է նեղուցը։ Բանակի թիվն է չորս հազար, նահանգի բնակիչները հատկացված են թագավորի ծառայությանը և ռազմական գործերով չեն զբաղվում։

Նրան կից է —

3. Աբսիկ նահանգը, որի առաջին սահմանն է նեղուցը, երկրորդը՝ Անթիմաթը, երրորդը՝ Անաթալկուս նահանգը, չորրորդը՝ Բարկասիս նահանգը։ Այս թեմի ստրատեգոսի բնակավայրն է Բաթնա բերդը, իսկ բանակը բաղկացած է վեց հազար զինվորներից։

4. Բարկասիս նահանգը, որի առաջին սահմանն է Նեղուցը, երկրորդ սահմանը՝ Աբսիկը, երրորդը՝ Անաթոլկուսը, չորրորդը՝ Միջերկրական ծովը։ Ստրատեգոսի բնակավայրն է Վարիթուն բերդը, որը Կանիոս է կոչվում։ Բանակի թիվն է տասն հազար։

Նրան կից է —

5. Անաթոլիկոս նահանգը, որ նշանակում է արևելք և որը Ռումի երկրի ամենամեծ նահանգն է։ Սահմաններն են, առաջին՝ Աբսիկը և Բարկասիսը, երկրորդ՝ Բուկելարը։ Ստրատեգոսի բնակավայրն է Մարջ ալ-Շահմը։ Բանակը բաղկացած է տասնհինգ հազարից, նահանգն ունի երեք «Թարմուխ» և պարունակում է Ամուրիան, որի ավերակները դեռ մնում են, Բալիսը, Մանբիջը, Մարաշը, որ կոչվում է «Հիսն Բուրղութ»*։

6. Սալավկիա նահանգը, դեպի ծովի կողմը, որի առաջին սահմանն է Միջերկրական ծովը, երկրորդ սահմանը՝ Բարկասիսը, երրորդը՝ Անաթոլիկոս նահանգը և չորրորդը՝ Թարսուսի կիրճերը Կալամիայի և Լամիսի ուղղությամբ։ Այս նահանգի կառավարչի անունն է «Քիլիրջ» և նրա աստիճանը Ստրատեգոսի աստիճանից ցած է։ Բառը ըստ ոմանց նշանակում է կիրճերի տեր, ըստ ուրիշների՝ արքայի դեմք։ Նրա բնակավայրն է Սելևկիան։

Այդ նահանգին կից է.

7. Ալ-Կուբաղակ նահանգը, որի առաջին սահմանն է Թարսուսի լեռները, Ադանան և Միսիսը, երկրորդը՝ Սելևկիայի նահանգը, երրորդը՝ Թալղուսի նահանգը, չորրորդը՝ Սիմլար և Խարշանա։ Կառավարչի բնակավայրն է Հիսն Կարան։ Բանակի թիվն է չորս հազար զինվոր։ Ունի բազմաթիվ ամուր բերդեր, նրա քաղաքներն են Կուրիա կամ Իկոնիա, Մալակոնիա, Ջարգիլիա և ուրիշներ։

Նրանց կից է—

8. Խարշանա նահանգը, որի առաջին սահմանն է Կայարի նահանգը, երկրորդը՝ Մալաթիայի կիրճը, երրորդը՝ Արմինիակ թեմը, չորրորդը՝ Բուկելար նահանգը։ Նահանգապետի բնակավայրն է Խարշանա բերդը։ Բանակն ունի չորս հազար զինվոր։ Խարշանայի բերդերից են Դարիջան, Ռամահսուն, Բարուկթան և Մաքթերինը։

Սրան կից է —

9. Ալ-Բուկելար նահանգը, որի սահմաններն են, առաջին՝ Անաթոլիկոսը, երկրորդը՝ ալ-Կուբաղակ և Խարշանա, երրորդը՝

---

* Հիսն բերդ է նշանակում։

*Արմինիակ և չորրորդը՝ Աֆլաչունիա նահանգները։ Նահանգապետի բնակավայրն է Անկարան, որտեղ կա Իմր ուլ-Կայս բանաստեղծի գերեզմանը։ Բանակի թիվն է ութ հազար զինվոր։ Նահանգն ունի երկու թուրմախ, ունի բերդեր և քաղաքներ։*

*10. Արմինիակ նահանգը, որի սահմաններն են, առաջին՝ Աֆլաչունիան, երկրորդը՝ Բուքելարը, երրորդը՝ Խարշանան և չորրորդը՝ Ջալադիա և Սև ծով։ Ստրատեգոսի բնակավայրն է Ամասիայի բերդը։ Բանակի թիվն է ինն հազար զինվոր։ Ունի երեք թուրմախներ, ինչպես նաև քաղաքներ և բերդեր։*

*11. Ջալադիա նահանգը, որի սահմաններն են, առաջին՝ հայկական երկրները, որոնց ժողովուրդը Արմինիային սահմանակից լինելով հակառակ է հույներին, երկրորդը՝ Սև ծովը, երրորդը՝ Արմինիակ նահանգը։ Ստրատեգոսի բնակավայրն է Ակրիտան։ Բանակի թիվն է տաս հազար զինվոր։ Ունի երկու թուրմախ, կան բերդեր և քաղաքներ։*

*Ալ-Համադանին ասում է, թե հունական երկրների նահանգների վրա թագավորի կողմից նշանակված են նահանգապետներ Ստրատեգոս անվամբ, բացառությամբ ալ-Անմաթի կառավարչի, որը կոչվում է Դոմեստուկ և բացառությամբ Սելևկիայի և Խարշանայի կառավարիչների, որոնք կոչվում են Քիլիրջ։ Իսկ ամեն մի բերդի վրա կարգված են մնայուն պաշտոնյաներ՝ Բարկլիս կոչված, որոնք նայում են ժողովրդի դատին։*

*Ինձ թվում է, սակայն, թե վերոհիշյալ անուններն ու սահմանումները վերաբերում են անցյալին, որովհետև տրված տեղագրության մեջ չի հիշվել Բիլադ ար-Ռումի մասը կազմող և այժմ մուսուլմանների ձեռքը գտնվող նշանավոր քաղաքների մասին, ինչպես Գոնիա, Ակսարայ, Անտիոք, Տրապիզոն, Սվազ և այլն։*

*Մոտազ Բ՛իլլահ[208] խալիֆի հետևորդներից մեկը հետևյալն է պատմում.*

*Մի օր հունական երկրների խարաջի քանակի շուրջ խալիֆի կողմից իրեն հղված մի հարցումի պատասխանելով՝ Ահմադ իբն Իսրայիլը հետևյալն ասեց. «Ով հավատացյալների ամիրապետ, մի անգամ մասնակցում էի պապիդ՝ Մոտասիմի արշավանքին, երբ մտանք հունական երկիրը, մեզ մոտ եկավ այդ երկրի հարկահավաքը, Բասիլ ալ-Խարշանին, որին հարցում արեցինք երկրի խարաջի քանակի մասին, և պատասխանեց, թե հինգ հարյուր կենդինարից մի քիչ ավելի է։ Հաշվելով գտանք, որ երեք միլիոն դինարից պակաս է։ Այն ժամանակ Մոտասիմը հրամայեց հետև-*

յալը գրել հույների թագավորին. քու պաշտոնյայից տեղեկացանք երկրիդ խարաջի մասին, որն այսքան է, մինչդեռ իմ թագավորության ամենահետին նահանգը այդ գումարից ավելի տուրք է վճարում։ Ապա, քանի որ այս է երկրիդ եկամուտը, ուրեմն ինչո՞ւ շարունակում ես դիմագրել ինձ»։

Էջ 876

160. Ար-Ռուհա[209] — الرها (Ուռհա)

Քաղաք է Ջազիրայում, Մուսուլի և Դամասկոսի միջև, որոնցից հեռավորությունը վեց փարսախ է։

Ռուհա անունը տրված է նրա հիմնադրի անունից, որը կոչվում էր Ռուհա իբն ալ-Բալանդա իբն Մալիք և այլն։ Ժողովուրդն ասում է, այսպես է կոչվում Ռուհայից՝ Ռումի որդի, Լանթայի որդի, Սեմի որդի, Նոյի որդու անունից։

Յահյա իբն Ջարիր քրիստոնյան ասում է, թե Ռուհայի հունարեն անունն է՝ Ադասա* և հիմնվել է Ալեքսանդրի մեռնելուց վեց տարի հետո Սելևկոս թագավորի ձեռքով, ինչես գրել ենք Ադասա անվան տակ։

Աբու-լ-Ֆարաջ ալ-Իսպահանին հիշատակում է, որ Աբու Մուհամմադ Համզա իբն ալ-Կասիմ Դամասկոսցին գրել է. «Այցելեցի Ռուհայի եկեղեցին՝ դեպի Իրաք ճանապարհիս վրա։ Մտա այդ եկեղեցին և շրջեցի ու անձամբ տեսա ինչ որ լսել էի նրա մասին։ Սյուներից մեկի վրա մի գրություն կ՚ար, որը կարդացի, և որ պարունակում էր խորհրդածություններ գործված մեղքերի մեղանչումի, մահվան պատրաստության և անդրշիրիմյան կյանքի մասին»։

Էջ 880

161. Ռահվա[210] — رهوة

Ընդարձակ ամայի դաշտ՝ Խլաթի մոտերքում։

Էջ 902

162. Զար[211] — الزاب

Ասում են, թե այս անունը պարսկական հին թագավորներից մեկի Զաբի անունից է։

* Եդեսիա։

Երկու Զաբ կա։ Վերին Զաբը, Մուսուլի և Արբիլի միջև, որը բխում է Ադրբեջանի և Բաբղիշի միջև սարի վերև գտնվող մի ակից և իջնում է դեպի հովիտ։ Գետի ջուրը կարմրավուն և պղտոր է։ Հոսում է լեռներով և ձորերով ու խորդուբորդ վայրերով, ապա հետզհետե հստականում է ու հասնում մինչև Մուսուլից երկու օթևան հեռու գտնվող մի գյուղ. ապա անցնելով քաղաքի շրջակայքից, թափվում է Տիգրիսի մեջ՝ մեկ փարսախ այն կողմը։ Զաբի այս ճյուղը ջրի հոսանքի սաստկության պատճառով կոչվում է Զաբ ալ-Մաջնուն*։

Ստորին Զաբը բխում է Շահրզուրի և Ադրբեջանի միջև գտնվող Սալակ կոչված լեռներից։ Ապա անցնում է Դակուկայի և Արբիլի մեջտեղից։ Երկու Զաբերի միջև երեք-չորս օրվա հեռավորություն կա։ Զաբը թափվում է Տիգրիսի մեջ՝ Սինում։

Էջ 922

163. Զարավանդ[212]— زرواند (Զարևանդ)

Միսար իբն Մուհալհիլը Ուրմիայում գտնվող Մուրաթ** լճի մասին խոսելիս ասել է, թե այդ լճի վրա կան ամուր բերդեր, իսկ լճի կողքին կա մի վայր, Վադի ալ-Քուրդ կոչված, որտեղ կան քաբերի կույտեր։ Շրջապատը հարուստ է ընտիր տեսակի պտուղներով և հանքերով։

Էջ 957

164. Զավազան[213]—زوزان (ազ-Զավազան)

Գեղեցիկ երկիր՝ Հայաստանի լեռների, Խլաթի, Ադրբեջանի, Դիարբաքրի և Մուսուլի միջև։ Բնակիչները հայեր են, թեև կան նաև քրդական ցեղախմբեր։

«Նվաճումների գրքում» ասված է, որ երբ Իյադ իբն Ղանմը դրավեց Ջազիրան և հասավ մինչև Կարզա*** և Բազաբդա, նրան ներկայացավ ազ-Զավազանի պատրիկը և ապահովեց իր երկիրը՝ հարկ տալու պայմանով, և դաշն կնքվեց հիջրի 19 թվականին (2 հունվ.— 20 դեկտ. 640)։

Իբն ալ-Աթիրն ասում է, որ Զավազանը ընդարձակ գավառ է և գտնվում է Տիգրիսի արևելակողմում, Ջազիրա իբն Օմարից սկսած։

* Գիժ Զաբ։
** Թթու։
*** Կորդուք։

Սահմանագիծը Մուսուլից երկու օրվա ճանապարհ հեռու է, սկըս-վում է Խլաթից և վերջանում Ադրբեջանում՝ Սալմաստ նահանգի սկզբնավորությամբ։ Այնտեղ կան բազմաթիվ բերդեր, որոնք պատկանում են Բաշնավիա և Բուխտիա քրդական ցեղերին։ Բաշ-նավիտներին է պատկանում Բարկա բերդը և Բաշիրը, իսկ բուխ-տիաններին է պատկանում Ջուրզակիլ բերդը, որ իրենց լավագույն բերդն է և իրենց պետի աթոռանիստ վայրը։ Կան նաև Ատիլը, Ալ-լուսը, Բազել Համրեն։ Իսկ Մուսուլի տերերին են պատկանում Ալ-կի, Արվախ, Բախավիա, Բարխու, Քինքուր, Նիրուհ և Խավշար վայրերը։

Էջ 959

165. Զ ո ւ մ[214] — زوم

Վայր Արմինիայի ծայրամասում, Մուսուլի մոտ։ Թերևս «Զու-մի» կոչված պանիրը այդտեղից է։ Այդ վայրից է «Զուման» անու-նը, որը նույն գավառում ապրող թուրքական ցեղի անունն է։

ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐ

Էջ 7

166. Ս ա տ ի դ ա մ ա[215] — سطيداما

Ասում են, թե գետ է Արզնի մոտ, որտեղ Խոսրով Փարվիզը ուղարկեց Այաս իբն Կաբիսա ատ-Թայուն՝ հույների դեմ կռվելու և այդ վայրում էր, որ նա հաղթանակ տարավ նրանց վրա և փառք վաստակեց։ Քասրավին այս վայրը հիշատակում է՝ Տիգրիսի մա-սին տեղեկությունների շարքում։

Էջ 33

167. Ս ա բ ա ս տ ի ա — سبسطية (Սեբաստիա)

Սումայսաթի մոտ քաղաք է և գտնվում է Վերին Եփրատի վրա իր շրջակա գավառներով։ Ունի պարիսպ։

Էջ 34

168. Ս ա բ ա լ ա ն[216] — سبلان

Բարձր լեռ Արդաբիլ քաղաքի դիմաց, Ադրբեջանի հողի վրա։ Այդ լեռան վրա կան բազմաթիվ գյուղեր և առաքինի մարդկանց վկայարաններ։ Գագաթը ձյունապատ է ամառ թե ձմեռ ժամանակ։

Էջ 63

*169.* Սիրաջ Թայր[217]— سراج طير

*Գավառ է Երրորդ Արմինիայում։ Ոմանք ասում են՝ Երկրորդում։*

Էջ 61

*170.* Սարաւ[218]— سراو

*Քաղաք Ադրբեջանում. նրա և Արդաբիլի միջև երեք օրվա հեռավորություն կա, և գտնվում է Արդաբիլի ու Թավրիզի միջև։ Թաթարներն ավերեցին այն հիջրի 617 թվականին (1220—1221)։ Թող ալլահը նզովի նրանց, և սպանեցին այնտեղ գտնվող ամբողջ բնակչությունը։*

Էջ 68

*171.* Սարբաբ[219]— سربط

*Վայր Հայաստան երկրում, որն ունի մի մեծ գետ՝ Տիգրիսի մեջ թափվող, և որի մեկ վտակը դուրս է գալիս Արզնի վերևից, Խունդի լեռներից, որը Հայաստանի հողի վրա է։*

Էջ 82

*172.* Սուրմարի[220]— سرماري *(Սուրմալու)*

*Մեծ բերդ և ընդարձակ ու հոչակավոր նահանգ՝ Թիֆլիսի և Խլաթի միջև։*

Էջ 88

*173.* Սարիր[221]— سرير

*Մի ընդարձակ երկիր է ալանների և Բաբ ալ-Աբվաբի միջև։ Ունի միայն երկու անցք, մինը դեպի խազարների երկիրը, մյուսը՝ դեպի Արմինիա։ Բաղկացած է տասնութ հազար լեռնային գյուղերից։ Իսթախրին գրում է, թե Սարիրը թագավորության անուն է, ոչ թե քաղաքի անուն, և թե Սարիրի ժողովուրդը քրիստոնյա է։*

*Ասում են, թե այդ գահը պատկանում էր պարսից թագավորներից մեկին և շինված էր ոսկուց։ Երբ նրանց տիրապետությունը*

*վերացվեց, պարսից թագավորներից մեկը, իմ լսածի համաձայն Բահրամ Ջուրի որդիներից մեկը, իր հետ տարավ գահը, և նրանց սերնդատանը մինչև օրս էլ իշխում է։ Ասում են, թե պարսիկների թագավորը շատ տարիների ընթացքում է շինել տվել այդ քաղաքը։*

*Սարիրի նահանգի և Սամանդար քաղաքի միջև երկու փարսախ հեռավորություն կա և երկուսի միջև խաղաղության դաշինք գոյություն ունի։ Նույնպես դաշինք կա Սարիրի և մուսուլմանների միջև, բայց և այնպես յուրաքանչյուրը զգուշանում է մյուսից։*

*էջ 120*

*174.* Սալմաս[222] — سلماس *(Սալմաստ)*

*Հռչակավոր քաղաք Ադրբեջանում. նրա և Ուրմիայի միջև երկու օրվա ճանապարհ է, իսկ նրա և Թավրիզի միջև՝ երեք օրվա։ Այս քաղաքը ավեր վիճակում է, նրա և Խոյի միջև հեռավորությունը մեկ օթևան է։*

*էջ 144*

*175.* Սամանդու[223] — صمندو *(Ծամնդավ)*

*Հույների երկրի մեջ գտնվող քաղաք, որի վրա արշավեց Սայֆ ադ-Դաուլան հիջրի 339 թվականին (20 հունիս 950-9 հունիս 951), և Դոմուստուկը նրա առաջից փախուստ տվեց։*

*էջ 151*

*176.* Սումայսաթ[224] — سميساط *(Սամոսատ)*

*Քաղաք Եփրատի վրա՝ Ռումի երկրում, գետի արևմտյան ափի վրա։ Քաղաքի մի մասը գրավում է բերդը։ Այդ քաղաքում բնակվում են հայեր։ Ներկայումս նրա վրա իշխում է Մալիք ալ Աֆդալ Ալի իբն Մալիք ան-Նասիր Յուսուֆ իբն Այուբ իբն Սալահադդինը։*

*էջ 157*

*177.* Սանտրուս[225] — سنبوس

*Սամանդուի (Ծամնդավի) մոտ մի վայր է՝ Ռումի երկրում։ Նրա մասին հիշատակվում է Սայֆ ադ-Դաուլային վերաբերող տեղեկությունների մեջ։*

էջ 160

178. Սինջալ[226]— سنجال

Գյուղ է Հայաստանում, ոմանք ասում են Ադրբեջանում։

էջ 160

179 Սինջարագ[227]— سنجاق

Հիշատակված է Խալխալի գյուղերի շարքում։

էջ 162

180. Սանջա[228]— سنجه (Շնջե)

Ալ Ադիբին ասել է, որ մեծ գետ է սա, որի մեջ մտնել չի կարելի, որովհետև շարժուն ավազ ունի, և ամեն անգամ, որ մարդ փորձի ոտքը դնել մեջը, խրվում է ավազի մեջ։ Գետը հոսում է Դիար Մուզարի մասը կազմող Հիսն Մանսուրի և Քայսումի միջով։ Այս գետի վրա մի մեծ կամուրջ կա, որը աշխարհի հրաշալիքներից մեկն է։ Այն կանգնած է մեկ ափից դեպի մյուսը ձգված միակ կամարի վրա։ Այդ կամարի երկարությունն է երկու հարյուր ոտնաչափ։ Կառուցված է համաչափորեն շարված քարերով։ Ամեն մի քարի երկարությունն է տաս արմնկաչափ և բարձրությունը՝ հինգ արմնկաչափ։

էջ 166

181. Սինդաբայա[229]—سندابل

Ադրբեջանում գտնվող մի վայր է, Բաղի մարզերում, և պատկանում էր խուռամյան Բաբեկին։

էջ 168

182. Սանգ Ասփիդ[230]— سنك اسفيد

Մեծ լեռ Հայաստանում, ասում են՝ Խլաթի և Մանազկերտի մոտերքը։

Էջ 194

183. Սուկ Վարդան[231]— سوق وردان

Եգիպտոսի Ֆուսթաթում* գտնվող շուկա, որը այդպես է կոչված Վարդան Ռումիի անունից։ Նա ազատագրվել էր Ամրու իբն ալ-Ասի[232] կողմից և Իսպահանում ձեռք բերված գերիներից էր։

Այս ազատագիր Վարդանի մասին պատմում են Մալիք իբն Զայդ ան-Նաշրին և Ալի իբն Ռիահը. ականատես եղավ Եգիպտոսի դրամմանը. մի օր Ամր իբն ալ-Ասր գտնվում է Մուավիա խալիֆի մոտ Դամասկոսում. իրեն հետ էր նաև իր ազատագիր Վարդանը։ Խոսակցության ընթացքում Մուավիան հարց է տալիս, «Ի՞նչ է պակասում քեզ, ով Աբու Աբդալլա, որպեսզի երջանկությունդ կատարյալ լինի»։ Նա էլ պատասխանում է ակնարկելով Վարդանին. «Քանի որ այսպիսի սրտակից բարեկամ ունեմ, ուրիշ որևէ բան չի պակասում ինձ»։ Այս անգամ խալիֆը խոսքն ուղղելով Վարդանին հարցնում է. «Իսկ քեզ, Աբու Օսման, ի՞նչ է պակասում՝ կատարյալ երջանիկ լինելու համար»։ Վարդանը պատասխանեց. «Կփափագեի երջանկություն վերադարձնել մի մարդու, որը դժբախտության մեջ է ընկած»։ Մուավիան այն ժամանակ ասում է. «Այդպիսի իշխանություն միայն ինձ է պատկանում»։ Վարդանը պատասխանում է. «Ճիշտ է, ով հավատացյալների հրամանատար, որ դու ինձնից ավելի ես կարող այդ բանն անել, բայց ընդունիր, որ քեզնից առաջ ես խորհեցի այդ մասին»։

Մուհամմադ իբն Յակուբն ասել է, որ Վարդանը հունական Հայաստանից էր և Եգիպտոսի հարկերի տեսուչ կարգվեց Մուավիայի կողմից, Ամրի մահից հետո։ Վարդանը Ամրի կողմից ստացավ ընդհանուր վերակացուի պաշտոնը, և նա ոչ մի գործ չէր կատարում առանց Վարդանի հետ խորհրդակցելու և իր մոտից երբեք չէր հեռացնում նրան։

Վարդանը սպանվեց Ալեքսանդրիայում հիջրի 35 թվականին (655 թ. հուլիսի 2—656 թ. հունիսի 29)։

Էջ 197

184. Աս Սուվայդա[233]— السويداء

Հոչակավոր քաղաք է Դիար Մուդարում, Խառանի մոտ։ Նրա և Ռումի երկրի միջև տարածվում է բարեբեր ու լիառատ մի շրջան, որի բնակիչները մեծ մասամբ քրիստոնյա հայեր են։

* Հին Կահիրե։

էջ 208

*185.* **Սիավարդ**[234] — سياورد *(Սևորդիք)*

*Մի վայր է Ադրբեջանում։*

էջ 209

*186.* **Սայհան**[235] — سيحان

*Սահմանային մարզերի մեծ գետ է, հոսում է Մսիսի մոտով, Անտիոքի և Ռումի երկրի միջև, անցնում է Ադանայով, որից հետո բաժանվում է մոտ վեց ճյուղերի և թափվում է Ռումի ծովը։*

*Մուտաննաբբին բանաստեղծություն է գրել՝ Սայֆ ադ-Դաուլային նվիրելով գովաբանական տողեր, որոնց մեջ ասում է.*

*«Արշավանքների այդ հերոսը իր սուրը չի հանգստացնի*
*Մինչև ցրտերը լինեն այն աստիճան, որ Սայհանը սառչի»։*

էջ 215

*187.* **Սայսաբան**[236] — سيسبان

*Կոչվում է նաև Սայսավան. քաղաք Առանի կողմերում. նրա և Բայլականի միջև չորս օրվա ճանապարհ է։ Այդ լուրը ինձ տվեց բնակիչներից մի մարդ։*

էջ 216

*188.* **Սայսաջան**[237] — سيسجان

*Գտնվում է հինգերորդ դոտու մեջ. մի քաղաք է Առանից այն կողմ, որը գրավեց Հաբիբ իբն Մասլաման՝ Հայաստանի արշավանքի ժամանակ։ Ժողովուրդը հաշտություն խնդրեց հարկ վճարելու հանձնառությամբ՝ Օթման իբն Աֆանի օրով։ Սայսաջանի և Դվինի միջև 16 փարսախ հեռավորություն կա։*

էջ 217

*189.* **Սիսիա**[238] — سيسيه

*Բնակիչներն անվանում են Սիս։ Ներկայումս Ասորիքի սահմանագլխի մեծագույն քաղաք է։ Անտիոքի և Տարսոնի միջև, Ա-*

նարզաբայի մոտ, բնակավայրն է այն երկրի հայոց սուլթան Իրն Լավոնի։

Ալ-Վակիդին գրում է, թե Ասի ժողովուրդը քաղաքից հեռանալով հույների երկրների վերին կողմերը քաշվեց հիջրի 94 կամ 93 թվականին (711—713)։

Մարասիդից էջ 22. 5-րդ հատոր

190. Սիվաս[239]— سيواس (Սվազ)

Շատ ծանոթ քաղաք է Ռումի երկրում, ինչպես գրված է Կամուսում։

էջ 225

191. Շաբարան[240]— شابران (Շապօրան)

Քաղաք է Առանի գավառներում, որը հիմնեց Անուշիրվանը։ Ոմանք ասում են, թե Բաբ ալ Աբվաբի գավառների մեջ է։ Նրա և Շիրվան քաղաքի միջև մոտ 20 փարսախ հեռավորություն կա։

էջ 259

192. Շատար[241]— شتر (Շաթառ)

Առանի երկրում մի բերդ է, Պարտավի և Գանձակի միջև։

էջ 282

193. Շարվան[342]— شروان (Շիրվան)

Քաղաք է՝ Բաբ ալ-Աբվաբի կողմերում, որը կառուցեց Անուշիրվանը և իր անունով կոչեց։ Հետագայում լեզվական վրիպումի արդյունքով, բառը կրճատվեց կիսով և կոչվեց Շիրվան։ Այն գտնըվում է Բաբ ալ-Աբվաբից հարյուր փարսախ հեռավորության վրա։ Եվ գիտուններն ասում են, թե այդ քաղաքի մոտ է գտնվում Մովսեսի ժայռը, որի մասին ակնարկություն կա Ղուրանում։ Ժայռը կոչվում է Շիրվանի ժայռ, ծովը կոչվում է Ջիլանի ծով, գյուղն էլ կոչվում է Բաջարվան, որտեղ երիտասարդ գերիներ են բերում վաճառելու։ Այս ամբողջը Արմինիայի կողմերն են՝ Դարբանդի մոտ։

Ասում են նաև, որ Շիրվանը նահանգ է, որի մայրաքաղաքն է Շամախին, որ գտնվում է Խազարների ծովի մոտ։ Այնտեղից են Հադիթի գիտնականներ և ուրիշ ականավոր անձեր։

էջ 303

194. Շուղր[243] — الشغر

Ամուր բերդ է, որի դիմացը կա մի ուրիշը, որ կոչվում է Բաքաս։ Գտնվում են երկու լեռների գագաթի վրա, որոնց միջև խրամի նման մի հովիտ կա, որովհետև նրանք գտնվում են դեմ առ դեմ։ Այն Անտիոքի մոտ է և այսօր պատկանում է Հալեբի տիրոջը՝ Մալիք ալ-Ազիզին[244]՝ Մալիք ազ-Զահիրի որդուն։ Աթաբեկն է Շահաբադին Տուղրիլ ար-Ռումի ալ-Խադիմը։

էջ 310

195. Շակա — شقى

Ոմանք ասում են նաև Շաքա, որը մի վայր է Արմինիայում։

էջ 311

196. Շաքա[245] — شكّى (Շաքե)

Արմինիայում հայտնի նահանգ է, որտեղի կաշեղենները հռչակավոր են։ Գտնվում է Կուր գետի վրա, Թիֆլիսի մոտերքում։

էջ 317

197. Շամախի[246] — شماخى

Բազմամարդ քաղաք, որ Շիրվանի երկրի մայրաքաղաքն է, ենթակա է Աղվանքին և սահմանակից է Բաբ ալ-Աբվաբին։ Նրա տերն է Դարբանդի տիրոջ եղբայրը՝ Շիրվան շահը։ Իսթախրին մատնանշում է, թե այն նոր քաղաք է։ Պարտավից մինչև Բարզանջ տասնութ փարսախ հեռավորություն է։ Շամախիից անցնում է Կուրը։ Այնտեղ մինբար* չկա։ Իսկ Շամախիից մինչև Շաբիրան փոքր քաղաքը որտեղ մինբար կա, երեք օրվա ճանապարհ է։

* Մզկիթում աղոթքի բեմ։

էջ 319

198. Շ ի մ շ ա թ[247] — شمشاط

Հունական երկրում քաղաք է, Եփրատի եզերքին։ Նրա արևելյան կողմում է գտնվում Բալուլան, իսկ արևմտյան կողմում՝ Խարբերդը։ Այս քաղաքը ներկայումս ենթակա է Խարբերդին։

Այժմ Շիմշաթը ավերակ է և սակավաթիվ բնակչություն ունի։ Զպետք է այս քաղաքը շփոթել Սումայսաթի հետ, որը նույնպես Եփրատի վրա է կառուցված, արագահոս ջրեր ունի և ենթակա է Ասորիքին, մինչդեռ մյուսը Հայաստանի մասն է կազմում։

Ասում են, թե այս քաղաքը կառուցել է Նոյի թոռը՝ Շիմշաթը։

էջ 320

190. Շ ի մ շ ա ք ա զ ա դ[248] — شمشکازاد (Չմշկածագ)

Բերդ և քաղաք՝ Ամիդի և Մալաթիայի միջև։ Ունի շրջակայք և գտնվում է Առանի բերդի մոտ։

էջ 322

200. Շ ա մ ք ո ր[249] — شمکور

Մի բերդ է Աղվանքում. նրա ու Գանձակի միջև հեռավորությունը մի օրվա ճանապարհ կամ տասնմեկ փարսախ կլինի։

Շամքորը, որը հին քաղաք է, նվաճեց Սալման իբն Ռաբիա զորավարը՝ Պարտավը գրավելուց հետո։ Այս շեն ու բազմամարդ քաղաքը ավերեցին Սանավարդիանները*, որոնք ըմբոստացան Եզիդ իբն Ուսայդի Արմինիայից հեռացած օրերում։ Հետո նրանց... զըսպեց Բուղան, Մուտասիմի մավլան, երբ կառավարիչ կարգվեց Արմինիայի, Շիմշաթի և Ադրբեջանի վրա հիջրի 240 թվականին (2 հունիսի 854—21 մայիս 855)։ Նա վերաշինեց քաղաքը և Ալ-Մուտավաքիլիա անվանեց։

էջ 324

201. Շ ա մ ի ր ա մ[250] — شمیران (Շամիրամ)

Հայաստանում քաղաքի անուն։

* Մանարնիրը։

էջ 353

202\. Շիզ[251] — [illegible]

Գավառ Ադրբեջանում, որը գրավեց Մուղիրա իբն Շուբան՝ հաշտության դաշնագրով։ Ասում են, թե բառը Ջիսի (կամ Գիսի) արաբացված ձևն է։ Պատմում են դաբձյալ, թե այստեղից է մոգերի մարգարեն՝ Զրադաշտը։ Ուրմիան այս գավառի գլխավոր քաղաքն է։

Միսար իբն ալ Մուհալհիլն ասել է, թե այն ժամանակ, երբ նրբին ապրանքների վաճառքը հասութաբեր գործ դարձավ, մտադրեցի թանկագին մետաղների առևտրով զբաղվել և գնացի Շիզ, որը քաղաք է Մարաղայի, Զինջանի, Շահրզուրի և Դայնավարի միջև, լեռների միջում, որոնք պարունակում են ոսկու, սնդիկի, կապարի, արծաթի, դեղին զառիկի հանքեր, նաև ջուստ կոչված քարի հանքեր։ Նրա ոսկին երեք տեսակ է, մեկ տեսակը կոչվում է «կումսի», որը փոշի է, որ և ջրի վրա թափվելով թրջվում է և մնում է ոսկի ավազը՝ մանր հատիկներով, որն հավաքվում է սնդիկի միջոցով։ Նրա գույնը բնական կարմիր է և ծանր. կրակի ազդեցության ենթարկվելով ոչ գունատվում է և ոչ էլ կակղանում։ Մյուս տեսակը կոչվում է «սահրակի»։ Գտնվում է շերտերով. ծանրությունը մի հատիկից մինչև 10 մսխալ է լինում։ Փորձաքարը ներկվում է՝ թեթև քսվելով։ Մի ուրիշ տեսակն էլ կոչվում է «սահանդի», սպիտակ, կակուղ, ծանր և փորձաքարի վրա կարմիր հետք է թողնում. գունատվում է ծծմբաթթվով և գործածվում է դրամների պատրաստության համար։ Այստեղի զառիկը ավելի ընտիր, ավելի ծանր և ավելի մաքուր է, քան Խորասանի զառիկը։ Իսկ իր արծաթը գնահատվում է նույն գնով, ինչ որ ածուխը՝ նրանց մոտ։

Այս քաղաքը շրջապատված է պարսպով և նրա կենտրոնում կա մի լճակ, որի տարողությունը չափել հնարավոր չէ։ Երբ այս ջրի մեջ հող իջեցնենք, և ապա դուրս բերենք՝ քարի նման խտացած կգտնենք։ Լճակից ելնում են յոթ վտակներ, ամեն մեկը հոսում է ոլորվելով, ապա դուրս գալիս պարսպի ներքևից։

Այստեղ է գտնվում համբավավոր ատրուշանը, որտեղ կրակ է վառվում։ Այն մեծ հարգանք է վայելում արևելքից մինչև արևմուտք գտնվող մոգերից։ Շենքի գմբեթավոր գագաթի վրա կա արծաթյա մի մահիկ, որը թալիսման է։ Մի քանի իշխաններ փորձել են հանել այդ մահիկը, բայց չեն կարողացել։

Այդ կրակատան զարմանքներից մեկն էլ այն է, որ այնտեղ կրակը վառվում է յոթ հարյուր տարուց ավելի և ոչ մի մոխիր չի

մնացել ներքև։ Այդ ժամանակից ի վեր կրակը երբեք հանգցված չի։

Այդ քաղաքը կառուցել է Հուրմուզը՝ որդի Խոսրովշիրի որդի Բահրամի կրով և քարով։ Այդ կրակատան մոտ կան բարձր պալատներ, հսկա և ահավոր կառուցվածքներ։ Երբ թշնամին գալիս է այս քաղաքի վրա և իր մեքենաները ամրացնում նրա պարսպի կողին, արձակված քարերն ընկնում են մեր հիշատակած լճակի մեջ, իսկ երբ մեքենան հեռացնում են պարսպից մեկ արմնկաչափ, քարն ընկնում է պարսպից դուրս։

Այս քաղաքի կառուցման մասին պատմվում է, թե պարսիկների թագավորը՝ Հուրմուզը, լուր ստացավ, թե մի օրհնյալ երեխա է ծնվել Երուսաղեմի մոտ, Բեթլեհեմ կոչված գյուղում, որին ընծա է տարվում ձեթ և խունկ։ Թագավորը պաշտոն տվեց վստահելի մի անձի՝ վերցնել հարուստ գանձեր և նրա հետ ուղարկեց նաև շատ խունկ ու հրամայեց, որ գնա Երուսաղեմ և այնտեղ հարցնի նորածնի մասին։ Երբ նրան գտնի, ընծաները մատուցի նրա մորը, ավետի իր որդու մեծ փառքի, համբավի և բարիքների մասին և խնդրի նրանից, որ աղոթի իրեն և իր երկրի բնակիչների համար։ Մարդն արեց ինչ որ իրեն հրամայվել էր ու գնաց Մարիամի մոտ (թող խաղաղությունը նրա վրա լինի) և հանձնեց նրան ինչ որ իր հետ տարել էր և ծնրադրեց նորածնի առաջ։ Երբ ուզեց վերադառնալ, մանկան մայրը նրան տվեց մի պարկ հող ու ասաց նրան. «Լուր տուր քո տիրոջը, որ այս հողի վրա մի շենք պետք է կառուցվի»։ Մարդը վերցրեց հողը և վերադարձավ։ Երբ հասավ Շիզի վայրը, որն այն ժամանակ ամայի էր, հիվանդացավ և զգալով, որ մահը մոտ է, պարկը թաղեց այնտեղ ու ինքը մեռավ։ Երբ լուրը հասավ թագավորին, նա ուղարկեց մի վստահելի անձ, հրամայելով նրան գնալ այնտեղ, որտեղ պատվիրակը մեռել է և կառուցել մի կրակատուն՝ ճիշտ նույն վայրում։ Մարդը հարցրեց, թե ինչպե՞ս իմանամ վայրը։ Թագավորը պատասխանեց՝ դու գնա և ամեն ինչ կպարզվի քո առաջ։ Երբ նա հասավ այդ վայրը, մնաց շփոթ ու անկարող շարժվելու կամ մի բան անելու։ Երբ գիշերը հասավ, նա տեսավ մի մեծ լույս, որ բխում էր գերեզմանից և հասկացավ, որ այդ էր վայրը, որը ցանկանում էր իմանալ։ Գնալով այն կողմը, նա գիծ գծեց լույսի շուրջը և այնտեղ գիշերեց։ Երբ առավոտ եղավ, հրամայեց որ այդ գետնի վրա կառուցվի այն շենքը, որ այժմս Շիզում գտնվող կրակատունն է։ Այս տեղեկությունը հաղորդող Օբայդուլլահ ալ-Ֆակիր կոչված հեղինակը ասում է թե նա վերցրել է Աբու Դուլաֆ Միսար իբն ալ-Մուհալհիլ բանաստեղծից։ Գրի առա

այդ պատմվածքը, վստահելով հեղինակի խոսքերի ճշմարտությանը, որը կարող է լինել նաև սուտ և խեղաթյուրված, բայց և այնպես հաղորդում եմ, ինչպես գտա։ Ալլահը ավելի ճիշտն է իմանում։

Ուրիշները պատմում են, թե Շիզում կա զրադաշտական անշեջ հուրը «Ադարխաշը», մոգերի հատկացված հսկա շենքի մեջ։ Երբ մի թագավոր գահակալում է, այնտեղ ուխտի է գնում հետիոտն։

Մարաղայի և շրջակայքի բնակիչները այդ վայրը կոչում են Քազնա։

էջ 396

203. Սուղդուբիլ— صغدبيل

Քաղաք է Արմինիայի հողի վրա, Կուր գետի արևելյան ափում, Թիֆլիսի դիմաց, որը կառուցեց Խոսրով Անուշիրվանը, երբ կառուցում էր նաև Բաբ ալ-Աբվաբը և այնտեղ բնակեցրեց պարսիկ ցեղին պատկանող սուղդ ժողովրդից մարդկանց և այնտեղ հիմնեց բանակատեղ։

Երբ Մուտավաքիլը Բուղային ուղարկեց Թիֆլիսի դեմ, որտեղ ապստամբել էր Իսհակ իբն Իսմայիլը, և Թիֆլիսը ամբողջությամբ այրեց, Իսհակի գլուխը բերեց Սուր Ման Ռաա (Սամարա)։ Սամարայից իր մեկնելուց մինչև վերադարձը տևեց երեսուն օր։

Իսհակ իբն Իսմայիլը ամրացրել էր Սուղդուբիլը և դարձրել էր իր բերդը. այնտեղ էր ապահովել իր գանձն ու կնոջը, որը Սարիրի տիրոջ աղջիկն էր։

էջ 401

204. Աս-Սաֆսաֆ[252]— الصفصاف

Վեճի առարկա կազմող գավառ է Մսիսի սահմանային մարզում, որի վրա արշավեց Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանը Հիջրի 339 թվականին (20 հունիս, 950—8 հունիս, 951)։

էջ 405

205. Սակլաբ[253]— صقلب (Սլավ)

Իբն ալ-Արաբին ասել է, որ սակլաբները սպիտակամորթ մարդիկ են, իսկ Աբու Ամրուն ասել է, որ կարմրագույն մարդիկ են։

Աբու Մանսուրն ասել է, որ սակլարները կարմրագույն մի ցեղ են շեկ մազերով և հարևան են խազարների երկրին՝ ռումի լեռների բարձունքներում։ Կարմրագույն մորթ ունցող մարդկանց ընդհանրապես սակլաբ են կոչում առ ի նմանություն սլավների հետ ունեցած իրենց գույնին։ Ասողներ կան, որ սակլաբների երկիրը բուլղարների երկրի և Կոստանդնուպոլսի միջև է գտնվում... և այլն։

Իբն ալ-Քալբին ասում է, որ այդ մասին վերջին տեղեկություն տվեց իր հայրը, ասելով, թե հույն, սլավ, հայ, ֆրանկ եղբայրներ՝ են։ Նրանք սերած են Լանթայից... և այլն։ Մասուդին ասում է, որ սլավները բաղկացած են այլազան ցեղերից և իրենց բնակավայրն է Խարբա (կամ Խարբի) վայրը մինչև դեպի արևմտակողմ՝ Շալու։ Նրանց միջև պատերազմներն անվերջ են։ Նրանց թագավորների մեջ կան, որոնք քրիստոնեական կրոն են գավանում և պատկանում են Հակոբիկյան աղանդին, ուրիշները ո՛չ գիրք ունեն, ո՛չ օրենք և անհավատներ են։ Նրանց մեջ ամենից ավելի քաջարիները պատկանում են մի ցեղի, որը կոչվում է Սարրի։ Նրանք կիզում են իրենց մեռյալների մարմինը, իսկ իրենց թագավորներին կամ պետերին այրում են իրենց ջորիների հետ։ Նրանց լեզուն նման է հրնդիկների լեզվին, և խազարների երկրում սրանք մեծ թվով են ապրում։

Սլավների թագավորների մեջ առաջինն է Դայրի** թագավորը. որն ունի բազմաթիվ շեներ։ Մուսուլման առևտրականները նրա երկրին հայթայթում են զանազան ապրանքներ։ Սլավների թագավորների երկրին կից կա ֆրանկների թագավորը, որն ունի ոսկու հանքեր, քաղաքներ, շատ բնակատեղեր ու մեծաթիվ բանակներ։ Հույն առևտրականները այնտեղի հետ հարաբերություն ունեն։ Սլավների թագավորության մոտ է գտնվում թուրքերի թագավորությունը։ Այս ցեղը սլավներից ավելի գեղադեմ և թվով ավելի շատ են, ավելի զորեղ և ավելի քաջամարտիկ։ Նախապես նրանք համաձայնվեցին, որ բոլորը լինեն մի թագավորի շուրջը, հետո համաձայնությունը խզվեց, ու ամեն թագավոր ինքնագլուխ դարձավ։

Էջ 413

206. Սալբ[254]— صلب

Սալբ գետը Ամիդի և Մուֆարղինի միջից անցնելով թափվում է Տիգրիսի մեջ։ Ասում են, թե այն բխում է Հալուրասից, որը այն վայրն է Ռումի երկրում, որտեղ նահատակվեց Ալի Արմանին։

---

* اخوه ախուա ցեղակից—եղբայրակից։

** ملك الدير մալիք ադ-Դայր։

էջ 507

207. Թաբարսատարան[255]— طبرستران

Կարևոր նահանգ է Արմինիայում, որի մասին հիշատակվել է «Նվաճման գրքի» մեջ։ Այդ վայրը ուրիշ վայրերի հետ գրավեց Սալման իբն Ռաբիան՝ հիջրի 25 թվականին (28 հոկտեմբերի 645—16 հոկտեմբեր 646)։

էջ 526

208. Թարսուս[256]— طرسوس

Ասողներ կան, որ այս քաղաքը իր անունը առել է Նոյի որդի, Սեմի որդի, Հաբեթի որդի, Ռումի որդի Թարսուսից։ Մի ուրիշ զրույցի համաձայն Թարսուս քաղաքի հիմնադիրն է եղել Սուլայման անունով մի մարդ, որը Ռաշիդի[257] գործակալն էր, հիջրի 190 թվականին (27 նոյ. 805—16 նոյ. 806)։ Ահմադ իբն Մուհամմադ ալ-Համադանին ասում է, որ այս քաղաքը Ասորիքի սահմանային գոտու մեջ է գտնվում՝ Հալեբի, Անտիոքի և հունական երկրների միջև։ Ահմադ իբն ադ-Թայիբ աս Սարախսին պատմում է. «Մսիսից ճանապարհվեցինք դեպի Ադանա, այնտեղից էլ դեպի Թարսուս։ Նրա և Ադանայի միջև հեռավորությունը վեց փարսախ է, իսկ Ադանայի և Թարսուսի միջև գտնվում է Բուղայի հյուրանոցը ինչպես և մի ուրիշ նոր հյուրանոց։ Թարսուսը շրջապատված է զույգ պարիսպներով, ունի ընդարձակ խրամ, վեց դռներ, և քաղաքի միջով անցնում է Բարադան գետը։ Այնտեղ է գտնվում Ալ-Մամունի դերեզմանը. նա արշավեց մինչև այդ վայրը և մեռավ»։ Իբրև մուսուլմանական սահմանային քաղաք, լավագույն զորակայանն է այն, որտեղ հավաքված են պատերազմիկներ։

Հիջրի 354 թվականին (7 հունվարի մինչև 27 դեկտեմբեր 965) հույների Նիկեփոր[258] թագավորը տիրեց սահմանային նահանգներին ու գրավեց Մսիսը, որտեղից անցավ ու բանակ դրեց Թարսուսի առաջ։ Այդտեղ էր Սայֆ ադ-Դաուլայի կողմից մի մարդ՝ իբն Զայաթ կոչված և նրա ազատագրյալը Ռաշիկ ան-Նասիմին, որոնք քաղաքը հանձնեցին հաշտությամբ։ Համաձայնությունը նախատեսում էր, որ քաղաքից մեկնել ուզող մուսուլմանները իրավունք պիտի ունենան արտահանելու իրենց կարողացած չափով ունեցվածք, առանց որևէ արգելքի, լինի հնչուն փող կամ կարասի։ Պայ-

ման դրվեց, որ լքյալ տները պիտի մնային դրավողներին, իսկ մզկիթներն ու աղոթատեղիները քանդվեցին։ Քաղաքում մնացող մարդիկ, որոնք իրենց հավատի վրա հաստատ էին, պիտի վճարեին գլխահարկ, իսկ նրանք, որոնք քրիստոնեություն ընդունեցին՝ պիտի վարձատրվեին և պիտի արժանանային հարգանքի և շնորհների։ Հեղինակը ավելացնում է, որ մուսուլման բնակիչներից մի մասը քրիստոնյա դարձան և շնորհների արժանացան, իսկ փոքրաթիվ մասը, որ հաստատ մնացին կրոնի վրա, հանձն առան տուրք վճարել։ Մեծ մասը հեռացավ ու ցրվեց իսլամական զանազան երկրներում։ Քաղաքին տիրանալուց հետո Նիկեփորը այրել տվեց կրոնական գրքերը, քանդել տվեց մզկիթները և գրավեց անհամար զենքեր, որոնք ամբարված էին մթերանոցների մեջ սկսած օմայանների օրից՝ նմանը չտեսնված քանակությամբ։

Աբուլ-Կասիմ ատ-Տաննուխին[259] պատմում է, ականատես գաղթականներից քաղելով, որ երբ Նիկեփորը գրավեց Տարսոնը, քաղաքի դրսի կողմը երկու դրոշներ կանգնեցրեց և մունետիկների միջոցով ժողովրդին հայտարարեց, թե ով փափագում է ողորմած թագավորի երկրի մեջ ապրել, վայելել արդարություն, անխտրականություն, ունեցվածքի, անձի և զավակների ապահովություն, բարի վերաբերմունք, պատվի պաշտպանություն և ուրիշ նպաստավոր պայմաններ, պետք է կանգնի այս դրոշի տակ, որպեսզի թագավորի հետ գնա հունական երկրները, իսկ ովքեր գերադասում են անարգանքը, նեղությունները, աշխատանքի և դատաստանի անարդարություն, ծանր հարկադրություն, կալվածքների և ինչքերի բռնագրավում և այս կարգի աննպաստ պայմաններ, պետք է հավաքվեն այն դրոշի տակ, որպեսզի ուղարկվեն իսլամական երկրները։ Մեծ թվով քրիստոնեացած կամ ջիզիա վճարելու հանձնառու եղող մուսուլմաններ հավաքվեցին հույների դրոշի տակ։

Թարսուս մտնելուց հետո յուրաքանչյուր հույն մի մուսուլմանի տուն յուրացրեց և դռան առջև սպասեց, թույլ չտալով, որ տանտերը տնից դուրս գա՝ մի կոշիկից ավելի բան վերցնելով իր հետ։ Երբ մուսուլմանը դուրս էր գալիս, քրիստոնյան անմիջապես ներս էր մտնում և տիրանում ամբողջ մեջը գտնված իրերին։ Այն կանայք, որոնք միանում էին իրենց ծնողներին, լքում էին իրենց մուսուլման ամուսիններին և երեխաներին նետում հայրերին*։ Ոմանք

* Այստեղ ակնարկվում է բռնի իսլամացված և մուսուլմանի հետ ամուսնացած քրիստոնյա կանանց։

*էլ մերժում էին հանձնել երեխաներին և նրանց քրիստոնեացնում էին։ Մարդիկ իրենց երեխաներից հրաժեշտ էին առնում լաց ու կոծի մեջ, ողբաձայն ճիչեր արձակելով, ու այն աստիճան աղեխարշ տեսարան էր ստեղծվել, որ հույներն անգամ լաց էին լինում խղճալուց։ Ռեհները փոխադրելու համար միայն հույն բեռնակիրներ կային։ Նրանք էլ իրենց հանձնված բեռի մեկ երրորդ մասը վերցնում էին իբրև վարձ՝ բեռները մինչև Անտիոք հասցնելու համար։ Այս դեպքերի ընթացքում Սայֆ ադ-Դաուլան դեռ ողջ էր Մուֆարգինում, և մուսուլման իշխաններից ամեն մեկը զբաղված էր իր մուսուլման հարևանի դեմ պատերազմելով։ Նրանք այդ կերպով դրժեցին այն պատվիրանը, թե՝ «Թող ալլահը մեզ հեռու պահի նրանցից, որոնք դասալիք են լինում վտանգի պահին լքում են իրենց ընկերներին»։*

*Թարսուսը և շրջակայքը մինչև օրս էլ մնում են հույների և հայերի ձեռքում։*

**էջ 534**

**209. Թուրանդա[260] — طرنده**

*Վակիդին ասել է, թե մուսուլմանները գրավեցին Թուրանդան Աբդալլա իբն Աբդլմալիքի՝ այնտեղ արշավելուց հետո, հիջրի 83 թվականին (702—703) և այնտեղ կառուցեցին բնակարաններ։ Մալաթիայից երեք օթևան հեռու է այն, Ռումի երկրի ուղղությամբ։ Թուրանդան* այժմ ավերակ է։ Օմար իբն Աբդլազիզը, խղճալով Թուրանդայի բնակիչներին, փոխադրեց նրանց Մալաթիա։*

**էջ 534**

**210. Թարոն[261] — طرون (Տարոն)**

*Վայր է Հայաստանում, որի մասին հիշատակում է Ռուհտուրի բանաստեղծը հետևյալ խոսքերով.*

*«Այն բանից հետո, երբ բանակները մեկնելով Տարոնի ստորոտից*
*Հասան մինչև նրա բարձունքները՝*
*Չի մնացել ոչ մի դժվար ճանապարհ նրանց համար»։*

* *Բնագրում սխալմամբ գրված է Մալաթիան։*

էջ 541

211. Թ ա լ ա[262]— ݣط

Բերդ է Ադրբեջանում։ Բառը իրականում պիտի լինի Տալա

ݣ ձայնումով պարսկերեն լինելով, որովհետև կոշտ թ ( ط ) չկա պարսկերենում։

էջ 562

212. Թ ո ս ա տ[263]— طوغات

Քաղաք և բերդ Հայաստանում, էրզրումին ենթակա մարզի մեջ։

էջ 570

213. Ա լ-Թ ա յ ր ո ւ ա ն ա[264] الطّيطوانة (Դատվան)

Ավան է Հայաստանում։

էջ 633

214. Ա ր բ ա ս ո ւ ս[265]— عربسوس

Մսիսի մոտ, սահմանային գոտում մի քաղաք է, որտեղ արշավանքներ կատարեց Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանը։

էջ 714

215. Ա լ լ ո ւ ս[266]— علّس

Բուխտիա քրդերին պատկանող մի բերդ է Արզնի կողմերում, ինչպես հաղորդում է Իբն ալ-Արաբին։

էջ 741

216. Ա լ-Ա վ ա ս ի մ[267]— العواصم

Պաշտպանողական բերդերի մի շարք է, որ շրջապատում է Հալեբից մինչև Անտիոք տարածվող համանուն նահանգը։ Նրա աթոռանիստ քաղաքն է Անտիոքը։ Այդ բերդերը կառուցված են մեծ մասամբ լեռնոտ վայրերում, իսլամական հողերը թշնամուց պաշտ-

պանելու համար։ Այդ գոտու մեջ են հաշվում Մսիսի սահմանային շրջանը, Տարսոնը և նրա շրջակա երկրամասը։ Ոմանք կարծում են, թե Հալեբը չի մտնում այդ նահանգի մեջ։ Ուրիշները պնդում են, թե այն մտնում է։ Առաջին կարծիքին եղողները հիմնվում են այն բանի վրա, թե Հալեբը գտնվում է Կիննասրինի նահանգի մեջ, և սրանք սկզբից, Եզիդի ժամանակից արդեն միացվել էին, իսկ ավելի ուշ Ռաշիդը անջատեց Կիննասրինը իր գավառներով, ինչպես նաև անջատեց Մմբեջը, Դլուքը, Ռաբանը, Կուրսը, Անտիոքը, Տիզինը և սրանց միջև գտնվող բերդերը, որոնք կոչեց «Ավասիմ»*, կենտրոն նշանակելով Մմբեջը, որը հիջրի 173 թվականին (789—790) ամրացրեց, և այնտեղ գեղեցիկ շենքեր կառուցվեցին։

էջ 759

217. Ա յ ն Տ ա բ[268]— عين تاب (Այնթապ)

Ամուր բերդ և գյուղախումբ՝ Հալեբի և Անտիոքի միջև։ Նախապես կոչվում էր Դլուք։ Այժմ Հալեբի նահանգի մասն է կազմում։

էջ 761

218. Ա յ ն Զ ա ր բ ա[269]— عين زربى (Անարզաբա)

Սահմանագլխային քաղաքներից մեկն է՝ Մսիսի կողմերում։ Իբն ալ-Ֆակիհն ասել է, թե այդ քաղաքը և շենքերը վերակառուցված են Աբու Սուլայման ատ-Թուրքի ներքինու ձեռքով, որ սահմանագլխի կառավարիչ էր կարգված հիջրի 195 թվականին (4 հոկտեմբեր 810—22 սեպտեմբեր 811)։ Հետո նրան տիրեցին հույները ու քանդեցին։ Այնուհետև Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանը[270] երեք հազար անգամ հազար դիրհեմ** ծախսելով վերանորոգեց այն, բայց հույները կրկին տիրեցին Սայֆ ադ-Դաուլայի օրով, ինչպես հիշատակեցինք Տարսոնի առթիվ։ Այդ քաղաքը մինչև այսօր գտնվում է նրանց ձեռքում։ Այժմ բնակված է հայերով և Իբն Լավոնի երկրների մասն է կազմում։

Վակիդին պատմում է, թե հիջրի 180 թվականին (16 մարտ, 796—4 մարտ 797) Հարուն ար-Ռաշիդը հրամայեց կառուցել Անարզաբա քաղաքը և ամրացնել այն։ Այնտեղ հաստատեց Խորասանից և ուրիշ կողմերից բերված մարդկանց։ Իսկ Մուտասիմ խալիֆը

---

* Նշանակում է պաշտպանության գիծ։

** 3 միլիոն։

*օրով տեղի կառավարիչը այնտեղ բնակեցրեց Վասիթի և Բասրայի կողմերից փոխադրած Զութ[271] կոչված մի ցեղի մարդկանց, որոնք օգտակար եղան սահմանագլխի բնակիչներին։*

*էջ 777*

219. Դ ա ղ կ ա զ ո ւ ն ա[272]— غلقدونة

*Սահմանագոտու վրա գտնվող մի երկրամասի ամբողջություն է, որի մեջ է մտնում Մսիսը, Տարսոնը և ուրիշ վայրեր։ Կոչվում է նաև*

*խաղկաղունա (خلقدونة)։*

*էջ 834*

220. Ֆ ա ր կ ա մ Ա լ-Ֆ ի ր ա ն[273]— فر կամ الفيران

*Ավան է Հայաստանի կողմերում։*

*էջ 860*

221. Ա լ Ֆ ո ւ ր ա տ[274]— الفرات *(Եփրատ)*

*Համզայի ասելով՝ նշանակությունը հենց բառի մեջ է։ Ունի մի ուրիշ անուն ևս՝ Ֆալադրուդ ։ Գտնվում է Տիգրիսի մոտ և Պարսկաստանի հարավային կողմում, իսկ «հարավ» բառի պարսկերենն է «Ֆալադ»։ Գալով Ալֆուրատ բառին, դա զուտ արաբերենով նշանակում է քաղցրահամ ջուր։*

*Վկայում են, թե Եփրատը բխում է Հայաստանից, անցնում է Կալիկալայի կողմերով և հասնում Կամախ, այնտեղից Մալաթիա և հետո Սամոսատ։ Նրա մեջ են թափվում շատ գետակներ, ինչպես՝ Սանջա, Քեսում, Դայսան, Բալիխ գետերը, մինչև որ գետը հասնում է Կալաաթ ան-Նաջմ, Մմբիջի մոտ։ Հետո հաջորդաբար այն ընդունում է Դավսար, Ռակկա, Ռահբաթ Մալիք իբն Թավկ, հետո՝ Անա և Հիտ, նրանցից հետո բաժանվելով բազմաթիվ ճյուղերի ոռոգում է Միջագետքի դաշտերը։ Ոռոգումից ավելացած ջուրը հոսում է Տիգրիսի մեջ Վասիթի և Բասրայի միջև, ապա գետերը իրար միանալով կազմում են գրեթե մեկ փարսախ լայնք ունեցող մի հսկա գետ և թափվում Հնդկական ծովը։*

*Եփրատի մասին ակնարկություն կա Կուրանում։ Այն մեկն է դրախտի չորս գետերից և օժտված է լավ հատկություններով։ Դրախ-*

---

* فالاذ ود

*տի մյուս գետերն են Նեղոսը, Սայհունը* և Ջայհունը**։ Ալին ասել է, թե դրախտից երկու գետակներ են հոսում Եփրատի մեջ։ Աս-Սուդդից քաղելով, շատ մատենագիրներ պատմում են, թե Ալի իբն Աբու Թալիբի օրով Եփրատը հորդեց և ցամաք նետեց մի այնպիսի խոշոր նուռ, որ կամուրջը խորտակեց։ Ալին հրամայեց մուսուլմաններին՝ բաժանել այդ նուռը, որը դրախտի պտուղ էն համարում։ Ջանդ պիտի առնեի այս անհավատալի պատմությունն հիշատակել, եթե շատ գիտնականներ դրած չլինեին այդ մասին։*

*էջ 928*

*222.* Ֆ ի ր ո ւ զ ա բ ա դ[275]— فيروزاباذ *(Պերոզապատ)*

*Ամուր բերդ է Ադրբեջանին ենթակա, խալխալից մեկ փարսախ հեռավորության վրա։*

*էջ 933*

*223.* Ֆ ի լ ա ն[276]— فيلان

*Նահանգ է՝ Բաբ ալ-Աբվաբի մոտ, խազարների մարզում։ Նրանց թագավորը կոչվում է Ֆիլանշահ և նրանք քրիստոնյա են. ունեն իրենց առանձին լեզուն ու բարբառը***։ Մասուդին ասում է, թե Ֆիլանշահը Սարիրի թագավորի մասնավոր անունն է և այդ երկիրը կոչվում է Ֆիլան։*

ՉՈՐՐՈՐԴ ՀԱՏՈՐ

*էջ 13*

*224.* Կ ա ր ղ ո ւ ա ն[277]— قاغوان *(Կաղզվան)*

*Քաղաք և բերդ Հայաստանում խլաթի և Կարսի միջև։*

*էջ 19*

*225.* Կ ա լ ի կ ա լ ա[278]— قاليقلا *(Կարին)*

*Գտնվում է Մեծ Արմինիայում, Խլաթի կամ Մանազկերտի մարզերում, Չորրորդ Արմինիայում։*

---

* Iaxartes.

** Oxus..

*** *Լիսան ուա լուղա։*

Ահմադ իբն Յահյան գրում է, թե Հայաստանը պարսիկների տիրապետության տակ մնաց սկսած Անուշիրվան թագավորի օրերից, մինչև Իսլամի երևալը, բայց մերթ ընդ մերթ տեղի էին ունենում անջատումներ, երևան էին գալիս ցեղապետական իշխանություններ, մինչև որ թագավորեց Արմենիակոսը, որը Հայաստանի բնակիչներից էր և ամբողջ իշխանությունը իր ձեռքի մեջ կենտրոնացրեց։ Նրա մահից հետո թագավորեց մի կին, որի անունն էր Կալի։ Այդ կինը մի քաղաք կառուցելով կոչեց Կալի կալա, որ նշանակում է Կալիի բարիք, և իր նկարը դրեց քաղաքի դռներից մեկի վրա։ Հետո արաբները արաբացրին այդ անունը և կոչեցին մի բառով՝ Կալիկալա։

(Քերականագետները մի շարք նկատողություններ են անում այդ բառի կազմության մասին)։

Բանաստեղծն ասել է.

«Պիտ ողջունեն արշալույսն առաջին անգամ.
Արծվի փետուրները գորշագույն,
Կալիկալայի վերևից,
Կամ Դվինի հետևից»։

Պտղոմեոսն ասում է, թե Կալիկալա քաղաքի երկարությունն է 60, իսկ լայնությունը 38։

Կալիկալայում մի տեսակ գորգ են պատրաստում, որը քաղաքի անվան կրճատումով կոչվում է «Կալի»*։ Կալիկալայից դուրս են եկել անվանի մարդիկ իսլամական աշխարհում։ (Հեղինակը տալիս է մի շարք անուններ Հ. Ն.)։

Իբն ալ-Ֆակիհը գրում է։ Տեղեկացա Աբուլ-Հայջա ալ-Յամանուց, որ անվանի ճանապարհորդ է, որ Կալիկալայում քրիստոնյաներն ունեն մի եկեղեցի, որտեղ կա սուրբ գրքերն ու խաչերը պահելու համար սահմանված ընդարձակ տուն։ Ամեն տարի, Ծաղկազարդի գիշերը, այդ տան մի որոշ անկյունը բացվում է, և միջից անդադար, մինչև առավոտ մի սպիտակ փոշի է դուրս գալիս։ Ապա փակվում է և մնում այդպես մինչև հաջորդ տարվա նույն օրը։ Կղերականները հավաքում են այդ փոշին և բաշխում ժողովրդին։ Այդ փոշին ունի օգուտներ. այն դեղթափ է թույնի, կարիճի և օձի խայթվածների դեմ։ Եթե այդ փոշուց մի դանկ** ջրի մեջ լուծված

* խալի
** դանկ—0,56 գր.։



121—7

տան խայթված մարդուն խմելու, նա անմիջապես կհանգստանա։ Զարմանալին այն է, սակայն, որ եթե դրամով վաճառվի, այդ փոշին կորցնում է իր ազդեցությունը և անօգուտ դառնում։

էջ 26

226. Կ ա բ ա գ ի կ[279]— قباذق (Կապադովկիա)

Ընդարձակ նահանգ Ռումի երկրում, որի սահմաններն հասնում են մինչև Տարսոնի լեռները, Ադանա և Մսիս։ Այնտեղ կան բերդեր, որոնց թվում Կուահը, Խադրանը, Անթիղաւլուսը, իսկ հայտնի քաղաքներից են Իկոնիան և Մալակունիան։

էջ 26

227. Կ ո ւ բ ա կ ի բ[280]—قباقب

Անունն է մի գետի, որը գտնվում է Մալաթիայի մոտ և թափվում է Եփրատ գետը։

էջ 26

228. Կ ա բ ա ն[281]— قبّان

Քաղաքի և նահանգի անուն է Ադրբեջանում, Թավրիզի մոտ։ Գտնվում է այս վերջին քաղաքի (Թավրիզի) և Բայլականի միջև, ինչպես ինձ տեղեկացրեց բնակիչներից մեկը։

էջ 31

229. Կ ա բ կ[282]— قبق

Պարսկերեն անուն է մի լեռնաշղթայի, որը կից է Բաբ ալ-Աբվաբի և Ալանաց երկրի և կազմում է Արմինիայի վերջին սահմանը։ Իբն ալ-Ֆակիհն ասում է, թե Կովկասյան լեռներում խոսում են 72 լեզվով և մարդիկ իրար լեզվից ոչինչ չեն հասկանում առանց թարգմանի միջնորդության։ Ասում են, թե այդ լեռնաշղթայի երկարությունն է 500 փարսախ և ձգվում է հույների երկրից մինչև խազարների և ալանների սահմանը։ Ասողներ էլ կան, թե այս լեռները շարունակությունն են կազմում Ջաբալ ալ-Արջի, որը Մեքքայի և Մադինայի արանքումն է, և որը երկարում է մինչև Ասորիք, անցնում Լիբանանից, ապա Հիմսից, Դամասկոսից և հասնում Անտիոքի և Սումայսաթի լեռները, որոնք Ալ-Լուքամ են կոչվում.

ապա ուղղվում դեպի Մալաթիա, Շիմշաթ, Կալիկալա, մինչև խազարների ծովը, որտեղ է Բաբ ալ-Աբվաբը։ Լեռնաշղթայի այս վերջին հատվածը կոչվում է Կաբկ։

էջ 32

230. Կ ա բ ա լ ա[283] — قبلة (Կապաղակ)

Հին քաղաք է Դարբանդի մոտ, Արմինիայի ենթակա գավառներից մեկում։ Այդ քաղաքը կառուցեց Կավատ թագավորը՝ Անուշիրվանի հայրը։

էջ 44

237. Կ ա ր ա հ ի ս ա ր[284] — قرا حصار (Գարահիսար)

Ընդարձակ դաշտավայր է Հալեպի մարզերում, որը գրավեց Սալահադդինը։ Այս անունով կոչվում են մի քանի չքեղ քաղաքներ, մեծ մասամբ Ռումի երկրում։ Սրանցից հիշատակելի են Անտիոքից մի օրվա ճանապարհ հեռու գտնվող Կարահիսարը, Օթմանի երկրում գտնվող Կարահիսարը, նաև Կեսարիայի մոտ գտնվող Կարահիսարը։

էջ 51

232. Կ ո ւ ր ր ա ն[285] — قران

Ալբաղդայնի գլխավոր քաղաքը՝ Ադրբեջանում, որտեղ Խուրամյան Բաբեկը հաստատվեց։

էջ 57

223. Կ ա ր ս[286] — قرص

Քաղաք է Հայաստանի մեջ, Թիֆլիսի մարզերում։ Այնտեղից արտահանվում է մետաքս։ Այդ մասին ինձ տեղեկացրեց բնակիչներից մի մարդ։ Այդ քաղաքի և Թիֆլիսի միջև հեռավորությունը երկու օրվա ճանապարհ է։

էջ 136

234. Կ ա թ ր ա ղ ա շ[287] — قطرغاش (Կթառիճ)

Սահմանագլխային ամրոց է Մսիսի մոտ։ Առաջին անգամ այն կառուցեց Հիշամ իբն Աբդլմալիքը։

Էջ 158

235. Կ ի լ ի զ[288] — قلز (Քիլիս)

*Ռումի երկրում դաշտավայր է Սումայսաթի մոտ և որը պատկանում էր Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանին։*

Էջ 164

236. Կ ա լ ա ա թ ա ր-Ռ ո ւ մ[289] — قلعة الروم (Հռոմկլա)

*Ամուր բերդ է Եփրատի արևմտակողմում, Բիրայի մոտ, նրա ու Սամուսաթի միջև։ Աթոռն է Հայոց պատրիարքի, որը Մեսիայի փոխանորդն է նրանց մոտ և որին հայերեն լեզվով «քաթաղիքուս»* են կոչում։ Այդ բերդը ընկնում է մուսուլմանական հողերի մեջտեղ և այն էլ միայնակ, որ մնացել է հայերի ձեռքում, մինչդեռ շրջապատն ամբողջովին գրավված է։ Դրա պատճառն այն է, նախ՝ որ քաղաքը շատ աննշան եկամուտ ունի, երկրորդ որ սովորություն է եղել կրոնապետների բնակավայրը ազատ թողնել, ինչպես որ իսլամական երկրների մեջ ազատ են թողնվում տաճարներն ու եկեղեցիները։ Կաթողիկոսը հնուց ի վեր ընտրվում է Դավիթ մարգարեի սերնդից և այդ բանի նշան է կազմում իր բազկի երկարությունը, այնպես որ, երբ կաթողիկոսը ոտի վրա կանգնի թևերը կախ՝ իր ձեռները կհասնեն ծնկներից ցած։*

*Մոտավորապես հիջրի 610 թվականին (23 մայիս 1213—12 մայիս 1214) Լևոնի որդի Լևոն հայոց թագավորը, որ Ասորիքի սահմանագոտու Մսիսի, Տարսոնի և Ադանայի վրա է իշխում, ատելի էր դարձել հայերին, որովհետև, երբ նա իջևանում էր մի գյուղում կամ քաղաքում, բերել տալով մի հայ աղջկա, նրա հետ գիշերում էր անկողնում և հետո, մեկնելու պահին, աղջկանը հանձնում էր ընտանիքին։ Հայերը այդ բանի համար բողոքեցին կաթողիկոսին և այդ վերջինը մարդ ուղարկեց թագավորին հասկացնելով, որ նրա վարմունքը դեմ է քրիստոնեական կրոնին և եթե նա անկեղծ հետևող է կրոնի օրենքներին, պարտավոր է հրաժարվել այդ սովորությունից։ Իսկ եթե հետևող չէ քրիստոնեական կրոնին, այն ժամանակ կարող է անել ինչ որ ուզենա։ Նա պատասխանեց, թե հավատարիմ է քրիստոնեական կրոնին և խոսք տվեց գործադրել պատրիարքի պատվերը։ Բայց հետո ավելի սաստիկ վերսկսեց*

* Կաթողիկոս։

իր արարքը։ Նոր բողոքների վրա պատրիարքը վերջին անգամ ազդարարեց, որ եթե նա կրկին գործի իր այդ արարքը, բանադրանքի պիտի ենթարկվի։ Թագավորը այս անգամ էլ կարևորություն չտվեց, և վերջին բողոքի վրա՝ կաթողիկոսը նրան բանադրեց։ Տեղեկանալով այդ, թագավորը գլուխը բաց չարեց և զղջում չհայտնեց, բայց կրոնի պարտադրության հետևանքով իր զինվորներն ու հպատակները պզուշացան նրան սեղանակից լինելուց, մինչև իսկ կինը լքեց նրան։ Նրանք ասացին, թե կրոնը պարտադրում էր իրենց՝ հեռանալ նրանից և միայն թշնամիների հարձակման կամ մի ձախորդության պարագայում պատրաստ էին հետևելու նրան, իսկ սովորական ժամանակ հեռու պիտի մնային։ Լևոնը մնաց մենակ, հազիվ մի աննշան խումբ հետևորդներ էին ընկերանում իրեն, երբ ձի հեծներ։ Զանձրանալով այդ վիճակից, նա զղջում ցույց տվեց և լուր ուղարկեց կաթողիկոսին, որ գա և իր զղջումը մարդկանց ներկայությամբ լսելուց հետո՝ արձակի իրեն բանադրանքից։ Կաթողիկոսը խաբվեց, եկավ Լևոնի մոտ և հավաքված բազմության ներկայությամբ նրան արձակեց բանադրանքի կապանքներից։ Երբ հավաքույթը վերջացավ, Լևոնը բռնեց կաթողիկոսի ձեռքից և նրա հետ բարձրացավ բերդ. այդ կաթողիկոսի վերջին երևումը եղավ։ Հետո իր ազգականներից մի մարդու բերել տալով, կարծեմ իր մորեղբոր որդուն, և որը արդեն կրոնական աստիճան ուներ, ուղարկեց բերդ և կաթողիկոս արեց, և նա մինչև օրս էլ այնտեղ է։ Այսպես վերջ տրվեց Դավթի գերդաստանից կաթողիկոսների հաջորդականությունը[28]։ Տեղեկանում եմ, որ այդ ընտանիքից ոչ ոք չի մնացել այդ կողմերում կաթողիկոսի պաշտոնն ստանձնելու համար։ Ասում են, թեև, որ Խլաթի կողմերում այդ ընտանիքին պատկանող անձեր կան, բայց այլահր ավելի ճիշտն է իմանում։

Էջ 167

237. Կալավզիա— قلودية (Կլավդիա)

Բերդ է Մալաթիայի մոտ, որը այրեց, ապա վերաշինեց Հասան իբն Կահթաբան՝ հիջրի 141 թվականին Մանսուր խալիֆի օրով։ Նրա մասին խոսում է Պտղոմեոսը։

Էջ 178

228. Կամիզ— قمير

Մեծ ավան՝ Թիֆլիսին ենթակա, նրանից կես օրվա ճանապարհ հեռավորությամբ։

Էջ 218

239. Կայմուր— قيمر

Լեռնային մի բերդ է Մուսուլի և Խլաթի միջև։ Խլաթի և Մուսուլի քուրդ ավագներից շատերը այնտեղից են։

Էջ 245

240. Քագաջ— كنج

Ադրբեջանում բերդի անուն է, և այնտեղ բնակություն էր հաստատել Խուրամյան Բաբեկը։ Բառը պարսկերեն է և նշանակում է ապաստարան։

Էջ 251

241. Քուրջ[290] — كرج

Քրիստոնյա մի ժողովուրդ է, որ անցյալում բնակվում էր Կովկասյան լեռներում և Սարիրի երկրում։ Հետո նրանք զորանալով տիրեցին Թիֆլիս քաղաքին։ Ունեն իրենց սեփական նահանգը, թագավորը և լեզուն։ Զորավոր, աղդեցիկ ու բազմամարդ են։

Մասուդին պատմելով Կովկասյան լեռների ժողովուրդների և երկրների մասին, ասում է, թե Կովկասյան դռներից այն կողմ կա մի թագավոր՝ Բարզինան անվամբ և նրա երկիրը ծանոթ է Քուրջ անվամբ։ Նրանք մկրտվածներ են*, այդ երկրի ամեն թագավոր Բարզինան է կոչվում։ Պատմիչը Քուրջերի մասին ավելի տեղեկություններ չի տալիս, մինչդեռ մյուս ժողովուրդների մասին նա ավելի երկարորեն է խոսում, դա նշանակում է, որ նրանց թիվը փոքր էր։ Կացությունը, սակայն, դրանից հետո փոխված է, որովհետև այժմ նրանք ունեն զորավոր թագավորներ, նույնիսկ տիրացած էին երկրների, մինչև որ նրանց այնտեղից հեռացրեց Խորեզմշահ Ջալալադդինը։

Էջ 259

242. Քուր[291]— كر (Կուր)

Գետ է Հայաստանի և Առանի միջև, անցնում է Թիֆլիսով, հոսում է Պարտավից երկու փարսախ հեռավորությամբ, ապա միանում է Արաքս գետին և թափվում Խազարների ծովը։ Իսթախրին

* Քրիստոնյա։

վկայում է, թե Կուրը մեղմահոս և անուշ ջրով գետ է, բխում է խազիրանի երկրից անցնում Աբխազների երկրով, Ալանների երկ րամասով, լեռների միջով, ճեղքում է Թիֆլիս քաղաքը, ապա Խունանի բերդի առաջով հասնում է Շաքի, երկու ափերի վրա թողնելով Գանձակն ու Շամքորը, ապա հոսում է Պարտավի դռան մոտով, հասնում Բարդանջ և, Արաքսի հետ խառնվելուց հետո, թափվում է Թաբարիստանի ծովը։ Իսկ Արաքսը Կուրից ավելի փոքր գետ է։

էջ 262

243. Ք ա ր ք ա ր[292]— كركر (Կառկառ)

Քաղաք է Առանում, Բայլականի մոտ, կառուցված Անուշիրվանի կողմից։ Իբն ալ-Աթիրն ասում է, թե Քարքարը բերդ է Մալաթիայի մոտ, այս վերջինի և Ամիդի միջև գտնվող. նրա մոտ է Հիսն ար-Ռանը, որը հիշատակված է Մուտանաբբիի[293] բանաստեղծությունների մեջ։

Քարքար անունով բերդ կա նաև Սամոսաթի և Հիսն Զիադի միջև, որն այժմ ավերված է։

էջ 287

244. Ք ա ֆ ա ր բ ա յ ա[294]—كفربيّا

Քաղաք է Մսիսի դիմաց, Ջայհանի ափի վրա, Լևոնի որդու երկրում։ Երբեմն մեծ քաղաք էր, ուներ բազմաթիվ շուկաներ, ամրակառույց պարիսպ՝ չորս դռներով։ Անցյալում այն ավերվել էր, ապա Ռաշիդը վերակառուցեց։ Ոմանք ասում են, թե կառուցումն սկսել էր Մահդին, ապա Ռաշիդը փոփոխեց կառուցումը և ամրացրեց խրամատով։ Ավելի ուշ ալ-Մամունը ավելացրեց շենքերի և խաների վարձը և պարսպով պատեց, բայց չկարողացավ ավարտել շինությունը և մեռավ, իսկ Մուտասիմը հրամայեց ավարտել շինությունները ի պատիվ նրան։

էջ 297

245. Ք ա լ ա՛ ն Ռ ո ւ ղ[295]—كلان روذ

Նշանակում է մեծ գետ և գտնվում է Ադրբեջանում, ալ-Բազի մոտ, որը Բաբեկի քաղաքն էր։ Աֆշինը այնտեղ պաշարեց նրան, երբ գնաց նրա դեմ կռվելու։

էջ 300

246. **Քալք Քաֆան**[296]— [illegible] كلك

Մուֆարղինի և Հայաստանի միջև մի վայր է։ Այնտեղ էր ապրում Իբն Բոկրատ պատրիկը։ Այնտեղից բխում է մի գետ, որը թափվում է Տիգրիսի մեջ։

էջ 300

247. **Քալքավա**[297]— كلكوى (Գեղարքունի)

Գտնվում է Առանի մարզում, և նրա ու Սալմաստի միջև 16 փարսախ հեռավորություն կա։

էջ 304

248. **Քամխ**[298]— كمخ (Կամախ)

Ռումի երկրում մի քաղաք է։ Այդ կողմերի բնակիչներից մեկին հարցրի, և նա ինձ ասեց, թե դա անտարակույս Կամախն է։ Նրա և Երզնկայի միջև մեկ օրվա հեռավորություն կա։

էջ 308

249. **Քանջա**[299]— كنجة (Գանձակ)

Մեծ քաղաք, որ Առանի երկրի մայրաքաղաքն է։ Գրագետ մարդիկ կոչում են Ջանզա։

էջ 312

250. **Քինքիվար**[300]— كنكور (Կանգուար)

Ամրակառույց բերդ է Ջազիրա իբն Օմարի մոտ, որը մտնում է Զավազանի մարզի բերդերի շարքը և պատկանում է Մուսուլի տիրոջը։

էջ 314

251. **Ալ Քանիսա**[301]— الكنيسة

Ասում են նաև Քանիսաթ ալ-Յահուդ*։ Կոչվում է նաև Քանիսաթ ալ-Սավդա**։ Սավդա անունն է կրում, որովհետև կառուցված

---

* Հրեաների եկեղեցի։

** Սև։

է սև քարերով։ Անցյալում Հույներն են շինել այդ քաղաքը, և ունեցել է մի հին ամուր բերդ, որ ներկայումս քանդված է ուրիշ բերդերի հետ մեկտեղ։ Ապա Ռաշիդը հրամայեց վերաշինել և նախկին վիճակը վերականգնել ու այնտեղ հաստատեց լավ վճարվող պատերազմիկների։

էջ 332

352. Քիրան[302] — كيران

Քաղաք Ադրբեջանում Թավրիզի և Բայլականի միջև։

էջ 333

253. Քայսում[303] — كيسوم

Համբավավոր ավան՝ Սամուսաթի ենթակա գավառներից մեկում։ Ունի ապրանքներով լի շուկա և խանութներ։ Ունի և մեծ բերդ բլրակի վրա։

էջ 343

254. Ալլան[304] اللان

Ընդարձակ երկրամաս է Արմինիայի կողմերում։ Բաբ ալ-Աբվաբի մոտ՝ խազարների սահմանակից։

էջ 351

255. Ալլուջում[305] — اللجم

Ծանոթ վայր է Ջուրզանի երկրում, Թիֆլիսի կողմերում։ Բալազորին ասում է, որ Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին Օթմանի կողմից ուղարկվեց Հայաստան և հասավ Սայսաջան, որտեղ բնակիչները նրա դեմ կռվեցին, և նա պարտության մատնեց նրանց Վայսում* և հաշտություն կնքեց Սայսաջանի բերդերի բնակիչների հետ՝ խարաջ տալու պայմանով։ Ապա դնաց դեպի Ջուրզան և երբ հասավ Զատ ալ-Լուջում** , մուսուլմանները իրենց անասունների մի մասը արձակեցին արածելու և սանձերը դիզեցին մի վայրում։ Մի խումբ տեղացիներ հարձակվեցին և ստիպեցին նրանց շտապ

* Վայոց Ձոր։
** Սանձերի տեղ։

հեռանալ վայրից և գրավեցին այդ սանձերը։ Ասրա մուսուլմանները վերադառնալով նրանց դեմ՝ հետ խլեցին ինչ որ նրանք վերցրել էին և այդ դեպքի պատճառով վայրը կոչվեց «Սանձակալ»։

էջ 357

256. Լասուբ[306]— لصوب

Առանի երկրում քաղաք է՝ Պարտավի մոտ։

էջ 264

257. Ալլուքամ[307]— اللكام

Լեռնաշղթա է, որ երկարում է Անտիոքի և Լևոնի որդու երկրներում, Մսիսի, Տարսոնի սահմանների վրա։

էջ 371

258. Լուլուա[308]— لولوة

Տարսոնի մոտ մի բերդ է, որը ալ-Մամունը գրավեց։

էջ 390

259. Մարդին[309]— ماردين

Հայտնի բերդ է Ջազիրայի լեռան գագաթի վրա կառուցված և իշխում է Դունայսարի, Դարայի, Նիզիբինի և շրջակայքի ընդարձակ տարածության վրա։ Բերդից ցած տարածվում է հսկա քաղաքամասը, որն ունի բազմաթիվ շուկաներ, իջևաններ, վարժարաններ, կայաններ և մենաստաններ։ Տները աստիճանաբար բարձրացումով իրար վրա են դետեղված, և նրանց ամեն մեկի դուռը բացվում է ներքևի տան տանիքի վրա։ Ունի միայն թույլ վազքով ջրի աղբյուրներ, այնպես որ խմելու ջուրը նրանք հայթայթում են տների մեջ գտնվող ջրհորներից։ Տարակույս չկա, որ ամբողջ աշխարհի մեջ Մարդինի բերդից գերիվեր ամուր և անառիկ բերդ չկա։

«Նվաճումների գրքում» ասված է, թե Թուր Աբդինը Մարդինն ու Դարան գրավեց Իյադ իբն Ղանմը՝ Ուռհայի հետ կնքված հաշտության հար և նման պայմաններով։

Ասողներ կան, թե Մարդինը և Միջագետքի մյուս քաղաքները հաջորդաբար գրավվեցին հիջրի 19 և 20 թվականի Մուհարրամ ամսին, (640 և 641 հունվար) Օմար իբն ալ-Խաթթաբի օրով։

էջ 412

260. Մատրիս[310]— مترس

Փոքր քաղաք է Առանում, Պարտավից քսան փարսախ հեռավորության վրա։

էջ 476

261. Մարաղա[311]— مراغة

Ադրբեջանի ամենահռչակավոր մեծ քաղաքն է։ Ասում են, թե Մարաղայի վայրը մի ժամանակ կոչվում էր Աֆրաղ Հարուդ, որի մոտ էր բանակած Մրվան իբն Մուհամմադ իբն Մրվան իբն ալ-Հաքամը, երբ Արմինիայի և Ադրբեջանի կառավարիչ էր և վերադառնում էր Մուղանի և Ջիլանի արշավանքներից[312]։ Մրվանի և նրա հետևորդների բազմաթիվ անասունները մարգագետնի խոտերի վրա թավալվում էին՝ և դրա համար էլ գյուղի անունը դրվեց Գայոանքի* գյուղ, հետո պարզապես Գայոանք (Մարաղա)։ Գյուղը դրվեց Մրվանի պաշտպանության տակ։ Մրվանը և հաջորդները լավ վերաբերմունք ցույց տվեցին, որի հետևանքով բնակչությունը բազմացավ և գյուղը հետզհետե շենացավ։ Ապա Օմայաններին պատկանող ուրիշ ստացվածքների կարգին, Մարաղան էլ բռնագրավվեց ու դարձավ Ռաշիդի աղջիկների սեփականություն։ Երբ Վաջնա իբն Ռավադ ալ-Ազդին դժվարացավ իր պաշտոնի մեջ, Խուզայմա իբն Խազիմը[313] Արմինիայի և Ադրբեջանի կառավարիչ կարգվեց, նա քաղաքի պարիսպը կառուցելով ամրացրեց այն և վերածեց մայրաքաղաքի, որտեղ մեծ բանակ բնակեցրեց։ Հետո, երբ Խուռամյան Բաբեկը հայտնվեց, մեծ բազմությամբ ժողովուրդ ապաստանվեց այնտեղ, բնակություն հաստատեց ու ամրացավ։ Քաղաքի պարիսպները նորոգեցին ալ-Մամուն խալիֆի ժամանակ մի շարք գործակալներ, բնակություն հաստատվեց նաև քաղաքի արվարձաններում.

Մարաղան ունի գեղեցիկ հուշարձաններ, շենքեր, դպրոցներ, մենաստաններ։

էջ 482

262. Մարբալա[314]— مربالا

Խլաթի մոտերքում մի քաղաք է, որի մասին հիշատակություն կա «Նվաճումների գրքում», որտեղ գրված է, թե երբ Հաբիբ իբն

* Տամարրաղ— تمرغ նշանակում է գետնի վրա թավալվել, գալարվել (խոսքը անասունների մասին է)։

*Մասլաման գնաց բանակելու այնտեղ, նրա մոտ եկավ խլաթի պատրիկը՝ Իյադ իբն Ղանմի թղթով, որով ապահովություն էր տրվել նրա անձին, երկրին և գույքերին՝ հարկ տալու պայմանով։ Այդ ապահովագիրը հաստատեց Հարիր իբն Մասլաման։*

*էջ 486*

263. Մարտ[315] — مرند

*Մեծ գյուղ, որը Ուրմիայից մեկ օթևան հեռու է գտնվում, Թավրիզի ճանապարհի վրա։ Ունի այգեստաններ։ Բնակիչները քաջարի և ռազմիկ մարդիկ են։*

*էջ 488*

264. Մարջ ալ-խալիջ[316] — مرج الخليج

*Վայր Միսիսի սահմանային գոտում։*

*էջ 498*

265. Մարաշ[317] — مرعش

*Սահմանային քաղաք է Ասորիքի և Ռումի երկրի միջև։ Ունի զույգ պարիսպ և խրամ։ Կենտրոնում կա պարսպապատ բարձր բերդ, որը կոչվում է «ալ-Մրվանի» և շինված է Մրվան իբն Մուհամմադի կողմից, որը ճանաչված է Մրվան ալ-Հիմար[318] անվամբ։ Քաղաքի մնացած մասը հետո է կառուցված, Ռաշիդ խալիֆի օրով։ Քաղաքն ունի ալ-Հարունիա անվամբ արվարձան՝ Բաբ ալ Հադաթ կոչված դռան այն կողմը։ Ներբողագիր բանաստեղծը հիշատակություն է արել այս քաղաքի մասին ասելով.*

*Վրնջում են հայկական նժույգները Մարաշում։*

*Այս քաղաքի մասին մեր ժամանակներում հետևյալը լսեցի արժանահավատ մարդկանցից.*

*Սուլթան Կլրջ Արսլան Սելջուկ[319] ար-Ռումին ուներ մի խոհարար Իբրահիմ անվամբ, որն իր ծառայության մեջ էր մանուկ հասակից և իր համակրանքն էր գրավել։ Մի օր, երբ նա սեղան էր պատրաստում ճաշի համար, գեղեցկապես հագնված ու մեջքին գոտի, Սուլթանն ասաց նրան. «Այ Իբրահիմ, դու պիտի մնաս խո-*

*հարար մինչև վերջմա՞ն մտնես»։ Նա պատասխանեց. «Ով Սուլթան, այդ բանը քեզնից է կախված»։ Այն ժամանակ Սուլթանը վեզիրին դառնալով ասաց. «Գնա Մարաշ և դատավոր ու վկաներ բեր այստեղ, որպեսզի պաշտոնագիր կազմվի, թե քաղաքը իբրև սեփականություն տալիս եմ սրան և իր սերնդին»։ Հրամանը գործադրվեց։ Մարաշը հանձնվեց Իբրահիմին, որը մի ժամանակ մնաց այնտեղ, հետո հիվանդանալով գնաց Հալեբ բուժվելու և այնտեղ մահացավ։ Իր զավակը հաջորդեց նրան և մինչև օրս էլ նա է իշխում։*

*էջ 503*

*266.* Մ ա ր ա ն դ[320]— مرند

*Ադրբեջանի նշանավոր քաղաքներից մեկն է. Թավրիզից երկու օրվա ճանապարհ հեռու։ Այժմ սկսել է ավերակ դառնալ այն օրից, երբ վրացիները թալանեցին ու գերեցին շատ բնակիչների։*

*Բալազորին պատմում է, թե անցյալում մի փոքրիկ գյուղ էր Մարանդը, որը Ջալիս Աբուլ-Բուայթը և իր որդին ամրացրին։ Այդ վերջինը մի դղյակ էր կառուցել, բայց երբ ինքը ապստամբեց Մուտավաքիլ խալիֆի օրով, իրեն դեմ եկավ Բուղա աս- Սաղիրը, որը նրան պարտություն մատնելուց հետո Սամարա տարավ նրան ու քանդեց Մարանդի պարիսպն ու դղյակը։*

*էջ 551*

*267.* Մ ի ս ր[321]— مصر

*(Այս գլխի տակ, Կահիրե քաղաքի ընդարձակ նկարագրության մեջ, քաղաքի այլացեղ բնակիչների կարգին, ինչպես՝ ղպտի, հույն, արաբ, բերբեր, քուրդ, դայլամ, հաբեշ, հիշատակում է նաև հայերին)։*

*էջ 557*

*268.* Ա լ-Մ ա ս ի ս ա[322]— المصيصة *(Մսիս)*

*Քաղաքը Ջայհան գետի ափի վրա է, Ասորիքի սահմանագոտում, Անտիոքի և Ռումի երկրի միջև, Տարսոնի մոտ և այժմ իբն Լևոնի և նրա որդու ձեռքին է գտնվում։ Շատ ժամանակ առաջ խո-*

---

* *Փոքր, կլորակ։*

յամական ամենանշանավոր քաղաքներից մեկն էր, և այնտեղ բնակվում էին առաքինի հավատացյալներ։ Ունի բազմաթիվ այգեստաններ՝ Ջայհան գետի ջրով ոռոգված։ Ունի մի պարիսպ և հինգ դռներ։ Անունն առել է իր հիմնադրի՝ Մասիսայի անունից, որը Նոյի որդի Սեմի որդի Յամանի որդին էր։

Ալ-Մահալլաբին[323] պատմում է, թե Մսիսը ունի առանձնահատուկ արվեստ, որ է մուշտակագործությունը, և այնտեղ պատրաստված մուշտակները արտահանվում են ամեն կողմ և հատը մինչև երեսուն դինար էր գնահատվում։

Էջ 614

269. Մոքս[324] — مكس (Մոկք)

Վայր՝ Հայաստանում, Եափուրջանի մարզում, Կալիկալայի մոտ։

Բուհտուրին ասել է.

«Փակված է դուռը Կովկասյան լեռներով՝
Դեպի իմ բնակավայրը՝ Խլաթ և Մոքս»։

«Նվաճումների գրքում» ասված է, թե Հաբիբ իբն Մասլաման գնաց դեպի Սինանա*, որտեղ նրան հանդիպեց Մոքսի տերը[325], իսկ այդ գավառը պատկանում էր Վասպուրականին — և հարկ տալով հաշտություն կնքեց։

Էջ 633

270. Մալաթիա[326] — ملطية

Ալեքսանդրի կառուցած քաղաքներից մեկն է, իսկ մզկիթը կառուցել են մարգարեի ընկերները։ Գտնվում է Ռումի երկրում և այդ շրջանի նշանավոր քաղաքներից է՝ Ասորիքին սահմանակից։ Այժմ մուսուլմանների ձեռքին է գտնվում։

Խալիֆա իբն Խայաթը պատմում է, թե հիջրի 140 թվականին (757—758) Աբու Ջաֆար ալ-Մանսուր Աբդալվահաբ իբն Իբրահիմ ալ-Իմամ իբն Մուհամմադ իբն Ալի իբն Աբդալա իբն Աբաս վերա-

* Արդյոք Սիփա՞ն, ب և ن տառերի շփոթությամբ։

շինեց Մալաթիան։ Սա մի տարի մնաց, կառուցեց քաղաքը և այնտեղ բնակեցրեց մարդկանց, ապա ամառը արշավանքի գնաց։

Մուտանաբբին ասել է.

«Ով Մալաթիա, մայր որդեկորույս»*։

Հիջրի 322 թվականին (22 դեկտեմբեր, 933 մինչև 10 դեկտեմբեր 934) պատահած դեպքերի կարգում Աբու Ղալիբ Համմամ իբն ալ-Ֆադլ իբն Մուհաղդաբը իր պատմության գրքի մեջ գրում է, թե Դոմեստուկը[327] այդ քաղաքը գրավեց նախքան Դամասկոսը գրավելը ու պարիսպը և դղյակները քանդել տվեց։ Այս դեպքի առթիվ բազմաթիվ բանաստեղծություններ են գրվել։

էջ 648

271. Մանազջիրդ[328]— منازجرد (Մանազկերտ)

Ժողովուրդը կոչում է Մանազկերտ։ Հռչակավոր քաղաք է Խլաթի և Ռումի երկրի միջև և Արմինիայի մասն է կազմում։ Բնակչությունը բաղկացած է հայերից և հույներից։ Այնտեղ է ծնվել Աբու Նասր ալ-Մանազի [329] մեծանուն իմաստասերը, որ երկար ժամանակ վեզիրության պաշտոն վարեց Դիարբաքրի իշխանների մոտ և մեռավ հիջրի 438 թվականին (1046—1047)։

էջ 682

272. Մուշ[330]— موش

Փոքր քաղաք է Խլաթի մարզերում, Հայաստանի հողի վրա։

էջ 682

273. Մուշիլ— موشيل

Գյուղ՝ Ադրբեջանում։

էջ 686

274. Մուկան— [illegible] (Մուղան)

Իբն ալ-Քալբին ասել է, թե Մուկանն ու Ջիլանը Թաբարիստանի բնակիչներ են, որոնք սերել են Նոյի որդի, Հաբեթի որդի Քա-

---

* Արշավանքների ընթացքում, այդ քաղաքից շատերն էին զոհվում և բնակչությունը անընդհատ նվազում էր։ Բանաստեղծը այդ մասին է ակնարկում։

մաշից: Բնակիչները այս երկիրը կոչում են Մուղան՝ պարսկերեն հնչումով, որովհետև բառի ծագումը պարսկերեն է: Հավանաբար սա հոգնակին է «մուղ» բառի, որը նշանակում է ապուշություն: Նահանգն ունի բազում գյուղեր և դաշտավայրեր: Այնտեղ են գալիս թուրքմենները իրենց հոտերն արածեցնելու համար, և բնակիչների մեծ մասը բաղկացած է նրանցից: Գտնվում է Ադրբեջանում, և այդ տեղով է անցնում դեպի Թավրիզ տանող ճանապարհը:

Էջ 703

## 275. Մայյաֆարիկին[331] — ميافارقين (Մուֆարղին)

Դիարբաքրի ամենանշանավոր քաղաքն է: Անունն ստացել է «Միա» կոչված աղջկանից, որը քաղաքի առաջին կառուցողն է եղել, և «Ֆարկին» բառից, որը պարսկերեն «Բարդինի» տարբերակն է: Նա նորոգեց խրամատը և իր անունով կոչեց քաղաքը: Ասում են, որ քաղաքի այն մասը, որ քարից է կառուցված, շինել է տվել Կավատի որդի Անուշիրվանը, իսկ այն մասը, որը թրծված աղյուսով է կառուցված շինել է տվել Աբրուեզը: Իսկ թե քաղաքը կառուցվել է հույների կողմից, այդ ենթադրությունը հետևանք է այն բանի, որ այն գտնվում է իրենց երկրի մեջ:

Անծանոթ է քաղաքի հիմնարկման սկզբնավորությունը: Հաստատ է, թե հին ժամանակները քաղաքի վայրի վրա մի մեծ գյուղ է գոյություն ունեցել, և այնտեղ եղել է մի եկեղեցի՝ Քրիստոսի օրերից մնացած, որից մի պատ մնում է մինչև այսօր:

Ասում են, թե այդ նահանգի պետը Լիուտա էր կոչվում և ամուսնացավ այդ կողմի լեռների ցեղապետի աղջկա հետ—այնտեղ որտեղ ներկա ժամանակներում ապրում են քրդերը— այդ աղջկա անունը Մարիամ էր: Նա ունեցավ երեք որդի, որոնցից երկուսը հույների Թեոդոս թագավորի մոտ ծառայության մտան, իսկ կրտսերը, որի անունը Մարութա[332] էր, պարապեց ուսմամբ և գերազանցեց ժամանակակիցներին, և երբ իր հայրը մեռավ, խոքը հաջորդեց այդ երկրի գահի վրա և բնակիչները նրան հնազանդություն հայտնեցին:

Այդ միջոցին Հռոմի կայսրը նստում էր Մեծ Հռոմում և կայսերական տիրապետության տակ էր գտնվում մինչև Դիարբաքրի նահանգը և Ջազիրան, իսկ այդ ժամանակ պարսիկների թագավորն էր Շապուհ Լայնուսը: Սրա և հռոմայեցիների Թեոդոս թագավորի

միջև տևական և հարատև կերպով մեծ պատերազմներ էին մղվում։ Թեոդոսը ամուսնացած էր Հեղինե անունով մի կնոջ հետ, որը Ուռհայի բնակիչներից էր, և նրա որդին Կոստանդինն էր, որ հիմնեց Կոստանդնուպոլիս քաղաքը։

Երբ Թեոդոսը մեռավ, Հեղինեն դարձավ կայսրուհի՝ մինչև Կոստանդինի չափահաս լինելը։ Երբ նա կայսր եղավ, աթոռը Մեծ Հռոմից փոխադրեց Կոստանդնուպոլիս։

Այդ միջոցին մեր հիշած Մարութա իբն Լիութան, որը կառավարում էր Դիարբաքրում, հնազանդ էր պահում ժողովրդին։ Նա մեծ փափագ ուներ վանքեր, եկեղեցիներ կառուցելու և նա այդ կերպով շատ բան կառուցեց, և հնուց մնացած շատ շինություններ նրա գործն են։ Նա միաժամանակ բազմաթիվ հոտերի տեր էր։ Պարսիկները, որոնք բնակվում էին շրջակայքում, հաճախ արշավում էին և նրա հոտերը վերցնում, դրա համար նա գալով Մուֆարղինի կողմը, փշալից ծառեր կտրելով՝ իր այգիների համար ցանկապատ շինեց, որպեսզի արգելի գողությունները։

Ասում են, թե այդ ժամանակներում պարսից թագավորի աղջիկը ծանր հիվանդացավ և պարսիկ բժիշկները ոչ մի դարման չկարողացան անել։ Թագավորին խորհուրդ տվին որ դիմի Մարութային, ասելով, թե՝ նա ունի մի անսխալ դարման։ Նա էլ Հռոմի թագավոր Կոստանդինին դիմեց, որպեսզի արտոնի Մարութային գալու իր մոտ։ Կայսրը համաձայնեց։ Մարութան գնաց Մադային, բուժեց հիվանդությունը և արքայադուստրի կյանքը փրկվեց։ Շապուհը շատ գոհ մնաց այդ բանից և հարցրեց Մարութային, թե ինչ է փափագում նա փոխարենը ստանալ։ Նա էլ պատասխանեց, թե փափագում է, որ հաշտության դաշինք լինի (երկու թագավորների միջև)։ Շապուհը հավանեց, և իր ու Կոստանդինի միջև խաղաղության դաշինք կնքվեց, ու թագավորը հանձն առավ ցմահ խաղաղ ապրել։

Երբ Մարութան պատրաստվում էր վերադառնալ, Շապուհն առաջարկեց նրան, որ մի ուրիշ ցանկություն ևս հայտնի։ Այն ժամանակ Մարութան ասաց. «Քո երկրում մեծ թվով քրիստոնյաների սպանեցիր, թույլտվություն տուր, որ հավաքեմ նահատակ քրիստոնյաների և կրոնավորների աճյունները, որոնք քո հրամանով սպանվեցին»։ Թագավորը հավանեց, և նա մեծ քանակությամբ աճյուններ հավաքեց ու փոխադրեց իր քաղաքը։ Հետո գնաց Կոստանդնուպոլիս Կոստանդին կայսեր իմացնելու կատարվածի և դաշինքի մասին։ Կայսրը գոհ մնալով հարցրեց նրան, թե ինչ վարձա-



121—8

արություն է պահանջում, նա էլ պատասխանեց, որ կայսեր վայել է նյութական օժանդակություն անել, որպեսզի այդ աճյունների ամփոփված վայրի վրա պարսպապատ մի շինություն կառուցվի՝ թշնամիների կողոպուտից զերծ պահելու համար։ Թագավորը գրեց այդ կողմի կառավարիչներին, որ ամեն կերպ անձամբ ու նյութական միջոցներով օգնեն նրան։ Թագավորի արտոնությունն ստանալուց հետո Մարութան վերադարձավ իր քաղաքը և շինեց աշտարակը, որը ծանոթ է «թագավորի աշտարակ» անունով, և բլրի գագաթի վրա կառուցեց եկեղեցի, իսկ շենքի վրա էլ արձանագրեց թագավորի անունը։

Գտնվեցին մարդիկ, որոնք ամբաստանեցին նրան Կոստանդին թագավորի մոտ, չարախոսելով նրա շինությունների նպատակը, որպես թե ուզում է ապստամբվել կայսեր դեմ։ Այն ժամանակ թագավորը մարդ ուղարկեց՝ ասելով որ գնան և ստուգեն, թե եկեղեցին կառուցվա՞ծ է և իր անունը արձանագրվա՞ծ է վրան։ Եթե այդպես չէ, քանդեն ինչ որ կառուցված է։ Մարդը գնաց և երբ տեսավ, որ թագավորի անունը արձանագրված կա պատի վրա, վերադարձավ և տեղեկացրեց Կոստանդինին այդ մասին։ Այդ լուրի վրա կայսրը օգնեց նրան բոլոր շինությունների մեջ, և ինչպես ասվեց՝ նա պարսպով շրջապատեց շենքը՝ Շապուհ թագավորի կողմից նահատակված քրիստոնյա վկաների աճյունները կողոպուտից պաշտպանելու համար։ Այդ պատճառով էլ քաղաքը կոչվեց «Մաղուրսալա»*, որը արաբերենի թարգմանվելով նշանակում է Մարտիրոսների քաղաք** և այսպես էլ կոչվեց մի ժամանակ, մինչև որ Մուֆարղին անունը տրվեց նրան։

Մարութան ամրացրեց քաղաքը և իշխեց այնտեղ և մինչև 620 թվականը (1223) (քաղաքը) մնաց իր հաջորդների իշխանության տակ։

Այդ քաղաքի մոտ է գտնվում Ամիդը, բայց նա շատ ավելի գեղեցիկ է և շատ անգամ է գրավվել սրով։

Կոստանդին թագավորը հրամայեց երեք նախարարների, որ նրանցից յուրաքանչյուրը մեկական աշտարակ կառուցի։ Նրանցից մեկը կառուցեց «Ռումի աշտարակը» և եկեղեցին, երկրորդը կառուցեց «Բավիայի աշտարակը», որը ցածր է մնացել և ծանոթ է Ալի իբն Վահբ անվամբ և մի եկեղեցի, որը բլրի ստորոտումն է, և այժմ նրա ավերակի հետքերը երևում են ատաղձագործների բաղնիսի մոտ։ Երրորդը հիմնեց «Բաբ առ-Ռաբդը», որը արվարձան-

* Բառը ասորերեն է։
** Մադինաթ աշ Շուհադա։

ների դուռն է, աշտարակը և բոլորաձև եկեղեցին։ Աշտարակների վրա դրվեցին կայսեր և նրա մոր՝ Հեղինեի անունները։

Քաղաքն ունի ութ դռներ, որոնցից մեկը «Արզնի դուռ» է կոչվում և ծանոթ է նաև «Բաբ ալ-Խանազիր»* անվամբ, իսկ արևելյան կողմը՝ «Կլունչի դուռը», որը գտնվում է «Թմբկահարների աշտարակի» և «Հայելու աշտարակի» միջև և նրանց վրա գրված է թագավորի և նրա մոր անունները, և այն կոչվում է նաև «Բաբ ալ-Միրա»**, որովհետև երկու աշտարակների միջև այդ դռան վերև գտնվում էր մի մեծ հայելի և երբ արեգակը ծագում էր, նրա լույսը սփռում էր շրջապատի լեռների վրա։ Այդ հայելու հետքերը, կտորներն ու երկաթյա մասը մնում են մինչև օրս էլ։

Նրանից հետո շինեցին «Բաբ ալ-Շահվան»***, որը արքայական աշտարակի կողքին էր։ Ավելի հյուսիս կա «Պաշտպան վկայի» աշտարակը և այնտեղ է վերջին դուռը, որը արվարձաններից դեպի քաղաք է տանում, իսկ դեպի հարավ, երկու աշտարակների միջև. կա «Հրճվանքի և տխրության»**** դուռը, որովհետև այնտեղ քարի վրա քանդակված երկու նկարներ կան։ Ուրախություն խորհրդանշով նկարը ներկայացնում է մի մարդու, որ իր ձեռներով խաղում է, իսկ տխրություն խորհրդանշով նկարը մի մարդ է, որը կանգնած է և գլխի վրա ունի մի ժայռ։ Այդ պատճառով Մուֆարղինում հազվադեպ է տխուր մարդ։ Ներկայումս դուռը կոչվում է «Հին պալատի դուռ», որը կառուցեց Բանու Համդանը։ Դառնալով դեպի հարավ, բլուրի ստորոտում կար մի դուռ ևս՝ ջրի անցքի մոտ, մեծ պարսպի հարավամասում, որը բացեց Սայֆ ադ-Դաուլան և կոչեց «Հրապարակի դուռ», որը անցք է տալիս դեպի նախապարիսպը։ Իսկ Ալի իբն Վահբայի աշտարակի վրա, նրա հարավ-արևմտյան անկյունում, մի հսկայական խաչ կա փորագրված, որի համար ասում են, թե հար և նման է Երուսաղեմի Հարության տաճարի խաչին և ասում են, թե երկուսն էլ միևնույն ճարտարապետի ձեռքով են քանդակված։

Ասում են, թե քաղաքի շինությունը տևել է 18 տարի, և այդ ճիշտ է, որովհետև նման շինություն հազիվ թե այդքան ժամանակի մեջ ավարտելու հնար լինի։ Ասում են նաև, թե շինությունն սկսել է Քրիստոսից հետո 300 թվականին, իսկ Ալեքսանդրի թվագրու-

* Նշանակում է խոզերի դուռ։

** Հայելու դուռ։

*** Բաղձանքի դուռ։

**** Բաբ ալ Ֆարահ ու ալ ղամ։

թյան 623 թվականին։ Ասողներ կան, թե շինությունն սկսվեց Պետրոս և Հակոբոս առաքյալների օրով, և ասում են, թե Մարութան հիմնեց քաղաքում այն մեծ վանքը, որ Պետրոսի և Պողոսի անունով է կոչվում և որոնց մարմինները պահված են եկեղեցու մեջ և որը մինչև օրս գոյություն ունի հրեաների թաղում, նրանց տաճարի փողոցի վրա և տաճարի մոտ։ Այնտեղ կա սև մարմարից մի ավազան, որի ապակյա դարակի մեջ պահված է Հեսու իրն Նունի արյունը և որը բուժական մեծ հատկություն ունի ամեն կարգի հիվանդությունների դեմ։ Այն մեծ Ռումից բերել էր Մարութան՝ կայսրի մոտից վերադառնալիս։

Մուֆարղինը մնաց հույների ձեռքում, մինչև որ Պերոզի որդի Կավատը՝ պարսից թագավորը, Դիարբաքրի և Ռաբիայի նահանգները գրավելով, բնակիչներին տեղահան արեց և բնակեցրեց իր երկրում, նրանց համար կառուցելով Աբաղկավատ անունով մի քաղաք, որը կոչվում է նաև Արաջան կամ Ալաստան։

Նրան հաջորդեց իր որդի Անուշիրվանը, հետո Հուրմուզը* և հետո Աբրուեզը։ Օգտվելով Աբրուեզի անհոգատար վերաբերմունքից՝ իր երկրի նկատմամբ, հույների Հերակլ կայսրը, որը Օմար Իբն ալ-Խաթթաբի բարեկամն էր, գրավեց այդ նահանգները և միացրեց իր երկրին և տիրեց այնտեղ ո·թ տարի, մինչև հիջրի 18 թվականը (սկսված 12 հունվար 639)։

Մուսուլմանների կողմից Ասորիքը գրավելուց հետո, երբ ժանտախտը տարածվեց ու Աբու Օբայդա իբն ալ-Ջարրահը[333] մեռավ Օմար խալիֆը Իյադ իբն Ղանմ զորավարին մեծ բանակով ուղարկեց դեպի Ջազիրա և որը հաջորդաբար գրավեց բոլոր վայրերը։

Մի պատմագրի մոտ հերքվում է այդ ավանդությունը և ասված է, թե Խալիդ իբն ալ-Վալիդն ու ալ-Աշթար ան-Նախային կռիվ են մղել Մուֆարղինի շուրջը՝ մեծ բանակով նրա վրա գալով։ Ոմանք ասում են, թե քաղաքը կռվով գրավվեց։ Ուրիշները թե՝ հաշտությամբ հանձնվեց հիսուն հազար դինար վճարելով և պայմանով, որ ամեն չափահաս անձ տա չորս կամ երկու դինար գլխահարկ երկու կաֆիզ ցորեն, մեկ մուդա յուղ, մեկ մուդա քացախ և մեկ մուդա մեղր։ Պայման դրվեց նաև, որ բնակիչները երեք օր հյուրասիրեն անցորդ մուսուլմաններին և որ բնակության համար մուսուլմաններին մասնավոր թաղամաս հատկացվի և տասանորդ առնվի նրանց ունեցվածքից։ Այդ կատարվեց Ամիդի գրավումից հետո։

* Որմիզդ։

Էջ 717

276. Միմազ[334] — ميمذ

«Նվաճումների գրքում» ասված է, թե քաղաք է Ադրբեջանում կամ Աղվանքում։ Երբ Հիշամը իր եղբորը՝ Մասլամային, կառավարիչ նշանակեց Արմինիայի վրա, բանակ ուղարկեց այդ քաղաքը։

Էջ 767

277. Նախջուան[335] — نخجوان (Նախիջևան)

Ոմանք ասում են Նակջուան։ Այդ բառը առաջացել է Նաշավա սկզբնական ձևի փոփոխությունից։ Քաղաք է Ադրբեջանի ծայրամասում, որի մասին խոսել ենք այլ տեղում։

Էջ 775

278. Նարիզ — نريز

Փոքր քաղաք է Ադրբեջանում, Արդաբիլի մարզում։

Էջ 784

279. Նաշավա[336] — نشوى

Քաղաք է Ադրբեջանում, ոմանք ասում են Առանում, Արմինիայի սահմանի վրա։ Այդ քաղաքը ծանոթ է ամենքին Նակճավան անվամբ։ Բելազորին ասել է, թե Նաշավան Բասֆուրջան նահանգի գլխավոր քաղաքն է, որը գրավեց Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին՝ Օթման իբն Աֆանի ժամանակ և ժողովրդի հետ դաշնագիր կնքեց՝ ջիզիա վճարելու պայմանով։ Հաշտությունը հաստատվեց Դվինի բնակիչների հետ կնքված պայմանագրի հիման վրա։

Էջ 787

280. Նիսիբին[337] — نصيبين (Մծբին)

Բարգավաճ քաղաք է Ջազիրայի երկրամասում, Մուսուլից դեպի Ասորիք տանող քարավանային ճանապարհի վրա։ Ըստ բնակիչների վկայության, քաղաքը իր շրջակա գյուղերով, քառասուն հազար այգի ունի։ Նրա և Սինջարի միջև ինը փարսախ հեռավորություն կա, նրա և Մուսուլի միջև վեց օրվա ճանապարհ, իսկ Դունայսարի միջև՝ տասր փարսախ, այսինքն՝ երկու օրվա ճանապարհ։

Շրջապատված է պարսպով, որը կառուցեցին հույները, իսկ Անուշիրվան թագավորը ամբողջացրեց այն, երբ դրավեց քաղաքը։․․․

Նիսիբինն ունի բազմաթիվ այգեստաններ և ջրեր։

Մի ուրիշ գրքում կարդացի, թե մարգարեն պատմել է հետևյալը. «Մի գիշեր, երբ շրջագայում էի, տեսա մի քաղաք, որը հավանեցի։ Հարցրի, ո՛վ Գաբրիել, ի՞նչ քաղաք է սա։ Նա էլ պատասխանեց. Նիսիբինն է։ Սրա վրա խնդրեցի ալլահից, որ շուտով մուսուլմանների ձեռքն անցնի այս քաղաքը և բարօրություն շնորհվի այնտեղի մեր կրոնակիցներին»։

Նիսիբինի վրա արշավեց Իյադ իբն Ղանմը։ Քաղաքը դիմադրեց և Իյադը ստիպվեց կռվել, մինչև որ գրավեց այն և Ուռհայի դաշնագրի հիման վրա խաղաղություն կնքեց։․․․

Սայֆը ասում է, թե Սաադ իբն Աբի Վակասը 17 թվականին Քուֆայից ուղարկեց Իյադ իբն Ղանմին՝ Միջագետքը գրավելու համար։ Ուրիշ պատմիչներ ասում են, թե Ասորիքից Աբու Օբայդան ուղարկեց Աբդալլահ իբն Աբդալլահ իբն Օթմանին, որը Տիգրիսի ուղղությամբ առաջանալով և Մուսուլ հասնելով՝ անցավ գետից Բալաթ կոչված քաղաքի առջև և հասավ մինչև Նիսիբին, որտեղ բնակչությունը հաշտություն առաջարկեց։ Այդ մասին զորավարը գրեց Իյադին, որի կողմից տրված հավանության վրա Աբդալլան հաշտություն ստորագրեց։․․․

Նիսիբին անունով մի գյուղ կա նաև Հալեբի մոտ։ Մի ուրիշ մեծ քաղաք կա նաև Եփրատի ափի վրա, որը կոչվում է Հունական Նիսիբին, Ամիդից չորս կամ երեք օրվա հեռավորության վրա, նույնքան և Խառանից, որտեղ դեպի Ռումի երկիրը ճամփորդող ուղևորը անցնում է այս քաղաքով։

էջ 802

281. Նկան[338] — نقان

Լեռան անուն է Հայաստանում։

էջ 803

282. Նակչուան[339] — نقجوان

Բառը կազմված է Նաշավայից և չի կարող արաբերեն* լինել։ Ուզեցի տեղեկանալ թե արդյոք Ադրբեջանո՞ւմն է գտնվում այն։ Քաղաքը Առանի մարզումն է և բուն իսկ Նախիջևանն է։

---

* Ատրպատականի լեզու։

էջ 834

283. Նահր ալ-Ազրակ[340]— نهر الازرق

Գետ է սահմանային գոտում, Բեհեսնիի և Հիսն Մանսուրի միջև, Ռումի երկրի կողմերում։

էջ 834

284. Նահր ալ-Ասվադ[341]— نهر الاسود

Նախորդին մերձավոր մի գետ է՝ Մսիսի և Տարսոնի կողմերում։

էջ 838

285. Նահր Հուրիթ[342]— نهر حوريث

Գետ, որը ծագում է Հադաթի լճից, Մարաշի մոտ, և հոսում է մինչև որ թափվում է Ջայհան գետի մեջ։

էջ 843

286. Նահր ալ-Քիլաբ— نهر الكلاب

Առաջին գետը, որը թափվում է Տիգրիսի մեջ։ Բխում է Շիմշաթի վերևից, հունական երկրում։

էջ 856

287. Նիրուհ[343]— نيروه

Ջավազանի մարզում գտնվող մի բերդ է, որ պատկանում է Մուսուլի տիրոջը։

էջ 895

288. Վան[344]— وان

Բերդ է Խլաթի և Թիֆլիսի միջև, Կալիկալայի գավառում։ Այնտեղ պատրաստում են գորգեր։

էջ 906

289. Վաջրա— وجرى

Գավառական մի շրջան Արմինիայի մոտ, որտեղ ցուրտը սաստիկ է լինում։

Էջ 918

290. Վարավի— ورای

Փոքր, բարիքներով լի, ջրառատ քաղաք է Ադրբեջանի լեռներում, Արդաբիլի և Թավրիզի միջև։ Այդ քաղաքը պատկանում է Իբն Բիշքինին, որը այդ կողմերում մի էմիր է։ Այնտեղ ես եղել եմ։

Այնտեղ Ռաթլը իրաքյան տասնվեց ռաթլի է հավասար, այսինքն՝ 1080 դիրհեմ։ Նրա և Ահրի միջև մեկ իջևան հեռավորություն կա։

Էջ 919

291. Վարդանիս[345]— ورتنيس

Բերդ Սումայսաթի երկրում, ոմանք էլ ասում են՝ Խառանի շրջակայքում։ Այդտեղ եղան Սայֆ ադ-Դաուլա իբն Համդանի կռիվները։

Էջ 919

292. Վարդան[346]— ورثان

Քաղաք՝ Ադրբեջանի սահմանածայրում։ Նրա և Արաքսի միջև երկու փարսախ հեռավորություն կա, իսկ Վարդանի և Բայլականի միջև յոթ փարսախ հեռավորություն։

Էջ 945

293. Ալ-Հարունիա[347]— الهارونية

Փոքր քաղաք է Մարաշի մոտ, Ասորիքի սահմանագոտում, Ջաբալ ալ-Լուքքամի մեջ։ Հիմնել է Հարուն ար-Ռաշիդը։ Ունի զույգ պարիսպ և երկաթյա դռներ։ Հույները ավերեցին այն, և Սայֆ ադ-Դաուլան ուղարկեց Ղուլամ Ղարկավիային, որը վերաշինեց քաղաքը։ Ներկայումս Բանու Լավոն հայի երկրի մասն է կազմում։

Ահմադ իբն Յահյան ասել է, թե հիջրի 183 թվականին (799—800) Ռաշիդը հրամայեց կառուցել Հարունիան՝ սահմանագոտու վրա և այնտեղ բնակեցրեց զինվորներ ու կամավոր գաղթականներ, իսկ քաղաքը կոչվեց խալիֆի անունով։ Շինությունն սկսվեց նրա հոր՝ ալ-Մահդի խալիֆի օրով և ավարտվեց իր որդու օրով։ Թշնամին գրավեց այն հիջրի 308 թվականի Շավալ ամսի վերջին

շաբթում (6—13 մարտ 921), և հազար հինգ հարյուր հոգի մուսուլման բնակիչներ գերի տարվեցին, դրանց մեջ՝ կանայք և երեխաներ։

էջ 979

294. Հալուրաս— هلورس

Վայր՝ Ամիդից երկուսուկես օրվա հեռավորության վրա, որտեղից բխում է Տիգրիսը։ Այնտեղ էր, որ նահատակվեց Ալի Արմանին։

էջ 993

295. Հինզիթ[348]— هنزيط

Գտնվում է Րումի սահմանային գավառների մեջ։

էջ 1017

296. Յարնի— يرنى

Գետ, որ բխում է Հայաստանի ներքին կողմից և թափվում է Տիգրիսի մեջ Ջագիրայի լեռներում։

էջ 1044

297. Յունան[349]— يونان

Վայր՝ Պարտավից յոթ փարսախ հեռավորության վրա։ Այնտեղից մինչև Բայլական յոթ փարսախ հեռավորություն է։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ադիլ: *Այժմ Սղերդի շրջանի Բուրվարի գավառակի Ադել գյուղն է, իսկ Ջավազանը՝ Անձևացեաց գավառն է։*

2. Ալիս գետ: *Յակուտի հիշատակած երկրորդ Ալիս գետը չի կարող անվանական նմանություն ունեցող Ալեոս կամ Ալաս գետակը լինել, որը Սարոսի վտակն է Հաճինից ներքև (Ալիշան, Սիսուան, էջ 160)։ Պետք է ենթադրել, որ ակնարկությունը վերաբերում է Կյուդնոսի երկու ճյուղերից մեկին՝ Դեդիրմեն դերեսիին (Սիսուան, էջ 11)։ Իսկ գիրինների փոխանակման գործողությունները, որոնց մասին ակնարկ կա այստեղ, տեղի էին ունենում ավելի հաճախ այդ վայրից հեռու՝ Լամիս գետի վրա։*

3. Ամիդ: *Հռոմայեցիների ժամանակ* Amida, *մեր պատմիչների մոտ՝ Ամիթ կամ Համիթ։ Կոչված է նաև Կարա-Ամիդ, որովհետև շենքերը կառուցված էին բազալտի սև գույնի քարերից։ Գրավում է նպաստավոր աշխարհագրական դիրք՝ գտնվելով երկու գետերի՝ Եփրատի և Տիգրիսի բաժանման պարանոցի մոտ, Միջագետյան կղզու վերին ծայրում, ճանապարհների հանգուցակետում։*

*Քաղաքը Տիգրիսի աջ կամ արևմտյան ափի վրա է։ X դարում Մուկադդասին ասում է, թե մուսուլմանների ամենից ամուր բերդն է այն հույների դեմ։ Ըստ Նասիրի Խոսրովի, որը 1046 թվականին այցելեց և մի նկարագրություն թողեց քաղաքի մասին, պարիսպն ուներ 20 կանգուն բարձրություն և 10 կանգուն լայնություն. քարերը առանց շաղախի էին ագուցված, և յուրաքանչյուր սև քար հազար ման ծանրություն ուներ*[1]*։ Ամեն մի հարյուր կանգունի վրա կիսաբոլորակ աշտարակ կար, իսկ չորս գլխավոր կողմերի վրա՝ երկաթյա դռներ։ Հյուսիսային դուռը կոչվում էր Բաբ ալ-Արման (Հայոց դուռ)։ Պարսպից դուրս արտաքին մի ուրիշ պարիսպ 10 կանգուն բարձրությամբ շրջապատում էր քաղաքը, ունենալով պաշտպանության աշտարակներ, բայց նախորդին ոչ դեմ առ դեմ դռներ։ Մզկիթի մոտ կար մարմարիոնով սալահատակված ու նրբին քանդակներով մեծ եկեղեցի։*

*Նասիրի Խոսրովը գրել է. «Ես տեսել եմ բազմաթիվ քաղաքներ և բերդեր աշխարհի բոլոր կողմերում, Արաբիայում, Պարսկաստանում, Թուրքեստանում, Հնդկաստանում, բայց ոչ մի տեղ չգտա մի ուրիշը, որը կարելի լիներ համեմատել Ամիդի հետ։ Այն չունի իր նմանը աշխարհի վրա, և չհանդիպեցի ոչ ոքի, որը նման մի բան տեսած լիներ» (Սեֆերնամե, էջ 28)։*

---

[1] *Ըստ Պրոկոպիոսի՝ Ամիդի պարիսպները վերանորոգվեցին Հուստինիանոսի կողմից։*

Ամիդն ընկավ արաբների իշխանության տակ առաջին արշավանքների ժամանակ։ Իբն ալ-Աթիրն ասում է, թե քաղաքը նախ դիմադրություն ցույց տվեց, հետո հաշտությունը կնքվեց Ուռհայի պայմանների հիման վրա։ Վակիդին պատմում է, որ Օմար խալիֆը Իյադ իբն Ղանմին ուղարկեց Ամիդի վրա, որը հինգ ամիս պաշարելուց հետո գրավեց այն (Խալիդ իբն Վալիդի և այլ մարդկանց հետ) 638 թվականի վերջերին։ Բելազուրին գրավումը դնում է հիջրի 19-րդ տարին, այսինքն 640—641 թվականներին։

Այնուհետև քաղաքն ընկավ բյուզանդացիների ձեռքը՝ Նիկեփոր կայսեր ժամանակ, նրանից հետո ընկավ սելջուկյանների իշխանության տակ։ Մելիք շահի մահից հետո Հայաստանը և Դիարբաքրը՝ Ամիդ մայրաքաղաքով՝ ընկավ նրա երկրորդ որդու՝ Մուհամմադի իշխանության տակ։ Երբ սելջուկները թուլացան, Եգիպտոսի էյուբյանները 1240 թվականին գրավեցին այն, և Դիարբաքրը դարձավ Եգիպտոսից կախում ունեցող նահանգ։ 1249 թվականին քաղաքն անցավ Ռումի սելջուկյան սուլթաններին և մնաց նրանց ձեռքում մինչև մոնղոլների արշավանքն ու գրավումը (1254)։

Ամիդ քաղաքի ստրատեգիական դիրքի առավելությունը նրանումն է, որ գտնվում է միաժամանակ Տիգրիսի եզերքում և Եփրատից հազիվ երկու օրվա հեռավորության վրա և պաշտպանում է միաժամանակ Հայաստանն ու Միջագետքը։

Հայ պատմիչները Ամիդը սխալմամբ նույնացրել են Տիգրանակերտի հետ. մինչդեռ Տիգրան Բ-ի հիմնած քաղաքը Նփրկերտն է։ Տեսնել նաև Իբն Շադդադի 6-րդ ծանոթագրության մեջ։

4. Իբն ալ-Ֆակիհ։ Աբու Բաքր Ահմադ իբն Մուհամմադ ալ-Համադանի, մեռել է 902 թվականին։ Նա աշակերտն էր նշանավոր Ալ-Ջայհանի աշխարհագետի, որի գործն ամփոփեց ու լրացրեց։ Նրա աշխարհագրության գրքից քաղվածներ է կատարել Ալի իբն Ջաֆար Շայզարցին։

5. Իյադ իբն Ղանմ իբն Զուրայր իբն Աբի Շադդադ իբն Ռաբիա իբն Հիլալ ալ-Կուրաշի ալ-Ֆիհրի։ Մահացել է հիջրի 20 թվականին։ Աբու Բաքրի թիկնապահն էր, մասնակցել է Յարմուկի վճռական ճակատամարտին (20 օգոստոս, 636) և կատարել է գրավումներ Հյուսիսային Ասորիքում։ Գլխավոր գերակատարն է եղել Միջագետքի գրավումների մեջ։ Աբու Բաքրը նրան փոխանորդ նշանակեց Ասորիքի վրա։ Նա է գրավել Ամիդն ու Ռակկան։

6. Կուդաանեն էին կոչվում արաբական մի ցեղախմբին պատկանողները, որոնց սկզբնական բնակավայրն էր հին Մոաբի և Պալմիրայի միջև տարածվող երկրամասը։ Այս ցեղախմբի մի կարևոր ճյուղն էր Քալբինների ցեղը։ Սրանք հարավ-արաբական ցեղերից էին, մինչդեռ Կայսիները՝ հյուսիս-արաբական ցեղեր էին։ Այս երկու ցեղախմբերի միջև տևական թշնամություն է եղել. սրանք իրենց կռիվներով օմայան խալիֆայության ներսում անվերջ խռովություններ առաջ բերին Խորասանից մինչև Իսպանիա։

7. Անի։ Անիի մասին քիչ են խոսել հին արաբ հեղինակները։ Բացի Յակուտից, որը երկու տող է միայն հատկացրել, առաջինը խոսել է իբն ալ-Աթիրը՝ մինչև հիջրի 456 թվականը (1064) Ալփ-Արսլանի գրավումները թվարկելիս, տալով քաղաքի նկարագրությունը (Իբն ալ-աթիր-Թարիխ... բնագիր, 10-րդ հատոր, էջ 16). Խոսել է նաև Ղազվինին, ասելով թե՝ «Այդ վայրն ունի տաք կլիմա, արտադրում է շատ ցորեն և քիչ պտուղ»։ Իբրև բերդ հիշատակվում է սկսած V դարից։ Նրա ամուր դիրքը Ծաղկոցաձորի հովտի (որի միջով մի հեղեղատ Ալաջայի բլրից գալով Թափ-

վում է Արփա-Չայի մեջ) և գետի սեպաձև ափի միջև, ավելի է շեշտում նրա ռազմական կարևորությունը։ Սկզբում Կամսարականների դղյակն էր, հետո Աշոտ Մսակերը գնելով գավառի հետ՝ դարձրեց Բագրատունիների ամրոց։

Բագրատունյաց թագավորության ժամանակ Անին ծաղկեց իբրև մայրաքաղաք և իբրև արտադրության ու առևտրի մեծ կենտրոն։ 1044 թվականին գրավեցին բյուզանդացիները։ 1064 թվականին Ալփ-Արսլանը գրավեց և ավերեց։ 1072 թվականին Դիոգեն կայսեր կրած մեծ պարտությունից հետո սուլթանը Անին վաճառեց Շեդդադյան մուսուլմանական դինաստիային, որն իշխեց այնտեղ (որոշ ընդմիջումներով) մինչև XII դարի վերջը։ 1124 թվականին հայերը քաղաքը հանձնեցին վրաց Դավիթ II-ին, իսկ դարի վերջին Շեդդադյանները վերջնականապես վտնդվեցին, և քաղաքը դարձավ Զաքարյանների կենտրոն։ 1226 թվականին Ջալալեդդինը ապարդյուն պաշարեց քաղաքը։ 1236 թվականին մոնղոլները գրավեցին, բայց մի առժամանակ դեռ քաղաքը մնաց Զաքարյանների իշխանության տակ։ Ըստ ավանդության՝ կործանվել է 1319 թվականի երկրաշարժից, սակայն Անիի անկման պատճառները մոնղոլա-թաթարական հարկային կեղեքումներն ու համաշխարհային կարավանային առևտրի ճանապարհների փոփոխությունն է եղել։

Մանուչեի մզկիթի վրա գտնվող իլխան Աբուսայիդի պարսկերեն արձանագրությունը ցույց է տալիս այն ճիգերը, որը մոնղոլներն անում էին քաղաքը կործանումից փրկելու համար. սակայն քաղաքն ապրում էր իր անկման շրջանը, և նրա բազմաթիվ ազգաբնակչությունը՝ առևտրականներից և արհեստավորներից բաղկացած, ցրվում էր հարևան և հեռավոր երկրները։ (Տե՛ս В. В. Бартольд, Персидская надпись на стене анийской мечети Мануче. СПб, 1911)։

8. Արխազ: Միջին դարում Աբխազների երկիր էր կոչվում այժմյան Արևմտյան Վրաստանը և Աբխազիան՝ Քութայիս մայրաքաղաքով, Սև ծովի եզերքում։ Հայ և վրացի մատենագիրները այդ երկիրը կոչում են նաև Եգեր, բայց արաբական մատենագիրները նույնիսկ ամբողջ վրացական թագավորությունը շարունակում էին նախկինի պես անվանել Աբխազիա։ Խորենացուն վերագրված աշխարհագրության մեջ հիշատակվում է որպես «Ապխազ», հետագա հայ մատենագիրների մոտ՝ «Ափխազք», Թովմայի մոտ՝ «Ափհազաց աշխարհ»։ X դարի վերջում Աբխազաց թագավորությունը միացվեց վրաց Բագրատունյաց թագավորությանը։

9. Արրաշտուիմ: Տեղն անհայտ է. պետք է փնտրել այժմյան Թալիշի շրջանում։

10. Արսուս քաղաքը պետք է նույնը լինի Ռւֆսուսի հետ։ Տե՛ս այդ անունը։

11. Արլստայն կամ Ալրիստան: Կատաոնիայի գինվորական կենտրոնն էր։ Պաշտպանում էր դեպի Կոմագեն տանող Տավրոսյան անցքերից կարևորագույնի՝ Հադաթի անցքի մուտքը։ Այդ լեռնանցքը Արլստանից գնում է դեպի Մարաշ կամ Գերմանիկե։ (Ramsay. The hist. geogr. of Asia Minor, էջ 311)։

Գտնվում է Ջայհանի վերին ավազանում։ Հաճախ մի բառախաղով՝ «Ալ-Բուստան» էլ են կոչում («Պարտեզ» նշանակությամբ)՝ կանաչապատ շրջապատ ունենալու համար (Reclus, Nouv. geogr. univ., IX, L'Asie Ast., էջ 656)։

Հուստինիանոսի երկրորդ բաժանման ժամանակ այս քաղաքը ընկնում էր երրորդ Հայքում (Հյուբշման, Հանդ. Ամս., 1904, էջ 390).

Ուռհայեցին գրում է. «Ապլաստա ի Ջահան գաւառի» (էջ 375), «Մայրաքաղաքն Ապլաստա» (էջ 519)։

12. Տեսնել ծանոթագրությունը Ուռհայի մասին։

13. Աղրբեջան: Աղրբեջանի ուրույն լեզվի մասին ակնարկում է նաև Նասիրի Խոսրովը (XI դար) «Սեֆերնամե»-ում, ասելով, թե 1043 թվականին Թավրիզում

կար մի հայտնի բանաստեղծ՝ Կաթրան Թարրիզի, որ լավ բանաստեղծություններ էր գրում. սակայն պարսկերեն լեզուն լավ չէր իմանում. «Նա եկավ ինձ մոտ և Մանջիկի ու Դակիկի դիվանները բերեց և ինչ որ իրեն համար անհասկանալի էր՝ հարցրեց ինձնից, և ես նրան բացատրեցի ու նա գրի առավ։ Իր բանաստեղծություններից էլ ինձ կարդաց» (Սեֆերնամե, էջ 17)։

*14. Ան-Նեսավի պատմիչը, որ Ջալալեդդինի պաշտոնական պատմագիրն էր, ընկերանում էր նրա բոլոր արշավանքներին և նրա պետության մեջ պետական քարտուղարի պաշտոն ստացավ, գրում է. «Երբ Ջալալեդդինը ուղղվեց դեպի Ադրբեջան, մոտենալով այդ երկրին, Շարիֆ ալ-Մուլքի ձեռքով պատգամագրեր ստացվեցին Մարաղայի բնակիչների կողմից, որոնք հրավիրում էին նրան շտապ գալ իրենց քաղաքը և ազատել իրենց բոլոր այն բռնություններից, որոնց զոհ էին դնում։ Նրանք մեծապես տանջվում էին բռնակալների անարգություններից, բարձր պաշտոնյաների չարաշահություններից և վրացիների հարձակումներից։ Երկիրը կառավարող աթաբեկի հեղինակությունը այն աստիճան տկարացած էր, որ նա անկարող էր հարգել տալ իրեն և ձնշել հարստահարություններըս։*

*Սուլթանը Մարաղայից անցավ Նախիջևան, պաշարեց Թավրիզը հիջրի 622 թվականին (13 հունվ.—31 դեկտ. 1225), որտեղի սուլթան Տուղրիլի աղջիկը հայտնեց, թե պատրաստ է հանձնելու քաղաքը պայմանով, որ իրեն թողնվի Խոյը՝ իբրև ավատ։ Համաձայնություն ստանալուց հետո Թավրիզը անձնատուր եղավ։*

*Հայ պատմիչներից Վարդանը գրում է. «Իսկ ի վերանալ Թուխս մերոյ ի համարն վեց հարիւր յոթանասուն և չորս (մ. թ. 1225) երկոքին որդիքն Խորազմն շահին, պարտեալ և նեղեալ ի Թաթարացն, գան երկերիւր հազարու, որպէս ասեն, ընդ Աղլբարական երկիր» (Վարդան, էջ 143)։*

*Օրբելյանը գրում է, նույն (հայոց 674) թվականին դնելով Խորեզմ շահի արշավանքը, «Հալածական եղեալ ի Թաթարէն սուլտանն Խորազմայ Ջալալադդինն որդի Խորազմշահին և գայ ընդ Պարսկաստան և անցեալ ընդ Ատրպատական մտանէ յաշխարհս Հայոց» (Օրբելեան, էջ 399)։*

*Տե՛ս նաև Գանձակեցի, էջ 211։*

15. Օմար իբն Խաթթաբ: *Մուհամմադին հաջորդող խալիֆներից երկրորդը արաբական կայսրության հիմնադիրն է համարվում։ Նա ծղավ նոր կրոնի գլխավոր տարածողը։ Օմարի ժամանակ իսլամությունը դուրս եկավ Արաբիայի թերակղզուց և սկսեց տարածվել։ Սպանվեց դաշույնով, Մուղիրա իբն Շուբայի գերի Աբու Լուլվայի կողմից։ Այս վերջինի մասին ոմանք ասում են, թե պարսիկ էր, իսկ ուրիշները քրիստոնյա։*

16. Ալ-Մուղիրա իբն Շուբա ալ-Թակաֆի: *Սեզրնական շրջանի իսլամական նշանավոր գործիչ էր։ Պարսկերեն լեզվին ծանոթ լինելով, դեսպան ուղարկվեց Հազկերտ III-ի մոտ։ Մասնակցեց Հարավային Միջագետքի արշավանքին։ Օմար խալիֆի կողմից ուղարկվեց Իրաք՝ Սաադ իբն Աբի Վակկասին օգնելու համար, մասնակցեց Կադեսի ճակատամարտին (636), Բասրայի կառավարիչ կարգվեց, հետո պաշտոնազրկվեց։ Մասնակցեց Պարսկաստանի գրավման համար մղվող Նեհավենդի վճռական ճակատամարտին (642) և ավարտեց Ատրպատականի գրավումը հիջրի 22 թվականին (643)։*

*Ասում են, թե սա է տվել Օթմանի խալիֆին Ղուրանը վերջնականապես ձևավորելու գաղափարը։*

*Ալու և Մուավիայի պայքարի ժամանակ նա միացավ Մուավիային. վերջինս գնահատելով նրա աջակցությունը, նրան կարգեց Քուֆայի կառավարիչ։*

17. Խուզայմա իբն ալ-Յաման ալ-Արսի: Նախապես Հարկահան նշանակվեց Իրաքում, հետո Օմար խալիֆը նրան նշանակեց Անդրտիգրիսյան երկրների կառավարիչ։

18. Օտբա իբն Ֆարկատ աս-Սուլամի, նշանավոր զորավար էր։ Մեծ դեր կատարեց Ասորեստանի գրավման գործում։ Հետո նշանակվեց Ադրբեջանի կառավարիչ։

Օտբայի կնքած դաշինքը, ըստ Թաբարիի, պարունակում է արաբական տիրապետության հաշտության պայմանների գլխավոր կետերն՝ իրենց առանձնահատկություններով։

Օտբան Բահրամ իբն Ֆառուխզադի գիմադրությունը ընկճելուց հետո գրեց հետևյալ թուղթը։

«Հանուն աստուծո ամենագթասերի և ամենաողորմածի։ Ահավասիկ այս պայմանները շնորհեց Օտբա իբն Ֆարկատը՝ Օմար իբն Խաթթաբի կառավարիչը՝ Ադրբեջանի ժողովրդին, նրա դաշտերի, լեռների, արոտատեղերի և ստորոտների վերաբերմամբ, ինչպես նաև կրոնավորների։ Բոլոր բնակիչներին ապահովություն է տրվում նրանց կյանքի, գույքի, կրոնի և հաստատությունների համար, այն պայմանով, որ նրանցից ամեն մեկը գլխահարկ վճարի ըստ իր կարողության, բացի երեխաներից, կանանցից և չքավորներից, որոնք աշխարհական ունեցվածք չունեն, և բացի կրոնավորներից, որոնք նույնպես աշխարհական գույքից զուրկ են։ Այս արտոնությունները շնորհվում են թե երկրի բնիկ ժողովրդին, և թե նրանց հետ բնակվողներին։ Նրանք պարտավոր են գիշեր և ցերեկ հյուրընկալել մուսուլման զորագնդերից անջատված զինվորներին և նրանց ուղեցույց լինել։ Ով իր խաշինքը ժանտախտից կորցրեց տարվա ընթացքում, նա ազատ է մնում նույն տարվա հարկից։ Ով մնում է երկրում, նա կվայելի սույն իրավունքները, իսկ ով կհեռանա, նրան ապահովություն կտրվի մինչև իրեն համար ապաստան գտնելը», հիջրի 18 թվականին (1640)։

19. Վակիդի Աբու Աբդլլա Մուհամմադ իբն Օմար, ծնված Մադինայում 747 թվականին։ Նախապես ցորենի վաճառական էր, բայց սնանկացավ և ստիպված եղավ հեռանալ հայրենի քաղաքից։ Գնաց Բաղդադ, որտեղ Բարմաքյան Յահյա վեզիրը նրան դատավոր նշանակեց։ Գրել է «Քիթաբ ալ-Մաղազի» (Գիրք արշավանքների)։ Վակիդին մահացել է 823 թվականին։

20. Աբու Միխնաֆա, Լուտ իբն Յահյա։ Գրել է 33 գիրք զանազան անձնավորությունների և պատմական դեպքերի մասին։ Նրա երկերը գլխավորապես նվիրված են Իրաքի գրավմանը և արժանահավատ տվյալներ են պարունակել այդ շրջանի մասին։ Իր գրքերից օգտվել են հետագա պատմագիրները։ Մահացել է 774 թվականին։

21. Աշաս իբն ալ-Կայիս ալ-Քինդին Բանի Քինդի ցեղապետն էր, Մուհամմադի հակառակորդներից։ 633 թվականին ապստամբեց Հադրամավդում։ Սկզբում Ալու կողմնակիցն էր ընդդեմ Մուավիայի, բայց հետո դավեց և այս վերջինի կողմն անցավ։ Հայաստանի կառավարիչ կարգվեց ըստ Բելազորու և Իբն Ֆակիհի տված տեղեկության՝ Օթմանի խալիֆայության ժամանակ։

22. Ալ-Մադայնի, Աբուլ-Հասան Ալի (753—845), ունի մեծարժեք աշխատություններ, որոնք չնայած կորած են, բայց լայնորեն օգտագործվել են Բելազորի և Թաբարիի կողմից։ Գրել է «Քիթաբ ալ-Մաղազի» (Գիրք արշավանքների) և «Թարիխ

ալ-Խուլաֆա» (Խալիֆաների պատմություն)։ Գրել է նաև գրքեր նշանավոր կանանց մասին և բազմաթիվ անեկդոտներ։

23. **Օթման իբն Աֆան**, *մուսուլմանական երրորդ խալիֆը (644—656) պատկանում էր Մեքքայի մեծ ցեղախմբի՝ Օմայաններին։*

*Սա շարունակեց Օմարի քաղաքականությունը, բայց շուտով մեծ դժգոհություն առաջացրեց իր ֆինանսական խնայողությունների պատճառով, որով մեծ զորականների ռոճիկը նվազեցրեց և իր դեմ հանեց զինվորական բարձրաստիճան պաշտոնյաներին, դժգոհություն պատճառեց նաև կրոնի քարոզիչներին, որովհետև ջնջեց գոյություն ունեցող ղուրանները ու հաստատեց պաշտոնական նոր Ղուրան և այդպիսով ամրաստանվեց որպես մարգարեի խոսքերը խեղաթյուրող, թշնամացրեց հայտնի զորականներին և կառավարիչներին, որովհետև շատերին պաշտոնազրկելով՝ իր ազգականներին էր պաշտոնի նշանակում։ Օթմանը քաջալերեց արշավանքները։ Հայաստանը, ինչպես նաև Պարսկաստանը նրա ժամանակ էր, որ լրիվ կերպով գրավվեց։ Սողավանքների ձեռնարկեց Հյուսիսային Աֆրիկայում և Փոքր Ասիայում։ Սպանվեց 656 թվականի հունիսին։*

24. **Վալիդ իբն Օկբա:** *Ըստ Թաբարիի՝ հիջրի 24 թվականին (7 նոյ., 644—27 հոկտ. 645) Օկբան խաղաղություն կնքեց Ադրբեջանի բնակիչների հետ, 800 հազար դիրհեմ վճարելու պայմանով, համաձայն Հուզայֆա իբն Յամանու հետ հիջրի 22 թվականին կնքված պայմանագրի։*

25. **Ադանա:** *Կոչված է «Անտիոքիա առ Սարոսիւ» ի պատիվ Անտիոքոսի, հետո «Մաքսիմյան Ադանեանք»* ΑΔΑΝΕΩΝ *ի պատիվ Մաքսիմիանոս կայսեր։*

*V դարի երկրորդ կեսին ավան կամ գյուղավան էր, VI դարում Հուստինիանոսը նորոգեց քաղաքը և կառուցեց կամուրջը։ Ադանան մասամբ վերաշինվեց 758 թվականին՝ ալ-Մանսուր խալիֆի կողմից և դարձավ լավ ամրացրած ու բազմաբնակ վայր։ Բերդը գտնվում էր գետի արևելյան ափի վրա և քաղաքին միացված էր միակամար կամուրջով, ինչպես Յակուտն է ասում. իսկ քաղաքը պաշտպանված էր պարսպով շրջապատված խրամով։ Ուներ ութ դռներ։ Քաղաքը գտնվում է Սայհան (Սարոս) գետի ափին։ Մսիսից այս կողմ է գտնվում Հուստինիանոսի օրով կառուցված կամուրջը, որը 743 թվականին վերաշինվեց ու կոչվեց «Ջիսր ալ-Վալիդ», Օմայան խալիֆի անունով։ Այդ կամուրջը կրկին վերանորոգվեց Մուտասիմ խալիֆի ժամանակ՝ 840 թվականին։*

*X դարում Իսթախրին ասում է, թե Ադանան բարգավաճ է և կիսով չափ փոքր քան Մսիսը։ Նույնը վկայում է նաև Իբն Հավկալը։*

*Երբ խաչակիրները անցան Կիլիկիայից, Ադանան գտնվում էր Հեթումյան տան հիմնադիր և Լամբրոնի տեր Աշոտ Օշինի իշխանության տակ։ Բյուզանդիայից մատուցած ծառայությունների փոխարեն Կոմնենոս կայսրը, իբր վարձատրություն, Օշինին նշանակել էր Կիլիկիայի ստրատոպեդարխ։ 1097 թվականի սեպտեմբեր—հոկտեմբեր ամիսներին Ադանան և Մսիսը միաժամանակ գրավեց Տանկրեդը, հետո խաչակիրների ձեռքից գրավեց պարոն Լևոնը, երբ Դաշտային Կիլիկիան միացրեց Ռուբինյան նորակազմ իշխանությանը։*

*Կիլիկիայի թագավորության սկզբնական շրջանում Ադանան երկրորդական կարգի քաղաքներից էր (Ալիշան, Սիսուան, էջ 258), բայց հետզհետե ավելի կարևորություն ստացավ քաղաքական և կրոնական տեսակետից։ Թագավորները այնտեղ բնակություն հաստատեցին։ Իդրիսին* (XII դար) ասում է, թե Թորոս II-ի ժամանակ քաղաքը ծաղկած էր արհեստներով և վաճառականությամբ։*

* Գրել է «Թիհլաթ» (ուղեգրություններ)։

Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրության մեջ գրում է. «Ահմադ ալ-Քատիբը մեզ տեղեկացնում է, թե Ադանան, ինչպես և Տարսոնը, կառուցել է Հարուն ար-Ռաշիդը, իմ կողմից ավելացնեմ, որ այսօր քաղաքը գտնվում է հայերի ձեռքում։ Համաձայն Իբն Հաուկալի, այդ քաղաքը գտնվում է բարեբեր և բարգավաճ երկրի մեջ, նրա մեծությունը Մսիսի կեսի չափ է, և կառուցված է Սայհան գետի ափին։ Այդ գետի վրա կառուցված կամուրջը հրաշալի, շատ երկար և ամուր շինություն է։ Ադանայի հեռավորությունը Մսիսից 12 մղոնաչափ է միայն, իսկ Տարսոնից՝ 18 մղոնաչափ»։

**26. Աբու Սուլայմի:** Սահմանագլխային զորագնդերի հրամանատարությունը և նահանգների վարչությունը հանձնվում էր միշտ արաբ զինվորականներին։ Առաջին անգամ Հարուն խալիֆը եղավ, որ այդ պատասխանատու պաշտոնի վրա դրեց մի թուրք զորականի՝ Աբու Սուլայմին։

**27. Ահմադ իբն ատ-Թայիբ աս-Սարախսին** ծնվել է Խորասանում և ծանոթ է ավելի «Տիլմիզ ալ-Քինդի» մականունով։ Նրա գրվածները կորած են, նա Աբբասյան ալ-Մուտադիդ բիլլա խալիֆի (892—902) ուսուցիչն է եղել։ Իրեն հաղորդված մի գաղտնիք հրապարակած լինելու հանցանքով բանտարկվեց և մահվան դատապարտվեց 899 թվականին։

**28. Առան:** Պարսիկները և վրացիները կոչում են Ռան, հայերը՝ Աղվանք։ Աղվանից երկիրը գրավում էր Կուրի հովիտը՝ մինչև գետի խառնարանը Արաքսի հետ, այնուհետև՝ Հյուսիսից մեծ Կովկասյան լեռնաշղթան, մինչև Արաքս գետի ներքին հոսանքը։

Աղվանից պատմիչը Մովսես Կաղանկատուացին նկարագրում է իր երկիրը բնական գեղեցկություններով և բուսական ու կենդանական հարստություններով (Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից)։

Աղվաններն ունեցել են իրենց առանձին թագավորությունը՝ «Առանշահիկ» կոչված դինաստիայի գլխավորությամբ։ VI դարից «Միհրական» կոչված ֆեոդալական տոհմը անցավ իշխանության գլուխ։ Թվում է, որ սրանց Իրանշահիկ կամ Առանշահիկ կոչված իշխանության սահմանը ավելի սեղմ էր, քան նախահայրի տարածությունը, մասնավորապես արաբական տիրապետության շրջանում։ Այս «Միհրական» դինաստիայի վերջին իշխան Վարազ Տրդատին սպանեց իր ազգական Ամիրներսեհը 822—823 թվականներին, Մուտասիմի (833—842) իշխանության ժամանակ Աֆշին ստիպանը պարտություն կրեց Սահլ Սմբատյանից, որը տիրացավ Առանին։ Մի քանի տարի անց սույն Սահլը ծառայություն մատուցեց Աֆշինին՝ ձերբակալելով Բաբեկին, և խալիֆը, իբրև վարձատրություն, նրան նշանակեց Առանի պատրիկ։ Հետագայում, երբ Աղվանքն ընկավ մուսուլման էմիրների ձեռքը, «Իրանշահ» տիտղոսը կրեցին Շամախու և Բաքվի մեջ ընկած երկրամասի տերերը։ Ավելի ուշ Շեդադյան դինաստիան տիրացավ Առանի իշխանության մի մասին և Գանձակը դարձրեց մայրաքաղաք։ Նախկին մայրաքաղաք Պարտավը Յակուտի ժամանակ կարևորություն չունեցող մի վայր էր։

**29. Արճեշ:** Սեպագիր արձանագրությունների մեջ Arzasku, հույների մոտ Arsissa, գտնվում է Տուրուբերան նահանգում և ըստ Հովհաննես կաթողիկոսի՝ Աղիովիտ կամ Աղվոյ հովիտ գավառում. Վանա լճի հյուսիս-արևմտյան կողմը։

Դեռ 775 թվականից հետո արաբ բնակչություն հաստատվեց այնտեղ, ինչպես և Խլաթում ու Մանազկերտում։ X դարի վերջից մտնում է Արծրունյաց թագավորության սահմանների մեջ, իսկ XI դարի սկզբում քաղաքը գտնվում էր Մրվանյան

ամիր-Նասրի իշխանության տակ, 1054 թվականին քաղաքացիները հանձնվեցին Տուղրիլ Բեկին (Ուռհայեցի, էջ 140)։

XII դարի երկրորդ կեսին այնտեղ տիրում էր Սուկմանի թոռը՝ Ամիր Միրանը, որը «տէր էր բազում քաղաքաց և գաւառաց Խլաթայ, Արճիշոյ, Մշոյ, Տողատափայ և Մանձկերտոյ» (Գրիգոր Երեց, էջ 512)։

Արճեշ քաղաքը անցյալ դարի կեսին Վանա լճի ջրերի տակն անցավ, ծովախորշի ափին մինչև այժմ էլ մնում է քաղաքի ավերակների մի մասը։ Անընդհատ պատերազմների և Վանա լճի մակերևույթի աստիճանական բարձրացման հետևանքով ավերվեց և ջրի տակն անցավ նաև բերդաքաղաքը, որի տեղը հիմնվեց այժմյան Ականց քաղաքը, որը գտնվում է ոչ թե ծովափին, այլ ծովից մի քիչ դեպի հյուսիս։

30. Արդաբիլ կամ Արդավիլ։ Հնագույն հայ մատենագիրները չեն հիշատակում։ Ղևոնդը գրում է «Արտաւէտ», Հովհաննես կաթողիկոսը՝ «Արտավիլ», արաբներին այս վերջին ձևով է ծանոթ։

Արտավիլի մոտ է գտնվում Սավալան գագաթը, որը հանգած հրաբուխ է և ամբողջ Արևելյան Ադրբեջանի ամենաբարձր գագաթն է հաշվվում։ Քաղաքը գտնվում է բոլորաձև տափաստանում, ամեն կողմից լեռներով շրջապատված։ Ըստ ավանդության, Սասանյան Պերոզ թագավորն է կառուցել այն, և կոչվել է Բադան (կամ Արտաւան) Պիրուզ կամ Պերոզակերտ։ Կլիմայի լավության պատճառով պարսից թագավորների ամառանոցն էր։

Օմայանների ժամանակ Արդաբիլը եղավ Ադրբեջանի մայրաքաղաք, և պահակազորը Մարաղայից փոխադրվեց այնտեղ։ Ուշ Աբբասյանների ժամանակ Ադրբեջանի մայրաքաղաքը դարձավ Թավրիզը։

31. Արտաշատ։ Լատիներեն Artaxiate. Այրարատ նահանգում Արտաշեսյան և Արշակունյաց դինաստիաների ժամանակ եղել է Հայաստանի մայրաքաղաքը։

Քաղաքական և կրոնական կենտրոն լինելուց բացի, Արտաշատը արհեստի և առևտրի կենտրոն էր միջազգային նշանակությամբ։ Գտնվելով այն սահմանակետի վրա, որից այն կողմ հռոմեացի վաճառականներին արգելված էր անցնել, քաղաքը արևելքի և արևմուտքի փոխանակության կենտրոն դարձավ։

Արաբական արշավանքների ժամանակ հիշատակվում է քաղաքը։ Բելազորին կոչում է «Կիրմիզի ավան». «Կարյաթ ալ-կիրմիզ», որովհետև այնտեղ «կիրմիզ» կոչված միջատից (որդան-կարմիր) ստացված կարմիր ներկով կերպասներ էին ներկում։

Պարսկերեն լեզվով «քիրմ» նշանակում է որդ, որով գույնի անունը առաջ է եկել որդի անունից։ Թուրքերեն «քըրմըզի» նշանակում է կարմիր, ֆրանսերեն Cramoisi.

32. Հաբիբ իբն Մասլամա։ Ծնվել է Մեքքայում և եղել Մուավիա խալիֆի զորականներից։ Այս խալիֆի ժամանակ նա ղեկավարել է Փոքր Ասիայի և Հայաստանի վրա կատարված արշավանքները։ Հայաստանի գրավումը վերագրում են նրան։ Կոչվում է նաև Հաբիբ ար-Ռումի։ Մահացել է մոտ 55 տարեկան հասակում՝ Մուավիայի խալիֆայության (661—680) ժամանակ, սակայն թվականը հայտնի չէ։

36. Երզնկա։ Հնում բուն անունը եղել է «Երէզ», ինչպես հիշվում է Ագաթանգեղոսի մոտ, Եկեղյաց գավառում՝ Բարձր Հայքի նահանգում։ Հին մատենագիրները հիշատակում են որպես գյուղ կամ ավան։ Բառը հետագայում աղավաղվելով դարձավ Երզնկա, իսկ արաբների և թուրքերի մոտ՝ Արզինջան։

Երզնկան հին Հայաստանի հեթանոսական կարևոր կենտրոններից էր, որտեղ գտնվում էր Անահիտի կամ Արտեմիսի հռչակավոր մեհյանը։

1230 թվականին քաղաքի պարիսպների առաջ Ջալալեդդինը պարտություն կրեց սելջուկյան Ալայեդդին Քայքոբադի և էյուբյան ալ-Աշրաֆ սուլթանի միացյալ ուժերից։

1243 թվականին թաթարները գրավեցին Երզնկան և բնակիչներին անխնա կոտորեցին, դիմադրություն ցույց տալու համար։

Մուստավֆին գրում է, որ Երզնկայի պարիսպները նորոգեց սելջուկյան սուլթան Ալայադդին Քայքոբադը XIII դարի վերջին։ Իբն Բատուտան, որ 1333 թվականին այցելել է այնտեղ, հայտնում է, որ բնակիչ թուրքերն էլ հայերեն էին խոսում։ Նույն հեղինակը «Հաֆթ աննադար» գրքում ասում է, թե Երզնկայի բնակիչների մեծամասնությունը հայեր են։ Քաղաքն ունի ճոխ շուկաներ, այնտեղ գործում են գեղեցիկ կերպասներ։

Աբու-լ-Ֆիդան աշխարհագրության գրքում գրում է. «Քաղաք է Հայաստանում»։ Ըստ Իբն Սայիդի, Արզանքանը գետեղված է Սվազի և Էրզրումի մեջտեղ, երկու քաղաքներից 40-ական փարսախ հեռավորության վրա։ Այն ճանապարհը, որը Էրզրումից գնալի Երզնկա է տանում, ամբողջ երկայնքով անցնում է մարգագետինների և լավ մշակված դաշտերի միջով։

34. Արզն: Արգիշտիի արձանագրությունների մեջ հիշված է Azani, հռոմեական աղբյուրներում՝ Arzanene, Խորենացին հիշատակում է իր պատմության մեջ Արձն ձևով (Խորենացի, Պատմություն, գիրք Բ... Ե)։

Հետագա պատմագիրները գրում են Արզն (Ասողիկ, էջ 36, Թովմա, էջ 39) «յԱրզն Աղձնեաց»։

Հիշատակված ենք գտնում նաև «Աղձն» ձևով։ Ասորական «Արզուն» ձևով հանդիպում ենք Միխայել Ասորու թարգմանության մեջ (էջ 255), իսկ «Ազրու» ձևով տալիս են Ասողիկը (էջ 195) և Ուռհայեցին (էջ 70)։ Արաբները կոչում են «Արզան»։ Գտնվում է Սղերդի և Մուֆարղնի միջանք այս վերջինից 7 փարսախ (24 մղոն) հեռավորության վրա։

Արաբական արշավանքների ժամանակ հիջրի 20 թվականին (641) Իյադ իբն Ղանմը նվաճեց Արզնը և ըստ Բելազորու, խաղաղություն կնքեց Ուռհայի պայմանների հիման վրա։ Այս քաղաքը արաբների ուղղակի տիրապետության ենթարկվեց և մասը կազմեց Ջազիրայի գինվորական շրջանի մասը, կազմելով դարձյալ Շարյանի ամիրաների կալվածը։ IX դարի կեսին նրանց Մուսա իբն Զորարա իշխանը միացավ հայոց Բագրատ իշխանի և Աշոտ Արծրունու հետ՝ ընդդեմ խալիֆի, և մասնակից եղավ Յուսուֆ ոստիկանի սպանության գործին։

Իսթախրին (X դար) վայրը անվանում է անպարիսպ քաղաք, որի արևմտյան կողմի վրա կա մի հոյակապ ամրոց։

X դարից սկսած Սայֆ ադ-Դաուլան բնակություն հաստատեց այնտեղ, բայց երբ ինքը և եղբայրը՝ Նասր ադ-Դաուլան Միջագետքում զբաղված էին քաղաքական հետապնդումներով, բյուզանդացիները արշավեցին և ավերեցին այն։ Սակայն XI դարում Նասիրի Խոսրովը, որ այցելեց 1046 թվականին, գրում է. «Հասանք Արզն, բազմամարդ և ծաղկյալ քաղաքը։ Այնտեղ կտեսնվեն հոսուն ջրեր, պարտեզներ, գեղեցիկ ծառեր և լի առատ շուկաներ» (Սեֆերնամե, էջ 23)։

Թվում է, թե քաղաքը լիովին վերականգնվեց, որովհետև Մուստաֆֆին (XIV դար), որ ճամփորդել է այնտեղ, նկարագրում է դարձյալ որպես ծաղկյալ մի վայր։

*Այժմ Հայրու քաղաքի մոտ ավերակ վայր է։*

35. Էրզրում: *Հայկական աղբյուրների Կարնոյ քաղաքն է։ Սելջուկյանների կողմից Արզն (Արծն) վաճառաշահ քաղաքի ավերումից հետո, բնակիչները գաղթեցին Կարնո ամուր քաղաքը և այն կոչեցին իրենց նախկին քաղաքի անունով՝ Արզն։ Եվ որովհետև բյուզանդական հողի վրա էր, նախկինից զանազանելու համար կոչվեց հույների Արզն՝ «Արզն ար-Ռում»։*

*Էրզրումի սուլթանությունը կազմվեց 1192 թվականին և գոյություն ունեցավ մինչև 1230 թվականը։ Էրզրումը կազմեց մի անկախ սելջուկյան իշխանություն՝ Տուղրիլ շահի իշխանության ներքո։ Տուղրիլ շահի որդին, Մուղեդդինը իր հոր արտոնությամբ քրիստոնյա դարձավ և ամուսնացավ Վրաստանի Գեորգի III թագավորի քրոջ՝ Ռուզուդանի հետ՝ Քիզ Մալիք անվամբ, որը իշխեց 1223—1237 թվականներին։*

36. Արշակ: *Հավանաբար գտնվել է այժմ Արշակ կոչվող շրջանում (Մահալ), Արտաքիլ քաղաքից հյուսիս։*

37. Ուրմիա: *Ուրմ կամ Որմիզդպերոժ։*

*Ուրմիան գրավեց Սադակա իբն Ալի զորավարը, կամ ըստ ոմանց՝ Ոտրա իբն Ֆարկատր 640 թվականին։*

*IX դարի հեղինակներ Իսթախրին և Իբն Հավկալը Ուրմիային տալիս են երրորդ տեղը Ադրբեջանյան քաղաքների մեջ՝ Արդաբիլից և Մարաղայից հետո և գովում են նրա առողջարար կլիման, ջուրը և պտղառատությունը։ Մուկադդասին հայտնում է, որ Ուրմիան կառավարվում էր Դվինից։*

*953 թվականին, Դայլամյան տիրապետության շրջանում, գավառը կառավարում էր Ջաստան իբն Շարմազանը, իր իշխանության ներքո ունենալով Հաքրանի կոչված քրդերին։*

*Սելջուկյանների ժամանակ պատկանում էր Մելիք շահի որդի Մուհամմադի որդի Մասուդին, իսկ 1149 թվականին՝ Մասուդի եղբոր որդի Մելիք Մուհամմադին։ 1189 թվականին սելջուկյան Տուղրիլն էր տիրում։ 1206 թվականին Թավրիզի աթաբեկ Աբուբաքրը Ուրմիան իբր օժիտ շնորհեց Մարաղայի աթաբեկ Ալայադդինին։ Երբ Յակուտը այցելեց 1220—1221 թվականներին՝ էլտկուզ ուզբեկ իբն Բահլավանն էր կառավարում։*

*Երբ Ջալալեդդինը գրավեց Ադրբեջանը, Ուրմիա, Սալմաստ և Խոյ քաղաքները դարձան ուզբեկի կնոջ (որը ամուսնացավ Ջալալեդդինի հետ) անձնական կալվածները։*

*Հայկական աղբյուրներում կոչվում է Որմի, զանազան առիթներով հիշատակված է Յայսմավուրքում։*

38. *Ուզբեկ, Մոհամմադ Բահլավան իբն Ելտկուզը Ադրբեջանի 5-րդ և վերջին աթաբեկը եղավ (1210—1225)։ Նստում էր Թավրիզում։ Երբ թաթարները 1220 թվականին մոտեցան Թավրիզին, Ուզբեկը նրանց հարկ վճարեց։ Հաջորդ տարին նրանք կրկին առաջացան Թավրիզի վրա։ Այս անգամ Ուզբեկը քաշվեց Ադրբեջան։ Նա տիրում էր ամբողջ Ադրբեջանին և Աղվանքին, բայց ինչպես ասում է Իբն ալ-Աթիրը, նա խիստ թույլ գտնվեց երկրի կառավարության և պաշտպանության գործում։*

*Երբ Ջալալեդդինը գտնվում էր Վրաստանում, իր բացակայությամբ Թավրիզում փորձ կատարվեց Ուզբեկին իշխանության գլուխ վերադարձնելու, բայց Ջալալեդդինը շուտով հասավ և Աթաբեկին պատժեց։*

*Ուզբեկը մեռավ 1225 թվականին։*

39. Արաբ հեղինակները «Արմինիա» աշխարհագրական անունը գործ են ածում՝ տալով նրան նոր բովանդակություն։ Նրանք Արմինիայի մեջ են մտցնում այն ամբողջ երկրամասը, որը գտնվում է Կասպից ծովի ու Սևի միջև և Կովկասյան լեռնային մարզերը՝ մինչև Դարբանդ։ Արաբների աշխարհագրական ըմբռնումը Հայաստանի մասին ունի լոկ վարչական հիմք, որովհետև Հայաստանի և Արմինիա անվան տակ ճանաչված մյուս երկրամասերը գտնվում էին մի կառավարչի իշխանության ներքո և կազմում վարչական մի ընդարձակ միավոր։

Արմինիա բաժնում հիշատակված անունները կարելի է ճշտել հետևյալ ձևով։

Կարակ լեռներ—Կովկասյան լեռներ։ «Ցամաքս լերանց Կապկոյ» (Կաղանկ., էջ 130)։ Բառը ստուգաբանվում է պարսկերենով قاف կամ كوه قاف, այսինքն Կար կամ Կաֆ լեռ։ Եղիշեն էլ հիշատակում է «չամաքս լերանց Կապկոհի» (Գ. Եղանակ)։ Սեբեոսի մոտ «մինչև ցլեառն մեծ Կապկոյ» (էջ 12)։ Նույն Սեբեոսի մոտ (էջ 241) կա նաև հունաձև հնչումը՝ «Կաւկաս»։ Ղևոնդի և Ասողիկի մոտ արդեն հանդիպում ենք «Կովկաս» ձևին։

Բասֆուրջան—Վասպուրական,
Սարաջ Թայր — Շիրակ և Տայք
Կաբալա — Կապաղակ (քաղաք Աղվանքում)
Նաճիզան — Բագրեջան
Դուրզուկիա — Դուրձուկ
Ֆիրուզ Կուբազ — Պերոզապատ
Սամախի — Սամցխե
Վայսի բերդ — Վայոց Ձոր
Քիլար — Շնհեր

Յակուտի ակնարկությունը Հայաստանի բաժանումների մասին՝ «ոմանք ասում են» խոսքերով, վերաբերում է հետևյալ հեղինակներին։

Արմինիան բաժանում են երեք մասի՝ Յակուբին «Քիտաբ ալ Բուլդանի» մեջ հետևյալ կերպ է բաժանում.

I մասը պարունակում է հետևյալ քաղաքները. Դաբիլ, Կալիկալա, Խլաթ, Շիմշաթ, Սամաղ։ II մասը պարունակում է. Պարտավ, Բայլական, Կաբալա, Բաբ ալ-Աբվար քաղաքները։ III մասը պարունակում է Ջուրջան, Թիֆլիս, Մեղջիթ Ջիկարնայի քաղաքները։

Ահմադ իբն Աբի Յակուբը, Աբու-լ-Ֆիդայի, հետևյալ ձևով է բաժանում.

I մասը պարունակում է Կալիկալա, Խլաթ, Շիմշաթ և այդ քաղաքները շրջապատող հողամասերը։ II մասը պարունակում է Ջուրզանը, Թիֆլիսը, Բարդանը և նրանց շրջակա հողերը։ III մասը պարունակում է Պարտավը, Բայլականը և Բաբ ալ-Աբվարը։

Բելազորին Արմինիան բաժանում է չորս մասի.

I մասը պարունակում է Սյունիքը, Աղվանքը և Արևելյան Անդրկովկասը մինչև Կասպից ծով. դրա մեջ են Սիսականը, Շիրվանը, Բաղականը և Պարտավը։

II մասը պարունակում է Վրաստանն ու Արևմտյան Անդրկովկասը մինչև Սև ծով՝ ներառյալ Կղարջքը և Լազիկան։

III մասը պարունակում է Վասպուրականը, Դվինը, Շիրակը, Բագրևանդը (այդ թվում նաև Նախիջևանը)։

IV մասը պարունակում է Շիմշաթը, Կալիկալան, Խլաթը, Արճեշը, Բաջունայսը, այսինքն՝ Արևմտյան Հայաստանը։

Իբն Խորդադբեն Արմինիան բաժանում է հետևյալ չորս մասերի.

I Թիֆլիսի և Կասպից ծովի միջև գտնվող երկրները,

II Թիֆլիսից դեպի Սև ծով ձգվող երկրները, այդ թվում Լազիկան և Կողքիսը,

III Արաքսի հովիտն ու Վասպուրականը,

IV Վանա շրջանը և Եփրատյան գավառները.

Նա բացորոշ կերպով Արմինիայի մաս է համարում Դարբանդը, Թալանչարը, Կովկասյան անցքերը, Մանարքը, Ալանների ու Արխազների երկրները և այլն։ Արմինիայի չորս մասի բաժանումը արաբները վերցրել են բյուզանդական վարչական բաժանումից, բայց այդ բաժանման տարբեր հեղինակներ տալիս են տարբեր բովանդակություն։

Արմինիան երկու մասի բաժանողներն են Իբն Հավկալն ու Իդրիսին.

I—Ներքին Հայաստանը (Արմինիա Դախիլա)—Դվին, Նախիջևան և Կարին քաղաքները պարունակող, և

II—Արտաքին Հայաստանը (Արմինիա Խարիջա)—Բերկրի, Խլաթ, Ոստան և Արճեշ քաղաքները պարունակող.

Այս վերջին հեղինակների մոտ, այսպիսով, «Արմինիա» և Հայաստան հասկացությունները նույնիմաստ են։

Դարդմանը գտնվում էր Աղձնիքի Ոստիք գավառում, ըստ Խորենացուն վերագրված աշխարհագրության։ Հաճախ հիշատակված է պատմիչներից «Դարդմանաց ծով»։ Ներկայիս ավերակ է նրա բերդը, որը Բելաձորին հիշատակում է «Կալաաթ ալ-Զարդման» (Ամրոցն Դարդմանա)։ Իշխանը կոչվում էր «Իշխանն Դարդմանա»։

40. Կավատ՝ Պերոզի որդին՝ թագավորեց 488 թվականին։ Պատերազմ հայտարարեց հույների դեմ, ու 503 թվականին գրավեց Կարինը և Ամիդը, բայց հոների արշավանքների ստիպման տակ թողեց իր գրավումները և հաշտություն կնքեց հույների հետ։ Բավական հետո, 525 թվականին պատճառ բռնելով, որ հույները ամրացնում են Դարան և Բիրան ու ուրիշ վայրեր Եփրատի վրա, վերսկսեց պատերազմը, որը շարունակվեց փոփոխակի հաջողություններով։ Մեռավ 531 թվականին։

41. Անուշիրվան։ Կավատի որդին՝ Խոսրով I-ը, որ իր հպատակներից անվանվեց «Անուշակ Ռավան» (Անմահ հոգի) և «Դադգար» (արդար)։ Գահաժառանգ հռչակվեց 513 թվականից։ Նրա մասին պարսկական ու արաբական գրականությունը ավանդական ու պատմական խառն հիշողություններով լիքն են։ Նա ամրացրեց Կասպից ծովի վրա Դարբանդի կիրճը, ինչպես և Դարյալի կիրճը կամ Ալանաց դուռը։ Ուրիշ ամրություններով փակեց Ջուրջանի կամ Հիրկանիայի մուտքը։ Խոսրովը հաջող արշավանքներ կատարեց մինչև Անդրոքսյան երկրները և Արաբիա։ Նա պարտվեց հույներից Մալաթիայում և փախուստի դիմելով հազիվ կարողացավ կյանքն ազատել։ Մեռավ 579 թվականին։

42. Խուռամյաններ։ Այսպես են կոչում արաբ մատենագիրները այժմյան Դաղստանի անդիական Ղոյ-սու ակունքների շրջանում ապրող Դիդոյ ցեղը, որը սահմանակից էր Կախեթին և անմիջական շփման մեջ էր Ալազանի հովտի հետ, որտեղից արաբները արշավում էին դեպի Դիդոյների երկիրը։

43. Սուղդաբիլ։ Թիֆլիսի դիմաց Կուրի ձախ ափի վրա, հետագայում մոռացված վայր։ Այդ քաղաքը հիշվում է վրացական աղբյուրներում (Քարթլիս-Ցխովրեբա) Սամշի ու Դարիլ անվան տակ։ Ներկայիս Հավլաբար թաղամասում է։

«Թաբարիի տարեգրությունների մեջ. Բուղայի արշավանքների առթիվ հիշատակված է, որ Թիֆլիսի դեմ Իսհակ ամիրայի վրա կատարված հարձակման ժամանակ, Բուղան կանգնած էր Կուրի արևելյան ափում մի բլրի վրա՝ Սուղդաբիլի կողմը, իր զորականների՝ Զիրարի և Արլաբրասի հարձակումը դիտելու համար» (V. Minorsky, Transcaucasia, էջ 58—59, Extrait du Journal Asiatique. Juillet-Sept., 1930, Paris).

44. Շամշոյլդե կամ Սամշոյլդե, կամ Շամշուլդե Ամրոց է Վրաստանում. վրացական լեզվով «Սամշվիլդե» նշանակում է «երեք աղեղ» (Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, Հանդէս Ամսօրեայ, 1907, էջ 60)։

Թովման հիշատակում է. «Բերդն Շամշուլդա» (էջ 285)։ Վրաց Դավիթ թագավորը տվեց այն Իվանե Օրբելյանին (Օրբելեան, էջ 379)։

45. Շահբուզը բերդը—Սահապունիք կամ Շահապոնք։ Այժմ Շահբուզ, Նախիջևան քաղաքից դեպի արևելք, համանուն շրջանի կենտրոն։ Միջին դարերում հռչակված էր իր անառիկությամբ։

46. X դարում կան երկու Ալ-Իսպահանիներ։

Աբու Աբդալլա Համզա իբն ալ-Հասան Ալ-Իսֆահանին, որը ծանոթ է առհասարակ Համզա անվամբ։ Ծնվել է X դարի սկզբին և մահացել նույն քաղաքում, 917 թվականին։ Եղել է բանասեր և պատմաբան։ Իր «Տարեգրություններից» օգտվել են հետագա պատմագիրները։ Բայց նա ավելի բանասեր էր և այդ հանգամանքով էլ համբավ է ստացել։ Լինելով ծագումով պարսիկ, իր բոլոր գործերի մեջ նա ավելի կարևորություն է տալիս պարսկական նյութերին։ Իր «Տարեգրությունները» հրատարակվել են Ս. Պետերբուրգում, լատիներեն թարգմանությամբ, Gottwaldt-ի կողմից։ Ունի նաև առակների մի գիրք։

Աբուլ Ֆարաջ ալ-Իսֆահանի. Ալի իբն Հուսայն։ Ծնվել է Իսպահանում 897 թվականին և մեռել 967 թվականին։ Գրել է «Քիթաբ ալ-Աղանի» (Երգերի գիրք)։ -ին ու նոր բազմաթիվ բանաստեղծություններ է հավաքել, կենսագրական մանրամասնություններ և անեկդոտներ է պատմում իր ժամանակի մարդկանց մասին։ Սա մի հարուստ աղբյուր է արաբական հասարակական կյանքի ուսումնասիրության համար։

47. Արվախ բերդը Ջավազանում։ Վակիդին հիշատակում է «արիյավաս» անվամբ «Միջագետքի և Հայաստանի գրավման» գրքում։ Այժմ «Արվահ յայլասի» կոչված վայրն է Մոկքում։ Անցյալում հիշատակված է նաև Գեորգ Կիպրացու մոտ՝ «Արիվախուն» (Honigmann, էջ 30)։

48. Սպիտրուզ. Սապիդ Ռուդ, հների Ամարտոսը, որի երկու ափերի վրա բնակվում էին Մարդերը։ Հուդուդ ալ Ալամում «Սպիտռուդ—բխում է փոքր Մասիս (Հավեր ես) լեռից, Հայաստանում, հոսում է դեպի արևմուտք և Գիլանում երկու մասի բաժանվելով թափվում է Խազարաց ծովը» (էջ 116)։

49. Ասպերան. պետք է լինի հավանաբար Սպերը, Բարձր Հայք նահանգում Բագրատունիների կալվածը։

50. Ոստան. հասարակ իմաստով Ոստան բառը նշանակում է Արշակունյաց արքունի սան սեփականներից մեկին պատկանող քաղաք։ Թագավորության կործանումից հետո այդ բառով նշանակվեց Դվին մայրաքաղաքը։ Հետագայում Ոստան անունը գործածվեց մայրաքաղաքի իմաստով՝ մեծ նախարարական տների աթոռանիստ քաղաքների համար։

Ոստանը, իբրև հատուկ անուն, Վանա լճի հարավակողմը գտնվող յոթը բերդաքաղաքներից մեկն է և ընկած է Աղթամար կղզու դիմաց՝ ծովի ափին։ Ոշտունյաց

գավառի մասն է կազմում և կոչվել է «Ոստանն Ռշտունեաց»։ Գագիկ Արծրունին շինել է այնտեղ ամրոց և զվարճության վայրեր և դարձրել է այն Արծրունիների աթոռանիստ քաղաքներից մեկը։

— Նասիրի Խոսրո՛ն, որ 1046 թվականին այցելել է Վան և Ոստան, գրում է. «Այնտեղ տեսա, որ խոզի միս են վաճառում, ինչպես վաճառում են ոչխարի միս, և բնակիչները, այր և կին, նստարանների վրա նստած՝ հրապարակով գինի էին խմում»։

Գավառը կոչվել է քաղաքի անունով։ Այժմ հին Ոստանի ավերակները մնացել են ծովափից դուրս ցցված մի քարաժայռի վրա։ Կոչվում է Հերիշատ և քրդաբնակ մի աննշան վայր է (Մ. Կ. Միրախորյան, Ա, էջ 116)։ Այժմյան Ոստանը այդ վայրից մի քիչ հեռու է ընկնում։

**51. Իսքանդարունա**: Իսքանդարիա բառի նվազականը. հայերը կոչել են Աղեքսանդրիակ։ Եվրոպացիների մոտ՝ Alexandrette: Կոչված է Ալեքսանդր Մակեդոնացու անունով։ Հին ժամանակ կոչվում էր նաև «Աղեքսանդրիա առ Իսսեաւ», իսկ միջին դարում Alexandria Minor (Փոքր Ալեքսանդրիա)։

Ասորիքի ամենակարևոր նավահանգիստն էր՝ Ամանոս լեռների ստորոտում, Նույնանուն ծոցի կամ Հայոց Ծոցի խորշում։ Ուներ դղյակ, կառուցված ալ-Վաթիք խալիֆի ժամանակ։

Մակրիզին Իսքանդարունան համարում է Կիլիկիայի առաջին քաղաքը։ Նույնն ասում է և Աբու-լ-Ֆիդան, ավելացնելով, թե «Իսքանդարունան բաժանման գիծ է մուսուլմանների և հայերի միջև» (Աբուլֆիդա, Աշխարհ, II, էջ 35)։

**52. Ասիուտ**: Վերին Եգիպտոսի ամենակարևոր քաղաքը։ Առևտրի և արհեստավորական արտադրության կենտրոն։

XI, XII և XIII դարերում Վերին Եգիպտոսի զանազան վայրերի՝ Աթֆիհի, Կալուսանայի, Շիննարայի, Ֆայումի գավառներում հաստատվել էին հայեր, որոնք ունեին իրենց բնակության հատուկ թաղերը, վանքերն ու եկեղեցիները։ Ինչ վերաբերում է Ասիութ քաղաքին և նրա շրջակայքին, Մակրիզի արաբացի պատմիչը և Աբու Սալեհ հայը այդ մասին տալիս են բազմաթիվ տեղեկություններ։ Աբու Սալեհը գրում է, թե՝ Ասիութ քաղաքի յոթ դռներից մեկը կոչվում էր «Բաբ ալ-Արման» (Հայոց դուռ)։ Abu Salih, էջ 246)։

Աբու Սալեհը գրում է դարձյալ, թե «Ասիութի Ալ Խուսուս շրջանի մեջ, արևմելյան գետափի վրա, հայերն ունեին մի վանք՝ քաղաքի մեջ, երկու եկեղեցի՝ քաղաքից դուրս և երկու եկեղեցի՝ քաղաքի ներսում»։

Ասիութից դեպի հարավ Սոհակ քաղաքի մոտ է գտնվում Եգիպտոսի ամենահռչակավոր վանքերից մեկը, Ս. Շենուդայի անվամբ, որ կոչվում է նաև Դեյր ալ-Աբիադ (Սպիտակ վանք)։

Տե՛ս այդ անունը։

**53. Ուշնու**: Հավանաբար Հին Շնաւհ գավառի կենտրոնն է (Թովմա Արծրունի, էջ 417)։

**54. Տրապիզոն**: Միջին դարում հռչակավոր նավահանգիստ Սև ծովի վրա (որը, Աբու-լ-Ֆիդայի ասելով, կոչվում էր նաև Հայոց ծով, Բահր ալ-Արման, II, էջ 41)։ Այդ նավահանգիստը, որտեղ X դարում մեծ թվով հայ վաճառականներ էին գտնվում, հայկական արտադրական և առևտրական կենտրոնները կապում էր արևմտյան երկրների հետ։

**55. Ուփսուս**. Միխ. Ասորին Մորիկ կայսեր մասին գրում է. «որ էր ի Կապադովկիա, յԱրփսուս քաղաքէ» (էջ 280), Նույն էջում հրատարակիչը ծանոթա-

գրության մեջ գրում է (ծան. 2). «Այն է, որ կոչի այժմ Նարփուս, մերձ ի Զեյթուն և է գիւղ փոքրիկ հայարնակ և ունին եկեղեցի մի։ Առ պատմագիրս ուրեք կոչի Քաղաք այս և Նփխսուս»։

Վարդանի աշխարհագրության մեջ կարդում ենք. «Նփխսոս Արլիատան է» (էջ 489)։

56. Աֆլուղունիա և Վարիման բերդ. վայրն անծանոթ է, կապ չունի անշուշտ Պափլագոնիա անվան հետ. պետք է փնտրել Մծբինի մոտ։ Դժվար է ճշտել Վարիմանի վայրը. թերևս լինի «Ումեր»» կղզին, որի մասին գրում է Ինճիճյանը. «Ի Մծբնայ երկօրեայ եկեալ ի կղզին Ումերայ, որ ի մէջ Տիգրիսի»։

57. Աճշուրա։ Համանաբար՝ Կոտուրից դեպի Վան տանող ճանապարհի վրա գտնվող Աշրուտ Տարգա (հին Աշտտակերտ) ամրոցը։

58. Օլթի։ Հայերի Ողթիքը, այժմ Օլթի։

59. Ոսիրը։ Հին Սեփխեթը։ Ընդունված ձևն է՝ Սղերդ։ Մուստաւֆին նկարագրում է որպես մեծ քաղաք։

60. Անճիլ։ Քաղաք Սղերդի շրջանում, այժմ անծանոթ վայր է։ Համանաբար կարող է լինել Անդղ-ր [illegible] մի կետի ճշտումով՝ արաբերենում։

6. Ալան։ Ալանների բնակած երկիրը տարածվում էր Թիֆլիսից դեպի հյուսիս. Թերեք գետի վերին հոսանքում։ Նրանք պահում էին Դարյալի կիրճը, որը կոչվում էր Ալանաց դուռ։ Ալանաց դուռը արաբները կոչում էին «Դար Ալլան», իսկ գրացիները՝ «Դարի ալանի»։

Ալանները շատ հին ժամանակներից իրենց արշավանքներով ծանոթ են հայերին։

Ալանաց ցեղերը հետագայում օգնություն են ցույց տվել հայերին՝ պարսիկների դեմ, օրինակ, Արշակի ժամանակ. «Ապա առնոյր Վասակ զզօրսն Հայոց և Հոնսն հանդերձ Ալանօքն կոչել յօգնականութիւն, և հասանէր դիմէր յօգնականութիւն թագաւորութեան Հայոց ի վերայ Պարսից» (Բուզանդ, Դպր. Դ, գլ. Իր)։

Պատմիչները վկայում են, որ մեծ քաղաք չունենալով, Ալանաց երկիրը ծածկված էր բազմաթիվ գյուղերով, իրար այնքան մերձ, որ ինչպես ասում է Մասուդին, «երբ մի աքաղաղ երգեր, երկրի բոլոր աքաղաղները պատասխանում էին»։ վում է. Թե Յակուտը իր տեղեկությունների մեծ մասը վերցրել է Մասուդուց։

Աբու-լ-Ֆիդան գրում է իր աշխարհագրությունում. «Իբն Սայիդը գրում է, թե Աբխազների երկրի արևելյակողմը, ծովի եզերքում, Ալանների քաղաքն է, «Մագինաթ Ալլանիա»։ Այդ քաղաքը այսպես է կոչվում, որովհետև Ալան ցեղից մի ժողովուրդ է բնակվում այնտեղ...։ Ալանների գլխավոր գյուղը աշխարհամաս ամենամոտներից է և վերևից պատված է ամպերով՝ փաթթոցի նման։ Նրա դիրքը սարի կատարի վրա է, այն սարի, որն ուղղվում է դեպի Ծիկաթի դուռը։ Ասում են, թե թաթարները նրա պարիսպի ներքև ամենաբուռն դիմադրության հանդիպեցին, նրանք կարողացան մտնել միայն խաբեական հնարքով և երկար պաշարումից հետո։ Պատնեշի հյուսիսակողմը գտնվող երկրները, որոնց մուտքի համար դռներ են բաց արված, ենթակա են թաթարների սուլթանին՝ Բերքեի, որը իսլամության ընդունեց, իսկ հարավակողմի երկրները հպատակվում են Հուլագուի որդու օրենքին» (Աբու-լ-Ֆիդա, Աշխարհագր. II, էջ 287)։

Իբն Ռուստայի ասելով, ալանների թագավորը կոչվում էր «Բաղաթար», իսկ Մասուդու մոտ «Քարքունդաջ»։ Թեոփանեսը նրան կոչում է «Բղեշխ»։

Բյուզանդիայի կայսրերը նրանց բարեկամությունը պահելու շահ ունեին, որովհետև նրանցից վերցնում էին վարձկան զնդեր և օգտագործում սահմանային պաշտպանության համար։

62. Մասլամա իբն Աբդ-Մալիք: Օմայան երկրորդ խալիֆի որդին։ Նրա եղբայր Վալիդ I խալիֆը նրան հանձնեց Փոքր Ասիայի վրա կատարվելիք արշավանքների ղեկավարությունը։ Հիջրի 91 թվականին (9 նոյ. 709—28 հոկտ. 710) որպես Արմինիայի կառավարիչ հաջորդեց իր հորեղբորը՝ Մուհամմադին։ Երկիրը տակավին վերջնականապես նվաճված չէր։ Նա գրավեց Ամասիան 712 թվականին և բաց արեց Կոստանդնուպոլսի ճանապարհը, որը պաշարեց 717 թվականին։ Պաշարումը հաջողությամբ ավարտվեց և մեծ կորուստներ պատճառեց արաբներին։ Հետո Մասլաման եղավ Իրաքի կառավարիչ, իսկ հիջրի 108 թվականին (մայիս 726—27 ապրիլ 727) գրավեց Կեսարիան։ Հաջորդ տարին ռազմական մեծ գործողություններ կատարեց Հայաստանի վրայով խազարների դեմ։ Այդ գործողությունները ձախողվեցին, և Մասլաման դժվարին պայմանների մեջ նահանջեց։

63. Ակկի: Այս ամուր բերդի մասին կան հիշատակություններ հայկական աղբյուրներում։ Խորենացին հիշում է այդ վայրը, երբ Արտաշես II խնամակալ Սմբատի համար գրում է. «Հրամանաւ Արտաշիսի բնակի ի Տմորիս, որ այժմ կոչի Կորդրիք, ի յԱկկի նստուցեալ զբազմութիւն գերւոյն» (Խորենացի, Պատմութիւն, գիրք Բ, ԾԳ)։

Տոմաշեկը գրում է. «Հին ժամանակ Տմորեցիք (ասորերեն Tamurāye) այսօրվա Բայտ ալ-Ճարար կոչվող դժվարամատչելի լեռնագավառն էին բռնել՝ Ակկի քաղաքով» (էջ 12).

Ներկայիս՝ Եիր գյուղն է՝ Ջուլամերկից արևմուտք։

64. Ունար: Արդյո՞ք Հունարակերտ չէ։ Վայրը համենայն դեպս պետք է փնտրել Ս Հարք շրջանում։

65. Ուզ: «Ոյծ» գյուղը, որը հիշատակում է Օրբելյանը, Որոտան գետի աջ ափի վրա, Տաթևի մոտ, այժմ կոչվում է Ուզ։

66. Ուլաս: Հիշատակվում է Ուլաշ՝ որպես Տարոնի վիճակ, բայց ոչ ծովեզերքում, այլ ավելի հյուսիս, Դեղիրմեն գետի մոտ (Ալիշան, Սիսուան, էջ 70)։ «Դաշտավայր թեև ունի չէ համանուն քանի մի ժամու հեռի ի Սեբաստոյ կառուցեալ առ գետակաւ» (Ինճիճեան, Աշխարհագրութիւն, Ա, էջ 362)։

67. Ավնիկ: Էրզրումից ութ փարսախ դեպի արևելք լեռան գագաթի վրա և Արաքսի գլխավոր ճյուղերի ափի մոտ մի բերդ է եղել, որի մասին Մուստավֆին ասում է, թե քաղաքի ստորին մասը կոչվում է Արասխուր, կամ Արսախուր։

Ալիշանը Ավնիկի տեղագրության մասին գրում է. «Աւնիկ կամ Աւնկոյ գեօղ, ի հարաւակողմն վիճակին մերձ ի լերինս Բիւրմանայ և Շուշարայ՝ որք ի սահմանակցութեան Այրարատայ և Տուրուբերանոյ, յեզր ուղխնթաց Ուլու-տերէ գետակի (երկու փարսախաւ յերից Վաղարշաւանի) թափելոյ յԵրասխ, ընդունելով զվտակս Նիճիրկայ գեօղն Անիկ կամ Աւնկայ գեօղ, իբրև 60 կէս տուրեկերեայ աւանըր մահմետականաց, որք թուին սերունդք հայոց, և տեղին՝ իշխանացն Համամեանց. ի հիւսիսոյ նորին յագգորդ և ի սեպ կարմրագունակ քարալերին 600 բարձու՝ ամրանայր մի է բուչանչան և հզօրագոյն բերդօրէից Հայոց, ի բնէ և յարուեստի ամրացեալ և ճարտարեալ» և այլն։

«Կոստանդին Պերփերուժէն կայսրն յիշէ զԱւնիկ Ἀβνικον κάστρον կոչելով» ի Ժ դարու յարարացւոց բռնեալ ի յոյնս» (Ալիշան, Այրարատ, էջ 27—28)։ Կա նաև կարծիք այն մասին, որ Ավնիկը նույնն է Հավանդալեի հետ։

Տուղրիլ սուլթանը չկարողացավ գրավել այն։ Տուղրիլն իր արշավանքի ընթացքում «Իջանէ յընդարձակ դաշտն Բասենոյ առ անաւ ամրոցաւն որ կոչի Անիկ. յորում ետես աշխարհաժողով մարդոյ և անասնոյ և ոչինչ փոյթ արար, քանզի ի հայելոյն միայն ծանեաւ, թէ անառ է» (Լաստիվերտցի, էջ 80)։

XIV դարի վերջում, երկար պաշարումից հետո, Թիմուրը գրավեց Ավնիկը։

Դրանից հետո Թիմուրի ժառանգորդների և Կարակոյունլու թուրքերի միջև կռիվ եղավ բերդին տիրելու համար, և այն աստիճանաբար ավերվեց։

«Այսքան յիշատակք յայտ առնեն զի Անիկ ընդ երկար դարս բարգաւաճ, շէն եղեալ է թերևս և վասն անցի կարաւանաց ընդ այն. որպէս և յիշի զիանս Վենետկաց, յամի 1373, դանդատեալ վաճառականաց նոցին, որ ի Տրապիզոն առ Իվեզ խան տէրն Դաւրիժու։ և կողմանց Հայոց վասն կողոպտելոյ հպատակաց նորին զոմանս ի վաճառականաց յԱնիկ (Afnich) և նորա կալեալ, և պատուհասեալ զնոսա ի ձեռն խոճայ Ալպարամի (Իբրահի՞մ) և յորդորեալ զի աներկիւղ երթևեկեսցեն անուհետև (Ալիշան, նույն, էջ 28)։

Բայց նույն այդ XV դարի հենց առաջին տարիներում, հայաբնակ Ավնիկ քաղաքը հայ կառավարիչներով է կառավարվել, որոնք անշուշտ հարկատու են եղել թուրքերին։ Ռույ Գոնձալեց դի Կլավիխոյին, որը 1403-ից—1406 թվականների միջև ճանապարհորդել է, հիշատակում է, թե Էրզրումի շրջանի Ավնիկ քաղաքը կառավարվում էր հայերի ձեռով, հայ իշխանով։

**68. Ռուքնադդին Սուլեյման իբն Կըլըչ Արսլան.** Կըլըչ Արսլան իբն Մասուդը իր մահից առաջ, իր բազմաթիվ զավակների մեջ բաժանեց երկիրը։ Երբ նա մեռավ (1192) երկրում ծայր առան գահակալական կռիվներ։ Այդ կռիվներից հաղթող դուրս եկավ Ռուքնադդինը։ Մյուս եղբայրներից Կութբադդինը՝ Սվազի իշխանը՝ իր եղբորը՝ Նուրադդին Մահմադին հաղթեց և նրանից գրավեց Կեսարիան։ Այս վերջինի մահով Ռուքնադդինը, որը իշխում էր Եվդոկիայում, գրավեց Սվազը, հետո Կեսարիան և ապա հարձակվեց իր մյուս եղբոր՝ Ղայաթադդինի վրա, որը իշխում էր Իկոնիայում։ 1201 թվականին գրավեց Մալաթիան, որը պատկանում էր Մուիզադդին Քայսերշահ իբն Արսլանին։ Քիչ հետո Էրզրումն էլ անցավ Ռուքնադդինին։

Երբ նրա բանակները մտնում էին Էրզրումին, այնտեղի կառավարիչ Ալաադդին իբն Մելիքշահը, սելջուկյան դինաստիայի վերջին ներկայացուցիչը բանակցություն սկսեց, որի հետևանքով քաղաքը հանձնվեց Ռուքնադդինին։ Վերջինս այն ավատ տվեց իր եղբորը՝ Տուղրիլ շահին։ Մուղզադդինը, որն իշխում էր Անկարայում, պաշարման ստիպման տակ քաղաքը հանձնեց, ու այսպիսով ամբողջ իշխանությունը կենտրոնացավ Ռուքնադդինի ձեռքում։ Սա մեռավ 1204 թվականին, և նրան հաջորդեց իր որդի Կըլըչ Արսլան III։

Բախումը, որի մասին ակնարկում է Յակուտը, տեղի ունեցավ 1200 թվականին։ Վրացահայկական զորքերը Զաքարե Սպասալարի հրամանատարությամբ կատարյալ պարտության մատնեցին Ռուքնադդինի զորքերին (Մանր ժամանակագրություններ, հատ. I, էջ 37, 52)։

**69. Բաբ ալ-Աբվաբ։** Դուռն դռանց կամ Դարբանդ, կամ ուղղակի Դուռ է կոչվել Կովկասի մյուս անցքերից զանազանելու համար։ Աբու-լ-Ֆիդան ասում է. «Դռների Դուռը իսլամության ամենաամրացված ճանապարհն է։ Ծովի եզերքի վրա Բաքվում և Մուղանում կանաչ ու սպիտակ նավթի հանքեր են։ Այդ երկու քաղաքները բաժանված են մի ծովածոցով, որտեղ որսում են սաւմահի ձուկը, որը փոխադրում են մերձակա երկրները։ Ծովեզերյա մարզը կոչվում է նաև Մուղան, և

այդ անունով խմացվում են բազմաթիվ գյուղեր, որոնք կրակապաշտ մոգերով են բնակված» (Աբու-լ-Ֆիդա—աշխարհ. II, էջ 298—299)։

«Խոսրով I-ը հաղթեց արխազներին, խազարներին և ալաններին, որոնք արշավել էին դեպի Իրան և մտել Հայաստան։ Նա տասը հազար գերի վերցրեց նրանցից, որոնց բնակեցրեց Ադրբեջանում և հարևան երկրներում (Բարաքի), իսկ Շարիստան, Մասկատ քաղաքներում և Դարբանդ կարևոր վայրում, որ ամրացրեց, բաշ կավող Սիսականների բնակեցրեց և այդ ժողովրդից պահակազոր կազմեց» (A. Christeusen, L'Iran sous les Sassanides, Copenh., 1944, էջ 369 ։ Այս իրողությունը արձագանքում է Օրբելյանը, ասելով, որ Վաղարշակը կարգեց Սիսական տոհմը իբրև առաջին նահապետություն և «երկրորդ թագավորութեան խրոս և ընդդէմ կալ հանապազ պատերազմաւ Դրանն հոնաց» (էջ 16)։

Խոսրով I էր, որ 558—561 թվականների միջև ամրացրեց Դարբանդը։

Թաբարին ասում է, թե Դարբանդը նվաճեց Սուրաքա իբն Ամրը հիջրի 22 թվականին (30 նոյ. 642—18 նոյ. 643)։ Նա հայտնում է նաև թե «հայերը այստեղ չեն բնակվում, այլ միայն անցուդարձ են անում», չնայած Սուրաքայի գրած պայմանագրից երևում է, թե այնտեղ կամ անմիջական մերձավորության վրա բնակվել են մեծ թվով հայեր։

«Հանուն աստուծո ամենագթասերի և ամենաբարեբարի։ Անհավասիկ այս պայմանները շնորհեց Սուրաքա իբն Ամրը, հավատացյալների ամիրապետ Օմար իբն Խաթաբի կառավարիչը, Շահր Բարազի, Արմինիայի բնակիչներին և հայերին։ Նա պարգևեց ապահովություն նրանց կյանքին, ստացվածքին և կրոնին, որոնք վնասի կամ հալածանքի չպետք է ենթարկվեն. Արմինիայի և Դարբանդի թե՛ բնիկ և թե եկվոր ժողովրդին, նաև շրջակա ազգաբնակության հետ նա պայմանավորվեց, որ նրանք օգնեն մուսուլմաններին բոլոր պատերազմներում և հնազանդվեն միանգամայն նաիբի (օգնական կառավարիչ-դատավոր) բոլոր հրամաններին, իսկ եթե նաիբը չլինի՝ վալիի վճիռներին։ Սրա փոխարեն ազատ կլինի գլխահարկից նա, ով ընդունում է այս պայմանները՝ բացի զինվորական ծառայությունից, որը փոխարինում է գլխահարկը։ Ով դոհ լինի սրանով և մնա երկրում, նրա վրա կծանրանա նույն գլխահարկը, որը գրված է Ադրբեջանի ժողովրդի վրա։ Նրանք պարտավոր են ուղեցույց ծառայել մուսուլմաններին և նրանց հյուրընկալել մի ամբողջ օր։ Եթե զինվորական ծառայություն անեն՝ ազատ կլինեն այս պարտականությունից, իսկ եթե ծառայությունը թողնեն՝ իրենց վրա կվերցնեն այս ծանրությունը։ Վկա են Աբդլ-Ռահման իբն Ռաբիան, Սալման իբն Ռաբիան և Բուքայր իբն Աբդուլլահը»։

Կովկասյան այս կարևոր անցքը պարսիկներն իրենք էին պաշտպանում, այնտեղ դնելով ոչ միայն պարսիկ պահակախմբեր, այլև սիսականցիներ և պաշտպանության ծախսերին մասնակից էին անում նաև Սյունիքի հայերին։

Արաբները մնայուն պահակազոր հաստատեցին այնտեղ և խազարների և մյուս հյուսիսային արշավողների դեմ հաճախ հանում էին նաև հայկական զորագնդեր։

Ղևոնդը մի հետաքրքիր դեպք է հիշատակում Սուլայման խալիֆի օրով (715—717)։ «Սա յերրորդ ամի իշխանութեան իւրոյ գումարէր զօրս բազումս, և տայր ի ձեռս զօրավարին Մսլիմայ. և առաքէր ի դրունս Կասպից. որոց եկեալ են մարտ եղեալ ընդ զօրս Հոնաց որ ի Դարբանդ քաղաքի, հարին զնոսա և հալածեցին։ Եւ յանգեալ աւերեցին զդղեակ պարիսպ ամրոցին։ Եւ մինչդեռ քանդէին զպարիսպ ամրոցին՝ գտին վէմ մի մեծ ի հիմունս նորա որ ունէր վերնագիր դրոշմեալ օրինակ զայս. «Մարկիանոս ինքնակալ կայսր շինեաց զքաղաք և զաշտարակս զայս բազում

տաղանդօք փորոց ղանձուց: Եւ ի յետին ժամանակս որդիքն Իսմայելի քանդեցին զսա և յիւրեանց ղանձուցն վերստին շինեցին». «Եւ իբրև գտին զգրուչ գրոյն զոր ունէր բարն դադարեցին ի բանիցս զպարիսպն և կացուցեալ գործաւորս ի վերայ վերստին շինեցին զկործանեալ պարիսպն» (էջ 64): Միևնույն ավանդությունը մի քիչ տարբեր բառերով տալիս են Գանձակեցին (էջ 62) և Ասողիկը (էջ 127):

Ըստ այս վկայության ուրեմն երևում է, որ Մարկիանոս կայսրը (450—457) նորոգել է պարիսպները հիմքից, իսկ Հազկերտն ու Անուշիրվանը վերանորոգել են այն և ավելի ամրացրել. սա ցույց է տալիս, թե Բյուզանդիայի և Պարսկաստանի թագավորները հավասարապես շահագրգռված էին այդ անցքի պաշտպանությամբ: Ըստ մի ուրիշ մահմեդական ավանդության, Պարսից թագավորը ոչ թե անձամբ է եկել կառուցելու, այլ իր կառավարչին, Շիրվանշահերի նախահայրին՝ Նուշին իբն Ջամասբին է տվել պաշտոն՝ քաղաքն ու պարիսպները ամրացնելու (Encycl. of Islam).

Արաբական աղբյուրները Բաբ ալ-Աբվաբի պատերազմները գեղեցկացրել են առասպելներով: Անգամ Սալմանի և 4000 հետևորդների մահը Բելադորու և Յակուբու ավանդությամբ՝ հակասում է Թաբարու տված տեղեկությանը, որն ասում է, թե Սալմանը չի մեռել այդ կռվում, այլ մեռնողը նրա եղբայր Աբդուռահմանն է եղել:

Դարբանդում արաբական տիրապետության իսկական հաստատողը եղավ Մասլամա իբն Աբդալմալիքը: Կաղանկատուացին վկայում է. «Եւ ի հարիւր ութսուն թուականին հայոց զարմեալ Սլիման շինէ զԴարբանդ յանուն տաճկաց» (էջ 368):

Թաբարին այս շինությունը վերագրում է 723—724 թվականներին: Հակառակ գոյություն ունեցող այդ ամրությունների, Դարբանդը հաճախ գրավվել է խազարների կողմից: X դարից սկսած Շիրվանշահներն էին կառավարում քաղաքը, նրանք «կամավոր» հարկ էին տալիս խալիֆային: Մոնղոլները Դարբանդը գրավեցին 1239 թվականին:

Գանձակեցին մի տեղ (էջ 359) Դարբանդը կոչում է Բանդայ դուռն. իսկ Կաղանկատուացին՝ «Ջորայ պահակ» (էջ 23), կամ «Ջորա դուռն» (էջ 104), իսկ շատ տեղեր «Դուռն Ջողայ» (էջ 121 և այլն): Խորենացու և Եղիշեի մոտ «Ճորայ պահակ», Ղևոնդի մոտ՝ «Պահակն Ճորայ» (էջ 64): Ավելի հին աղբյուրների մոտ «Ճորայ դուռ» է հիշվում:

Սեբեոսը գրում է. «Այս Խոսրով (Անուշ Րուան) ի ժամանակս իւրոյ թագաւորութեան կալեալ զպահակն Ճորայ» (էջ 43): Նա կոչում է նաև «Կապանն Ճորայ» (էջ 240): Հաճախ անվանված է «Դրունք Կասպից» կամ «Դուռն Հոնաց», իսկ թուրքերն ասում են «Դեմիր Քափու» (Երկաթյա դուռ):

Դարբանդի շինության մասին Կուրանում էլ կա մի ավանդություն: XVIII գլխում, որ ալ-Քահաֆ (Քարայր) խորագիրն է կրում 92-րդ և հաջորդ համարներում կարդում ենք. «Նա (խոսքը վերաբերում է «զույգ եղջյուրավոր Ալեքսանդր Մակեդոնացուն) հասավ երկու լեռների միջև, որոնց ստորոտում բնակվում է մի ժողովուրդ, որը դժվար էր հասկանում նրանց»:

«Ով Ալեքսանդր, ասացին նրան, Աջուջը և Մաջուջը մեր երկրներն ավերում են. մեզնից հարկ վերցրու, պայմանով, որ մեր և մեր թշնամիների միջև մի պատնեշ բարձրացնես»: »

«Ձեր հարկը ատծուն փնարեցեք, ասաց իշխանը. նա է, որ իմ զորությունը հաստատեց։ Օժանդակեցեք ինձ, ես պետք է բարձրացնեմ մի անառիկ պատնեշ ձեզ պաշտպանելու համար»։

«Բերեք ինձ երկաթ, որպեսզի միացնեմ երկու լեռները, փչեցեք վրան մինչև բոցավառվի և վրան գցեցեք հալեցված արույր»։

«Աջուջն ու Մաջուջը նրանից հետո չկարողացան մագլցել պարսպի վերև և ոչ էլ ճեղքել այն»։

70. Իսթախրի: Աբու Իսհակ Իբրահիմ իբն Մուհամմադ ալ-Ֆարիսի։ Արաբ աշխարհագիր, ապրել է X դարում, գրել է «Մասալիք վալ-Մամալիք» (Ճանապարհների և երկրների մասին) աշխատությունը։ Նրա գործին հիմք է ծառայել Աբուզայիդ Բալխու գործը, իսկ ավելի ուշ՝ Իբն Հավկալը նրա գործը սրբագրելով վերարտադրել է։

71. Աբուբաքր ալ-Համադանի: Ծնվել է Համադանում 290 թվականին և կոչվել է «Բադի ազզաման» (իր ժամանակի սքանչելիքը)։ Ճամփորդել է Աֆղանստանում և մեռել է Հերաթում։ Զարմանալի հիշողության տեր է եղել, ասում են, թե արձակ գրածի վրա չափածո էր կարդում։ Երբեմն գրում էր սկսելով վերջին տողից՝ գնալով դեպի առաջ։ Թարգմանում էր արաբերենից պարսկերեն այնքան արագ, որքան կարդում էր։ Գրել է «Մակամաներ» (Նիստեր), որտեղ մի երևակայական անձ պատմում է հեքիաթներ։ Ունի փայլուն ոճ և գործածում է արաբերեն լեզվի հազվագյուտ տերմիններ և ոճեր։

72. Աբուլ-Աբբաս ալ-Թուսի: Պարսիկ գիտնական, ապրել է XII դարում, գրել է «Ստեղծագործության հրաշալիքներ» անունով երկը։

73. Սուլայման իբն Ռաբիա ալ-Բահիլի: Թեթև զորաբաժնի հրամանատար։ Հիջրի 14 թվականին գնաց Իրաք՝ օժանդակելու արշավող բանակներին. 636 թվականին մասնակցեց Կադիսի ճակատամարտին և իր ձեռքով սպանեց Շահրիարին։

Կադիսի ճակատամարտում արաբները վճռական հաղթանակ տարան։ Մուսուլմանական բանակի հրամանատարն էր Սաադ իբն Աբու Վակկաս, իսկ պարսկական բանակինը՝ Ֆարուխ Որմիզդի որդին՝ Ռուստամը։ Ճակատամարտը տևեց երեք օր, որի ընթացքում Ռուստամն սպանվեց և սրբազան դրոշը (Դիրավշի Քավիան) գերի ընկավ։ Ճակատամարտը սկզբից պարսիկներին նպաստավոր էր թվում, բայց անակնկալ կերպով հասած օժանդակ զնդերը հաղթանակը արաբների կողմը դարձրին։

74. Սուրաքա իբն Ամր։ Արաբացի զորավար, հիջրի 14 թվականին նա բուռն կերպով արտահայտվեց մուսուլմանների զինու գործածության դեմ։

75. Աբդուռահման իբն Ռաբիա: Իբն Սուրահրիլ իբն Հասան ալ-Բահիլի Զուլնուր, արաբացի զորավար։ Հիջրի 14 թվականին գնաց Իրաք ոստիկանի պաշտոնով, հիջրի 16 թվականին մասնակցեց Կադեսի ճակատամարտին և 22 թվականին արշավեց Բալանջարի վրա։

76. Բաբերդ: Կամ Սմբատավան, Սպեր գավառում։ Բագրատունիներին պատկանող բերդ էր։

Լաստիվերտցին հիշատակում է. «Բերդաքաղաքն, որ կոչի Բաբերդ» (էջ 78).

Այդ քաղաքի առաջ բյուզանդական վարձկանի մի գունդ, բաղկացած նորմանդացի ֆրանկներից, 1055 թվականին հաղթեց Տուղրիլ բեգի մի զորամասին։

Քաղաքը շուտով կորցրեց իր նշանակությունը։ XIV դարում, երբ Մարկո Պոլոն այցելեց, այն աննշան մի վայր էր։

Այժմ ամայի է, մնում են կիսավեր պարիսպները։ Թուրքերը կոչում են Բայբուրդ։

77. Բարդի։ Վայրս հիշատակված չէ ուրիշ աղբյուրներում, որով մնում է անծանոթ։

78. Բաջարվան։ «Պաճերվան՝ «Պաճերվան կամ Պաճրեան. ի հնումն էր քաղաք Մուղանի»։ Իսկ ըստ Քաթիբ Չելեբու այժմ գյուղ է, ասում է Ինճիճյանը (Աշխարհագրություն, Ա, էջ 274)։

Հետաքրքիր է, թե ինչ ճանապարհով է Յակուտն օգտագործել քրիստոնեական այն ավանդությունը, որը մեջ է բերված նաև Կաղանկատուացու «Պատմության» Գ մասի 5-րդ գլխում։

«Յառաջ քան զտեսչութիւն տեառն Աբրահամու ի Թշնամեաց հրդեհեցան վկայաբանքն ի Դիզափայտ լերինն ի Կատարոյ Վանս, որք ի ժամանակս Վաչագանայ Աղուանից արքայի և Դանիէլայ Ամարասայ եպիսկոպոսի յայտնեցան, որոց անուանքն են այսոքիկ. սուրբն Մովսէս, սուրբն Դանիէլ, սուրբն Եղիա. սոքա որդիք գոլով Սանեսանայ արքային Մասքութաց, որք աշակերտեալ սրբոյն Գրիգորիսի և երեք հազար ութ հարիւր և եօթնեւտասն այր ընդ նոսա։ Ամենեքեան սոքա ի լեառն Դիզափայտ անապարեալ խոտարուտ կենօք, որոց զհետ եկեալ արհնարբուն Սանեսան՝ ի սուր սուսերի արկ զնոսա յինն նաւասարդի ամսոյ» (էջ 134)։

79. Բաջունայս։ Ապահունիքն է. (Հյուբշման, Հանդէս Ամսօրեայ, 1905, էջ 248)։ Խլաթից հյուսիս և Վանա ծովի արևմտյան գավառ, որի կենտրոնն էր Մանազկերտը։ Գտնվում էր Տուրուբերան նահանգում։ Իր կենտրոնական դիրքով Բյուզանդիայի, պարսիկների և արաբների կռիվների ընթացքում հաճախ եղել է պատերազմի թատերաբեմ։ Հին ժամանակ առանձին նախարարության կալված է եղել «Ի կորովի և ի քաջ ազգէն Ապահունեաց» (Խորենացի, Գիրք Գ, ԼԲ)։

Արաբական տիրապետության ժամանակ, IX դարի սկզբում, այնտեղ արդեն տիրում են Կայսիկյան ամիրաները, կենտրոն ունենալով Մանազկերտը։ X դարի վերջին հիշատակվում է Ապահունյաց և Նփրկերտի ամիրա Բատը։ Նրա մահվանից հետո հաջորդում է քրոջ որդին Մրվանը, քրդական ծագումով, Համդյան ցեղախմբից, որի կալվածները պարունակում էին բացի Ապահունյաց կարևոր մասից, նաև Խլաթը և Արճեշը։ Նախապես Վասիլ II կայսեր հարկատու էին և հետո ենթարկվեցին սելջուկյաններին ու նրանց գերիշխանության ներքո պահեցին գավառի իշխանությունը։

Պատմության մեջ հիշատակվում է մի մեծ ճակատամարտ, որը տեղի ունեցավ 998 թվականին մի կողմից Ատրպատականի Մամլան ամիրայի և մյուս կողմից Հայոց Գագիկ ու վրաց Գիորգի թագավորների միջև, որոնց միացան Դավիթ Կյուրապաղատի զնդերը և համարական ուժերով հաղթանակ տարան Մամլանի վրա (Ասողիկ, էջ 269—273)։

80. Բոխավիս։ Վայրն անծանոթ է մնում։

81. Բաղ ալ-Համրա։ Արդյո՞ք Բաղ գյուղն է, որի մասին Միրախորյանը գրում է. «Աստ կայ արձանական բերդ մը, զոր տեղացիք «Պարոնաց բերդ» կանվանենն» (Նկարագրություն ուղևորության ի հայաբնակ գավառս Արևելյան Տաճկաստանի, մասն Բ, էջ 105)։ Գտնվում է Բաշկալեի կողմերում Աղբակ գավառում, Զարի արևելյան ափի մոտ։ Պետք է փնտրել այժմյան Ջուլամերիկի շրջանում։

82. Բասնե։ Այրարատ նահանգի Բասեան գավառը, որը Արաքսի վերին հոսանքում կազմում է ընդարձակ հովիտ։

Բաժանվում էր երկու մասի՝ վերին Բասենը (Բասենի դաշտը) Դարույնք կենտրոնով, և Ստորին Բասենը, հետո՝ Արեղեանք գավառ՝ Մժնկերտ կենտրոնով։

83. Բաքու։ Այժմյան Բաքուն՝ Ադրբեջանական ՍՍՌ մայրաքաղաքը։

84. Բալու: Չորրորդ Հայքի Պաղնատուն գավառում; հայ մատենագիրների մոտ հանդես է գալիս իբրև բերդ։ Ասողիկը հիշատակում է 995 թվականին մեծ երկրաշարժի առիթով. «Եւ բերդն Բալու հանդերձ շինուածովքն և բարն փլուգանիւր» (էջ 264)։

Վարդանը հիշատակում է, որպես այն վայրը, որտեղ Մեսրոպը տեսել է նշանագրերը. «Որպէս թէ Մուշեղի ի լեառն Սինայ և սմայ ի լեառն Բալուայ» (էջ 49–50)։

Բյուզանդացիները կոչել են Բալուէ։

85. Բահր ալ-Խազար: Արաբները այս անունը տալիս են Կասպից ծովին։

86. Արճեշի լիճ: Վանա լիճը արաբներին ծանոթ է Արճեշի լիճ կամ Խլաթի լիճ անվամբ։ Աբու-լ-Ֆիդան «Բահր ալ-Արջիշ» է կոչում և գրում է. «Խլաթի արևմտակողմը՝ մի օրվա հեռավորության վրա։ Սա մի մեծ աղի լիճ է, միջին մասում շատ խորը, իսկ նրա շրջագիծը ավելի քան չորս օրվա ճանապարհ է։ Նրա եզերքին են գտնվում Խլաթ և Արճեշ քաղաքներն ու այլ քաղաքներ։ Այնտեղ որսում են տառեխ կոչված ձուկը, որը տարածվում է ամբողջ աշխարհում։ Երբ քամին փչում է, այդ լիճը շատ է ալեկոծվում։ Իր ալիքները ահագին են, և նրանից բարձրացած ջուրը հասնում է մինչև Խլաթ և ափի վրա գտնվող մյուս քաղաքները։ Այնտեղի բնակիչները այս բանից իմանում են թե լիճը ալեկոծված է։ Այդ լճի մեջ են թափվում ամեն կողմից գետակներ։ Լեռնանրապես եղեգներ չեն նշմարվում այնտեղ» (Աբու-լ-Ֆիդա, Աշխարհ., էջ 52)։

87. Իբն ալ-Քալբի: Կրոնական համբավավոր մեկնաբան Աբու-լ-Մունզիր Հիշամի որդին, որը մեծ հեղինակություն է ձեռք բերել արտադրական գործերով։ Իր երկասիրության հատուկտորները մնում են այժմ, մանավանդ մի հետաքրքրական ու թանկագին երկասիրություն՝ հին արաբների կուռքերի մասին։ Այդ գործը շատ հաճելի չէր մուսուլմաններին, որոնք խորշում էին Արաբիայի հեթանոսական հիշատակներից։ Այդ պատճառով բուռն ընդդիմությունների տեղիք տվեց, և ընդդիմադիրները հեղինակին մեղադրեցին որպես կեղծարար։ Յակուտը, որը նրանից շատ տեղեկություններ է վերցրել իր գրքում, պաշտպանեց նրա հիշատակը մեղադրանքների դեմ։

Իբն ալ-Քալբին իր ամբողջ կյանքը անցկացրեց Բաղդադում և մահացավ 819 թվականին։

88. Վանա ծովի մանր ձկների մասին ակնարկում է Թովմա Արծրունին. «Բղխեն ձկունս մանունս առ ի պէսս վայելչութեան բնակչաց աշխարհին և ամբարեն ինչս յազումս ի գանձս թագաւորաց, զոր և արքայի առեալ նա։իրէ ի գարմանս ազգաց» (էջ 476)։

Ինճիճյանը նշում է (Հնախոսութիւն, Ա, էջ 240), որ հույների մոտ աղ դրված ամեն ձուկ «տառիխոն» էր կոչվում, մինչև անգամ գրված միսն էլ էր այդպես կոչվում։ Ուրեմն տառեխը, աղ գրված վիճակի մեջ արտածվելով, իր անունը տվել է աղ դրված ամեն կարգի ձկներին։

89. Վանա լճի սեփականության մասին Բելազորին գրում է. «Ինչ վերաբերում է Թիրիխի ծովակին, նա ազատ թողեց, և ծովը մնաց հասարակաց սեփականություն, մինչև որ Միջագետքի և Հայաստանի վրա կառավարիչ կարգվեց Մուհամմադ իբն Մրվան իբն Հաքամը, որ ձկնորսության իրավունքները յուրացրեց և այդ արտոնությունը վաճառեց, ծովակի մի մասը իրեն սեփականացնելուց հետո։ Իսկ ավելի ուշ այն մնաց Մրվան իբն Մուհամմադին։

Այս գլխավոր դեպքում Մուհամմադ իբն Մրվանի գործունեությունը Հայաստանում, Մուհամմադ իբն Մրվանը ոստիկան ուղարկվեց Հայաստան (Հովհաննես կաթողիկոս և Ենլազարի)։ 695 թվականին ստիպեց հայերին հնազանդվել (Թեոփանես և Իբն Ալ-Աթիր), առաջացավ մինչև Դարբանդ (Մովս. Կաղանկատվացի) դրավեց Ուտան կղզին, որտեղ հաստատեց իր բնակությունը և այնտեղից արշավանքներ կատարեց (Հովհաննես կաթողիկոս)։ Ավերեց Հայաստանը 700—704 թվականներին (Ղևոնդ, Ասողիկ, Իբն ալ-Աթիր, Տաբարի), բնդունեց Սահակ կաթողիկոսի հնազանդության թուղթը, երբ սա ճանապարհին մահացավ (Ղևոնդ, Վարդան)։ 705 թվականին հետ մղեց հույներին Վանանդում, որոնք հրավիրվել էին Սմբատ Բագրատունու կողմից (Իբն ալ Աթիր և Ղևոնդ)։ Իր տեղապահ Կասիմի միջոցով Նախիջևանի և Խրամի եկեղեցիների մեջ այրեց հայ մեծամեծներին (Ղևոնդ, Վարդան, Տաբարի)։ 710 թվականին Վալիդ խալիֆը նրան հեռացրեց Հայաստանի կառավարչության պաշտոնից (Իբն ալ-Աթիր, Տաբարի), մահացավ հիջրի 101 թվականին (719—720) (Իբն ալ Աթիր)։

90. Ուրմիայի լիճ: Մասուդին և Իբն Հաւքալը (X դարում) լիճը կոչում են «Բուհայրաթ Քաբուդան» (Կապուտան լիճ)։ Կոչվում էր նաև «Սեղի ծով»։

XIII դարի վերջերին Աբու-լ-Ֆիդան գրում է, թե լճի միջտեղը կա մի կղզի, որի վրա, մենավոր մի սարի գագաթին կառուցված է մի դղյակ, որը կոչվում է Թելա։ Այս դղյակի մեջ, նրա դիրքի ամրության պատճառով, Հուլաղուն պահեց իր գանձերը։ Ասում են նույնիսկ, որ նա այնտեղ թաղվեց։ Հազար մարդկանցից բաղկացած մի պահակախումբ մշտապես հսկում է դղյակի պաշտպանությանը (Աբու-լ-Ֆիդա, Աշխարհ. II, էջ 52)։

Ըստ ուրիշ աղբյուրի, Հուլաղուի թաղված վայրը և նրա գանձարանը Ուրմիայի լճում Շահի կոչված թերակղզու վրա է գտնվել (Encycl. of Islam — Marand բառի տակ)։

91. Հաղաբի լիճ: Հաղաթի բերդի ստորոտում, նույնանուն դաշտում գտնվող երեք փոքր լճերից մեկը։ Այժմ կոչվում է Դյոնյուր-Գյոլ։ Մյուս երկուսն են Ազարլի-Գյոլ և Բաշ-Գյոլ, որոնց միջով անցնում է Նահր Բուրիթը։

92. Բիթլիս: Միջնադարյան խոշոր հայկական կենտրոն Բաղեշ քաղաքը գտնվում էր Ձորա Վահակ լեռնանցքից հարավ՝ Աղձնիք և Տուրուբերան նահանգների սահմանագծի վրա։ Թովման ասում է՝ «Աստվածատուր Բաղէշ»։

Քաղաքի տեսարանը նկարագեղ և սքանչելի է։ Գտնվում է Վանա լճի հարավ-արևմտյան կողմում, լճի ափից ուղիղ գծով մոտավորապես 20 վերստ հեռավորության վրա, ձորի մեջ։ Բաղեշ գետը (Բիտլիս Չայը)՝ հոսում է քաղաքի կողքից՝ ընդունելով զանազան գետակներ։ Քաղաքը բաժանվում է չորս գլխավոր մասերի։ Վայրը հաճելի է, շրջապատված պարտեզներով, ունի քարաշեն տներ։ Ամրոցը քաղաքին իշխում է մի ամուր միջնաբերդ՝ սեպաձև ժայռի վրա։ Արևելյան ավանդությունները, ինչպես բոլոր քաղաքների, նաև այս քաղաքի շինությունը վերագրում են Աղեքսանդր Մակեդոնացուն։ Գտնվում է դեպի Սղերդ, Միջագետք և մյուս կողմից՝ դեպի Վրաստան տանող առևտրական ճանապարհի վրա։

Բիթլիսը խլաթից յոթ փարսախ հեռու է։ Շերեֆէդդինը իր քրդերի պատմության գրքում (Շերեֆնամե) երկար ծանոթություն է տալիս իր ծննդավայրի մասին։

Նասիրի Խոսրովը այցելելով Բիթլիս զարմանք է հայտնում մեղրի առատության և էժանության առթիվ, և գրում է. «Հասանք Բիթլիս, որը մի ձորի մեջ գտնվող քաղաք է և այնտեղ մեղր գնեցինք։ Հաշվեցի, որ մեկ փաճառված գնով հարյուր

մանր մեկ դինարի արժեք ուներ։ Մեզ վստահեցրին, թե այդ քաղաքում կային մարդիկ, որոնք տարվա մեջ 3—4 հարյուր տիկ մեղր էին ստանում» (Սեֆերնամե, էջ 22)։

Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրության մեջ գրում է. «Գտնվում է Մանազկերտի հարավ-արևմտյան կողմում, շրջապատված է կիսաքանդ պարիսպով, նրա միջով հոսում են ջրեր, որոնք բխում են քաղաքից դուրս գտնվող աղբյուրից։ Նրա հովտում կան մրգաստաններ և շրջապատված է լեռներով։ Ձմեռը ծայրահեղ ցուրտ է այնտեղ և ձյունը առատ։ Իբն Հավկալը վկայում է, թե մի փոքր քաղաք է այն, բարեբեր, բարգավաճ և բարիքներով լիառատ»։

Իբն Բատուտան գրում է. «Շրջապատված է կիսաքանդ պարսպով, միջից անցնում են բազմաթիվ ջրի հոսանքներ, շրջապատված է մրգաստաններով, կլիման սաստիկ ցուրտ է և ձմեռը ձյունառատ»։

93. Ռադ: Այս վայրը Սմբատ Իբն Ջավեդանի և Բաբեկի կենտրոնն էր Հանդիսանում։ Գտնվում է այժմյան Թալիշի Կիլաջ-չայ գետի վերին հոսանքում, այստեղ էր գտնվում պատմական Առոսբեձան գավառը, որի տեղագրությունը որոշվում է այժմյան Արոս գյուղով։ Թերևս տեքստում հիշված Արոզ անունը պետք է կապել Արոս անվան հետ։

94. Բոդանդոն: Կիլիկյան դռների վերին անցքը կոչվում է «Կապան Պոտանտոյ», հույների Ποδανδός լատինների Podandos և Opodanda և զանազան այլայլված անուններով հիշատակված է խաչակիրների պատմիչների կողմից։ Փոքր Ասիայից դեպի Ասորիք տանող կարևորագույն իջևան և անցք է, որը օգտագործել են բյուզանդացիները և արաբները։ Այնտեղ էր նաև բաժատունը (մաքսատուն)։

Այնտեղ մեռավ ալ-Մամուն խալիֆը 833 թվականի արշավանքի ժամանակ։

Գտնվում է կածանի հարավ-արևմտյան դարձվածքի վրա, լեռան ստորոտում, այժմ ծանոթ է Պոզանդի անվամբ։ Սմբատ պատմիչը հայտնում է, որ հայերը 1245 թվականին Մայծու ասված տեղից մինչև Պուզանտե կոտորելով հալածեցին Իկոնիայի սուլթանի զորքերը (Սմբատ, էջ 123)։

95. Բարխու: Այժմ Սղերդի շրջանում Գենջի գավառակում, Փարխու կոչված վայրն է։ Թովմայի կողմից հիշատակված է «Բերդն Փարհուացս» (էջ 458)։

96. Բարդիջ: Բերդիկն է՝ այժմյան Մինգեչաուրի գետանցքը։

97. Պարտավ: Աղվանից երկրում, Ուտի Առանձնակ գավառում.

VI դարից սկսած Պարտավը նախկին Կապաղակի (Պտղոմեոս՝ Cabala) տեղ դարձավ Աղվանից մայրաքաղաք։ VI դարի վերջերում այնտեղ իր իշխանությունը հաստատեց Միհրական տունը, որը քրիստոնեություն ընդունեց։ Դինաստիայի վերջին իշխանը եղավ Վարազ Տրդատը, որը 822—823 թվականներին սպանվեց Ատրներսեհի կողմից։ Ապա իշխանությունն անցավ Սահլ Սմբատյանին։ Կաղանկատվացին նրան կոչում է «Եռանշահիկ»։ 913 և 944 թվականների ռուսների արշավանքից հետո առևտրական ճանապարհների փոփոխման հետևանքով առաջնությունն արդեն անցել էր Գանձակին։ Շեդադյանների ժամանակ մայրաքաղաքը փոխադրվեց Գանձակ, և ինչպես Յակուտն էլ է նշում, Պարտավը կորցրեց իր նշանակությունը և դարձավ անկարևոր վայր։

Ըստ Աբու-լ-Ֆիդայի տեղեկության, քաղաքը կառուցված է Թաթար գետակի ձախափի վրա։ Ջալալեդդին Ասիութին վկայում է, թե հիջրի 85 թվականին այդ քաղաքը կառուցեց մուսուլման զորավար Արդլ Ազիզ իբն Հաթիմ իբն Նոման ալ Բահիլին։ Անշուշտ խոսքը վերաշինելու, և ոչ կառուցելու մասին է, որովհետև քաղաքը շատ ավելի հին է։

Արաբական տիրապետության ժամանակ, սկսած 789 թվականից Պարտավում նստում էին ոստիկանները՝ իբրև ամբողջ Կովկասի գործերի կառավարիչներ։ Քաղաքը ուներ մնայուն արաբացի պահակազոր և մուսուլմանական ու քրիստոնեական ակտիվ կյանքի կենտրոն էր։

98. **Բարզանջ**: Գտնվում է այժմյան Ջարդոր գյուղի մոտ։

99. **Բարզանդ**: Բարզենդ կամ Վերզենդ։ Քսան փարսախ հեռու Արդաբիլից։

Ադրբեջանի հյուսիս-արևելյան մասում քաղաք է, որը սկզբնական արաբացի աշխարհագիրները դնում են Մուղանի մարզում։ Յակուտը դնում է Արմինիայում։ Բարզանդը եղավ Աֆշինի զորակայան՝ Բաբեկի դեմ մղած կռիվների ընթացքում։ Իբն Հավկալն ու Մուկադդասին գովում են նրա հոխ շուկաները։ Մուստավֆիի ժամանակ, 1340 թվականին արդեն կորցրել էր իր նախկին նշանակությունը։

100. **Փարչա**—այս վայրը մնում է անծանոթ։ Ավդիանները թերևս ուտիացիք են։

101. **Ալբարշալիա**: Պետք է լինի Բորչալուն։

102. **Բասֆուրջան**: Վասպուրական նահանգն է, որի մեջ էր Նախիջևանը։

103. **Բասլա**: Այժմ Փասվե՝ գյուղ Ուշնուից հարավ, Կելիշինի լեռնանցքի մոտակայքում։

104. **Բաշիր**. կամ Բեշիր. այժմ Պեշիրի գավառակ Դիարբեքրի նահանգում։

105. **Բուալ** լեռան տեղն անծանոթ է մնում։ Թերևս կարելի է նույնացնել Պարխար լեռների և կամ Անձևացյաց մոտ Բութ լեռան հետ։

106. **Բաղրաս**: Ամանոսյան կիրճի մոտակայքում Անտիոքի սահմանի վրա Աստրոց դռան մոտ, հույների Παγρας, ֆրանկների Pagrae-ն, կոչում են նաև Gaston կամ Gastim։ Նրա դիրքը տալիս էր եզակի կարևորություն, որովհետև իշխում էր Բեյլանի կիրճին և Անտիոքի պաշտպանության ամենաառաջավոր ռազմական դիրքն էր կազմում։ Լևոն II գրավեց այն Տաճարականներից։ Վահրամ Րաբունին ասում է. «էառ զԱրասուս և զՊաղրաս»։

Սալահադդինը 1189 թվականի սեպտեմբերի կեսին պաշարեց և դժվարությամբ գրավեց ու քանդեց այդ բերդը։ Իբն ալ-Աթիրը մեղադրում է սուլթանին այդ բանի մեջ, որովհետև Լևոնը շուտով վերադարձավ և գրավելով վերաշինեց այն և դարձրեց իր համար մի հենակետ, որտեղից ասպատակում էր Հալեբի շրջակայքը։ Այնուհետև դարձավ սահմանակալ բերդ ու ավատ տրվեց սկզբից մի բերդակալի, ապա տաճարականներին։ Սմբատ պատմիչը 1236 թվականի տակ գրում է. «Ի յայս աւուրս եկն Հալպայ սուլտանն շատ հեծելով ի վերայ Պաղրասայ և չկարաց առնուլ» (էջ 123)։

107. **Բագրևանդ**: Գավառ Այրարատյան նահանգում։ Փավստոսի մոտ «Բագրավանդ», Հովհաննես կաթողիկոսի մոտ՝ «Բագրավան», Խորենացին երկու կերպով էլ հիշատակում է։ Պտղոմեոսը կոչում է «Բագրաուանդին»։ Ներկայիս Ալաշկերտը։

108. **Բաֆաս** կամ **Վաֆաս**: Անտիոքի մոտ։ Լատին ժամանակագիրների հիշած Bexa-ն։ Գրիգոր Տղան հիշում է «Ողբ Երուսաղէմի» մեջ Սալահադդինի գրավումների շարքում. «Եւ ըզ Պըքասն՝ անմատչելին»։

109. **Բալասկերտ**: Տեղադրությունը դժվար է ստույգ որոշել։

110. **Բեհեսնի**: Բերդ, ասորերենից կոչված բայտ-Հասնա, իսկ խաչակիրների կողմից կոչվում էր Behesdin, Behesain։ Գտնվում է Հիսն Մանսուրի արևմտյան կողմը, սրա և Կապանի միջև, Քեսունի գավառում։ Նրա մոտ գետի վրա կար հռչակավոր մի կամուրջ, որը համարվում էր աշխարհի չորս հրաշալիքներից մեկը. մյուս երեքը լինելով Եդեսիայի եկեղեցին, Ալեքսանդրիայի փարոսը և Դամասկոսի

մզկիթը։ Յակուտը հայտնում է, որ Բեհեսնին ունի պարտեզներ, շուկաներ և մշակված բնդարձակ շրջակայք։ Գտնվում է Հալեբից չորս, իսկ Սսից՝ վեց օրվա հեռավորության վրա։

Ուռհայեցին գրում է. «Ամուր բերդն Պեհեսնու» (էջ 443), Գրիգոր Երեցը՝ «Զանմատոյցս և զանառիկս զՊեհեսնին» (էջ 504), նաև «Զմեծ աւանն և զանառիկ բերդն «Պեհեսնոյ» (էջ 522)։

Օմարին ասում է «Տարիֆում». «Հալեբից չորս օրվա և Սսից վեց օրվա հեռավորության վրա հպարտ և անառիկ ամրոց։ Ունի պարիսպներ, մի փոքր գետակ, շուկաներ, մշակված ընդարձակ շրջապատ։ Այս քաղաքը պաշտպանում է հոռոմների կիրճը։ Այնտեղ ապրում են թուրքեր և քրդեր, որոնք սրբազան պատերազմի համար հարատև ճիգ չեն խնայում»։

1150 թվականին Իկոնիայի Մասուդ Սուլթանը գրավեց այն՝ Քեսունի և ուրիշ վայրերի հետ։

Վահրամ Ռաբունին գրում է, թե Հեթումը բերդը գրավեց թուրքերից. «Եւ զՊեհեսնին՝ զբռամբ ածեալ,

Եւ ի թուրքին ձեռաց առեալ»։

Բեհեսնին կազմեց Կիլիկիայի հայկական թագավորության մասը և մնաց հայերի ձեռքում մինչև 1267 թվականը։

Մուֆազզալ իբն Յաղայիլը գրում է. «Բեհեսնին Հալեբի սուլթան Մալիք անՆասրի ժամանակ պատկանում էր մուսուլմաններին. երբ թաթարները գրավեցին Հալեբը, Բեհեսնիի կառավարիչ Սայֆադդին ալ-Մուկադդամը քաղաքը վաճառեց հայոց թագավորին հարյուր հազար դիրհեմի»։

111. Բայաս. Կիլիկիայում նավահանգիստ, Այասի ճիշտ դիմացը, Հայոց ծոցի արևելյան ծովափի վրա։ Կոչվում է նաև Փայաս, Պայաս, հռոմայեցիների կողմից՝ Baiae։ Ռուբինյանների ժամանակ Ճկեր գավառի մասն էր կազմում (Ալիշան, Սիսուան, էջ 464)։ Առաջին խաչակիրներից հիշվում է «Կույսերի բերդ» անունով։ Նրա հարավակողմը, Ալեքսանդրետի ճանապարհի վրա գտնվում է Կիլիկիան և Ասորոց դուռը, Pylae Syriae Ciliciae, իսկ 30 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք գտնվում է Իսոսը, որտեղ Ալեքսանդր Մակեդոնացին վճռական հաղթանակ տարավ Պարսից թագավոր Դարեհ փոքրի դեմ։ Իսոսի մոտ է նաև Մարիի անցքը, որտեղ 1266 թվականին եգիպտացիների հետ բախում տեղի ունեցավ, և սպանվեց Հեթումի որդի Թորոսը, ու Լևոնը գերի վերցվեց։ Այստեղ էր գտնվում նաև Կիլիկիայի հարավային բաժանումը, որը կոչվում էր «Դուռն» (Portella)։

Մի հիշատակագրում կարդում ենք. «Ի ծովեզերս Ովկիանոսի... ի գիւղս, որ Պայաս կոչի» (Սիսուան, էջ 464)։

112. Բայջան Քուրդ: Թերևս լինի Պժնկերտը, Խնուսից արևելահարավ և Կարինից 2,5—3 օրվա ճանապարհով հեռու (Միրախորյան, մաս Գ, էջ 115)։ Հեղինակի տեղադրությամբ ավելի մոտ է Մժնկերտին։

113. Ալբիրա: Պտղոմեոսը քաղաքը կոչում է «Բերթա»— Birtha արամեերեն՝ բերդ ստուգաբանությամբ։ Գտնվում է Եփրատի արևելյան ափի վրա, խիստ ամրացված մի հովտի մեջ, որը արաբները կոչում են «Վագի ազ-Զեյթուն»։ Ներկայիս Բիրեճիկն է։

Հիշատակված է ասորեստանյան արձանագրությունների մեջ Til Burthip անվամբ։ Հետո արամեական պետության Bit Adini-ն, որը Սալմանասար II (մ.թ.ա. 859—824) արձանագրությունների մեջ հաճախ հիշատակվում են։ Մոտն է Zeugma նշանավոր կամուրջը՝ Եփրատի վրա։

Քաղաքը գտնվում է Թլպաշարի և Եդեսիայի միջև։ «Օժտված էր պարսպով և աշտարակներով, իսկ նրա ծայրը, 18 ոտնաչափ բարձրությամբ մի բլրակի վրա, կանգնում էր բերդը։ Որմնային հսկայական շինություն էր այն, հրաշալի արվեստով, որ երկրաշարժներն ու ավերածությունները չեն կարողացել քանդել։ Արաբներն անվանում են Կալաաթ Բայդա (Սպիտակ բերդ)» (Rev —Les colonies franques en Syrie aux XII et XIII siecles, էջ 307)։ 1109 թվականին այնտեղ տիրում էին երկու հայ իշխաններ՝ Աբլղարիբը և Լիգոսը, Վասակ Պահլավունու որդիները, որոնք իրենց տիրույթը սելջուկյանների ձեռքից էին խլել։ 1117 թվականին Բոդվին դը-Բրուգը նրանց անդահանեց մեկ տարվա պաշարումից հետո, և նրանք գնացին Կիլիկիայի արքունիքը։ Ուռհայեցին ակնարկում է. «Իշխանն Հայոց Աբլղարիպ զօրօք իւրով որ նստէր ի քաղաքն անուանի որ կոչի Բիր» (էջ 391)։

Եդեսիայի կոմսը քաղաքը գրավելուց հետո, իբր ավատ հանձնեց Ջոսլինին, որը իր հերթին ավատ տվեց այն իր հորեղբոր որդուն՝ Վալերանին։ Այդ առիթով Բոդվինը սեփականազրկեց շրջապատի մի քանի հայ ավատատերերի, Գող Վասիլի եղբորը՝ Բագրատին և Կառկառի տեր Կոստանդինին։ «Եւ ի միւս այլ ամին դնայ Պաղտոյն ի Նղէպն ի վերայ Աբլղարիպին՝ Հայոց իշխանին, որդւոյ Վասակայ, եղբօր Լիկոսին, որ էին տեարք հազար զօրականի, որ յառաջ ունէին զԹլպաշարն և զԲիրն, առեալ ի թուրքաց մեծաւ քաջութեամբ զոր ի խսար արկեալ ամ մի, էառ ի նմանէ զբովանդակն և նա գնաց առ Թորոսն։ Նոյնպէս քակեաց զմիւս իշխանն որ բնակեալ էր յԱրևրնդան զԲագարատ, և զԿոստանդին տէրն Կառկառայ, զոր մեռոյց ի կապանս ի յերդին Սամուսատ» (Վարդան, էջ 117—118)։

Երբ 1144 թվականին Աթաբեկ Զանգին գրավեց Եդեսիան, մեկ տարի հետո լատին իշխանները բերդը փոխանցեցին Մարդինի Որդոքյաններին։

Եդեսիայի կոմսը կրկին տիրացավ այդ բերդին, մինչև որ Բեաթրիս կոմսուհուց այն գնեց Մանվել Կոմնենոս կայսրը ավատական բոլոր կալվածներով, այսինքն՝ Թլպաշար, Սամոսաթ, Բիրա, Դլուկ, Այնթապ և մնացյալ մասերը (բացի Հռոմկլայից, որը հայոց կաթողիկոսին հանձնվեց տարեկան մի որոշ հասույթով)։

Թաթարների արշավանքի ժամանակ բերդը դիմադրեց և մնաց մուսուլմանների ձեռքում։

Այուբյանների ավատները հետևյալ կերպով բաշխվեցին. Սալահադդինն իր կենդանության ժամանակ Հալեբը տվեց իր 11 տարեկան որդուն՝ ալ-Մալիք ազ-Զահիր Ղազուն։ Մի քանի ամիս անց սուլթանը այդ քաղաքի կառավարությունը փոխանցեց իր եղբորը՝ ալ-Մալիք ալ-Ադիլին։ Հիջրի 582 թվականին (1186—1187) ավատների նոր բաժանում կատարվելով ալ-Ադիլը հեռացվեց Հալեբից և ուղարկվեց Եգիպտոս՝ որպես սուլթանի որդու աթաբեկ, իսկ Ղազին կրկին իշխեց Հալեբի վրա և մեռավ 615 թվականին (1218—1219)։ Նրան հաջորդեց իր որդին՝ ալ-Մալիք ալ-Ազիզ Մուհամմադը, որը Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ալ-Քամիլի օգնությամբ ամրացրեց իր դիրքը՝ գրավելով Շայզարի բերդը։ Նա Բիրան ժառանգեց իր հորեղբորից ազ-Զահիր Դավուդից, որը Սալահադդինի որդին էր։ Ալ-Ազիզը մեռավ երիտասարդ հասակում հիջրի 634 թվականին (1236—1237) և իր գահը թողեց 7-ամյա որդուն ալ-Մալիք ան-Նասր Յուսուֆ II։

114. Փայտակարան։ Արաբների Բայլականը։ Գտնվում է Կուրի և Արաքսի միջև, նախքան այդ երկուսի միանալը՝ այժմյան Օրանկալա ավերակների վայրում։

115. Թավրիզ։ Իրանական Ադրբեջանի մայրաքաղաքը։

116. Թիֆլիս։ Վրացական ՍՍՌ մայրաքաղաքը։

117. Ջալալեդդինը 1226 թվականին գրավեց Թիֆլիսը։ Նրա պատմիչ ան-Նասավին հետևյալ կերպով է ավանդում Թիֆլիսի գրավումը.

«Ադրբեջանին տիրելուց հետո խորեզմ շահը արշավեց վրացիների վրա, որոնք 60 հազար զորքով պատրաստվեցին դիմադրելու նրան. հասավ Կարբի, Արաքսի եզերքը, այնտեղ վրացիները քաջությամբ դիմադրեցին, բայց մեծ կորուստ տալով պարտվեցին։ Ավար ու գերի վերցնելուց հետո, Ջալալեդդինն անցավ Գանձակ, Բայլական, Պարտավ, Շամքոր և Շիզ։ Հետո որոշեց արշավել Թիֆլիսի վրա։ Ձմեռ էր, երբ նրանք հասան Թիֆլիսի առաջ։ Օդը այնքան խիստ էր և ցուրտ այնքան սաստիկ, որ կենդանիների սմբակները վնասվեցին ու մանավանդ մարմնի անդամների ծայրամասերը, որոնք պաշտպանված չէին։ Երբ հասան Թիֆլիսի դաշտը, սուլթանը հրամայեց թեթևազեն գնդերին հարձակվել, բայց նա իր դիմաց գտավ ամուր և լավ պաշտպանված մի քաղաք։ Պատնեշների մեծ մասը կառուցված էին լեռների կամ ցից բլուրների կատարի վրա։ Ամբողջ բանակը խոյացավ աշտարակների վրա, նման թիթեռնիկների, որոնք խոյանում են կրակի վրա. հետո թշնամուն քաշեցին քաղաքի պարիսպներից դուրս, և երբ նա բավական հեռացավ, նրանց վրա հարձակում գործվեց այնքան ուժգնորեն, որ քիչ հետո տեսնվեցին բազմաթիվ գլուխներ՝ իրաններից բաժանված և ձեռքեր, որոնք կապված չէին այլևս դաստակներին։ Պաշարյալները աճապարեցին քաղաք մտնել, բայց Ջելալեդդինը քաղաքի դռանը հասավ նրանցից առաջ, և քաղաքը գրավվեց այդ հարձակման շնորհիվ։ Բնակիչները սրի անցվեցին, և նրանց գույքն ընկավ կողոպտողների ձեռքը։ Բոլոր վրացիներն ու հայերը, որոնք բնակվում էին քաղաքում, սպանվեցին։ Վրացի զորքերն ու պահեստի պահակախումբը պատսպարվեցին միջնաբերդի պարիսպների ետև։

«Թիֆլիսը կառուցված է Արաքսի (անշուշտ ուզում է ասել Կուրի) ափերին վրա, լեռների և հովիտների միջև։ Գետը, որ բաժանում է քաղաքը միջնաբերդից, կարևոր է և ոտքով անանցանելի։ Քաղաքի երկու մասերը կապված էին փայտե կամուրջով, որը այրվեց, երբ կացության վտանգավոր լինելը հայտնվեց և զգացվեց հարձակման մոլեգնությունը։ Սուլթանը իր բանակի հետ անցավ գետը մեկ օրվա մեջ և հասավ միջնաբերդի կողմը։ Աստված որոշել էր, որ ինքն և իր զորքերը առանց արգելքի անցնեին։ Հասնելով միջնաբերդի առաջ, սուլթանը պաշարեց այն բոլոր կողմերից, և գնդերն սկսեցին կարգի դնել պաշարման գործիքները։ Մինչդեռ այդ բանով էին զբաղված, վրացիների մի պատվիրակ դուրս եկավ բերդից ու ներկայացավ «աման» խնդրելու։ Սուլթանը ամանը շնորհեց, որովհետև ձմեռն սկսվել էր. տիրացավ վայրին և գրավեց այնպիսի հարստություն, որ ճարտար գրագրի մատները պիտի հոգնեին, եթե ուզեր հաշվել և թղթի կույտերը անբավարար պիտի լինեին՝ գրավված իրերի ցուցակը պարունակելու համար»։

Այնտեղից Ջալալեդդինը արշավեց աբխազների երկրի ուղղությամբ, հետո ուղղվեց դեպի Խլաթ։ Թիֆլիսից հեռանալով նա այնտեղ տեղապահ դրեց Շարաֆ ալ Մուլքին, բայց նա գնաց ձմեռելու Գանձակում։ Սուլթանը գնացել էր Իրաք՝ ներքին վեճերն ու զանազան վայրերի ապստամբությունները զսպելու համար։ Օգտվելով նրա բացակայությունից, վրացիները վերադարձան ու գրավեցին Թիֆլիսը։

118. Թլպաշար։ Հին ամուր քաղաք, հիշատակվում է ասորեստանյան արձանագրություններում։

Կառուցված է Սաջուր գետի վրա, Այնթաբի մոտ, Հալեբից հյուսիս։

Թլպաշարը XI դարում գտնվում էր Վասակ Պահլավունու ձեռքում, որը իր եղբոր Լիկոսի հետ գրավել էր այն սելջուկներից։ Միայն 1095 թվականին կարճ ժամանակով անցավ Անտիոքի Յաղի Շարան էմիրի ձեռքը։ Բերդաքաղաքը դարձել էր

Գրիգոր Մագիստրոսի սերնդի բնակավայրը։ Նրանցից խլեց Բոդվին կոմսը 1090 թվականին։ «Պազդոյն կոմսն էառ զԹլպաշար և զՈւռհա» (Վարդան, էջ 111)։ Նա 1103 թվականին քաղաքը իբրև ավատ տվեց իր եղբորորդուն՝ Ջոսլին դը Կուրթնեին, Դլուկի և Սամոսաթի հետ, ենթակա լինելով Եդեսիայի կոմսությանը։ «Կուրտնեի տան իշխանները իրենց բնակությունը հաստատեցին Թլպաշարում (Turbassel), Եփրատի աջ ափի վրա և քաղաքներն ու շրջանները կառավարեցին զզյակապետներով և դերկամսներով, իրենք դոհանալով միայն պահելով բերդը և տուրք վերցնելով ասորի, հայ և մուսուլման երկրագործ բնակչությունից» (Rev. Les colonies franques en Syrie, էջ 301)։

Հայոց ՇԾԷ թվականին (մ.թ. 1108—1109) Թլպաշարի առաջ մեծ ճակատամարտ տեղի ունեցավ Ֆրանկ խոշոր ֆեոդալների՝ Ուռհայի Բոդվին կոմսի և Անտիոքի Պանկրեդ իշխանի միջև (Ուռհայեցի, էջ 382—383)։

Թլպաշարի ավատը, որ ենթակա էր Եդեսիայի կոմսությանը, հանձնված էր Ջոսլին պարոնին։ 1111—1112 թվականներին Մուսուլի Մամդուդի և զինակից Խլաթի և Մարաղայի թուրք էմիրների միացյալ բանակը հարձակվեց Թլպաշարի վրա։ Բայց «ոչ ինչ կարացին առնել» (Ուռհայեցի, էջ 395—396)։ Չկարողացան գրավել բերդը նաև ալ-Իլկազին՝ 1120 թվականին և Նուր ադ-Դուլա Բալակը՝ 1124 թվականին։

1148—1149 թվականներին Իկոնիայի Մասուդ սուլթանը հարձակվեց Թլպաշարի վրա, բայց Կապկապի Վասիլ իշխանը և Շահան Պահլավունին օգնեցին Ջոսլինին քաղաքի պաշտպանության գործում և Մասուդի արշավանքն անհաջող անցավ (Գրիգոր Երեց, էջ 505)։

1151 թվականին Զանգի ամիրան արշավեց բերդի վրա, բայց նախորդ հարձակումներից և նեղություններից թուլացած բերդականները «երդումն հաստատութեան առեալ ետուն կամօք իւրեանց զբերդն Թլպաշար» (Գրիգոր Երեց, էջ 506)։

Յակուտի գրած ժամանակ, այսինքն XIII դարի առաջին քառորդին, քաղաքը կռվախնձոր էր Ասորիքի Այուբյան սուլթանների և Եգիպտոսի սուլթանների միջև։ Աբու-լ-Ֆիդան գրում է, թե 1248—1249 թվականներին Հալեբի Մալիք Նասր սուլթանը հայազգի Շամսադդին Լուլուին բանակի գլուխ դրեց և ուղարկեց Հեմսի դեմ։ Մալիք Աշրաֆը այնտեղ երկու ամիս պաշարված մնալուց հետո հանձն առավ Հեմսը տալ Այուբյան սուլթանին և նրա փոխարեն ստանալ Թլպաշարի բերդը։ Նույն Աբու-լ-Ֆիդան (XIII դարի վերջ) ասում ,է թե քաղաքը այն ժամանակ էլ բնակված էր հայերով։ Ուներ արվարձաններ և լավ ոռոգված պարտեզներ։

119—120—121. Այս բերդերի վայրերը մնում են անորոշ։

122. Տալ Կուրան։ Թլկուրանն է, որ ծանոթ է իբրև բերդ՝ Ամիդի շրջանում (Ուռհ. էջ 395)։ Վարդան, աշխ. «Ասիդ Թալկուրան է» (էջ 517)։ Իսկ Շաքախաանը հիշատակված է որպես գավառ Ն. Շնորհալու «Ընդհանրական» թղթում, Ասորոց Միջագետքի մի քանի գավառների քահանաների միջև դավանական վեճերի մասին Թլկուրան ավանի Աոյուծ իշխանին գրած թղթում, «Շպղթան» ձևով։

Հիշատակված է նաև Միխայել Ասորու մոտ 1174 թվականին մի սաստիկ կռվի կապակցությամբ, որը տեղի ունեցավ թուրքմենների և քրդերի միջև «յԵրկիրն Շպղթանայ» (Միխայել Ասորի, էջ 493)։

123. Թոզատ։ Եվդոկիա, Փոքր Հայքում, Սվազից երկու օրվա հեռավորության վրա, փոքր քաղաք՝ որ գրավում էր, ըստ Աբու-լ-Ֆիդայի, կարմրահող բլրի ստորոտը, կանաչազարդ այգեստաններով։ Ուներ ընտիր պտուղներ, մեղմ կլիմա, փոքր միջնաբերդ։ Քաղաքը առևտրի կարևոր կենտրոն էր և մինչև 1915 թվականի տեղահանությունը ուներ հայկական հոծ բնակչություն։

124. Թարթուռ։ Տրտու, Տրտուռ, Տրտուական գետ, Կուրի մեկ օժանդակ վտակը, կոչվել է նաև Թարթառ կամ Թերթեր։ Բելաձորին «Նվաճումների գրքում» տեղադրում է Պարտավից մի փարսախից նվազ հեռավորության վրա։

125. Սուղուր կամ սահմանային գոտի։ VII դարում Բյուզանդիայի և արաբների միջև մղված կռիվների ընթացքում այդ երկու երկրների սահմանագիծը մեծ փոփոխություններ կրեց։ VIII դարի սկզբում, երբ արաբների գերիշխանությունը վերջնականապես հաստատվեց Հայաստանում, այդ սահմանագիծը ներկայանում էր մի լեռնազանգվածով, որը սկսում էր Միջերկրականի Սելևկյան ծոցից և երկարելով 600 կիլոմետրով, հասնում էր մինչև Սև ծովի ափը, Տրապիզոնի մոտ։

Այդ լեռնազանգվածի մեջտեղից երկարում է մի բարձր շղթա, որը բաժանվում է երկու գլխավոր ճյուղերի. Անտիտավրոս, որ գնում է դեպի հյուսիս՝ շարունակելով իր սկզբնական ուղղությունը, և Տավրոս, որ ուղղվում է դեպի արևելք, եզերելով Եփրատը։ Այս գետը լայնքից ճեղքում է լեռնաշղթան, որը ամբողջությամբ հակված է դեպի հարավ և դեպի արևելք։ Բոլոր գետերը բխում են լեռնաշղթայի արևմտյան կողմից, մի քանիսը հոսում են դեպի Կիլիկիա և Միջերկրական ծով, մյուսները՝ դեպի Եփրատ։ Լեռների հովիտները թեև խորդուբորդ են և դժվար անցանելի, այնուամենայնիվ լեռների միջով կան ճանապարհներ, որոնք Անատոլիայի սարահարթը կապում են Կիլիկիայի և Միջագետքի դաշտերի հետ։

Ավելի դժվարանցանելի են դեպի հարավ ընկած գետահովիտները։ Այդ բոլոր լեռնանցքները պատմության բոլոր դարերում ամենադժնդակ դժվարություններ են պատճառել արշավողներին և համարվել են անանցանելի։ Զուր չէ, որ արաբները այդ երկրամասը, այսինքն՝ Լեռնային Կիլիկիան, անվանել են «Բալադ ադ Դրուբ» (կիրճերի երկիր)։

Այն պետությունը, որ տիրում էր այդ հովիտներին, կարող էր հեշտությամբ արշավել թշնամու հողերի վրա և միևնույն ժամանակ արգելել թշնամու արշավանքը դեպի իր երկիրը։ Մինչև Վասիլ Մակեդոնացու իշխանության գլուխ անցնելը (867) արաբներն էին փաստորեն տիրում այդ դիրքերին։ Դրա համար էլ նրանք կարողանում էին անակնկալ կերպով ներխուժել կայսրության սահմանները։

Երկու կողմից էլ սահմանագլխի պաշտպանությունը լավ էր կազմակերպված։ Արաբների կողմից բերդերի մի երկար գիծ՝ «սուղուր» կամ «թուղուր» կոչված՝ սկսվում էր Մալաթիայից, Վերին Եփրատի վրա, և հասնում մինչև Միջերկրականի ափը։

Բերդերի այդ շարքը բաժանված էր երկու խմբերի. այն խումբը, որ պաշտպանում էր Միջագետքը հյուսիսից, կոչվում էր «Սուղուր ալ-Ջազիրա», իսկ այն խումբը, որը պաշտպանում էր Ասորիքը, կոչվում էր «Սուղուր աշ-Շամ»։

Առաջին խմբի բերդաքաղաքներն էին Մալաթիան, Զիբատրան, Հիսն Մանսուրը, Բեհեսնին, Ալ-Հադաթը, Մարաշը, Ալ-Հարունիան, Քանիսա Սավդան և Անարզաբան. երկրորդ խմբի բերդաքաղաքներն էին Ալեքսանդրետի ծոցից դեպի հյուսիս ընկած Միսիսը, Ադանան և Տարսոնը։ Այս վերջինը ամենանշանավորն էր ամբողջ սահմանի վրա, որովհետև իշխում էր Տավրոսի հարավային անցքին, որը շատ հին դարերից ծանոթ է Կիլիկյան դռներ անվամբ (Pylae Ciliciae)։

Բերդերի այդ ամբողջ շարքը վերակառուցվեց Հարուն խալիֆի ժամանակ (756—805), նրա իշխանության առաջին տարիներին։

Բացի բերդերից և ամրոցներից, սահմանային գավառներում կային զորակայաններ՝ «Պուսթաթ» կոչված, Զորակայանները ստեղծվեցին Օմայանների ժամանակ և շարունակեցին մնալ Աբբասյանների օրոք։

Այս բերդերի շարքերի հետ ընկած էին սահմանային նահանգները՝ «Ավասիմ» (պաշտպանություն) կոչված, որոնց հրամանատարներին էին ենթարկվում բերդերի պաշտպանությանը հատկացված զորագնդերը։ Ասորիքի հրամանատարության կենտրոնն էր Տարսոնը, որի մեջ, ըստ Իբն Խորդադբեհի մտնում էին Անարզաբան, Ալ-Հարունիան, Քանիսա Սավդա և Տել Ջուբայրը։ Միջագետքի հրամանատարության կենտրոնն էր Մալաթիան, որի մեջ մտնում էին Մարաշը, Քեսունը, Շիմշաթը, Զիբատրան, Ալհադաթը, Հիսն Մանսուրը, Դլուկը, Ռաբանը, Կամախը։ Դրանց թիկունքում էր Դիարբեքիրի հրամանատարության շրջանը, որի մեջ մտնում էին Սամոսաթը, Հանին, Խառանը, Ամիդը։

Սահմանային նահանգների եկամուտները մեծ գումար չէին ներկայացնում. մեր հիշած բոլոր քաղաքների և նրանց շրջակա գավառների եկամուտը IX դարում, ըստ արաբական պաշտոնական աղբյուրների (տե՛ս Կոդամայի հարկերի ցուցակը, հավելված Իբն Խորդադբեհի «Մասալիք» գրքի, էջ 253, Լեյդեն, 1889), մոտ 100 հազար դինար էր, իսկ ծախսերը (ռազմագիտական շինությունների, պահակազորքի պարենի և այլն) ավելի մեծ էին։ Ինչ վերաբերում է ամառային և ձմեռային արշավանքների ծախսերին, տարեկան երկու հարյուրից երեք հարյուր հազար դինար էր հաշվվում, ուրեմն հասույթների կրկնապատիկը և ավելին։ Անշուշտ այդքան մեծ ծախսեր կարող էր անել մի պետություն, ինչպիսին էր խալիֆայությունը, որի եկամուտները 820 թվականին հասնում էին 400 միլիոն ոսկի ռուբլու։

Տավրոսյան լեռնաշղթան շատ լեռնանցքներով էր ճեղքված, բայց արշավանքների ժամանակ առավելապես գործածվում էին երկուսը։ Առաջինը՝ դեպի հյուսիս-արևելք՝ «Դարբ ալ-Հադաթն» էր, որը սկսվելով Մարաշից, տանում էր դեպի հյուսիս՝ Արկասա։ Այդ անցքը պաշտպանված էր Հադաթի խոշոր բերդով։ Երկրորդը, որը ավելի հաճախ էր գործածվում, ««Կիլիկյան դուռ» կոչվածն էր («Դուռն Կիլիկիոյ» կամ «Կյուլեկ բողազ» Pvlae Ciliciae Տուղլակ, լատինները՝ (Gogulat), որը ձգվում էր Տարսոնից մինչև Տիանա։ Այդ լեռնաճանապարհի սկզբի մասը, որը վերաբերում է Կիլիկիային, այսպես է ներկայացնում Իբն Խորդադբեհը։ «Տարսոնից վեց մղոն է մինչև Ալ-Ուլայկ, այնտեղից 12 մղոն է դեպի Ար-Ռահվա, նույնքան էլ դեպի Ալ-Ջավզաղ, հետո յոթ մղոն դեպի Յարտակուը և յոթ մղոն ևս դեպի Բոդանդա։ Սրա մոտ է Ռակահ կոչված աղբյուրը, որի մոտ մահացավ Ալ-Մամուն խալիֆը[1]։ Սրանից տասը մղոն է մինչև անցքի հյուսիսային ծայրը, որտեղ գտնվում է հռչակավոր Լուլվա բերդը, ջերմուկների մոտ։ Քիչ այն կողմ է նշանավոր Աս-Սաֆսաֆ բերդը և Հիսն աս Սակալիբան[2]։ Սա լեռնանցքի մյուս ծայրն է, որտեղից ճանապարհը տանում է Դիանա քաղաքը, որն ամուր դիրքում է»։

Սահմանային գավառներում արաբները հաստատել էին բազմաթիվ մուսուլմանական և ոչ-մուսուլմանական գաղութներ, որոնք զինվորական ծառայության փոխարեն մի փոքր հողամաս և ռոճիկ էին ստանում։ Այդ գաղթականներից էին, օրինակ՝ Անարզաբայում հաստատված Ձաթերը։ Սլավոնների բերդում էլ Մրվան II, ըստ Բելաձորու, բնակեցրեց սլավոններ։

Արաբների այս կազմակերպության դեմ կատարելագործված սահմանային պաշտպանություն ունեին նաև հույները։

---

[1] 833 թվականին։

[2] Սլավների բերդ։

126. **Ջարալջուր:**— Ծապաղջուր: Բերդ, որը Ասողիկը դնում է Չորրորդ Հայքում (էջ 36)։ Թովմա Մեծոփեցին հիշատակում է գավառ անվամբ «Ի սակաւ աւուրս եհաս ի վերայ նորա ի գաւառն Ծապաղջրոյ» (էջ 21)։

«Յարեւելից կայ ընդմէջ Կեղւոյ և վիճակաց Մշոյ և Դիարպեքրայ և դայց անուն Թուխ բերել վասն ջուրց իջելոց ի Պինկեօլ լերանց ճապաղելոց ի նմա մինչև խառնել ի Մուրատ սու» (Ալիշան, Տեղագիր Հայոց մեծաց, էջ 42)։

127—128։ Այս երկու վայրերը մնում են չստուգված։

129. **Ջուրզան:** Արաբները այս անունով էին կոչում Վրաստանը:

130. **Ջազնակ,** Ջաղնա: կամ Գանջա։ Գանձակ՝ Արշակաշեն գավառում։ Աղվանքի մեջ Արցախի գլխավոր քաղաքը։

Բառի ստուգաբանությունը «գանձ» կամ պարսկերեն՝ «գանջ», միևնույն իմաստն ունի, իսկ արաբական հնչումով դարձել է Ջազնակ։

Ըստ Կաղանկատվացու, կառուցել են արաբները, 845 թվականին, իսկ ըստ Ղևոնդի՝ 853—854 թվականներին։

Արաբացի աշխարհագիրներից Իբն Խորդադբեհը և Յակուբը այս քաղաքը չեն հիշատակում։ Իսթախրին հիշում է որպես փոքր քաղաք։ Պարտավի անկումից հետո Գանձակը դարձավ Աղվանքի մայրաքաղաք։ 951—952 թվականներին այնտեղ իշխեցին Շեդդադյանները։ «1088 թ. Պուղան ամիրայն զորապետ հռչակաւոր Մելիքշահի էառ զԳանձակ ի ձեռաց Փադլեանց Շադադիկք կոչեցելոց, որ էր ցեղ ին: և տէրութիւն այլազգեաց, սաստկապէս մարտուցեալ և ի վայր ընկեցեալ զբուրգն նորա, յորոց ի զօրս կային և յազգէս Հայոց» (Ինճիճեան, Ստորագրութիւն էջ 311)։

Մելիքշահը իր որդի Մուհամմադին քաղաքը տվեց իբր ավատ։ 1139 թվականին քաղաքը մեծ երկրաշարժից ավերվեց։ Ըստ Իմադադդին պատմիչի՝ երեք հարյուր հազար, իսկ ըստ Իբն ալ-Աթիրի՝ 130 հազար մարդ մեռան։

Կիրակոս Գանձակեցին երկու տեղ հիշատակում է այս սարսափելի երկրաշարժը. «Ի ՇՁԸ թուականին եղև շարժ սաստիկ և կործանեցաւ քաղաքն Գանձակ և տապալեցան շինուածք, որի նմա, ի վերայ բնակչաց իւրոց» (էջ 108)։ Նաև «Ընդ աւուրսն ընդ այնոսիկ եղև յանկարծակի մէգ և մառախուղ և լցաւ առհասարակ լեառն և դաշտ և եղև շարժ ահագին և կործանեցաւ մայրաքաղաքն Գանձակ», և մահացան շատերը՝ «Բազմութեամբ արանց և կանանց և մանկտոյ, որոց ոչ գոյ թիւ, զոր սպանին շինուածքն անկեալ ի վերայ» (Նույն, էջ 189)։

1140 թվականին «եկն թագաւորն վրաց Դեմետրէ՝ հայրն Դաւթի և Գէորգայ և տարաւ զդրունս քաղաքին յաշխարհն իւր» (Գանձակեցի, էջ 108)։

Գանձակի վրա իշխեցին Կարա Սոնղուրը (մահացած 1141 թ.) և իր որդին՝ Ջավլին։ Առաջինը վերակառուցեց ու գեղեցկացրեց քաղաքը։ XIII դարում այն համարվում էր Արևմտյան Ասիայի ամենագեղեցիկ քաղաքներից մեկը։ Իբն ալ-Աթիրն ասում է. «Առանի քաղաքների մայրը»։ Հետո քաղաքն ընկավ Բահլավանի դինաստիայի ձեռքը։ 1225 թվականի վերջին Բահլավանյան Ուզբեկը փախուստ տվեց Ջալալեդդինից, և քաղաքը գրավեց խորեզմ շահը։ Մոնղոլները գրավեցին ու այրեցին այն 1235 թվականին (Գանձակեցի, էջ 221 և հաջորդ)։

Հետագայում Գենջե, Ելիզավետպոլ, այժմ՝ Կիրովաբադ։

131. **Ջազիրա իբն Օմար:** Տիգրիսի ափի վրա։ Այսպես է կոչված՝ Տաղլեբյան ցեղախմբին պատկանող ալ-Հասան իբն Օմարի անունով։ Իբն Հավկալը (X դարում) նկարագրում է այն որպես պարսպապատ քաղաք, որտեղ Հայաստանից արտադրանքներ էին բերվում և վաճառվում։

132. Ջիսր ալ-Վալիդ։ Ադանայի կամուրջը՝ Սայհանի վրա։

133. Վալիդ իբն Եզիդ խալիֆը, Օմայան դինաստիայից 743 թվականին հաջորդեց իր հորեղբայր Հիշամին։

Նրա ժամանակ հակադինաստիական շարժումները մեծ թափ ստացան, իրեն դեմ ելան նահանգների կառավարիչները, մինչև անգամ իր ընտանիքի անդամները։ Սպանվեց 744 թվականին։

134. Ակնարկված վայրը մնում է ստուգելի։ Սայֆադդաուլան իր գործունեության ընթացքում մի շարք հաջողություններ ունեցավ բյուզանդական բանակների դեմ։ Հիջրի 342 թվականին (953—954) Վարդ Փոկասը մեծ բանակ էր բերել սլավոններից և խազարներից բաղկացած։ Սայֆադդաուլան հաղթեց նրան Մարաշի առաջ։ Հաջորդ տարին Փոկասի դեմ նոր հաղթանակ տարավ Հադաթի ղղյակի մոտ և այդ առթիվ բերդը վերակառուցեց։ Յակուտը ակնարկում է այս հաղթանակները։

135. Ջաբալ Ջուդի։ Կորդվաց լեռներ, Միջագետքում, Ջազիրաթ իբն Օմարից մոտ 50 կիլոմետր դեպի հյուսիս արևելք, որի վրա, ըստ հին ավանդության, իջել է Նոյի տապանը։

Ո՛չ Աստվածաշնչում և ո՛չ էլ հայկական հին ավանդություններում չկա թե Նոյի տապանը Մասիսի կամ Արարատ լեռան վրա իջած լինի։ Փավստոսը Մծբնա Հակոբ եպիսկոպոսի մասին խոսելիս, ասում է, թե նա գնաց փնտրելու Նոյի տապանը «Ի լերինս Հայոց, ի լեառնն Սարարատայ ի սահմանս Այրարատեան տէրութեան, ի գաւառն Կորդուաց» (Դպրութիւն Գ, գլ. Ժ)։

Թովմա Արծրունին նույնպես. «Ի\ծփական ջուրցն բերեալ տապանն յարեւելեան ի միջոց աշխարհի՝ հանգեաւ ի լերինս Կորդուաց և նահապետն ողջակէզս գոհութեան Աստուծոյ մատուցանէր» (էջ 45)։

Շփոթություն ստեղծվեց ավելի ուշ։ Տրված լինելով, որ այս երկրամասում ամենաբարձր լեռը Մասիսն է, իսկ Վանա հարավակողմը տարածվող Ուրարտու երկրի անունը Հայաստանի լեռան և շուրջը տարածվող նահանգին փոխանցվելով Այրարատ կոչվեց այդ Նահանգը, ինչպես նաև ծննդոց գրքի VIII—4-ի անճիշտ մեկնաբանությունը զուգադիպեցին Ջաբալջուդին նույնացնելու Արարատ լեռան հետ» (Encycl. of Islam).

137. Ջայհան։ Հների Պիրամոսն է, Կիլիկյան դաշտի երկու գետերից արևելակողմյանը։ Բխում է Ալբիստանից, իսկ նրա գետաբերանը դարերի ընթացքում տեղափոխված է և գտնվում է Այաս քաղաքի մոտ։

Գետերի անվանահնչումների նմանության հետևանքով Կենտրոնական Ասիայի Jaxartes և Oxus (Ամուդարիա) գետերի նման Ջայհուն կամ Ջիհան կոչվեց սխալմամբ, իսկ նույն Կիլիկիայի Սայհանն էլ (Սարոս) Սայհուն կամ Սիհուն կոչվեց։

Ջայհան գետը երկար ժամանակ մուսուլմանական աշխարհի սահմանային գետը եղավ։ Մամլուքյան շրջանում, Նասր Սուլթանի հաղթանակներից հետո, այդ Նահանգը՝ Այաս գլխավոր քաղաքով, Ցոտուհաթ ալ Ջայհանիա (Ջայհանյան նվաճումներ) կոչվեց։

138. Արարատ։ Բառի մեկնաբանության մի վարիանտ է «Ջաբալ ալ Հարիթ», որի իմաստն է մշակի, երկրագործի լեռ։ Յակուտի մեկնաբանությունը թելադրված է նախիսլամական դարում ապրող Հարիթ անունը կրող մի արաբացու անունից, որը իբր այնտեղ բնակություն է հաստատել։

Իսթախրին ասում է, թե զույգ Արարատները ծածկված են մշտական ձյունով և այնքան բարձր են ու սրածայր, որ չի կարելի նրանց վրա բարձրանալ (Le Strange, էջ 183)։

*Արարատի լանջերը այժմ անբնակ են, մինչդեռ ըստ դանազան վկայությունների այդպես չի եղել միջին դարերում։ Իսթախրին մասնավորապես հիշատակում է, թե Արարատը հարուստ է եղել անտառներով և երեներով։ Մուկադդասին ավելացնում է, որ Արարատի շուրջը կային հազարից ավելի գյուղեր։*

*Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրության գրքում գրում է. «Ջաբալ ալ-Հարաթը գտնվում է Արդաբիլ քաղաքի մոտ (?), Ադրբեջանում. այնքան բարձր է, որ չի կարելի բարձրանալ նրա գագաթը։ Կանոնի մեջ կարդում ենք թե Հարաթի գագաթը շատ դժվարամատչելի է, այնտեղ մշտական ձյուն է նստած։ Նրանից ցած կա մի ուրիշ սար, որ կոչվում է Ալ-Հուայրաթ կամ Փոքր Հարաթ։ Այդ փոքր սարն է, որ շրջապատի բնակիչներին ջուր է հայթայթում, ինչպես և փայտ ու որսի երե։ Ասում են, թե այդ ամբողջ երկրամասում Հարաթից ավելի բարձր սար չկա» (Աբուլֆիդա, աշխարհ., II, էջ 95)։*

*139.* Պլինիաս Իմաստունը կամ Բալինաս։ *Ավանդությունը սրան ներկայացնում է որպես Հուռութքի (թալիսման) հայրը։ Ըստ նույն ավանդության, նա շատ քաղաքներում թողեց հմայեկներ պաշտպանելու համար նրանց փոթորիկներից, օձերի և կարիճների խայթոցից և այլ չարիքներից. Հավանաբար այս ավանդությունը հյուսվել է հռչակավոր բնագետ Պլինիուսի մահվան շուրջը։*

*140.* Հանի ճայնի կամ Հեանի։ *Չորրորդ Հայքում, Ամիդից դեպի հյուսիս՝ լեռների մեջ։ Նշանավոր են նրա երկաթի հանքերը, որոնք արտածվում են։ Միխայիլ Ասորու գրքի մեջ կոչվում է նաև «Խանի» (էջ 428)։ Արդյո՞ք երկաթահանք բլուրն է (Ինճիճյան, Հնախ. էջ 63)։*

*141.* Ալ-Հադաթ, *կամ Ալ-Հադաթ Ալ-Համրա (Կարմիր Հադաթ)։ Սահմանային բերդաքաղաք է, հույներից կոչված* Ἀδατα *Նույնն է հավանաբար «Կարմիր լեռ»-ի հետ, այժմ Ինեքլիի մոտ (Ալիշան, Սիսուան, էջ 52, ծանոթ. 3)։*

*Արաբները գրավեցին այն Իյադ իբն Ղանմի ձեռքով, իսկ 779 թվականին բյուզանդացիք հետ վերցրին ու ավերեցին։ Ալ-Մահդի խալիֆը վերաշինեց ու կոչեց Ալ-Մահդիա։ Հարունը ամրացրեց ու բնակչություն հաստատեց այնտեղ։*

*Բերդը կառուցված է Ուհայդաբ կոչված բլրի գագաթին և ռազմական տեսակետից կարևորագույն-դեր է խաղում տիրելով Հալեբից դեպի Ալբիստան տանող լեռնանցքին։ Բյուզանդիայի և արաբների միջև զինական բախումների ընթացքում բերդը երկու կողմից էլ շարունակ հարձակումների ենթարկվեց։ 948 թվականին Վարդ Փոկասը այրեց այն, և բնակիչները Սայիֆ ադ-Դաուլայից օգնություն աղերսեցին, որը և 954 թվականին քաղաքի մոտ հաղթանակ տանելով գրավեց այն ու վերաշինեց։ Որոշ ժամանակ անց բյուզանդացիք նորից գրավեցին բերդը, իսկ 1150 թվականին Իկոնիայի Մասուդ սուլթանը գրավեց ու պահեց մինչև որ Կոստանդնի ժամանակ հայերը գրավեցին այն։ 1278 թվականին Բիբարս սուլթանը բանակ ուղարկեց ու գրավեց այն, ջարդեց բնակիչներին ու հիմքից կործանեց քաղաքն ու բերդը։ Այդ պատճառով այդ վայրը կոչվեց «Գյոնյուք» (այրված)։ Այս անունով մինչև հիմա ճանաչվում է լիճն ու դաշտը, որի վրա անցյալում բարձրանում էր Հադաթի բերդը։*

*142.* Ալ Հարբիա։ *Վայրը կարոտ է ստուգման։*

**143.** Հարճակ։ *Այս վայրը ճշտել դժվար է, սակայն հավանական է, որ Արզնին լինի՝ իբրև հանքավայր, որը ծանոթ է հնագույն դարերից։ «Պաղին սու գետակը, այսու գետակաւ ձգի վիճակն Աղդանա, Արզնի կամ Արկնի, յորում քաղաքն համանուն կա ի հարաւոյ կամ յաջմէ գետոյն» (Ալիշան, Տեղագրութիւն Հայոց Մեծաց, էջ 43)։*

Քաղաքից մի քիչ հեռու Արղանայ կամ Քափուր մայեն պղնձահանքն է։

144. Հիսն Զիադ կամ Խարբերդ: Ամիանոսի հիշատակած riata Castellum-ը ամրացված քաղաք, որը, ըստ Իբն Խորդադբեհի, խալիֆայական արևմտյան սահմանաքաղաքներից էր, որոնց գիծը դուրս գալով Մալաթիայից գնում էր դեպի Թիֆլիս և անցնում Հիսն Զիադից, Շիմշաթից և Կարինից։

Միքայել Ասորին հիշատակում է, որ 1122 թվականին այնտեղ ապստամբեցին հայ վարձկանները, որոնք աշխատում էին քաղաքի դռան կողմը։ Օգտվելով ստեղծված շփոթությունից, նրանք ազատ արձակեցին Երուսաղեմի թագավորին, որն այնտեղ գերի էր պահվում։

«Բաղակի զինվորները գերի վարեցին թագավորին, որը եկել էր Հիսն Մանսուրին և Կառկառին տիրանալու։ Միքայել հայր հանձնել էր քաղաքը նրան՝ փոխարենը մի ուրիշ վայր ստանալով։ Թագավորը եկավ Հիսն Մանսուրից և Քեսունից վտարելու թուրքերին, բայց գերի ընկավ, և Բաղակը գրավեց Հիսն Մանսուրն ու Կառկառը» (Michel le Syrien, Chronique, XV, ch. VIII *VIII, էջ 211)*։

Ուռհայեցին գրում է. «Եւ տարան զԹագաւորն և զքուրորդին ի Խարբերդ և երկաթի կապանօք եդին ի բանտին ուր եդեալ կայր Ճօսլինն և Գալերանն» (էջ 443)։

Գուլյելմոս Տյուրացին (XII—XVIII) ավանդում է, որ հիսուն հայեր, որոնք Եդեսիայի կոմսի հպատակ էին, ձեռնարկեցին ազատելու թագավորին։ Աբուլ-Ֆարաջն ասում է, թե նրանք Խարբերդի բնակիչ հայ աշխատավորներ էին։ Դեպքը, ըստ Իբն ալ-Աթիրի, կատարվեց 1123 թվականի մայիսին։

Այս գործին մասնակից հայերը ամենաանգութ տանջանքներով ոչնչացվեցին (Foulcher de Chartres, Ch. LIII)։

Ըստ ուրիշ տեղեկության, հայերը աշխատում էին բերդում։ Տեսնելով, որ բերդը ամուր է, և պահապանները թվով քիչ են, հավաքվեցին քաղաքի դռան մոտ և սկսեցին աղմկել իրենց ռոճիկից դժգոհելով. այդ խառնակության միջոցին մոտիկ գտնվող զենքերին տիրանալով՝ սպանեցին պահապաններին ու ազատեցին թագավորին, Ջոսլին կոմսին և մյուս գերիներին։ Կռվի ընթացքում Բալակը սպանվեց։ Քաղաքացիք Օրդոքյան Սուլայման Իբն ալ-Գազիին ընտրեցին իրենց գլխավոր։ Թեև թագավորը կրկին ընկավ, սակայն հետագայում փրկանքով ազատություն ստացավ (Ուռհայեցի, էջ 444)։

145. Հիսն Թալիր: Վայրը հարկավոր է փնտրել Հիսն Բայնի մոտ։

146. Հիսն Զիրքիլա: Մսիսի մոտ՝ հույների «Աստղերի բերդ»-ը։

147. Հիսն Քայֆա: Բառական նշանակությամբ՝ ժայռի բերդ[2]։ Հին քաղաք է, հիշատակվում է հռոմայեցիների և պարսիկների միջև մղված սահմանային կռիվների ընթացքում Cepha անվամբ, և մեծ դեր է ունեցել որպես հրամանատարության բերդ։ Ուներ հզոր միջնաբերդ և կարևոր կենտրոնական դիրք էր գրավում ճանապարհների վրա։ Նրա մոտ Տիգրիսի վրա XII դարում կար մի գեղեցիկ կամուրջ։

Երբ Աբբասյանների իշխանությունը թուլացավ, և փաստական իշխանությունը տեղական ժառանգական դինաստիաներին անցավ, իսկ սրանք էլ անվերջ կռիվներ ունեցան իրար մեջ, Հիսն Քայֆը փոխն ի փոխ անցավ Համդանյանների,

---

1 Գուլյելմոս Տյուրացին կոչում է Quatre-Pierre

2 Ասուրնասիրպալի արձանագրությունում՝ Kipani, հույների Կեփենիա, Պլինիոս՝ Cephenia։

Մրվանյանների և Օրդուքյանների՝ պայքարող գլխավոր անների իշխանության տակ։ Վերջինները այն իրենց մայրաքաղաքը դարձրին (1101), և քաղաքը ծաղկեց 130 տարի շարունակ։ Դա մի իշխանություն էր, որը անվանապես միայն վասալ էր սելջուկյաններին, նրա տիրույթները տարածվում էին Միջագետքում և Հայաստանում, գլխավորապես Դիարբեքիրում, Մարտինում, Մուֆարղինում, Խարբերդում և Մծբինում։

1232 թվականին Այուբյանները վերջ դրին Օրդուքյանների տիրապետությանը Հիսն Քայֆում։

Ուռհայեցու մոտ քաղաքը հիշատակված է «Հասնքև» ձևով (էջ 367), Միք. Ասորու թարգմ. «Հարսնքէփ» (էջ 448)։ Այժմ կոչվում է «Հասան Քեյֆ»։

148. Հիսն Մանսուր։ Նշանակում է «Մանսուրի բերդ»։ Բերդաքաղաք Եփրատի մոտ, լեռների մեջ, Մալաթիայից հարավ և Սամոսատից ու Բեհեսնիից դեպի արևմուտք։ Հիշատակվում է նաև «Հասան Մանսուր» կամ «Հասան Մսուր», իսկ Միքայել Ասորու մոտ «Հարսն Մսուր» ձևով։ Հիմնված է Մանսուր իբն Ջաունա ալ-Ամիրի ձեռքով, որը սահմանագլխի հրամանատար էր Օմայան վերջին խալիֆ Մրվան II օրոք (775—785)։ Խաչակրաց արշավանքների ժամանակ բերդը գրավվեց ֆրանկների ձեռքով, 1112 թվականին Գող Վասիլը կարճ ժամանակով գրավեց նրանցից։

Հռոմայեցիների Parrhe քաղաքն է, որ ներկայումս կոչվում է Ադիաման. նրան շատ մոտ է գտնվում Օշին բերդը, որ հաճախ է հիշատակվում մեր պատմիչների մոտ։

149. Մրվան իբն Մուհամմադ։ Օմայանների կրտսեր ճյուղին է պատկանում։ 732 թվականին Հիշամը նրան Հայաստանի և Ադրբեջանի կառավարիչ նշանակեց։ Նա էր, որ 120 հազար զորքով ուժգին հարձակում գործեց Դարբանդից այն կողմ և խազարների թագավորին ստիպեց իսլամական կրոն ընդունել։ Վրացական ժամանակագրությունը Մրվանին կոչում է Մուրվան Կրու։ Մրվանը Աշոտ Բագրատունուն կարգեց Հայաստանի իշխան և նրա օժանդակությամբ ու 15 հազար զորքի մասնակցությամբ խալիֆայական գահի համար կռիվներ մղեց։

Հիշամ խալիֆի մահից (743) հետո ծագած գահակալական կռիվների ժամանակ եկավ Միջագետք, և շուտով՝ 744 թվականի դեկտեմբերին, Քեննասրինի կայսիկների և Հոմսի ցեղախմբերի օժանդակությամբ՝ հռչակվեց խալիֆ՝ Մրվան II անվամբ։ Նա աթոռը փոխադրեց Խառան։ Իրաքը չուզեց նրան ճանաչել և խալիֆ հռչակեց Սուլայման իբն Հիշամին։ Մրվանը արշավեց նրա վրա և հաղթեց։ Աբբասյանների ապստամբությունը շարունակվում էր. այս երկուսի միջև վերջնական բախում տեղի ունեցավ Զարի ճակատամարտում. Մրվանը հաղթվելով փախավ Եգիպտոս, որտեղ սպանվեց 750 թվականին։ Նա եղավ Օմայան դինաստիայի վերջին խալիֆը։

150. Ալ-Մանսուր։ Աբու Ջաֆար Աբդալլա իբն Մուհամմադ։ Աբբասյան դինաստիայի երկրորդ խալիֆը։ Երբ իր եղբայր Աբուլ-Աբբասը իշխանության տիրացավ, 750 թվականին նրան կարգեց Հայաստանի կառավարիչ։ Նրա ոստիկանությունը, ինչպես նաև խալիֆայության շրջանը շատ ծանր եղավ Հայաստանի համար։ Ղևոնդը (էջ 159) մանրամասնությամբ նկարագրում է նրա հարկային բռնությունները իբրև ոստիկան։ Իսկ հետո, երբ նա գահ բարձրացավ «առնույր զիշխանութիւն նորա եղբայր նորին միւս Աբդլա ամս քսան և երկու»։ Սա և սրա կարգած ոստիկանները՝ Եզիդ իբն Ուսայդ աս-Սուլամին, Բաքար իբն Մուսլիմ ալ-Օքայլին, Յա-

լայմանը և Հասան իբն Կահթաբան, անհանդուրժելի բռնություններ գործ դրին։ Այս վերջինի դեմ էր, որ հայերը ապստամբեցին և 774 թվականին պարտվեցին Բագրևանդում։

Նա իր եղբորը հաջորդեց 754 թվականին։ Նրա իշխանության առաջին տարիներում մեծ ապստամրություններ ծագեցին։ Նախ՝ իր հորեղբայրը՝ Աբու Աբդալլան, հետո Սմբատ և Ջահմար պարսիկները, Միջագետքում՝ խարիջիները, Ասորիքում՝ Մոհամմադ իբն Աբդալլահը, Իսպանիայում՝ օմայանները անջատողական շարժումներ ստեղծեցին։ Մեծ շարժումներ տեղի ունեցան նաև Խորասանում։ Բյուզանդիայի կողմից էլ արտաքին վտանգներ ստեղծվեցին։ Նա կարողացավ ի վերջո ամրացնել իշխանությունը։ Կառուցեց Բաղդադը և այնտեղ փոխադրեց մայրաքաղաքը։ Մեռավ 775 թվականին։

151. Աբուլ-Աբբաս աս-Սաֆահ։ Եղավ Աբբասյան դինաստիայի առաջին խալիֆը. իր իսկական անունն էր Աբդալլա, բայց զանազանվելու համար իր մյուս եղբորից, Ալ Մանսուրից, որը նույնպես կոչվում էր Աբդալլա, նա կոչվեց Աբուլ Աբբաս։ Ղևոնդը գրում է. «Եւ տիրէ ընդ նորա Աբդլա և առաքէ զեղբայր իւր զմիւս Աբդլա շրջել ընդ ամենայն աշխարհս իւրոյ իշխանութեանն» (էջ 158)։ Նա ծագումով Մուհամմադի հորեղբոր թոռներից էր և այդ ազգակցական կապի վրա էր հենում իր խալիֆայական հավակնությունը։ 747 թվականին Աբբասյանների դրոշը պարզվեց Խորասանում։ 749 թվականին օմայանները պարտվեցին, և Աբուլ-Աբբասը խալիֆ հռչակվեց Քուֆայում։ Նա այդ քաղաքի մզկիթի մեջ արտասանած ջահակալական ճառի մեջ ինքն իրեն հռչակեց Աս-Սաֆահ (անգութ, արյունարբու) և իրոք արդարացրեց իր այդ տիտղոսը։ Մեռավ 754 թվականի՝ հունիսին՝ մոտ 30 տարեկան հասակում։

152—153. Վայրերը ստուգման կարիք ունեն։

154. Հայտան։ Հիզան կամ Խիզան։ Շրջան է Բիթլիս գավառակի հարավակողմում և քաղաք, որ սարի վրա ունի բերդ։

155. Խաբուր։ (Ըստ ոմանց Քովրար). գետ՝ Կորդուաց՝ հարավակողմում։ Թափվում է Տիգրիսի մեջ՝ Հայաստանի սահմանի վրա (Ալիշան, Տեղագիր, էջ 16)։ Խաբուրը, որը կոչվում է նաև Փոքր Խաբուր, բխում է Վանա լճի հարավային և Ուրմիո լճի արևմտյան կողմի լեռներից և խառնվում է Տիգրիսին Մաղարայի և Մեզրեի միջև։ Արաբ աշխարհագիրները կոչում են նաև Խաբուր ալ-Հասանիե, նույնանուն բաղաքի անունից, որտեղ մի քարակերտ սքանչելի կամուրջ կա։

Ուրիշ է Մեծ Խաբուրը, Վերին Միջագետքում, որը թափվում է Եփրատի մեջ Քարքիսիեի Circesium-ի մոտ, որը այժմ Դեյր Զորն է։

156. Պետք է, որ լինի Կատավոնիան։

157. Խարբերդ։ Ժողովրդական ստուգաբանությամբ Քար Բերդ։ Միք. Ասորու թարգմանությամբ՝ Խարթ-Բերդ, Էվլիա Չելեբու մոտ՝ Խար Բուդ (էշի կուռք)։ Արաբները կոչում են նաև Հիսն Զիադ, բայց ավելի ճիշտ այդ անունը միայն բերդին է հատուկ, իսկ քաղաքը կոչվում է Խարբերդ։ Հուստինիանոսի բաժանման մեջ ընկնում էր Չորրորդ Հայքում։

Գտնվելով բյուզանդական և արաբական կայսրությունների սահմանի վրա, հաճախ ձեռքից ձեռք է անցել։

---

1 1133 թվականին Խարբերդի տերն էր Օրդոկի որդի Դավութ ամիրան, որին հաջորդեց իր որդին՝ Կարա-Արսլանը (Միք. Ասորի, էջ 418)։ Նուրադդինը հովանավորում էր նրան։

XII դարում քաղաքը գտնվում էր Օրդոկյանների ձեռքում: Այդ դարի սկզբում Օրդոկյան Բաղակն էր տերը: Նրա մահից հետո հիսն Քայֆի Օրդոկյաններն իշխեցին: Այդ ճյուղից Կարա Արսլանի մահից հետո (1185—1186) Բալուի տեր էմադեդդին Աբու Բաքրը տիրեց ամրոցին և հիմնեց Օրդոկյանների զուգահեռ մի ճյուղ, որոնք Այուբյանների գերիշխանության տակ կառավարեցին, իսկ հետո ենթարկվեցին Ռումի սելջուկներին: 1228 թվականին կարճ ժամանակով գրավեց Ջալալեդդինը, իսկ 1230 թվականին գրավեցին մոնղոլները, Ամիդը գրավելուց հետո:

158. Ուսամա իբն Մունկիդ: Աբուլ-Մուզաֆֆար: Նա ստեղծեց արաբական գրականության մեջ նոր ժանր՝ ինքնակենսագրությունը: Ծնվել է Շայզարում, 1095 թվականի հունիսի 25-ին: Այդ քաղաքը իր ընտանիքի ֆեոդալական ժառանգական ստացվածքն էր: 1138 թվականին իր հորեղբայրը, քաղաքի տերը, նրան աքսորեց: Նա զանազան վայրեր ապավինելուց հետո գնաց Եգիպտոս: 1150—1153 թվականներին նրան հանդիպում ենք խաչակիրների դեմ կռվելիս Ասկալոնում: Մասնակցել է նաև ֆրանկների դեմ Նուրադդինի մղած կռիվներին:

Մահացավ Դամասկոսում 1188 թվականի նոյեմբերի 6-ին: Դրել է «Քիթաբ ալ Բադիե բանաստեղծությունները: Մեծ որսորդ լինելով ուսումնասիրել և իր գրությունների մեջ նկարագրել է վայրի կենդանիների բարքերը:

159. Խիրս: Իբն Վադիհ Յակուբին հիշատակում է, թե հիջրի 14 թվականին խազարներից հաղթվելով Եզիդ իբն Ուսայդը փախավ Խիրս: Խուրսան երկրի կենտրոնն է (հայկական աղբյուրների՝ Խսրվան), այժմ՝ Բեշ-Բարմաք գագաթի շրջակայքը, Կասպից ծովի ափին:

160. Խարշանա: Խեթական Horsana-ն, բյուզանդացիների դավառում Ալիս գետի եզերքին, χαστρον χαρσιανον.

Ուռհայեցին հիշատակում է. «Խարսինայքն մերձ ի յաշխարհն Մարաշ քաղաքին» (էջ 373): Ներկայումս «Մուսալիմ Կալա» (Honigmann, էջ 50):

161. Խուռամ: Արդաբիլի մարզում: Այդ վայրի անունից են կոչվել խուռամյանները:

162. Խազարները: Առաջին անգամ Մովսես Խորենացու մոտ խազարները հիշատակվում են մեր թվականությունից առաջ երկրորդ դարի դեպքերի կապակցությամբ, Վաղարշ թագավորի մասին նա գրում է. «Ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն ի հիւսիսականացն, զխազրաց ասեմ և զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ հլանել, առաջնորդ և թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ոմն Սուրհապ» (Խորենացի, գիրք Բ Կե): Սրանց դեմ է գնում Վաղարշը, անցնում Ճորա կապանը, բայց կռվում սպանվում:

Խորենացուն վերագրված աշխարհագրության մեջ ասված է. «Եւ թագաւորն հիւսիսոյ է Խաքանն՝ որ է տէր Խազրաց և դշխոյն Թագուհին կին Խաքանայ ի Բասլաց ազգէն»: Ժողովուրդը ուրեմն վաղուց ծանոթ է եղել հայերին՝ խազիրք անվամբ:

Պարսիկների տիրապետության ժամանակ Կավատի (488—531) թագավորության տարիներին նրանք գրավեցին Աղվանքը, Սիսականը և Վասպուրականը: Հետո Խոսրով Անուշիրվանը (531—579) նրանց ետ մղեց: Բյուզանդացիները նրանց հետ սերտ հարաբերություններ էին մշակում և նրանց հաճախ մղում էին պարսիկների և արաբների դեմ: Դրա հետևանքով Հայաստանը հաճախ տուժում էր նրանց ասպատակություններից:

Նրանք Հայաստան արշավեցին 682—684 թվականներին. այդ արշավանքի ժամանակ սպանվեց Գրիգոր Մամիկոնյանը, իսկ Աշոտ Բագրատունին 688 թվականին նրանց դեմ մղեց:

693 թվականին նրանք կրկին արշավեցին բյուզանդացիների գործակցությամբ և հաղթեցին Մուհամմադ իբն Մրվան ոստիկանին, բայց հետո ետ մղվեցին Մասլամա զորավարից:

730 թվականին նոր հարձակում գործեցին և սպանեցին Ջարրահ ոստիկանին, իսկ 731 թվականին արաբները նրանց փող վճարելով ետ դարձրին և ամրացրին Դարբանդի անցքը (733):

Արշավանքները կրկնվեցին 758—760 և 761—763 թվականներին: Թիֆլիսը գրավեցին 769 թվականին, ավերեցին Աղվանքը, Վրաստանը, Հայաստանի հյուսիսը: 782 թվականին Տաճատ Անձևացին նրանց դեմ կռվելիս սպանվեց:

Խազարների դեմ մղված կռիվներում հայերը օժանդակում էին արաբական զնդերին:

IX և հաջորդ դարերում նրանք թուլանում են և դադարում դեպի հարավ արշավելուց:

Խազարները ունեցել են երեք գլխավոր քաղաքներ. Բալանջարը, որը Ջարրահը ավերեց 723 թվականին, Սամանդարը՝ Ալանների երկրից ոչ հեռու (այժմ Թարխու) և Իթիլը (Աստրախան)—իրենց մայրաքաղաքը:

Բոլոր կրոններն էլ արտոնված էին նրանց մոտ, և հակառակ բյուզանդացիների ու արաբների ստիպումներին՝ խաքանը հետևում էր հրեական կրոնին, որը խազարների ազնվական դասակարգի կրոնն էր: VIII դարի վերջերին, Հարունի խալիֆայության ժամանակ էր, որ նրանք վերջնականապես ընդունեցին իսլամը:

Հակառակ Յակուտի պնդման, թե միայն կռապաշտներն էին ստրուկներ գնում և օգտագործում, տարակույս չկա, որ մուսուլմաններն էլ, ինչպես և քրիստոնյաները լայնորեն զբաղվել են գերեվաճառությամբ: Ըստ արաբացի պատմիչների վկայության, Դարբանդը եղել է գերեվաճառության մեծ շուկա:

163. Մուկտադիր Բիլլահ խալիֆը գահ բարձրացավ հիջրի 295 թվականին (907—908), երբ 13 տարեկան էր: Օգտվելով նրա անչափահասությունից, փաստական իշխանությունը իրենց ձեռքը վերցրին պալատի ներքինիները: Նրա ժամանակ բյուզանդացիները արշավանքներ սկսեցին, և Ասորիքում ծագեցին ներքին խռովություններ: Հիջրի 317 թվականին (929—930) Մունիս ներքինին մի խմբի գլուխ անցած նրան գահազուրկ արեց և գահ բարձրացրեց նրա եղբորը՝ Ալ-Կահիր Բիլլահին, Բայց որովհետև այս վերջինը մերժեց իր գահակալության առթիվ բանակին նվերներ բաշխել, երեք օր հետո իրեն էլ գահազրկեցին և բանտից հանելով կրկին գահ բարձրացրին Մուկտադիրին: Օգտվելով այդ ներքին խռովություններից, Մուսուլի կառավարիչ Նասիր ադ-Դաուլան ինքն իրեն անկախ հռչակեց և հիմնեց Համդանյան դինաստիան: Մունիսը մյուս կողմից բանակ կազմելով առաջացավ Բաղդադի վրա. կռվի մեջ Մուկտադիր խալիֆը սպանվեց հիջրի 320 թվականին (933),

Այս խալիֆի ժամանակ Եգիպտոսում հիմնվեց ֆաթիմյան մրցակից խալիֆայությունը:

164. Աջուջ-Մաջուջ: Խոսքը երկու բարբարոս ցեղախմբերի մասին է, որոնք, ըստ մուսուլմանական ավանդության, սերված են Նոյի երրորդ որդուց՝ Հաբեթից: Ըստ ոմանց, նրանք հսկաներ են, ըստ ուրիշների՝ անծանոթ ռասաներ, որոնք բնակվում են աշխարհի ծայրում: Նույնն են, ինչ Եզեկիելի գրքի և Հովհաննու հայտնության Գոգ և Մագոգը:

165. Ալ-Խաշարիա։ Վայրը կարոտ է ստուգման։

166. Խլաթ։ Արաբները կոչում են Ախլաթ կամ Խիլաթ։ Վանա ծովի հյուսիսարևմտյան ափի վրա քաղաք, Տուրուբերանի նահանգում և Բզնունյաց գավառում։ «Էր քաղաք բազմամարդ և ունէր պարիսպս մեծակառոյցս զորմէ բազում ինչ պատմեն առ պատմագիրս մեր. ունէր և ամրոց որ յէշատակի առ Թովմայի Արծրունւոյ» (Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 121)։ Խորենացին հիշատակում է Հռիփսիմեանց պատմության մեջ. «ի Բզնունեաց գաւառ... ի քաղաքն Խլաթ»։

Գավառը պատկանում էր Ռշտունիներին, հետո անցավ Մամիկոնյաններին, գրավվեց Իյադ իբն Ղանմի կողմից հիջրի 20 թվականին, որը հաշտություն կնքեց իշխանի հետ։ VIII դարում տիրեցին Բագրատունիները։ Դեռ 774 թվականին Բագրևանդի կռվից առաջ նրանց էր պատկանում Խլաթը, Բուղայի արշավանքներից հետո Խլաթը անցավ մուսուլմաններին, և այնտեղ հաստատվեցին Ջահաբյան ամիրաները։ 880 թվականից հետո Աշոտ Բագրատունին Խլաթը տվեց Մանազկերտի էմիր Աբլբարին որպես ավատ, նրան իրեն ենթարկելով իբրև վասալ։ 923 թվականին հույները գրավեցին և պահեցին մի ժամանակ։ Հետո անցավ սելջուկյանների ձեռքը, որոնք հանձնեցին այն Դիարբեքիրի մրվանյան իշխաններին։

Նասիրի Խոսրովը Խլաթի մասին գրում է. «Ջումադալ-Ավալ ամսի 18-ին (22 նոյեմբերի 1046) հասա Ախլաթ։ Այդ քաղաքը գտնվում էր իսլամական երկրների և Հայաստանի սահմանի վրա, Բերկրիից 19 փարսախ հեռու։ Քաղաքը կառավարում էր մի էմիր Նասիր ադ-Դավլա կոչված (Մրվան իբն Ռուշտիք, քրդական դինաստիայի հիմնադրի որդին— Հ. Ն.)։ Խլաթում խոսում էին երեք լեզվով՝ արաբերեն, պարսկերեն և հայերեն։ Ենթադրում եմ, որ այդ քաղաքը իր անվամբ պարտական է այդ առանձնահատկության (արաբերեն լեզվով Ախլաթ նշանակում է խառնուրդ, զանազան ցեղերի մարդկանց համախմբում— Հ. Ն.)։ Այստեղ առևտրական հարաբերությունները լինում են պղնձե դրամով։ Ռաթլը այստեղ կշռում է մոտավորապես 300 դիրհեմ» (Սեֆերնամե, էջ 21—22)։ 1100 թվականին բնակիչները ըմբոստացան մրվանյանների դեմ և հպատակություն հայտնեցին Սուկման Քութբուին, որը սելջուկյան իշխան Քոթբեդդին Իսմայիլի ծառան էր եղել և այդ ժամանակ իշխում էր Մարանդում։ Նա Շահ Արմեն տիտղոսն առավ, և իր ժառանգորդները շարունակեցին այդ իշխանությունը։ 1182—1183 թվականներին նրա թոռը՝ Սուկման II-ը մեռավ առանց ժառանգորդի. իր ծառաներից մեկը, Բեկթիմուր կոչված, որ Մուֆարղինի կառավարիչն էր, տիրացավ իշխանությանը և պահեց այն մինչև 1193 թվականը։ Այդ թվականին իր փեսան՝ Հազար Դինարին խողխողեց նրան և կառավարեց մինչև 1197 թվականը, իրեն հաջորդեց Բեկթիմուրի որդին՝ Մալիք ալ-Մանսուրը, որը սպանվեց 1205 թվականին իր՝ մամլուք Ազադդին Բալբանի կողմից։ Այս վերջինին, որ հազիվ էր իշխանությանը տիրացել, սպանեց սելջուկյան իշխան Տուղրիլը, Կլըճ Արսլան Շահի որդին, որ Էրզրումումն էր իշխում և ուզում էր Խլաթին տիրանալ, բայց նա վռնդվեց բնակիչների կողմից, որոնք 1207 թվականին կամովին հպատակվեցին Մալիք ալ Ավհադ Նաջմադդին Այուբին, որը Սալահադդինի սերնդից էր և տիրում էր Մուֆարղինի վրա» (տե՛ս նաև Saint Martin, Memoires, էջ 103—104)։

1230 թվականին Ջալալեդդին Խորեզմ շահը գրավեց, բայց երբ նա պարտվելով փախավ, քաղաքը կրկին անցավ Այուբյան իշխանի ձեռքը։ 1245 թվականին մոնղոլները տիրեցին քաղաքին և իշխանությունը հանձնեցին Զաքարյան տոհմի իշխանուհի Թամթային։ Իբն Հավկալն ասում է, թե՝ մի ծաղկյալ, բարեբեր և հարստությամբ լի վայր է այն։

Ըստ Իբն Սայիդի «Խլաթը Հայաստանի ամենակարևոր քաղաքն է, և նրա համբավը մեծ է»։

XIII դարում Աբու-լ-Ֆիդան այցելել է և գրում է, թե «Խլաթը դաշտի մեջ է, ունի բազմաթիվ մրգաստաններ և շատ վտակներ են հոսում այնտեղ, բայց միայն մի քանիսն են մտնում քաղաքը։ Այն ունի մի ավերված պարիսպ, նրա պատմությունը հավասարվում է Դամասկոսին, լեռները մի օրվա ճանապարհ հեռու են քաղաքից։ Ձմեռվա ցուրտը սաստիկ է այնտեղ»։

Ներկայումս «Դա քաղաք չէ, այժմյան հասկացողությամբ, այլ մի քանի զատ-զատ անշուք Թաղերի խումբ, որոնք ավելի աչքի են ընկնում իրենց ավերակներով քան նորագույն շենքերով»։ «Նայելով Խլաթի գեղեցիկ դիրքին, երկու հնագույն շրջանների բերդերի մնացորդներին և կանգուն մնացած գեղեցկաշեն գամբարաններին, անժխտելի է մնում Խլաթի հարուստ անցյալը և ծաղկման փառավոր շրջանը» (Ա—Դո, էջ 96)։

Հին քաղաքատեղին այժմ կոչվում է Խարաբ-Շեհիր։

**167. Խլաթի լիճ**։ Նույնն է, ինչ Վանա լիճ կամ Արճեշի լիճ։

**168. Խալխալ**։ Հեղինակը նկատի ունի Սեֆիդրուդ գետի միջին հոսանքից հյուսիս գտնվող այժմյան Խալխալ քաղաքը։

**169. Ալ-Խալկադունա կամ Խատիկադունա**։ Նույնն է, ինչ որ Խազկադունա։ Ստրաբոնի կողմից հիշատակված Կապադովկյան տաս նահանգներից մեկն էր՝ Կատավոնիա անվամբ, որոնցից յոթը, այդ թվում նաև այս, կազմեցին Փոքր Հայքի մասը։

**170. Խամրաբերդ**։ Խամուր լեռներում, մի լեռնաշղթա, որը Լինչը անհավասար ու անկանոն է անվանում։ Կոչվում է նաև Խամլըբերդ կամ Խնուսի լեռ, որը կազմում է Բինգյոլի մի բազուկը՝ դեպի արևելք երկարած։

Խամուրը փոքր բերդաքաղաք է, որը ընկնում է Խլաթի հյուսիսային և Ալաշկերտ գավառի հարավային սահմանի վրա (Ոսկեան, էջ 118)։

**171. Խունան**։ Այսպես էր կոչվում միջին դարերում պատմական Հունարակերտը։ Կազմում էր Քարթլիի մասը։ Գտնվում էր այնտեղ, որտեղ Քցիա (Խրամի) գետը թափվում է Կուր գետի մեջ. վրացիները կոչում են նաև Մտկուրիս-ցիխե, այժմ՝ «կոտրած-կամուրջ»-ի տեղը։ Այդ վայրի ավերակները կոչվում են Թոփրաք-կալե կամ Աղջա-կալե։ Դեմետրե վրաց թագավորի օրով Իվանե և Սմբատ Օրբելյանները գրավեցին այն «որ ի բազում ամաց էր առ տաճկին» (Օրբելեան, էջ 379)։

Կիրակոս Գանձակեցին քաղաքը հիշատակում է Պարտավի և Բեյլուկումա միջտեղը «ի դաշտավայր տեղիս զոր Խունանն անուանեն» (էջ 191)։

**172. Խավշար**։ Խօշապ-բերդաքաղաք՝ Վանից դեպի արևելահարավ, յոթ ժամ հեռավորությամբ[1]։ Այդ անունը, ըստ Միրախորյանի տեղեկության, ստեղծվել է շրջակայքի քաղցրահոս ջրերի պատճառով «Խօշաբ» (բարեհամ ջուր) բառերից։

«Քաղաքիս բերդն բնական լերան մը վերայ շինուած և այժմ քայքայեալ իւր աշտարակները միայն կը կենան, ընդ որս նաև մեկ կողման վերայ քանի մը կիսակործան սենեակներ, անգործածելի վիճակի մէջ։ Սենեակներէն երկուքի առաստաղներն արաբական ճաշակաւ պատկերազարդեալ են։ Երկաթեայ դուռն փակեալ կը կենայ, որոյ քովեր արաբական մասնավոր յիշատակագրեանք կը տեսնուին, յորոց ոմանք անընթեռնելի եղած են» (Միրախորեան, մասն Բ, էջ 124)։

**173. Քալաք Քոսան**։ Հաշտառուդի շրջան Իրանական Ադրբեջանում։

---

[1] Նույնանուն գավառա Խօշապ գետի հյուսիսային կողմում։

174. Խունդ: Ըստ Տոմաշեկի (էջ 32)՝ ճիշտ չէ Յակուտի հիշատակած այս անունը, ինչպես և Սաբբաթ անվան տակ հիշատակված Խունդը (Յակուտ, բնագիր, 3-րդ հատ., էջ 68)։

Հավանաբար Խույթ անվան աղավաղումն է ի (ـ) և ն (ـ) տառերի շփոթմամբ (خونت—خويت)։

175. Խույթ.— 851—852 թվականների ձմռան ապստամբության դեպքերը պատմելիս արաբ պատմագիրներ Բելաձորին և Թաբարին հիշատակություն են անում խութեցիների մասին, նրանց կոչելով «Ալ Խուայթիա» (الخويثية)։ Բելաձորին ասում է, թե մի բարբարոս ժողովուրդ է այն, որ բնակվում է իր անունը կրող «Ջաբալ ալ-Խուայթի» կոչված լեռնազանգվածում. այդ վայրը կոչվում է նաև Ալ-Արթան (الارطان)։

Սասուն, Տորոս և Սիմ անուններից բացի, այդ վայրը կոչվել է նաև Խույթ։ «Բնակիչք լերինն Խույթայ որ Սասունք անուանէին» (Գանձակեցի, էջ 73)։ «Ի լերինն Խոյթ անուանեալ» (Թովմա, էջ 200)։

Գևորգ Կիպրացու տեղագրության մեջ (Գելցերի հրատարակություն, Լայպցիգ, 1890) ասված է. «Են և բնակեալքն ի լերինն Տաւրոսի՝ առ ի կողակ լերինն ժողովուրդք երկու, որ կոչեն մին Խութեցիք և միւսն Սանասունք» (Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, էջ 10 և հաջորդ)։

Խութեցիները բնակվում էին Տավրոսի հյուսիսային լանջերի վրա, Մշո և Սասունի դաշտագավառներից վերև, ճիշտ՝ Սանասունք լեռան հարավային կողմում, Արղնի հարթաստանի հանդեպ։

Խույթ և Սասուն վայրերի նույնության ապացույցներից է նաև այն, որ Թովմա Արծրունին, որը այդ ժողովրդի կենցաղն ու բարքերը բնորոշող նկարագրությունն է անում (Գ. գլ. է), անխտիր գործածում է այդ երկու անուններն էլ միևնույն ժողովրդի համար։

Ուրեմն Սասունը Աղձնյաց աշխարհի վերջին գավառն է լինում, իսկ Խույթը՝ Տուրուբերանի առաջին գավառը։ Նրանք իրար սահմանակից են անմիջականորեն, ինչպես ցույց է տրված Խորենացուն վերագրված աշխարհագրության մեջ։

Յակուտը գրում է. «Աս-Սարբաթ գետի առաջին ու ամենից վերի աղբյուրը գտնվում է Խուայիթ լեռնազանգվածի մեջ» (Յակուտ, հատ. II, էջ 552)։

176. Խոյ: Ուրմիայի լճի երկարությամբ հարավից դեպի հյուսիս տարածվող գավառն է։ Հարավակողմն է Խոյը, կամ Հերը, որտեղ արաբ ոստիկան էր նստում Բագրատունյաց ժամանակ և նրանցից հետո։ Արաբները կոչում են Խուայ։

Գավառը խիստ բարեբեր է. արտադրում է այլ պտուղների կարգին նաև թուզ և տանձի բարձրորակ մի տեսակ, որը կոչվում է «բեյղամբերի» (մարգարեի տանձ)։

Հին ժամանակներում «Խոյջիա» կոչված մի տեսակ պիտանի կերպասեղեն էր գործվում այնտեղ։

Համդալլահ Մուստավֆին «Նուզհաթ ալ Կուլուբ» գրքում գրում է. «Խոյը միջակ մեծությամբ քաղաք է. պարսպի շրջագիծն է 6500 քայլ։ Կլիման բավական ցուրտ է։ Այգ երկրամասով անցնում է Սալմաստից բխող մի ջրի հոսանք, որը թափվում է Արաքսի մեջ։ Կոստանդին Ծիրանածնի մոտ այս տեղանունը հունարեն անվանված է chert (Հ. Մանանդյան, Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները, էջ 161—162)։

177. Խայզար: Պետք է լինի «Խիզան»-ի աղավաղումը։ Բելաձորին հիշատակում է, թե Մասլաման դաշինք կնքեց նրա ժողովրդի հետ։ Վայրը գտնվել է այժմյան Բեշ-Բարմաք գագաթի շրջանում, Կասպից ծովի ափին։

178. Դաքիլ: Տե՛ս Դվին։

179. Տիգրիս: Հայերի մոտ ընդունված է եղել նաև Դկղաթ (Դկլաթ) ձևը, գործածված Խորենացուն վերագրված աշխարհագրության և հայ մի շարք այլ մատենագիրների մոտ։

Տիգրիսն ունի երկու ճյուղ. Արևելյան Տիգրիս կամ Բոհտան սու («Ջերմ»), «Կենտրիտես», որը սկիզբ է առնում Մոկսի և Շատախի լեռներից, հոսում է դեպի Բիթլիսի դաշտավայրը և Սղերդից դեպի հարավ միանում է Արևմտյան Տիգրիսին։

Արևելյան Տիգրիսի մի ճյուղն է կազմում Բիթլիս-սու գետը (Թուխ գետ), որ բխելով Մոտկանի լեռներից, կտրում է Բիթլիսը և ոռոգելով Սղերդի դաշտավայրը խառնվում է Արևելյան Տիգրիսին։

Արևմտյան Տիգրիսը կամ Դիարբեքիր-սուն սկսվում է Հաշտեանք գավառից։ Պլինիոսի Diglito-ն է (Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, Հանդէս Ամսօրեայ, 1906, էջ 312)։

Էրատոսթենեսի համաձայն, ինչպես հիշատակում է Ստրաբոնը, Տիգրիսը ծագում է Նպատ լեռների հարավային լանջից։

Յակուտի հաղորդած տեղեկությունները Տիգրիսի մասին փոխ են առնված Ալի իբն Մահդի ալ-Քասրավու աշխարհագրությունից։

Տիգրիսի վտակներն ու հոսանքները ճշտվում են հետևյալ կերպով։

Վադի Սալբ—Ամբար-Չայ։

Սատիտմա կամ Շիթիթմա (ասորական լեզվով նշանակում է արյունախում)— Բաթման սու։

Վադի ազ-Զուր—Խույր սու կամ Կորը, որը Մուշի հարավ-արևմուտքից է իջնում։

Սարբադ—Նահր ադ-Դիբ կամ Նահր ալ-Քիլար—Արզան սու։

Իսկ վայրերից՝ Քելաք—Գյակ։

Խուվայթը (Բելազորին և Թաբարին հիշում են «Ալ Խուվայթիա»-ն) Խույթն է։

180. Հալուրես: Հալուրեսը Տիգրիսի ազբյուրն է նկատված, մի մութ քարանձավ (պետք է լինի Illirissos կիրճը), որտեղ Լեհմանը հինգ ասորեստանյան արձանագրություն գտավ, մեկը՝ Թիկլատ Պալասար Ա-ից և մյուս չորսը Սալմանասար Բ-ից։

Վայրը ըստ Մարկվարտի այսօրվա Ամբար չայն է (Sudarmenien, հ. Ա, 1915, էջ 115), հռչակավոր Սուբնատի կիրճը, որտեղից հոսում է Ջեբենե-սու գետը։

Վարդանը իր «Մեկնութիւն ծննդոց»-ում (Բ, 14) ասում է. «Տիգրիս որ Դկլաթ կոչի, ելանէ ի Չորրորդ Հայոց ի Հաշտն գաւառէ և ի գեղջէ Ոլորայ» (Ինճիճեան, Հնախօսութիւն Ա, էջ 137)։

Հալուրեսը մոտ է Հանի կոչված վայրին, Ամիդից դեպի հյուսիս երկուս ու կես օրվա ճանապարհով։

181. Ալի իբն Յահյա Աբու-Հասան ալ-Արմանին IX դարի առաջին կեսի նշանավոր վարչագետներից և զորավարներից մեկն էր։

Բացի արաբ և բյուզանդացի պատմիչներից, Ալի Արմանու մասին ակնարկում են նաև հայ պատմիչները, բայց միայն՝ Աշոտ Բագրատունու իշխանաց իշխանի պաշտոնին կոչվելու կապակցությամբ։ «Ապա ոստիկան ումն ի Հայս առաքեալ, որ Ալի Արմանի անուանէր, ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանաց Հայոց զնա կացուցանէր» (Հովհաննես Կաթողիկոս, էջ 169)։ «Եւ վասն այսպիսի համբաւոյ ոստիկան ումն որ Ալի Արմանի կոչէր, եկեալ յամիրապետէն յետ սպարապե-

տութեան յիշխանաց իշխան գնա Հայոց կացուցանէր զամս Լ» (Սամուել Անեցի, էջ 94)։ «Իսկ ՅԺԱ (862) թուականին Հայոց նստաւ Ամիր ալ Մումնին Ահմատ և տայ զերկիրս Հայոց Ալեայ որդւոյ Յահէի» (Ասողիկ, էջ 110)։ Նաև «Ահմադ, որ զԱլի որդի Յահէի Հայոց ամիրա, առաքեաց և զԱշոտ իշխանաց իշխան արար ի ՅԺԱ թուականին» (Նույն, էջ 136)։ «Որոյ որդին այս Աշոտ բարեպաշտ որ անուանեցաւ իշխանաց իշխան ի յԱլեայ որդւոյ Վահէի, հրամանաւ ամիրապետին Ջափրայ» (Վարդան, էջ 112)։

Ալի Արմանիի ծագման մասին ո՛չ հայ, ո՛չ հույն և ո՛չ էլ նրա մասին ավելի առատ տեղեկություններ տվող արաբ պատմիչները չեն խոսել։ Հայտնի չէ, թե ինչ աղբյուրի հիման վրա Լեոն գրել է. «Սա կոչվում էր Ալի իբն Յահյա, վերածայնված Արմանի, որովհետև նրա հայրը գերի տարված մի հայ էր» (Լեո, Հայոց պատմություն, Բ հատոր, էջ 512)։

Եթե այս տեղեկությունը Լեոն քաղել է Սեն Մարտենից, ապա այս վերջինս նույնպես որևէ տվյալ չունի իր ենթադրության համար (St. Martin, Memoires, էջ 349)։

Ալի Արմանու ծագումով հայ լինելու մասին ոչ մի կասկած չի կարող լինել. նախ իր «արմանի» մակդիրը մատնում է այդ, երկրորդ՝ որ Ջամալադդին Թաղրիբերդի ալ-Աթաբեկի պատմիչը որոշակի ակնարկում է, ասելով, թե «նա հայ էր ծագումով» (տե՛ս բնագիր, էն Նոջում էլ Զահերա, II, էջ 278)։ Հետևաբար անհիմն է Օրմանյանի կարծիքը նրա հայ չլինելու մասին (Ազգապատում, Ա, էջ 962—963)։

Նրա գործունեությունը ամփոփ կերպով հետևյալն է։

Ալ-Մամունի խալիֆայության օրերում (813—833) ծանարների մի ապստամբության մասնակցած լինելու պատճառով խալիդ իբն Յազիդ իբն Մազյադը նրան ձերբակալեց և ուղարկեց Բաղդադ։ Խալիֆը նրան ուղարկեց իր եղբորը՝ Աբու Իսհակին, երբ այս վերջինը Եգիպտոսում էր գտնվում կառավարչի պաշտոնով։ Խալիֆն ուզեց սիրաշահել Ալուն և նրան ռոճիկ նշանակեց։

Մամունի հաջորդ Ալ-Մուտասիմ (833—842) խալիֆի վերջին տարում, 841 թվականին Ալին նշանակվեց Եգիպտոսի կառավարիչ։ Հաջորդ խալիֆն էլ՝ Վաթեքը (842—847) նրան պահեց այդ պաշտոնում։ Ալին երկրի վարչական և նլեմտական բարեկարգության մեծ հոգ տարավ։ 843 թվականին հետ կանչվեց, և նրան տրվեց խալիֆայական նահանգների վարչությունը։ Երկրորդ անգամ կանչվեց Եգիպտոսի կառավարչության պաշտոնին 849 թվականին, Մուտավաքիլ խալիֆի կողմից։ 850 թվականին խալիֆը նրան ետ կանչեց և նշանակեց սահմանային նահանգների կառավարիչ և ամառային հարձակումների հրամանատար։

851 թվականից սկսած Ալին, Իբրև Տարսոնի կառավարիչ կանոնավոր կերպով ամեն տարի արշավեց Բյուզանդական կայսրության հողերի վրա մերթ Մալաթիայի կառավարիչ Օմարի, մերթ Պավլիկյանների օգնությամբ։ Իր արշավանքների ընթացքում նա հասավ մինչև Սև ծովի ափերն ու Կ. Պոլսի մատույցները. Նա մի քանի անգամ գլխավորեց Լամիս գետի վրա կատարված գերիների փոխանակության գործը։

862 թ. (հոկտեմբեր-նոյեմբեր) խալիֆը նրան նշանակեց Հայաստանի ոստիկան։ Այդ միջոցին բյուզանդացիները սկսել էին ուժեղ զինական հարձակումներ ներքին ճգնաժամ ապրող խալիֆայության սահմանների վրա։ Մուստային խալիֆը արաբական լծի դեմ հայերի երկարատև պայքարի հետևանքով հարկադրվեց սիրաշահել հայերին և ազատ արձակել Սամարա աքսորված հայ իշխաններին, իսկ Ալուն նշանակեց միջնորդ՝ հայերի հետ առկախ մնացած հարցերի կարգադրության հա-

*մար։ Նրա միջոցով Աշոտ Բագրատունուն տվեց իշխանաց իշխանի պաշտոն՝ լայն ինքնավարական իրավունքներով։*

*Թաբարին և Իբն ալ-Աթիրը Ալու պաշտոնավարությունը նշանակում են 862 թվականը, իսկ Յակուբին՝ 863 թվականը։*

*Ալին մահացավ հետևյալ պարագաներում։*

*Բյուզանդական բանակը Պետրոնաս հայ զորավարի հրամանատարության տակ՝ Պոսոնում (Կյուրինի մոտ) հիջրի 249 թվականին Ռաջաբ ամսի 15-ին (սեպտ. ին 863 թ.) ջախջախեց Մալաթիայի կառավարիչ Օմարի բանակը և սպանեց արաբ հրամանատարին, որը տարիներ շարունակ ահ ու սարսափ էր պատճառել իր ասպատակություններով։*

*Թաբարին գրում է. «Օմար իբն Օբայդուլլահի սպանությունից հետո հույները եկան Միջագետքի սահմանը, բաղձալով խլել այնտեղ գտնվող մուսուլմանների հողերը։ Առնելով այս լուրը՝ Ալի իբն Յահիան, որն այդ միջոցին գտնվում էր Մուֆարղինում, նրանց դեմ ելավ քաղաքի և Սալսալայի բնակիչների բազմության հետ և նահատակվեց 400 մարդկանց հետ՝ Ռամազան ամսին»։*

*Յակուբին գրում է. «Ալին գնաց Մուֆարղին, հույները հարձակվեցին և տիրեցին մուսուլմանների երկրի կեսին։ Այն ժամանակ երկրի բնակիչները դումարվեցին Ալի իբն Յահիայի մոտ, գրգելով նրան և պահանջելով պատերազմել հույների դեմ։ Ալին արշավեց նրանց հետ և հույների զորքի դեմ սաստկապես ճակատեց ու սպանվեց։ Հույները վերցրին նրա մարմինը իբրև մեծ հաղթության նշան»։*

*Մասուդին մի քիչ տարբեր ձևով է ավանդում Ալու մահը։*

*«Երբ Ալին գնաց Մուֆարղին, Դիարբեքիրի կողմը, շեղվեց մի քիչ ճանապարհից՝ այդ նահանգի մեջ այցելելու համար իրեն պատկանող մի կալված։ Հանկարծ վտանգի ազդանշանը տրվեց, Ալին փախավ աճապարանքով հույների արշավախմբի առաջից, բայց սպանվեց՝ շուրջ 400 յուրայիններով։ Թշնամին չիմացավ, թե սպանվածը Ալի հայն էր»։*

*Ալի Արմանու համբավի և նրա վայելած հեղինակության մասին նույն Մասուդին ավանդում է հետևյալը.*

*«Դավանափոխ մի հույն, որ պատվական մուսուլման էր եղել, պատմեց ինձ, թե հույները իրենց եկեղեցիներից մեկի մեջ դրել են քրիստոնյա աշխարհի առաջնակարգ դեմքերից տաս հոգու նկարներ, որոնք իրենց քաջագործություններով ամենից ավելի հռչակ են հանել, ինչպես նաև մի քանի մահմեդականների, որոնք մեծ անուն են շահել իրենց ռազմագիտությամբ։ Այս վերջինների կարգին էր Ալի իբն Յահիա արմանին»։*

*Խոհտուրի բանասերը, որը ճանաչում է Ալի իբն Յահիային, հայտնում էր, որ նա իր պալատի մեջ միշտ շրջապատված էր լինում բանաստեղծներով։ Բայց Բոհտուրին ասում էր նրան։ Իր բանաստեղծություններից մեկի մեջ նրան նմանեցնում է սպանդանոցի համար դեր մի կովի և ամբաստանում է նրան, ասելով, որ մահմեդականների ավարի մեկ մասը յուրացրել է և անհավատների դեմ կովի օրը ներկա չի գտնվել։*

*Ալի Արմանին սպանվեց 863 թ. հոկտեմբերի 18-ից նոյեմբեր 16-ը։*

**182. Իբն Բոգրատ պատրիկը**: *Խոսքը վերաբերում է Աշոտ Բագրատունի իշխանին։*

**183. Մուշալիճ պատրիկը**: *Մուշեղ անվան աղավաղումն է,*

*խոսքը վերաբերում է 11-րդ դարի վերջին կիսում հիշված Թոռնիկին. «Իշխանն Հայոց զօրաւորն և քաջ որդին Մուշեղայ Թոռնիկն» (Ուռհայեցի, 155), որ*

Սասնոյ տէրն էր։ Նա էր, որ Մալաթիան ավերելուց հետո բազմաթիվ պաշարով և գերիներով վերադարձող Դինար ամիրայի վրա հարձակվեց Մուշի դաշտում և գերիներին ազատեց։

184. Ջարչիգ Պատրիկը։ Հավանաբար լինի Ջաչիկ, կամ Գագիկ Արծրունին։

185. Դարբանդ կամ Դարբենդ։ Գործածվում է ընդհանրապես անցք կամ դուռ իմաստով՝ լեռնային կիրճերի համար, իսկ հատկապես Բաբ ալ-Աբվաբի համար։

186. Դլուկ։ Հին Dolichenius-ը Այնթաբից մեկ և կես ժամ հեռավորությամբ։ X—XII դարերում հայաբնակ քաղաք էր, որը Բյուզանդական կայսրը Ծովք դղյակի հետ (Գյոլչիկ) իբրև ավատ տվել էր Ներսես Շնորհալու պապ՝ Ապիրատ իշխանին, որ Գրիգոր Մագիստրոսի փեսան էր։

Բերդը ամուր էր, հենված Ամանոսից բաժանված և դեպի Եփրատը երկարվող մի լեռնաշղթայի վրա։ Գուլ. Տյուրային կոչում է Tulupa.

187. Դունայսար։ Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Մարտինից 10 մղոն հեռու Ծաղկեց Օրդոկյանների իշխանության ներքո։ Այս Քաղաքի արևելյան կողմում կա ավերակների մի բլուր «Տալլ ալ-Արմանն» (Հայերի բլուր) կոչված, որը Սախավը նկատում էր որպես հին Տիգրանակերտի վայրը, բայց Լեհմանի հետախուզումները ցույց տվեցին, որ այդ կարծիքը սխալ է։ Հին Տիգրանակերտի վայրն է Մուֆարղինը։

188. Դումիս։ Իսթախրիի մոտ նշանակված է Դավմիս։ Այս կայարանը Գեզարքունիքից 16 փարսախ կամ 92 կիլոմետր հեռու է։ Ըստ ակադեմիկոս Մանանդյանի, արաբական այս անունը աղճատված է և պետք է կարդալ دوطيس (Ջավտիս) د=ذ և م=ط ուղղումով։ Այս վերջինը պարզ կերպով համապատասխանում է հայերեն Սոտք կամ Սոթք տեղանվանը (այժմ Զոտ կամ Զոթ)։ Սեբեոսի մոտ հիշատակված է «Սաւդայ գիւղաքաղաք» (էջ 49)։ Օրբելյանը հիշատակում է «Սօթից գավառը» կամ «Սոթք» (էջ 12)։

189. Դվին։ Պրոկոպիոսը կոչում է Δούβιος։ Արաբերեն անունն է առհասարակ «Դաբիլ»։

Սեն Մարտենի կարծիքով «Դաբիլ» ձևը առաջացել է մի հին ընդօրինակողի սխալի հետևանքով, որը չէր իմանում քաղաքի իսկական անունը (St. Martin, Memoires, էջ 31)։

Մինորսկին հետևյալ դիտողությունն է անում. «Դուվին ձևի տակ, բլրակ իմաստով, պարսկերեն բառ է, և Մովսես Խորենացին ակնարկում է այդ մասին։ Յակուտը հիշատակում է Դավին՝ մի գյուղ Խորասանում և այդ բառով կազմված մի շարք վայրեր՝ ինչպես «Դիրա Դիվին»— Աստարաբադի արևմուտքում բլրակ, «Լալա Դիվին»—Կառասուի վրա գյուղ, «Սուլթան Դիվին»—բլրակ նույն այդ կողմերում, «Քաֆիր Դիվին» և այլն (V. Minorsky, Transcaucasia, Ext. du Journ. As. Juillet-Sept. 1930, էջ 43—44)։

Քուրդիստանում կա «Դիվին Կալե», Արբիլից 40 կիլոմետր հյուսիս, մի բարձունքի վրա։ Կա նաև «Դարա Դիվին» փոքր վտակը, որ թափվում է Տիգրիսի մեջ (Նույնը, էջ 52)։

Արաբերենում հնագույն ձևն է Դաբիլը։ Իբն Խորդադբեն, Բելազորին, Թաբարին, Իսթախրին, Իբն Հավկալը, Մոկադդասին նույն ձևով են գրում, թեև Իբն Հավկալը Դաբիլի կողքին տալիս է նաև Դավին։ Յակուտը անջատաբար երկու ձևերն էլ տալիս է, չնչելով, որ խոսքը միևնույն վայրին է վերաբերում։

«Դաբիլի» ավանդական ձևից Ն և Լ տառերի լծորդությունը հանախակի է։

Օրինակ, «Արդահանը» Բելազորին գրում է «Արդահալ»։ Իբն Հավկալը, Իսթախրին, Մուկադդասին և Յակուտը Մանազկերտը գրում են «Մալազգերտ»։

Այս կարգի փոփոխության հանդիպում ենք նաև Բ և Վ տառերի մեջ. օրինակ՝ Վասպուրականը Բելազորին և Թաբարին տալիս են «Բասֆուրջան» ձևով (Նույնը. էջ 58)։

«Ճիշտ է, որ,— ասում է Մինորսկին,— Դաբիլ միջձայնավորային Բ-ի պարագան մի առանձին բնույթ ունի։ Արաբերեն լեզվի մեջ դաբիլը նշանակում է անապատի մեջտեղ անավազ վայր» (Նույնը, էջ 56)։

Այս բացատրությունները ինչքան էլ հետաքրքիր լինեն, վճռական չեն հարցի լուծման տեսակետից։ Մինորսկին (էջ 65) ավելացնում է, որ Վ-Բ Դ-Լ գրերի փոխանակումը կարելի է վերագրել քրդերեն լեզվի ազդեցությանը և ծանոթ է, թե այդ շրջաններում բազմաթիվ քրդեր են ապրում։

Ինչ վերաբերում է գոնե Լ և Ն գրերի շփոթությանը, ապա հավանական է. որ դա սկզբնական գրչագրի մի սխալ լինի, որովհետև արաբերեն գրության մեջ ل և Ն- ن իրար շատ են նման և մեկ կետի մոռացումով կարելի է Ն-ն կարդալ Լ։

Խորենացին հայտնում է, որ Խոսրով Կոտակն է կառուցել քաղաքը. «Նաև զարքունիսն փոխէ վերոյ անտառին յոստ մի, ապարանս հովանաւորս շինեալ, որ ըստ պարսկական լեզվի Դուին կոչի, որ թարգմանի բլուր» (գիրք Երրորդ, Ը)։

Փավստոսը գրում է. « Եւ եդ հրաման Թագաւորն զօրավարին իւրոյ՝ հանել խաշար յաշխարհէն բազում և բերել զվայրենի կաղին մայրեաց, և տնկել զայն յԱյրարատեան գաւառին և առեալ յավուր բերդէն արքունի, որում կոչեն Գառնի. մինչև ի դաշտն Մեծամօրի ի բլուրն՝ որ անուանեալ կոչի Դուին, որ կա ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու» (Դպր. Գ, գլ. Ը)։

Եվ որովհետև Արտաշատի օդը անտանելի և գարշահոտ էր, մայրաքաղաքը փոխադրվեց Դվին։

Բրոսեն իր կողմից նշում է, թե Դվինը պարսկերեն լեզվով բլուրի նշանակություն չունի։ Նա ենթադրում է, թե նախքան այդ քաղաքի շինությունը, այն բլուրը. որի վրա կառուցվեց. կոչվում էր Դվին, որովհետև ըստ հեղինակի, Վարդանի մեկ տարբերակում կա «Դուին որ ի բլուր անգ» (Brosset, Deux historiens armeniens էջ 9, ծան. 2)։

Պատմիչները կոչում են «Ոստանն Դուին» կամ «Ոստանն Դւնայ»։ Արշակունյաց թագավորության վերացվելուց հետո պարսիկ մարզպաններ էին նստում Դվինում։ Դվինը պահեց իր այդ դիրքը նաև արաբական տիրապետության ժամանակ։

Դվինը գրավվեց արաբների կողմից առաջին արշավանքների սկզբում։ Բելազորին ավանդում է, որ երբ Հաբիբը անցավ Նահր ալ-Աքրադը (Մեծամոր) և բանակեց Դվինի դաշտում, հեծելազորը ուղարկեց քաղաքի վրա և ինքը կամաց-կամաց առաջացավ, մինչև որ կանգ առավ քաղաքի դռների առաջ։ Բնակիչները պաշտպանվում էին, նետահարելով նրա զորքը։ Հաբիբը դնել տվեց քարընկեց մեքենաներ և սկսեց քարկոծել պարիսպները, որի հետևանքով բնակիչները հաշտություն խնդրեցին։

Ահավասիկ Հաբիբի տված հաշտության թուղթը։

«Հանուն աստծու ամենաբարվո և ողորմածի։ Այս է գիր Հաբիբն իբն Մասլամայի առ Դվինի քրիստոնյա, կրակապաշտ և հրեա բնակիչներին, ներկաներին և բացականերին։ Թե՝ ես երաշխավորում եմ ձեր կյանքը, գույքերը, եկեղեցիները, առևտուրը, քաղաքի պարիսպը։ Մենք պարտավոր ենք կատարել ձեր հանդեպ մեր հանձնառությունը՝ որքան ժամանակ դուք ձեր պարտքը կկատարեք մեր հանդեպ»

կվճարեր գլխահարկ և տուրք։ Վկա է ասված և նա բավ է իբրև վկա»։ Դվինի կարևորությունը շատ մեծ է եղել քաղաքական, տնտեսական և կրոնական իմաստով։

Դվինի գրավման թվականի մասին տարբեր կարծիքներ են հայտնվել։ Ակադ. Մանանդյանը, համեմատելով աղբյուրները, ճշտել է հետևյալ կերպով։ Քաղաքի պաշարումը սկսվեց 639 թվականի նոյեմբերի 28-ին, գրավվեց 640 թվականի հունվարի 6-ին (Մանանդյան, Մանր հետազոտություններ,...)։

Դվինը արաբական շրջանում Հայաստանի կարևորագույն քաղաքն էր։ Այնտեղ էր նստում խալիֆի կողմից նշանակված ոստիկանը։ Արաբական պահակախումբ էր մնում այնտեղ։ Արաբները ամրացրել էին քաղաքը, մանավանդ Աբդլ-Ազիզի ժամանակ։

Քաղաքի տնտեսական կարևորությունն էլ մեծ էր։ Դվինի կերպասները, քիրմիզով ներկված, նշանավոր էին X դարում։ Մուկադդասին (X դար) Դվինը նկարագրում է որպես քրիստոնյաներով և քրդերով բնակված քաղաք։ Ասում է, թե քաղաքից դուրս կար մի ընդարձակ արվարձան՝ պարտեզներով շրջապատված։

Բագրատունյաց անկումից հետո Դվինը մի առժամանակ կարողացավ պահել իր նշանակությունը՝ առևտրական ճանապարհների վրա գրաված իր դիրքի հետևանքով, բայց երկրաշարժից (893) և պատերազմական ավերներից տուժեց։ Այնտեղ Բագրատունյաց ժամանակ էլ շարունակում էին նստել ամիրաներ։

XII դարում Փադլուն ամիրան գրավեց այն. «Տիրեաց և Դունայ և եդ հարկս ի վերայ Հայոց երեք հարիւր հազար դրամ» (Վարդան, էջ 101)։ Հետո ազատագրվեց վրացիների օգնությամբ։ Վրաց Գիորգի թագավորը 1151 թ. «Կուտէ առ ինքն զԿովկասային զօրսն և դայ առնու զԴուին» (Վարդան, էջ 127)։ Նույնը վկայում է Գրիգոր Երեցը 1162—1163 թվականների տակ. «Յայնմ ամի առաւ մեծանուն քաղաքն Դուին ի թագաւորէն Վրաց Գորգեայ» (էջ 547)։ 1203 թ. Զաքարեն և Իվանեն կրկին գրավեցին թուրքերի ձեռքից» (Վարդան, էջ 138)։

190. Այուբյաններ։ Հայկական թե արաբական պատմական աղբյուրները վկայում են, որ Սալահադդին սուլթանի ծագումը Դվինից է։ Շադին կամ Շաղին Այուբի հայրը դվինցի քուրդ էր. իր երկու որդիները, Նաջմադդին Այուբը և Ասադադդին Շիրքուհը, գնացին Բաղդադ և Թեքրիդ, որտեղ նրանք զինվորագրվեցին Աթաբեկ Զանգիի բանակում։ Հետո մտան Նուրադդինի մոտ ծառայության, նրա շնորհիվ Այուբի որդի Սալահադդինն ստացավ Ասորիքի և Եգիպտոսի կառավարչությունը։ Նուրադդինի մահից հետո Սալահադդինը անկախ իշխանություն հաստատեց այդ երկրներում և մեծ դեր կատարեց, գլխավորապես խաչակիրների դեմ մղած իր հաղթական կռիվներով։

Սալահադդինի ծագման մասին հայ պատմագրության մեջ գտնում ենք որոշ տվյալներ։ Վարդան պատմիչը գրում է. «Յառաջ Յասուփ էր անուն նորա, որդի Էուբին, առն տառապելոյ Դունացւոյ, որ և ի մեծանալն կոչեցաւ Սալահադին՝ որ է խաղաղութիւն հաւատոց» (էջ 131)։

Գանձակեցին վկայում է. «Իսկ ՌՂԶ թուականին յարեաւ բռնակալ ոմն՝ քուրդ ազգաւ, Սալահադին անուն, ի Մասեաց ոտնէ, ծառայ լեալ սուլտանին Մերդինոյ և Հալպայ» (էջ 143)։

Սամուել Անեցին գրում է. «Իսկ ի ՌԷ ամին, ոմն Էուբ անուն և եղբայր իւր Շիրաքօ, որդիք Սուլիմանայ քրդազգաւ, ելեալք ի Դունայ վասն աղքատութեան և եկին ի Միջագետս և գնացեալ ի Թկրիթ մտին փայտակիր» (էջ 136)։

Միքայել Ասորու թարգմանության մեջ. «Եւ էին սոքա ազգաւ քուրդ ի Դվնայ քաղաքէ մեծաց Հայոց, որդիք աղքատաց և հայր սորա կոչէր Էուբ» (էջ 457)։

Արաբացի հեղինակներից Յակուբին իր «Մուշտարիք»-ում ասում է, թե «Աւուրջան գինաստիան ծագել է Դվինից»։

Իբն Խալլիքանը Սալահադդինի կենսագրության մեջ գրում է. «Պատմագիրները համաձայն են վկայելու, թե նրա հայրը և գերդաստանը բնիկներ էին Դվինի, որը Առանի և Վրաստանի ուղղությամբ Ադրբեջանի ծայրագույն սահմանի վրա մի փոքր (*) քաղաք է։ Նրանք Ռավադիա ցեղից քրդեր էին, որը Հադանիա կոչված քրդական ցեղախմբի մի ճյուղն է։ Իր խոսքը կշռող ընիկ դվինցի մի իրավաբանից տեղեկացա, թե Դվինի դրան մոտ Աժդանական կոչված մի գյուղ կա, որի ամբողջ բնակչությունը բաղկացած է Ռավադիա ցեղին պատկանող քրդերից և որտեղ ծնվել է Սալահադդինի հայրը՝ Այուբը»։

**191. Դանճախիրչան**: Նախորական գյուղ. կամ որ նույնն է՝ Դեհխարդան ավանը՝ Թավրիզից դեպի հարավ-արևմուտք. այժմ Ադերշահը։

**192. Դիարբաքր** (Դիարբեքիր)։ Հյուսիսային Միջագետքի արաբացի ցեղախմբերի պետերը իրենց անունը տվել են այդ շրջանի աշխարհագրական բաժանումներին։ Այսպես գոյացան Դիարբաքր, Դիար Ռաբիա, Դիար Մուդար, Դիար Ոմար շրջանները։

Դիարբաքրը ընդհանուր կերպով գավառի անուն է, բայց տարիների ընթացքում այդ անունը իր իմաստը սեղմելով միայն մայրաքաղաքին՝ Ամիդ քաղաքին հատկացվեց։

**193. Դիար Ռաբիա**, Կամ Ռաբիա վիճակ։ Զգվում է Տիգրիսի եզերքով՝ Տել Ֆաֆանից մինչև Թերրիդ։ Մայրաքաղաքն է Մոսուլը։

**194. Դիար Մուդար**: Մուդարի ցեղախմբի բնակավայրն է, տարածվում է Եփրատի հովտում՝ Սումայսաթից մինչև Անա և գրավում է հին Օսրոյենի վայրը։ Մայրաքաղաքն է Ռակկան։

**195. Դաւր ալ-Աբիադ**: Սպիտակ վանք, Վերին Եգիպտոսում, Սոհակ քաղաքի մոտ։ Կոպտական այդ վանքը միաժամանակ, հավանաբար, XI դարի վերջերին, Բադր ալ-Ջամալի հայ վեզիրի օրով, պատկանել է հայերին։ Հայերն էլ նորոգություններ են կատարել շենքի վրա։ «Տանիքին վրայ դուրսէն աւելցուած հայկական երեք փոքրիկ գմբէթները մասնաւորապէս կը յայտնեն, թէ հայեր յետոյ աւելցուցած կամ նորոգած են այդ կտորը։ Խորանի կամարին նկարազարդութիւնը հայկական է բոլորովին. նկարիչը հոն դրած է անցման գրով երեք արձանագրութիւններ, որոնց մէջ կը յիշուին կարգ մը անձնական անուններէ զատ, ժամանակին հայ կաթողիկոսը և Եգիպտոսի առաջնորդը ու քարահանքերու մէջ աշխատող քանի մը հայեր, որոնք կերևի թէ նպաստած էին տաճարի նորոգութեան, չմոռնալով նաև ակնարկութիւն մը ընել Եգիպտոսի հայոց քաղաքական կացութեան մասին։ Հայ նկարիչ մը պիտի չկրնար թոյլատրել ինքզինքին զուտ հայեցի այս մանրամասնութիւններով ծանրաբեռնել ոչ հայկական եկեղեցիի մը որմազարդումը։ Բաց աստի, ըստ Աբու Սահլի, այս վանքին մէջ է, որ կրօնաւորելով իր կեանքին վերջին տարիները անցուց Վահրամ Պահլաւունի իշխանը, եղբայրը Գրիգոր արքեպիսկոպոսի և Հօրեղբայրը Շնորհալւոյ» (Թ. Գուշակեան, Եգիպտոսի հին և նոր հայ եկեղեցիները, էջ 16—17)։

Ահավասիկ հիշատակված արձանագրություններից առաջինը։

«Թեոդորոս/նկարիչ և գրիչ/ի դաւառեն/Քեսնոյ մերձ/ի կամուրջն/Շնչեոյ ի գ/եղջե, որ կոչի Մազթլէ և հա/յր իմ Քրիստափ/որ քարգործ. Ած/նմա ողորմեսցի/ և ձեզ և մեզ այց/արասցէ ամենայն/հայւոցս որք եմքս/ի ծառայութեան/յԵգիպ-

տուս ի Հայ/րապետութեանն/Տն Գրիգորի քեռոր/դւոյն Գրիգորի որ/Տր Վահրամն կոչի»։

Երկրորդ արձանագրությունն է.

«Տարածողն/լոյս ի մե/տաղս քրեականս/ողորմեսցի Քս./խաչա.../նորոյ...»։

Երրորդ արձանագրությունն է.

«Քս. ողորմեսցի Սար/գսի.../ի մե/տաղս...»։

Սպիտակ վանքի արձանագրությունների մեջ հիշատակվում է Թեոդորոս հայ նկարչի անունը, որ սկսեց նկարազարդել կողակները 1076 թվականից հետո։

196. Դեյր Աիվիշա։ Վայրը ստուգման կարիք ունի։

197. Դեր Բարծումա։ Վանք՝ Նեստորի աշակերտ Բարծումա Եդեսացու անվամբ։ Նա հալածեց Եփեսոսի ժողովի կողմնակիցներին։ Այդ մասին գրել է Թովմա Արծրունին, էջ 140 և հաջորդ, Միքայել Ասորին՝ էջ 315—317։

198. Դայր Բասաք։ Կամ Դարպսաք։ Ամուր բերդ, որ տիրապետում է Բեյլանի կիրճին՝ Նահր ալ-Ասվադի կամ Կարա-Սուի աջ ափով։ Աբու-լ-Ֆիդան նկարագրում է այսպես. «Բարձր բերդ է. բարեբեր, շրջապատված այգիներով և աղբյուրներով, Բաղրասից հյուսիս-արևելք տասն մղոն հեռավորության վրա»։ Բառը կազմված է երկու մասից. Դարբ-Սաք, որ թարգմանվում է՝ փակ ճանապարհ։ Բայց կա նաև ուրիշ բացատրություն, «Դարեհը, արշավանքի ժամանակ, ըստ Արիանոսի՝ նախքան Իսոսի վրա գնալը բանակած էր Sochoi կոչված վայրում։ Քուինտոս Կուրցիոսն ասում է, թե իր պարտությունից հետո Դարեհն անցավ Ouchae-ից։ Այդ տեղանունները ճշտվում են անվանական և տեղագրական տեսակետներից Sak= հետ, որին արաբները ավելացրել են Darb= ճանապարհ, անցք բառը և կազմել են Darbsak, այսինքն՝ Սաքի անցք» (R. Dussand, Topogr. hist. de la Syrie Ant. et Mediev. էջ 445)։

Հեթում պատմիչը հիշատակում է վայրը՝ «Տեմբեզակ» անվամբ, էջ 52)։

199. Դեյր Էլ Մոճալլա։ Վայրը մնում է ստուգման կարոտ։

200. Մար Թումա վանքը։ Թովմա առաքյալի վանք։

201. Առան։ Պատմական Աղվանքը։

202. Վադի Ռազմ։ Ռազմ գետի հովիտը, որը Տիգրիսի վտակ Ջերմ (Բոհդան սու) գետն է, Մոկաց գավառի Ջերմաձորը կոչվում է նաև Վադի աղ-Զարմ, Ագաթիոսի Zirma-ն (Հ. Ա., 1907, էջ 301)։

203. Արախ։ Երասխ Վրացիների մոտ՝ Ռախսի կամ Արագի։

Ըստ Յակուբիի («Քիտաբ ալ Բուլդան»-ում) «Արաքսից այն կողմը կան երեք հարյուր ավերակ քաղաքներ, որոնց մասին է ակնարկում ալլահի խոսքը». «Եվ Ավոտը և Թեմոտը, և Ռասի բնակիչները և ուրիշ ազգեր» (Ղուրան, XXV 40)։

Այդ խոսքերով ենթադրվում է, թե ակնարկությունը Արաքս գետի մասին է, բայց մի շարք մեկնաբաններ, որոնց թվում Ջալալ-ադ-դինը, այդ ակնարկությունը վերագրում են բոլորովին տարբեր վայրի՝ Մաղյանացվոց երկրի մեջ մի գյուղի։

204. Միսար իբն Մուհալհիլ։ Աբու Դուլաֆ ալ-Խազրաջի ալ Յանբուի։ Արաբացի բանաստեղծ, որն ապրում էր Սամանյան թագավորների արքունիքում։ Ապրել է X դարի կեսերին։ Ճամփորդել է դեպի Չինաստան՝ և թողել տեսած վայրերի նկարագրությունը։

205. Բալասական։ Կամ Բաղասական, Աղվանքում։ Բառը պարսկերեն է և հիշվում է «դաշտ ի Բալասական»։ Այժմյան Մուղանի և Միլի դաշտերը, որտեղ գտնվել է Բայլական-հին Փայտակարան քաղաքը։

206. Ռարան։ 979 թվականին «Հույները գրավեցին իբն Իբրահիմ կոչված այդ

ումեղ ամրոցը շնորհիվ հայերի, որոնք մի հնարքով տիրացան վայրին, ապա հանձնեցին այն Վասիլ կայսեր», ասում է Յահյա իբն Սայիդ Անտիոքացին իր պատմության մեջ։ Հետագայում Ուռհան պատկանեց Գող Վասիլին։ 1149 թվականին ամրոցը գրավեց Իկոնիայի Մասուդ սուլթանը, ապա՝ Ջոսլինը, որից վերցրեց Նուրադդինը, իսկ նրանից անցավ Հալեբի սուլթանին. դրանից հետո Քայքավուսը տեր դարձավ (Միխայել Ասորի, էջ 514)։ Տեսնել նաև Աբու-լ-Ֆիդայի ծանոթագրությունների մեջ։

**207.** Ռում—Հռոմների կամ հույների Բյուզանդիան։ Իբն Խորդադբեհը, հիմնվելով Մուսլիմ իբն Աբի Մուսլիմ ալ Ջարմեի տեղեկությունների վրա, տալիս է Բյուզանդական կայսրության 14 նահանգները։ Յակուտը վերցրել է նրանից, որով վարչական այս բաժանումը վերաբերում է իբն Խորդադբեհի ժամանակին (840—845)։ (Իբն Խորդադբեհ, Քիթաբ ալ Մասալիք վալ մամալիք, էջ 105 և հաջորդ)։

Ցույց տրված նահանգները համապատասխանում են հետևյալ թեմերին։

1. Թալայա։ Կ. Պոլսի գավառն էր, որը Թաֆրա էր կոչվում։
2. Տարակիա—Թրակիա։
3. Մակատոնիա—Մակեդոնիա
4. Աֆլաջոնիա—Պաֆլագոնիա
5. Արսիկ—Ոպսեքիոն
6. Անթամաթ—Օպտիմատոն
7. Բարքասիա—Թրաքեսիա
8. Անաթոլիկոս—Անատոլիկոն
9. Սալավկիա—Քիբերայատ
10. Ալ-Կուբադակ—Կապադովկիա
11. Խարշանա— Սեբաստիա կամ II Հայք
12. Բուկելար—Բուքելարիան
13. Արմենիաք—Արմենիաք
14. Ջալատիա-Քալտիա

**208.** Մոտազ Բիլլահ աբբասյան խալիֆը։ Ծնվել է 847 թվականին։ Նա գահ բարձրացավ Մոստաինի գահազրկումից հետո՝ 866 թվականին թուրքական վարձկան զնդերի դրամական պահանջները մերժած լինելով, շուտով գահազրկվեց և մեռավ բանտում, 867 թվականին։

**209.** Ուռհայ կամ Եդեսիա: Կարևոր քաղաք Դիար Մուդարում։ 135 թվականին (մ.թ.ա.) դարձավ Օսրոէնի թագավորության մայրաքաղաք, որտեղ գտնվում էր Աբգարների գինաստիայի գահը։ Հռոմեական տիրապետության տակ այն դարձավ զինվորական կայան և պարունակում էր կարևոր զինարաններ: Հույները կոչում են Callirhoe թերևս ջրի լավության պատճառով։ Աբգար 1-ինը (մ.թ.ա. 92—68), որը արաբական կամ նաբաթյան դինաստիայից էր, կարճ ժամանակ ենթարկվեց հայոց Տիգրան Մեծ թագավորին։ Քրիստոնեության ժամանակ ծանոթ է ավելի Եդեսիա անվամբ և ըստ «Աշխարհացույցի» գտնվում էր Հայոց Միջագետքում և «ուր անձեռագործ պատկերն է փրկչին»։ Քրիստոնեության դարաշրջանի սկզբում դարձավ կրոնական ուսման կենտրոն. այնտեղ հաստատվեցին աստվածաբանական դպրոցներ։ Կար հոխ մատենադարան։ Խորենացին հիշատակում է, որ Մծբինից այնտեղ փոխադրվեցին մեծ թվով գրքեր, «որ յաղագս թագաւորացն մերոց պատմէր» (Խորենացի, գիրք երկրորդ, ժ)։

Եդեսիան կարևոր դեր է ունեցել հայ գրերի գյուտի պատմության մեջ։ Այնտեղ է գիմում Մաշտոցը մի շարք աշակերտներով՝ նշանագրերի վերջնական դա-

սավորման համար և՝ ըստ Կորյունի, երկար տքնությունից հետո կարողանում է վերջնական ձևի վերածել հայոց այբուբենը: Այնտեղ են ուղարկվում առաջին աշակերտներից Հովսեփը, Եզնիկը, «զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս հայերէն գրեալս դարձուցեն»:

Պարսից Խոսրով II-ը քաղաքը բյուզանդացիներից խլեց 609 թվականին, իսկ Հերակլ կայսրը 628 թվականին վերագրավեց:

Թաբարին հիշատակում է, որ հիջրի 19 թվականին (640) Իյադ իբն Ղանմը Աբու Ոբայդայի կողմից ուղարկվեց և նվաճեց Ուռհան: «Բնակիչները խաղաղություն հաստատեցին նրա հետ, այն հիման վրա, որ իրենց մնա տաճարը՝ շրջակայքով, որ նոր եկեղեցի չկառուցեն իրենց ունեցածից զատ, որ օգնեն մուսուլմաններին՝ նրանց թշնամիների դեմ»:

Ըստ մի ուրիշ տարբերակի, բնակիչները սկզբում պաշտպանվեցին, հետո դուրս եկան քաղաքից կռվելու, բայց պարտվեցին և խաղաղության դաշնագիր խնդրեցին:

Թաբարին տալիս է դաշնագրի երկու տարբերակ. Դրանցից առաջինն այս է. «Հանուն աստուծո ամենագթածի և ամենողորմածի: Այս է Իյադ իբն Ղանմի թուղթը առ Ուռհայի եպիսկոպոսը: Ինձ բաց արեք դռները այն պայմանով, որ ամեն մարդ մի դինար և մի մուտա ցորեն վճարի: Իսկ դուք ապահովված եք ձեր կյանքի, ստացվածի և սորուկների վերաբերմամբ: Դուք պարտավոր եք մոլորած մուսուլմանին ճանապարհ ցույց տալ և կամուրջների մասին հոգալ, մուսուլմաններին նախազգուշացնել վտանգի դեպքում և ձեր ուժը նրանց ծառայեցնել: Վկա է աստված, և նա բավ է իբրև վկա»:

Նույն հեղինակը, մի ուրիշ աղբյուրից առնելով, տալիս է նաև դաշնագրի հետևյալ վարիանտը. «Հանուն աստծու ամենագթածի և ամենողորմածի. այս է Իյադ իբն Ղանմի և նրա հետ գտնվող մուսուլմանների թուղթը՝ Ուռհայի բնակիչներին ուղղված: Ես խնայեցի ձեր արյունը, գույքերը, արտերը, կանանց, քաղաքը և ջրաղացները, պայմանով որ դուք կատարեք ձեր վրա դրված պարտքը, այսինքն հոգ տանեք մեր ճանապարհներին, մեզ հյուրընկալեք՝ երբ մոլորվենք ճանապարհից: Վկա են աստված, հրեշտակները և մուսուլմանները»:

Քաղաքը մնաց արաբների ձեռքում մինչև 944 թվականի օգոստոսի 15-ը, երբ Հովհան Գուրգենը (Կորկուասը) գրավեց այն: Այդ դարում ապրող իբն Հավկալը հաղորդում է, որ Ուռհայում կային 300-ից ավելի եկեղեցիներ, իսկ Մակդիսին քաղաքի մայր եկեղեցին, որի առաստաղը զարդարված էր ճոխ խճանկարներով, աշխարհի չորս հրաշալիքների կարգն է դասում:

1025 թվականին քաղաքը պատկանում էր Բանու Ումայրիներին, երբ բնակիչներն ապստամբելով հանձնվեցին Դիարբեքիրի Մրվանյան Նասր ալդ Դաուլային: Հետո այն կրկին անցավ բյուզանդացիներին, որոնք քաղաքի կառավարչի պաշտոնը հանձնում էին հայազգի զորականների: XI դարի սկզբումն Աբուկաբն էր իշխում: Հետո՝ նրա որդի Վասիլը: 1070 թվականին, երբ Ալփ Արսլանը 50-օրյա պաշարման ենթարկեց քաղաքը, քաղաքի հաջող պաշտպանությունը վարում էր Վասիլը, որի մահից հետո Ամբատը կառավարեց 6 ամսի չափ, մինչև Փիլարտոսը տիրացավ քաղաքին՝ 1083 թ. սեպտեմբերի 23-ին:

1086—1087 թվականներին, օգտվելով Փիլարտոսի բացակայությունից, նրա տեղակալին սպանեցին ու քաղաքացիները հանձնվեցին Մելիք Շահին: Այս վերջինը կառավարիչ կարգեց Պուզան ամիրային, իսկ երբ նա Դդուշի դեմ կռվելիս սպանվեց, Թորոս Կյուրապաղատը քաղաքի կառավարչությունը տվեց Հեթումի որդուն: Թորոսը Մելիք Շահի եղբայր Դդուշի հետ համաձայնվեց իբրև վասալ սել-

ջուկյան սուլթանին, իսկ Դյուշի մահից հետո՝ նա փաստորեն տիրացավ քաղաքին, սիրաշահելով մեկ սելջուկներին, մեկ բյուզանդացիներին։ Ի վերջո իր դիրքը ավելի ապահովելու նպատակով օգնություն խնդրեց խաչակիրներից հրավիրելով Բոդվինին, որ ստանձնի քաղաքի պաշտպանությունը։

Նա ավատական բիրտ բարքերով մի կեղեքիչ էր։ Ժողովուրդն ըմբոստացավ նրա դեմ՝ Բոդվինի քողարկված մեղսակցությամբ և քաղաքը հանձնեց այս վերջինին, Բնակիչները, սակայն, շուտով սկսեցին դժգոհել Բոդվինից, որովհետև նա ֆրանկ ասպետներ բերել տվեց ու կազմեց օտար ազնվականություն, որը արհամարհում էր հայ և մյուս տարրերին։ Հայերը, համաձայնության գալով Օրդոկյանների հետ, փորձեցին ապստամբել, բայց այդ չհաջողվեց նրանց։

Եդեսիայի կոմսության տիրացման պատմության և ներքին խռովությունների մասին տեղեկություններ են տալիս Գուլիելմոս Տյուրացին (IV—II—VI), Ալբերդ Դ էքսը (III, XIV, XXV), Գիբեր դը Նոժենը (III, XIII), Ֆուլք դը Շարտրը (ch. VI) և Անտիոքի երգը (Chanson d'Antioche chant III couplet 24, բայց այդ բոլորը շատ համառոտակի։ Ավելի մանրամասն տալիս է Ուռհայեցին (էջ 316—319)։

Եդեսիայի լատին կոմսությունը, որի հիմքը դրեց Բոդվինը, ընդգրկում էր Եդեսիան, Սամոսատը, Սրուջը և Թլպաշարը։

Խաչակիրները խաբեական միջոցներով քաղաքին տիրանալուց հետո, անփույթ գտնվեցին նրա պաշտպանության գործում, և հաճախակի արտաքին հարձակումներից բնակչությունը մեծապես տուժեց։

Իր դիրքով, Եդեսիան խաչակրաց ավատական ստացվածքների ամենահեռավոր ծայրամասն էր։ Այնտեղից ֆրանկները կարող էին իրենց վերահսկողության տակ առնել Մոսուլի և Հալեբի, Բաղդադի ու Սելջուկյան Ռումի ճանապարհներն ու կարավանները։ Զանգի ամիրան այդ կետի վրա դարձրեց իր ամբողջ ուշադրությունը և իր ուժերով առաջացավ նրա վրա։ Եդեսիայի տեր Ջոսլին II-ը վտանգի առաջ լքեց քաղաքը, առանց պաշտպանության ուժեր թողնելու։ Եդեսիայի պաշարումն սկսվեց 1144 թվականի նոյեմբերի 28-ին։

Պարիսպները անքակտելի լինելով, Զանգին սկսեց ներքևից փորել և հրդեհել, որից հետո, մի մասը քանդվեց և դեկտեմբերի 23-ին պաշարողները բռնի ուժով մտան քաղաք և բնակչությանը անգթաբար կոտորեցին։

Պատմիչները ամենատխուր գույներով են նկարագրել Եդեսիայի աղետը։ Շնորհալին «Ողբ Եդեսիայի» բանաստեղծության մեջ գրում է.

«Եդեսիա, Ուռհայ քաղաք,
Որդեկորույս որբ և այրի»։

Աբուլֆարաջն ասում է, թե Եդեսիայի առաջին և երկրորդ գրավման ժամանակ 30 հազարից ավելի մարդ կոտորվեց։

Նուրադդինի մահից հետո 1174 թվականին քաղաքին տիրացավ նրա եղբորորդի Սայֆադդին Ղազին։ 1182 թվականին քաղաքն անցավ Սալահադդինին, որը հանձնեց Մալիք Մանսուրին։ Երբ 1218 թվականին Մալիք ալ-Ադիլը մեռավ, նրա որդին՝ Մալիք ալ-Աշրաֆ Շարաֆադդին Մուսան դարձավ Ուռհայի, ինչպես և Խառանի և Խլաթի տերը։

210. Ռաճվա: Դաշտաձև հովիտ է, լեռներով շրջապատված, Բաղեշից 4 ժամ հեռավորության վրա՝ դեպի հյուսիս, Մուշից դեպի արևելք և Դատվանից դեպի արևմուտք (Ինճիճյան, Աշխարհ., Ա, էջ 176), «Բքալից և մրրկոտ ձոր, որ տա-

րածվում է Բաղեշի և Դատվանի միջև, Վանա ծովի արևմտյան կողմում, իսկ հլաթից այն բաժանված է Նեմրութ լեռներով» (Ն. Սարգիսյան, Տեղագրութիւն, էջ 247)։

Այստեղից է սկսվում հռչակավոր Ռահվա լեռնանցքը, որը հին հայերը կոչում էին «Ձորայ պահակ»։

211. Զ ա բ: Տիգրիսի ճյուղը, հայ պատմիչներից «Զավ» կոչված։ Քսենոֆոնի մոտ Ζαπατας. Պլինիոսի մոտ՝ Zerbis (Ինճիճեան, Հին հայ., էջ 152)։

Պտղոմեոսի մոտ Մեծ Զաբը կոչվում է Լիկոս, «Գայլ գետ», իր արագության համար կոչվեց նաև «Արուջունուն», մոլեգին ջուր (Ինճիճեան, Աշխարհ. Ա, էջ 246)։

212. Զարևանդ: Նաև Զարաւանդ։ Պարսկահայքի ամենահյուսիսային գավառն է, հիշատակվում է Հեր գավառի հետ միասին։

Պլինիոսի մոտ՝ Zoaranda կամ Zoroanda ըստ Խորենացու գավառը այդպես է կոչված Զրվանի անունով։

«Զարեւանդ գաւառ Պարսկահայոց և քաղաք նորա Տիլման իբրև չորիւր ժամիւ հեռի կայ ի ծովէն, կաւակերտ տամբք և պարսպօք. ի մտից հարաւոյ քաղաքին կան աւերակք հնոյ Սաղամաստ քաղաքի» (Ալիշան, Տեղագր. Հայոց Մեծաց, էջ 57)։

213. Աղ-Զավազան կամ Անձևացիք. Վանա ծովի հարավ-արևելյան կողմում տարածվող գավառ լեռնային ամուր բերդերով, որը Վասպուրականի նահանգի մասն էր կազմում։

Արաբ աշխարհագիրները աղ-Զավազան անունով են հանաչում Բոհդանի շրջանը, Տիգրիսի, Բոհդանսուի և Փոքր Խաբուրի միջև տարածվող եռանկյունաձև գավառը։

Անձևացիք, ինչպես և շրջակայքի Կորդուացիք, Մոկացիք և Ակեացիք, ըստ Մովսես Խորենացու (գիրք Բ, Ը) ամիկ դասակարգից բարձրացված նախարարություններ էին։

Բյուզանդը այդ տոհմից հիշում է Շահեն իշխանին՝ Տիրան թագավորի ժամանակ (Դպր. Գ, գլուխ ԺԲ) և Մեհառ իշխանին՝ Արշակի ժամանակ (Դպր. Դ, գլ. ԺԱ), իսկ Պապի ժամանակ՝ Գնել իշխանին (Նույն, Դպր. Ե, գլ. ԼԲ)։

Վարդանաց ժամանակ Եղիշեն հիշատակում է Անձևացյաց տոհմից Սմավոն, Զուարեն և Առաւան իշխաններին։ Ավելի ուշ, IX դարի կեսում, Թովման հիշատակում է Պատրիկ Անձևացուն, որ Արծրունիների հետևորդ էր, երբ Աշոտը գնաց օգնելու հայոց Բագրատունի իշխանին՝ Մուսե զորավարի դեմ (Թովմա, էջ 186)։

Բուղայի դեմ նույն Պատրիկն ու Գեորգը մասնակցում են Գուրգեն Արծրունու դնդում։ Այդ դեպքերի ընթացքում Անձևացյաց տեր Մուշեղի մահից հետո այս վերջինի տիկնոջ հրավերով Գուրգեն Արծրունին տեր դարձավ Անձևացյաց ու կռվեց Դերենիկի ու նրա պաշտպան Սահակ Բագրատունու բանակի դեմ (Թովմա, էջ 338 և 345)։

Հայ պատմիչների մոտ չկա հիշատակություն Անձևացյաց որևէ իշխանի մասին, որը արաբական արշավանքների ժամանակ օգնած լինի թշնամուն, ինչպես գրում է Յակուտը։ Սեբեոսը հիշատակում է միայն Մոկաց Վարդիկ իշխանի մասին, որը կոչվում էր Ակնիկ և որը օգնեց թշնամուն՝ անցնելու Մեծամորի կամուրջը (Սեբեոս, էջ 175)։

214. Զում: Թերևս նշանակում է «Զոմ» գետանցքը։ «Զոմաքտակ կամուրջ» (Կաղանկտ. էջ 113)։

215. Սատիղամա։ Այժմ, Բաթման-սու, ըստ Հյուբշմանի՝ Քաղիրթ գետն է (Հյուբշ., Հին Հայոց տեղանունները, հատ. Ա, 1907, էջ 212), Պրոկոպիոսի հիշած Նիմփիոսն է։ Սեմական լեզվում «Ցիթիթմա» նշանակում է արյունախում։ Կոչված է նաև Քալլարի» (Մարկվ., հատ. Ա, 1915, էջ 116)։

216. Սարալան։ Սավալան լեռն է, Արտավիլից արևմուտք, որ ամբողջ Իրանական Ադրբեջանի ամենաբարձր սարն է։

217. Սիրաչ-Թայր։ Շատ հավանական է, որ Շիրակ և Տայք գավառների մասին է ակնարկվում։

218. Սարավ կամ Սերավ, Սարաբ քաղաքը Իրանական Ադրբեջանում՝ Արտավիլից Թավրիզ տանող ճանապարհի վրա։

219. Սարբաբր լինելու է Սարեպատր, որը Խույթ-Սասնա լեռնագավառի Արզնի գետի աղբյուրների սահմանների մեջ գտնվող միաբնակ ասորիների վանք է (Տոմաշեկ, էջ 13)։

220. Սուրմարի կամ Սուրմար—ժողովրդական ձևափոխությամբ Սուրբ Մարի, Լաստիվերտցին ասում է Սուրմառի բերդաքաղաք, Մեծոփեցին «Երկիր Սուրմարու», Օրբելյանը և Գանձակեցին՝ «Սուրբ Մարի». այժմ կոչված է Սուրմալու։ Բյուզանդական աղբյուրներում Ագիա Մարիա։

221. Սարիր։ Նշանակում է «գահ». տիրողը կոչվում է «Սահիբ աս-Սարիր»—«Գահի տերը» երկիրը գահի տիրոջ երկիր։ Դաղստանի հյուսիսային մասն է, Անդիական Կոյ-սու և Ավարական Կոյ-սու գետերի հովիտը։

Յակուբին հիջրի 107 թվականի տակ գրում է. «Մրվան իբն Մուհամմադը արշավեց Սարիրի թագավորի ամրոցը։ Այս գահը, որը ոսկուց է շինված, ըստ ավանդության Անուշիրվանն է ուղարկել, որի համար երկիրը կոչվել է Սարիր։ Իշխանը խաղաղության դաշն գրեց Մրվանի հետ՝ նրան 1500 սևամազ ստրուկ տալու պայմանով»։

Ըստ Եվտիքիոսի՝ Հերակլ կայսրը Սանարիայի թագավորից օգնություն ուզեց և նրան իրավունք շնորհեց դաշնագրով՝ իր ներկայությամբ նստել գահի վրա։ Այդտեղից առաջացավ գահի տեր անունը, որ տրվում է այդ երկրի թագավորին։

222. Սալմաս կամ Սալմաստ։

223. Սամանդու։ Ծամնդավ. նաև Ծամանդի, Ծամընդաւ, Զամանտա կոչված գետի կողքին։ Կարսի Գագիկ թագավորը այդ բերդը ավատ ստացավ Դիոգեն կայսրից, Կարսի փոխարեն, որն հանձնեց նրան և գնաց հաստատվեց Ծամնդավում յուր ազատներով (Ուռհ., էջ 181)։

1081 թվականին Ռուբենը այս բերդում հիմնեց Ռուբինյանների իշխանությունը։ Ալիշանը տեղագրում է հետևյալ կերպով. «Միջագետք առաջից Սարոսի լեռնային բարձրատափ Խոզան-Օղլուի և վերագոյն ևս յանուն արևմտյան գետառաջիցն» (Ալիշան, էջ 61)։

224. Սումայսաթ— Սամոսատ։ Միջնադարյան հայ մատենագրության մեջ կոչվում է Շամշատ։ «Հռոմեական շրջանի քաղաք է՝ Վերին Եփրատի աջ կամ հյուսիսային ափի վրա, որտեղ գետը դեպի արևմուտք է շեղում իր ընթացքը։ Շատ ամուր բերդ էր։ Մասուդին ասում է, որ Սամոսատը կոչվում էր նաև Կալաաթ ատ-Թին» (կավի բերդ) (Le Strange, էջ 107)։

Այս քաղաքը սերտորեն կապված է հայ գրերի գյուտի և հայկական մշակույթի պատմության հետ։ Սամոսատումն է, որ Մաշտոցն իր հնարած նշանագրերը Հռոփանոս անունով հույն գեղագրի ձեռքով հարդարում և հարմարեցնում է և այնտեղ է սկսում փորձել, իր երկու աշակերտների հետ, Աստվածաշնչի թարգմանությունը։

Ավելի ուշ ժամանակների համար, Միք. Ասորին գրում է, թե երբ հույները սկսեցին արաբներից գրավել Միջագետքի հողերը, հայերին բերին և բնակեցրին Սամոսատում, իսկ երբ հետո սելջուկները վերագրավեցին այդ վայրերը, և հույները հեռացան այդ քաղաքներից, հայ զորականները տիրեցին և ամրացան այդ երկրամասի բերդերում։

Վասիլ I կայսրն էր, որ գրավեց այն 958 թվականին։ Այդ քաղաքի գրավման ժամանակ աչքի ընկավ Հովհաննես Չմշկիկ զորավարը, որ հետո կայսր դարձավ։

Միխայել Ասորու խոսքերը ճիշտ են այն իմաստով, որ բյուզանդացիների նահանջից հետո և շնորհիվ այդ նահանջի, բավական թվով հայ իշխաններ կարողացան համաձայնության գալ սելջուկների հետ և պահել իրենց իշխանությունը՝ նրանց գերիշխանությունն ընդունելով։ Նույն հեղինակը Սամոսատում հիշատակում է Կոստանդինին, Դավթուկին և Սմբատի որդի Քրիստափորին, որոնք տիրում էին նաև մերձավոր Հռչակավոր Մար Բարսումայի վրա։

XI դարում Սամոսատը Բյուզանդիայի արևելյան հրամանատարության կայանն էր, և այնտեղ ուժեց Պետրոս Գետադարձ կաթողիկոսը Անին և մյուս ամրությունները կայսեր հանձնելու համար (Լաստիվերտցի, էջ 52)։

1098 թվականին Բոդվենը և Կոստանդին Կառկառի իշխանը փորձեցին միասին սելջուկներից գրավել Սամոսատը։ Բայց քիչ հետո, երբ Բոդվինը տիրացավ Եդեսիայի կոմսությանը, Թորոսի ձեռքից ձեռք բերած փողով գնեց Սամոսատը։ Ավելի ուշ, մուսուլմանների ձեռքն անցնելուց հետո էլ, ինչպես վկայում է Յակուտը, քաղաքը պահպանեց իր հայ բնակչությունը։

225—227-անծանոթ վայրեր։

228. Սանջա.— *Նահր ալ-Ազրակ. Կապույտ գետ. Եփրատի փոքր վտակներից է, որը հասնելով Սամոսատի մոտակայքը թափվում է Եփրատի մեջ, այդ քաղաքից ոչ շատ հեռու։ Հույները Սինդաս կամ Սինջա են կոչում։ Հայերի մոտ՝ Շնչե։ Հռչակավոր էր կամուրջը, որը կառուցվել է հռոմեացիների օրոք.արաբացի գրողների կողմից նկատվում է որպես աշխարհի հրաշալիքներից մեկը։ Ուռհայեցին կոչում է «Շնչեայ Կանտարայն» (էջ 443), Միք. Ասորու թարգմանության մեջ՝ Շնճե։*

229. Սինդաբրայա: *Ըստ Թաբարիի՝ Բաբեկի նախորդ Սմբատ իբն Ջավիտանի անունով է կոչվում։*

230. Սանճ-Ասֆիդ: *Արդյո՞ք Սուկաւ կամ Սուկաւէտ լեռներն են Բագրևանդ գավառում, որտեղ նահատակվեցին Սուքիասյանք։ Բառի նշանակությունն է սպիտակ քար, որը մերձեցնում է նրան Սպիտակ լեռան (այժմ՝ «Աք-դաղ») հետ* (Lynch, Armenia, II, *էջ 402*)։

231. Սուկ Վարդան.— *Վարդանի Շուկա—հին Կահիրեում (Ֆոսթաթ) գտնվող շուկան, որ Վարդան հայի անունով է կոչված։*

Արաբ պատմիչները Վարդան ար-Ռումի (Հոռոմի Վարդան) անունով են նրան կոչում, որովհետև նա Հայաստանի բյուզանդական մասից էր ու նախապես ծառայել էր կայսերական բանակների մեջ։ Հայ պատմիչներն ու բյուզանդացի հեղինակները նրա մասին չեն խոսում։

Եգիպտոսի աշխարհակալ Ամրու իբն-ալ-Ասի զորավարի ազատագրյալ գերին էր Վարդանը։ Նա ընկերացավ Ամրին՝ Եգիպտոսի գրավման ժամանակ, որպես նրա դրոշակակիրը, և գնահատվեց իր ռազմական ու վարչական գործունեությամբ։ Ամրի մահից հետո Մուավիայի կողմից կարգվեց Եգիպտոսի հարկապետ, բայց շուտով պաշտոնազուրկ արվեց։ Բելաձորին ավանդում է, թե Մուավիան հրամայեց նրան՝ ծանրացնել կոպտերի վրա դրված հարկը, բայց Վարդանը մերժեց,

պատճառաբանելով, թե՝ չի կարելի այդ անել առանց խախտելու փոխադարձ համաձայնությամբ ստորագրված հաշտության պայմանագիրը։

Իբն Աբդ ալ-Հաքամը հաղորդում է, թե Ֆուսթաթ քաղաքի մեջ Ամրուն իբրև ավատ Վարդանին տվեց մի հողամաս, որը արաբ պատմագրի նկարագրածով բավական ընդարձակ մի կալված էր (Caetani, Annali dell 'Islam, vol. V, էջ 405)։

Երբ Ամրը սկսեց կառուցել Ֆուսթաթը, Վարդանն օժանդակեց նրան. նա շինեց մի շուկա, որը կոչվեց իր անունով։ Վարդանի անունով Եգիպտոսում կան նաև այլ վայրեր, սակայն հազիվ թե բոլորն էլ միևնույն այս Վարդանի անունով լինեն։

Վարդանի մասին արաբ պատմագիրները զանազան տեղեկություններ են հաղորդել։

232. Ամր կամ Ամրու իբն ալ-Ասի.— Քուրայշյան ցեղին էր պատկանում և սկզբում կռվեց Մուհամմադի և նրա ուսմունքի դեմ, հետո ընդունեց նոր կրոնը և դարձավ իսլամական կրոնի ամենաուժեղ տարածողներից մեկը։ Լավ ռազմագետ էր, հռչակավոր դարձավ Ասորիքի գրավման կռիվներում։ Նա 640 թվականի սկզբին արշավեց Եգիպտոսի վրա՝ հակառակ Օմար խալիֆի կամքի, խալիֆին դնելով կատարված իրողության առաջ։ Եգիպտոսի գրավումից հետո մի քանի տարի կառավարեց երկիրը։

Օմար և Օթման խալիֆները, նրա նկատմամբ անբարյացակամ լինելով, նրան հեռացրին պաշտոնից, բայց երբ 645 թվականին բյուզանդական մի նավատորմ հայազգի Մանվել զորավարի հրամանատարությամբ վերագրավեց Ալեքսանդրիան խալիֆը ստիպված Ամրին հանձնեց հրամանատարությունը, որ 646 թվականին երկրորդ անգամ քաղաքը գրավելով վտարեց բյուզանդացիներին։

Ամրը վճռական դեր կատարեց Մուավիայի և Ալու միջև մղված խալիֆայական հաջորդության կռիվներում, ջերմ պաշտպան լինելով առաջինի թեկնածության և ապահովելով նրա հաղթանակը։

233. Սուայդիա: Հին Դիոնիսիոսի վայրը, հռոմայեցիների ժամանակ ծաղկածր Ուռհայեցին հիշատակում է. «Ի բերդն որ կոչէր Սևերակս» այլ տեղ «Սևաւերակ» (էջ 187—188)։ Եդեսիայից երկու օրվա հեռավորությամբ դեպի հյուսիս, կամ Կառկառից հարավ-արևելք, Եփրատի արևելակողմում։ Գավառն էլ կոչվում է Սևերէկ (Ինճիճեան, Աշխարհագիր, Ա, էջ 227)։ Այսպես է կոչվել, որովհետև նրա հողն ու քարերը առհասարակ սև են։

234. Սիավարդ: Հայ պատմիչները կոչում են Սև Որդիք (Հովհ. կաթ.), Սևուորդիք (Ասողիկ), Սաւորդիք (Վարդան, Աշխ.)։ Խոսքը Սևորդյաց մասին է։ Բելազորու մոտ Ալ-Սավարդիա السودة, որոնք, ասում է հեղինակը, զորացան Եզիդ իբն Ասիդ ոստիկանի Հայաստանից հեռանալուց հետո և բռնություններ գործադրեցին, մինչև որ Բուղան եկավ ընկճելու նրանց ուժը։

235. Սայհան:— Հների Սարոսը։ Բխում է Տավրոսյան լեռնագոտու երկու անջատ վայրերից, նրա երկու ճյուղերը միանում են Սսի և Ադանայի միջև ու կազմում մի մեծ գետ, որը թափվում է Միջերկրական ծովը։ Ներկայիս՝ Կզըլ Իրմակ։

236. Սայսաբան: Գերես նույնն է հաջորդի հետ։

237. Սայաջան:— Սիսական։ Այսպես էր կոչվում Սյունիքի վայրերից մեկը։ Խորենացին գրում է. «Աստ բնակեալ Սիսակ լնու շինութեամբ զսահման բնակութեան իւրոյ, և զաշխարհն կոչէ իւրով անուամբ Սիւնիք, այլ պարսք յստակագոյն իսկ՝ Սիսական կոչեն» (Պատմ., գիրք Ա—ԺԲ)։ Ըստ հայ պատմագրի, ուրեմն, նահանգի անվանատու անձը Հայկի թոռներից մեկն է։

238. Սիս: Հռչակավոր քաղաք Կիլիկիայում, որ Ռուբինյան թագավորության

մայրաքաղաքն էր։ Քաղաքի ծագմանը և բառի ստուգաբանությանը զանազան մեկնաբանություններ են տրվում։ Ըստ ոմանց, սա արաբերեն Սիս բառն է, որ նշանակում է համեմ ծաղիկը, ըստ ուրիշների՝ Սիս կամ Սիսիա պարսկերեն բառից է, որ նշանակում է լեռների մեջ կիրճ։

Աբու-լ-Ֆիդան գրում է՝ թե Սիսը նույնպես պարիսպներով է շրջապատված և ունի միջնաբերդ։ Երկար քառանկյուն ձև ունի, մի լեռան վրա կառուցված։ «Մեր ժամանակներում,— ասում է նա,— հայերի թագավորը իրեն մայրաքաղաք է դարձրել»։ Իբն Սայիդն ասում է. «Սիս քաղաքը կառուցել է Փոքր Հայաստանի թագավորներից Իբն Լավունը։ Նրանից առաջ այդ քաղաքը սահմանային գլխավոր քաղաքներից մեկն էր»։ Ջամալեդդինը իր ժամանակագրության մեջ Սսի կառուցումը վերագրում է Հարուն ար-Ռաշիդի մի սպային, որը կոչվում էր «Սիսիաթ»։ Ըստ Կալկաշանդիի, «միջնաբերդը ամրացված է, ունի երեք պարիսպ, քառանկյունաձև սարի գագաթի վրա»։

Հիշատակվում է Ասարհադդոնի (Ն.ք. մ.թ. 680—669) արձանագրությունների մեջ։

Ըստ Վ. Լանգլուայի, նախկին Flaviapolis-ն է (Rapport sur l'expedition archeologique de la Cilicie et de la Petite Armenie, էջ 41)։ Ըստ արաբական աղբյուրների, Սսի Արմանին վերակառուցեց քաղաքը՝ արաբական տիրապետության շրջանում, բայց Լևոն II էր, որ ամրացրեց այն, նույնպես պարիսպներով շրջապատեց ու մայրաքաղաք դարձրեց։

Վիլգեբրանդ գերմանացին, որ ներկա էր գտնվել Լևոնի թագադրության հանդեսին, 1211 թվականին հետևյալ նկարագրությունն է անում Սսի մասին։ «Սիս քաղաքը տեր թագավորի մայրաքաղաքն է, բնակիչներն անթիվ են և հարուստ, պարիսպ չունի այն, ուստի քաղաքավան պիտի կոչեի, եթե մեջը չլիներ հայոց կաթողիկոսարանը։ Սակայն ունի մի ամուր բերդ լեռան գագաթի վրա, որի ստորոտից սկսվում է քաղաքը և աստիճանաբար տարածվում դաշտը։ ... Այս էլ գիտցեք, որ տեր թագավորը այդ Սիս քաղաքի մոտ պատրաստել է իր համար դրոսանքի մի պարտեզ, որի սքանչելի գեղեցկությունը նկարագրելը, խոստովանում եմ, որ իմ կարողությունից վեր է»։

XIX դարի սկզբին Սիսը նկարագրել է Ինճիճյանը (Աշխարհագրութիւն, Ա, էջ 360—363)։ Իսկ XIX դարի վերջի նկարագրությունը տվել է Ալիշանը (Սիսուան, էջ 216)։

239. Սվազ։— Փոքր Հայքի կենտրոններից մեկը։ Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրությունում գրում է. «Մեծ ու հռչակավոր քաղաք։ Ունի մի փոքր միջնաբերդ և աղբյուրներ, բայց ծառերը քիչ են։ Նրա մեծ գետն է Ալիսը, քաղաքից մոտ կես փարսախ հեռավորության վրա։ Իբն Սայիդն ասել է, թե Սվազը վաճառականների խիստ ծանոթ կենտրոնավայր է և գտնվում է բաց դաշտի մեջ։ Ճամփորդները, որ այդ երկրով անցել են, տեղեկացնում են, թե Սվազի և Կեսարիայի միջև հեռավորությունը 60 մղոն է և այդ երկու քաղաքներն իրար միացնող ճանապարհի երկայնքով հաշվում են իջևաններ՝ հյուրանոցներով, որտեղ կանգ առնող ճամփորդները կարող են գտնել այն ամենը, ինչի կարիքը ունեն, մանավանդ ձմեռ ժամանակ, որովհետև ձմեռն այնտեղ սաստիկ ցուրտ է լինում»։

Միք. Ասորին կոչում է «Սեաստ», Ուռհայեցին՝ նաև «Սերաստիա»։ Այս վերջին ձևով է կոչվում մեզ մոտ ընդհանրապես։

240. Շաբարան—Շապորան (Գանձակեցի, էջ 184)։ Այս քաղաքն էլ, ուրիշների շարքին կառուցել է Աղվանից եպիսկոպոս տեր Վիրոն։ Այժմ Շապրան գյուղ՝ Շամախից հյուսիս, Ադրբեջանական ՍՍՌ Ռուսթավի շրջանում.

**241. Շաքաո:**— (Գանձակեցի, էջ 183)։ Աղվանից Տեր Վիրո եպիսկոպոսի կառուցած հինգ քաղաքներից մեկն է։

**242. Շիրվան:**— Կասպից ծովի արևմտյան ափի վրա գտնվող գավառ է, Կուրից արևելք։ Նախապես Աղվանքի մասն էր կազմում։ Պարտավից դեպի Դարբանդ ճանապարհը անցնում է Շիրվանի և Շամախի վրայով։

Շիրվանի իշխանները կոչվել են Շիրվանշահ։ Եզիդ իբն Ուսայդ Աս-Սուլամին, որ Արմինիայի կառավարիչ էր Մանսուր խալիֆի ժամանակ, ստանձնեց Շիրվանի նավթային աղբյուրների և աղահանքերի սեփականությունը։ Նրանից հետո Շիրվանշահ տիտղոսը ստանձնեցին Եզիդ իբն Ուսայդ աշ-Շայբանու սերունդի արաբ կառավարիչները, որոնցից մեկը, Հայթամ իբն Խալիդը, ստեղծված շփոթ կացությունից օգտվելով, ինքն իրեն հռչակեց անկախ՝ Մուտավաքիլի մահից հետո (861) և պահովեց իրեն համար Շիրվանշահ տիտղոսը։ Նրա հիմնած դինաստիան, «Մազիադյան» կոչված, կառավարեց մինչև 1068 թվականը՝ ըստ Շահրիզադ պատմագրի տված տեղեկության։ (Տե՛ս Encycl. of Islam այս անվան տակ)։

Բայց ըստ Մասուդի պատմիչի տված տեղեկության (Մրուջ ալ-Զահաբ) 911 թվականին Եռանշահիկ Մահմեդ իբն Եզիդը գրավեց Շիրվանը և վերցրեց Շիրվանշահ տիտղոսը և այդպիսով հին Աղվանքում բովանդակ իշխանությունը միացրեց, կենտրոն ունենալով Շամախու մոտ մի վայր։ Հետո այդ իշխանները սելջուկյաններին հարկատու դարձան։

Մինչև IX դարը Շիրվան էր կոչվում Կասպից ծովի ափին գտնվող շրջանը (այժմ՝ Ռուսթավի շրջան), համանուն Շիրվան քաղաքով, որն հիմնվել է Սասանյանների ժամանակ։ Այժմ՝ Շիրվան գյուղ։

IX դարից, երբ Շամախում նստող «Իրանշահները» նվաճեցին այս երկիրը, այնուհետև Շիրվան անունը ստացավ Կուրից դեպի հյուսիս գտնվող ընդարձակ երկրամասը՝ Շամախի կենտրոնով։

Մելիք շահի ժամանակ հիշատակվում են Ֆարիբուրզը և նրան հաջորդած Մանուչահր և Աֆրիդուն իշխանները։

XIII դարի սկզբում, երբ գրում էր Յակուտը, Շիրվանշահն էր Ֆարիբուրզ իբն Աֆրիդուն իբն Մանուչահրը։

**243.— Շուղր:**— Գյուղը գտնվում է Որոնտեսի հովտում, Ամանոսյան լեռնաշղթայի «Սևաւ» լեռան կողքին, որտեղ բազմաթիվ անապատներ և մենաստաններ էլ կային։

Շուղրի վայրի մասին զանազան կարծիքներ կան։ Ոմանք ասում են, թե այն գտնվում է Սսի և Մարաշի միջև, այսինքն՝ վերոհիշյալ վայրից դեպի շատ հյուսիս, ոմանք՝ «յերի Քեսնոյ, իսկ այլ ոմն ի հնոց՝ ստուգագոյն տայ նշան ըստ իւրում գիտութեան՝ «մերձ ի Նոր քաղաք» ասելով, բայց Նոր քաղաքի տեղն անծանոթ է»։ Իսկ Գրիգոր Տղան ավելի հեռավոր վայր է նշանակում՝ Անտիոքից հարավ, և ոչ իբրև վանք, այլ իբրև բերդ։ «Ձի հարաւոյ կուսէ սկսեալ նշանակել դաշխարհակալութիւն Սալահադդինի յետ Լաոդիկիա և այլոց՝ առնու, ասէ.

Եւ զբարն անուամբ զարմանալին,
Որում զՇուղրն կոչէին»։
(Սիսուան, էջ 407)։

«Մանոթ է արդ բերդս այս ի կատար անմատոյց քարաժեռի ի հարաւոյ կուսէ «Ճիզր էլ Շողր» գեղջ ի դետահովտին Որոնտեսի և կոչի՝ Քալաատ Միրզէ» (Սիսուան, էջ 407)։

Մի ժամանակ կաթողիկոսարան դարձավ. այնտեղ դարգացան ու մեծացան Գրիգոր Փոքր վկայասերը ու նրա եղբայր Ներսես Շնորհալին։ Վարդանն ասում է. «Աթոռն Հայոց շրջեալ ի բազում վայրս, ի Կարմիր վանքն, և ի Շուղրն և Ծովքն, գնացեալ դադարէ ի Հռոմկլայն» (Վարդան, էջ 128)։

Աբու-լ-Ֆիդան գրում է. «Շուղրը և Վակասը դեմ առ դեմ, իրարից մի նետաձիգ հեռավորությամբ, ամուր բերդեր են, որոնք բարձրանում են մի լեռան երկարաձև գագաթի վրա։ Սրանց ստորոտում առատ պտղաբեր այգիներ կան։ Նրանցից յուրաքանչյուրն ունի պտղաստան, առատ մրգերով։ Յուրաքանչյուրն ունի մի մզկիթ, մի բեմ և մի փոքր մարգ՝ իր շուրջը։ Գտնվում է Անտիոքից Աֆամեա տանող ճանապարհի գրեթե մեջտեղը։ Հիշյալ երկու բերդերի արևմտյան կողմը, մի ձիագնաց ճանապարհի վրա, հանրածանոթ Քասեյնֆահան կոչված կամուրջն է։ Այդ կամուրջի մոտ կա շուկա, որտեղ մարդիկ գնում են շաբաթվա մեջ։ Շուղրը և Վակասը Անտիոքից հյուսիս են գտնվում և նրանից բաժանված են լեռներով»։

Կաթողիկոսական աթոռի միաժամանակ վանք և բերդ լինելը հասկանալի է ֆեոդալիզմի պայմաններում, երբ հայոց կաթողիկոսը ինքը ֆեոդալ տեր էր իր կալվածներով, հպատակներով և պահակազորով։

244. Մալիք ալ-Ազիզ։— Հալեբի տերը։ Իշխեց Սալահեդդինի եղբայր ալ-Մալիք- ալ-Ազիզից հետո։ Ամրացրեց իր դիրքը Եգիպտոսի սուլթան Մալիք ալ-Քամելի օգնությամբ՝ գրավելով Շայզար բերդը։ Իր հորեղբայր ազ-Զահեր Դավուդից վերցրեց նաև Բիրան, Մեռավ երիտասարդ հասակում՝ 1246 թվականին։

245. Շաքե։— Կամ Շաքի, այժմ Նուխի։ Գավառ և քաղաք Աղվանքում։ Խորենացուն վերագրված աշխարհագրության մեջ նշանակված է իբրև Աղվանքի մաս։ «Շաքի» ձևով հիշատակում են՝ Կաղանկատուացին, Ասողիկը և Օրբելյանը։ «Շաքե» ձևով՝ Խորենացին, Վարդանը և Օրբելյանը ևս, որը ճշտում է վայրը Սյունյաց Աղվանից գավառում։

IX դարի սկզբում, արաբների հավանությամբ, Սահլ Սմբատյանը Շաքեի իշխան կարգվեց, ինչպես վկայում է Մասուդին։

«Սահլ Բաբեկին ձերբակալեց և հանձնեց Աֆշինին և դրա համար ստացավ պատվո զգեստ, թագ և ձի և տուրքից ազատ կացուցվեց (Մասուդի, Մրուջ ազ-Զահար, էջ 55)։ Վարդանը և Յակուբին տեղեկացնում են, որ խալիֆից նա իբրև վարձատրություն ստացավ մեկ միլիոն դիրհեմ՝ և նրանից հետո կոչվեց Սահլ Սմբատյան Եռանշահիկ։ Սահլը հետագայում Բուղայի կողմից աքսորվեց Սամարա՝ իր Մուսավիա որդու հետ։ Այս վերջինը հաջորդեց նրան որպես իշխան։

893 թվականին Շաքիի իշխանն էր Համամը, որի մասին Ասողիկը գրում է «Թագաւորն Աղուանից» (էջ 161), իսկ Օրբելյանը՝ «Թագ կապեաց և Աղուանից Համամ» (էջ 299)։

909 թվականին Տաթևի վանքի կալվածների սահմանները ճշտող պաշտոնագրերը ստորագրել են Գրիգոր, Եսայի, և Ատրներսեհ Աղվանից իշխանները (Օրբելյան, էջ 234)։ Մասուդին գրում է. «Շախեցիների թագավորը, մեր այս գիրքը գրելու ժամանակ, կոչվում է Ատրներսեհ» (Մրուջ, I, էջ 204)։

Դարձյալ նույն Մասուդին գրում է. «Սանարների թագավորության մոտ կհանդիպենք շախեցիներին, որոնք քրիստոնյա մի ժողովուրդ են, և որոնց մեջ ապրում են նաև բազմաթիվ մուսուլմաններ»։

Շաքին հին քաղաք է, թեև Գանձակեցին գրում է, թե՝ Տէր Վիրոյ Աղուանից եպիսկոպոսը շինեց հինգ քաղաքներ «յանուն Շաթայ զՇաթաո, զՇամքաո, զՇաքի, զՇիրվան, զՇամախի և զՇապօրան» (էջ 184), որն անում է վեց։

246. Շամախի։ Շիրվանի վերջին մայրաքաղաքը։ Բելադորին գրում է, թե այն

հիմնել է մուսուլմանական գարաշրջանում Շամախի իրն Շուջա Շիրվանի թագավորը՝ Հարուն խալիֆի (786—809) ժամանակ։ Մետաքսի արվեստի և վաճառականության կենտրոն էր։

Այժմ էլ Շամախի շրջանային կենտրոն Ադրբեջանական ՍՍՌ-ում։

**247. Շիմշար**։— Ասորերեն՝ Arsemsât, նաև հիշված Արշամաշատ, Arsamasoda կամ՝ Շամշադ։ Միքայել Ասորին գրում է «Աշնուշա», Ուռհայեցին՝ «Աշնուշատ»։

Ընկնում է Բալուի և Խարբերդի միջև։ Չորրորդ Հայքի մասն էր։ Գտնվում է Արածանի գետի ձախ ափին։ Հիմնված է 235 թվականին (մ. թ. ա.) Արշամ թագավորի կողմից։ Եղել է Ծոփքի մայրաքաղաք։

XI դարում Սասունի իշխան Թոռնիկ Մուշեղյանի բերդն էր։ «Յայսմ ամուրս գայր Թոռնիկ սակաւ արամբք և մտանէր ի բերդն իւր յԱշմուշատ քաղաք, ի յԱրծնոյ վերայ» (Ուռհայեցի, էջ 251)։

Ստույգ վայրի հարցը քննում է նաև Մարկվարտը (Տե՛ս Sudarmenien, հատ. Ա, 1915, էջ 110)։

Այն Խառաբա Նաչարան է։

**248. Չմշկածագ**.— Ծոփքում կամ Չորրորդ Հայքում։ Այդ անունը տրվեց քաղաքին Հովհան Չմշկիկ կայսրից հետո՝ որպես նրա ծննդավայրը։ Հին ժամանակ կոչվում էր Երապոլիս։

**249. Շամքոր**։— Կուր գետից հարավ՝ Շամքոր գետի ստորին հոսանքի վրա։ Ըստ Հովհաննես կաթողիկոսի, Շամքորը Ուտիք գավառի մասն էր կազմում և գտնվում էր նրա արևելյան ծայրամասում։

Աղվանից այս քաղաքը խազարները քանդել էին իրենց արշավանքների ժամանակ։ 854 թվականին Բուղան վերաշինեց այն և բնակեցրեց պահակազորով։ 1237 թվականին Գանձակից հետո մոնղոլները գրավեցին նաև Շամքորը, որը բաժին ընկավ Մոլար Նուին զորավարին։ Քաղաքի տերն էր Զաքարեի որդի Վահրամը, որը մնում էր Գարդմանում և հակառակ բնակիչների ստիպողական կոչին, չգնաց նրանց օգնության և փախուստ տվեց։ Մոնղոլները գրավեցին բերդը, քաղաքն ավերեցին ու բնակիչներին կոտորեցին (Վարդան, էջ 144—145, Գանձակեցի, էջ 228—229)։

Ակնարկված Եզիդ իբն Ուսայդը եղավ Հայաստանի կառավարիչ Ալ-Մանսուր խալիֆի (754—775) ժամանակ։

Ալ-Մանսուրը կառավարիչ էր նշանակված իր եղբոր՝ Աս-Սաֆֆահ Աբբասյան առաջին խալիֆի կողմից. երբ իր եղբոր մահից հետո գնաց գրավելու խալիֆայական գահը, նա Եզիդին դրեց ոստիկան։ Եզիդը կռվեց խազարների դեմ, վերակառուցեց ու բնակեցրեց Կարինը, որը Կոստանդին կայսրը գրավելուց հետո թողել էր։ Նա ետ կանչվեց խալիֆի կողմից հայերի դժգոհության պատճառով։ Նրա ժամանակ էր, որ դադարեցվեց հայկական բանակին հատկացված արքունի սակը։

Ղևոնդը նրա մասին հիշատակում է. «Թողոյր հրամանատար դատաւորութեան և հարկապահանջութեան ի վերայ աշխարհիս Հայոց զԵզիդ որդի Ուսայդի» (էջ 160)։ Եզիդը Հայոց վրա իշխան նշանակեց Սահակ Բագրատունուն։

**250. Շամիրան**.— կամ Շամիրամ։ Բերդ՝ Վասպուրականի Ճուաշ գավառում։ Թովման հիշատակում է հաճախ, օրինակ՝ «Յայնժամ ամրացեալ նստէր ի Շամիրամ բերդին Թաղէոս անուն, ի յԱկէացի տոհմէ Շերեփայ որդի ծանօթացեալ» (Թովմա, էջ 414)։ Նա այնտեղից իր գնդերով քաջությամբ կռիվներ էր մղում շրջապատի մուսուլմանների դեմ։

Մի այլ Շամիրամ հիշվում է Վանա ծովի արևմտակողմում՝ Նեմրութ լեռան Հարավում, Դատվանից դեպի հյուսիս։

Մեզ թվում է, որ հեղինակը նկատի ունի առաջին Շամիրամը։

251. **Շիզ**։— Մարաղայից դեպի հարավ, Ուրմիա լճի հարավ-արևելյան անկյունում՝ Թախտի Սուլայման կոչված վայրն է, որտեղ գտնվում էր Թերմարմայիսը, Ատրվշնասպի տաճարը։ Կոչվում էր նաև Քանջա (Լեյլան) կամ Քազնա։

Պատմիչները հաճախ միացնում են Շիզը և Ռանը։ Մասուդին (Մրուջ, II, էջ 131) ներկայացնում է Արշակունիներին՝ որպես Շիզի և Ռանի թագավորներ։ Այնտեղ էր կրակի տաճարը, որը Անուշիրվանը փոխադրել և տարել էր Բիրքա։

Հոֆմանը Մասուդու «Վալ Ռանը» ընդունում է ոչ թե Աղվանքի իմաստով, այլ հայերեն Վարարագ գետի անունով (V. Minorsky. Roman and Byzantine Campagnes in Atropatene)։ B. S. O. A. S. 1944, XI/². Հերակլի արշավանքների մասին խոսելիս Սեբեոսն ասում է. «Դիմեալ ի Գանձակն Ատրպատականի, բրէ զնա... Կործանէ զբագին Հրատին մեծի, որում Վշնասպն կոչէին» (էջ 261)։ Այնտեղ էր մնում ատրպետը, անշեջ կրակի պետը, որից՝ Ատրպատական պարսկերեն բառը։ Թովմա Արծրունին գրում է առնելով Սեբեոսից. «Կործանէ զբագին Հրատին Մեծի, որում Վշնասպն կոչեն և լնու զծովակն որ յանդիման Հրատին՝ դիակամբք» (էջ 159)։

252. **Սաֆսաֆ**։— (Ուռենիների բերդ)։ Քաղաք և բերդ, որ հնագույն Դիանան է, հավանաբար նախկին Faustinopolis-ը, որը Հարուն խալիֆն ամրացրեց և պահակազոր հաստատեց (Le Strange, էջ 139)։ Գտնվում է Լուլվա բերդից դեպի հյուսիս։

253. **Սակլաբ**։ Հիմա սլավոններ։

254. **Սալբ գետ**։ Այժմ Ջեբենե-սու, որը Ակլի մոտ թափվում է Տիգրիսի մեջ։

255. **Թաբարսարան**։— Նվաճումների գրքում Բելազորին գրում է Թաբարսարան շահ, [illegible], որը Անուշիրվանի կողմից Կովկասյան անցքերի վրա հսկելու համար դրված իշխաններից էր, Եղիշեն հիշատակում է «Թաւասպարան» (Եղիշե, 5)։ Այժմ Հարավային Դաղստանում, Սամուր գետի հովտում՝ Թաբարսարան ժողովուրդ և երկիր։

256. **Տարսոն**։— Արաբները կոչում են Թարսուս։ Տարսոնի հնությունը կորած է ավանդության մեջ։ Թովմա Արծրունին գրում է, թե Սենեքերիմ թագավորը «Շինէ զՏարսոն ի ձև Բաբելոնի, գետոյ ընդ մէջ անցանելոյ» (էջ 29)։

Հին պատմիչներն ունին տարբեր զրույցներ, որոնցից մեկի համաձայն Սարդանապալ I այնտեղ է թաղված և նրա հիշատակին հին բնակիչները հանդես էին կատարում (V. Langlois, Rap. sur l'exp. arch. de la Cilicie et de la Petite Armenie, էջ 26)։

Քաղաքի միջով անցնում է Բարադան կամ Կյուդնոս գետը։ Կառուցված լինելով կարևոր ճանապարհների հանգուցակետում և ոչ հեռու ծովից, հին ժամանակներից սկսած Տարսոնը կարևոր դեր է կատարել որպես առևտրական կենտրոն։

Սելևկյանների ժամանակ բնակչությունը բազմացավ, և քաղաքը կոչվեց «Քաղաք անտիոքացւոց»։

Հռոմայեցիները գրավեցին այն Պոմպեոսի ժամանակ։ Կեսարի օրով կոչվեց Յուլիոպոլիս և վայելեց ազատ քաղաքի (Libera Civitis) արտոնությունները։ 51 թվականին (մ.թ.ա.) Ցիցերոնը բնակվում էր այնտեղ՝ իբրև Կիլիկյան նահանգի կառավարիչ։ Բնակչության մեջ կարևոր տեղ էին բռնում հրեաները։

Արաբները Տարսոնը գրավելուց հետո ամրացրին և դարձրին պաշտպանության գծի (ավասիմ) կարևոր կետը, որ առաջին տեղն էր գրավում սահմանային բերդաքաղաքների շարքում և իշխում էր Կիլիկյան դռների հարավային մուտքի վրա։ Սահմանային անընդհատ կռիվների ժամանակ ժողովուրդը շարունակ վտանգի տակ էր լինում, և քաղաքը հաճախ դատարկվում էր բնակչությունից։ Իսկ կռվող մեկ կամ մյուս կողմը նոր բնակչություն էր բերում և հաստատում այնտեղ։ 779 թվականին ադ-Թայի Հասան իբն Քահթաբան խալիֆին հաղորդած մի նկարագրականի մեջ տեղեկացնում է, որ ըստ իր կարծիքի քաղաքը կարող է հարյուր հազար բնակիչ ունենալ։

Ալ-Մահդի (775—785) և Հարուն (786—809) խալիֆների ժամանակ քաղաքը վերաշինվեց ու ամրացվեց։ Այնտեղ սկզբում պահվում էր ութ հազարանոց բանակ, հետո այդ թիվն ավելացավ։

Տարսոնը սահմանային նահանգների գլխավոր կենտրոն էր, այնտեղ էին նախապատրաստվում ամառային արշավանքները դեպի Բյուզանդիայի հողերը և քաղաքի Բաբ-ալ-Ջիհադ (սրբազան պատերազմի դուռ) կոչված դռնից դուրս էին գալիս արշավանքին մասնակցող զնդերը։ Հրամանատարության կարևոր կենտրոն էր, և նրա էմիրը խալիֆայության ամենաբարձր աստիճանի զինվորական անձնավորություններից մեկն էր։ 851 թվականին նահանգի կառավարչի պաշտոնը վարեց Ալի Արմանի էմիրը՝ կենտրոն ունենալով Տարսոնը։

Իբն Հավկալն ասում է, թե Տարսոնը շրջապատված է քարաշեն կրկնակ պարսպով և ունի հարյուր հազար ձիավոր ու հետևակ պահակազոր։ Նա ավելացնում է, թե այդ քաղաքի և հունական երկրների միջև բարձրանում է Ջաբալ Լուքքամ կոչված լեռնաշղթան, որ սահման է կազմում իսլամական ու քրիստոնյա աշխարհների միջև։ Իբն Հավկալը, որ տեսել է քաղաքը 978 թվականին, ճշտում է, թե այդ պահակազորը կազմված էր մեծ մասով կամավորներից, որոնք հավաքվել էին իսլամական զանազան երկրներից՝ բյուզանդացիների դեմ կռվելու համար։ Այդ պատճառով քաղաքի մեջ կային հյուրանոցներ՝ յուրաքանչյուր երկրից եկող մարտիկների բնակության համար։

Տարսոնում հայ բնակչություն է եղել դեռ X դարի վերջում, երբ այնտեղ արդեն հաստատված էր հայ արքեպիսկոպոսական աթոռ։

Բյուզանդացիների կողմից մի ժամանակ գրավվելուց հետո Տարսոնը դարձյալ ընկավ մուսուլմանների ձեռքը և ենթարկվեց Սալջուկյանց իշխանությանը։ Հետո կրկին բյուզանդացիները տիրեցին։ XI դարի վերջին քառորդում Տարսոնի հրամանատարն էր Վասպուրականի դուքս, Հասանի որդի և խաչիկ խուլի թոռ Աբլղարիբ Արծրունին (Ուռհայեցի, էջ 263), որն իր ձեռքի տակ ուներ Մսիսն ու Ադանան։

Խաչակիրների առաջին զնդերը Տարսոնին մոտեցան 1097 թվականին։ Այնտեղ տեղի ունեցավ առաջին մեծ վեճը ֆրանկ ֆեոդալների միջև։ Երբ Տանկրեդը քաղաքի դռանը հասավ իր անկանոն զնդերով, այնտեղ կայսեր կողմից կառավարիչ էր Լամբրոնի իշխան Օշինը. որոշ ժամանակ անց կանոնավոր բանակով քաղաքին մոտեցավ Բոդվինը և ուզեց ինքը տիրանալ։ Տանկրեդը, տեսնելով իր ուժերի նվազությունը, ստիպված էր զիջել ու հեռանալ։ Այնուհետև Տարսոնը որպես կայան էր հանդես գալիս հետզհետե մոտեցող խաչակրաց զնդերի համար։ Լատինները հաստատվեցին այնտեղ, և քաղաքը միացվեց Անտիոքի իշխանությանը։ Սակայն Կիլիկիայի նորակազմ հայկական իշխանության ֆեոդալները իրենց ծրագրի մեջ ունեին նաև Տարսոնի գրավումը։ 1130 թվականին Լևոնը

«Մամուեստիոյ եղև տիրեալ
Եւ ի Տարսոն մեծըն հասեալ»։

Իսկ Թորոս II-ը

«Ինքըն դարձեալ զօր ժողովեալ
Զերենլին Տարսոն առեալ»։

Տարսոնը Կիլիկյան Հայաստանի կարևորագույն կենտրոններից մեկը եղավ։ Պետության երկրորդ մայրաքաղաքն էր համարվում։ Այնտեղ կատարվեց Լևոն II, Հեթումի և Օշինի թագադրությունը։

Աբու-լ-Ֆիդան (XIII դար) ասում է, թե Տարսոնը հռչակավոր քաղաք է Միջերկրականի ափի մոտ, որ անցյալում Ասորիքի և Ռումի երկրի սահմանային քաղաք էր և «այսօր հայ քրիստոնյաների ձեռքն է գտնվում»։

Իկոնիայի սուլթանների և եգիպտացիների արշավանքներից Տարսոնը հաճախ վնասներ կրեց։ Մեծ ավերում տեղի ունեցավ 1276 թվականին Հեթումի մահից հետո, եգիպտացիների արշավանքի հետևանքով.

«Եւ զՏարսոն զմեծն աւերեալ,
Զերենլին և հռչակեալ
Զսուրբ Սոփիա տաճարն այրեալ
Եւ զքաղաքն աւար առեալ» (Վահրամ Ռաբունի)։

257. Հարուն ար-Ռաշիդ։— Ծնվել է 766 թվականի փետրվար ամսին, գահակալել՝ 786 թվականին լինելով Աբբասյան խալիֆներից ամենից նշանավորը։ Նրա շուրջը հյուսվել են բազմաթիվ ավանդություններ և անեկդոտներ, որոնք «Հազար ու մեկ գիշերների» նյութն են կազմում։

Նրան վերագրել են վիպական առաքինություններ, բայց նա իրականում մի դաժան կեղեքիչ էր։ Նրա իշխանության ժամանակ կայսրության բոլոր մասերում ապստամբություններ ծագեցին։ Նա ամրացրեց սահմանային քաղաքները և հաջող արշավանքներ կատարեց Բյուզանդիայի դեմ։ Մահացավ 809 թվականի մարտի 24-ին, երբ գնում էր Սամարղանդի ապստամբությունը ճնշելու։

258. Նիկեփոր՝ բյուզանդական կայսրը Տարսոնը գրավեց 965 թվականին։ Նիկեփորի գլխավոր նպատակն էր մուսուլմանների ուժը կոտրել և կայսրության սահմանները ընդարձակել Ասորիքի և Միջագետքի ուղղությամբ։

964 թվականի գարնանը Ատանան պաշարելով, ուժգին դիմադրության հանդիպեց։ Նախ գրավեց Մսիսը, ապա ուժեղացած բանակով, որի թիվը 40 հազար կին էր, գրավեց քաղաքը։

Նիկեփորը ահագին ավար վերցրեց քաղաքից։ Տարսոնի և Մսիսի պղնձե դռները, որոնք ճոխ արվեստի գործեր էին, տարվեցին Կոստանդնուպոլիս և զետեղվեցին նոր պալատում։

259. Աբուլ-Կասիմ ալ-Տանճուխի Մոհսին. ծնված Բասրայում 939-թվականին։ Գրեց «Ֆարաջ Բադ աշ-Շիդդա» (Հավաքածո պատմվածքներ՝ ձանձրույթ փարատելու համար)։ Հեղինակը դատավորի պաշտոն վարեց եփրատյան մի շարք քաղաքներում և Պարսկաստանում։ Մեռավ 994 թվականին։ Նա գրեց նաև «Քիտաբ ալ-Մոստաջիդ», որ հավաքածու է անեկդոտների և Աբբասյան հատկանշական դեպքերի։

260. Թարսնդե կամ Տարենդե։ Մալաթիայից երեք օթևան հեռու, գտնվում է Քուբաքիբ գետի վրա։ VIII դարի սկզբում մուսուլմանական պահակազոր կար այդ վայրում։ IX դարում Պավլիկյանների ամուր կայան դարձավ։

261. Տարոն:— Տուրուբերանի երկրորդ գավառը, որը բռնում էր Մուշի դաշտը։ Հռոմայեցիները Tauranitium ասելով հասկանում էին այն երկրամասը, որը կազմում էր ամբողջ Տուրուբերան նահանգը։ Թովման ասում է. «Տուն Հայոց անուանեալ առաջին»։ Կալվածը պատկանում էր Սլկունյաց նախարարներին, Տրդատը տվեց Մամիկոնյաններին։ Տարոնը դառնալով վերջիններիս սեփականությունը, կոչվեց «Աշխարհն Մամիկոնէից»։ VIII դարի վերջում դարձավ Բագրատունիների սեփականություն, իսկ 964 թվականին անցավ բյուզանդացիներին (Ալոզիկ, էջ 183)։

262. Թալա։ Վայրն անծանոթ է։

263. Թուղատ։ Վայրն անծանոթ է, թեև կարելի է նույնացնել տնուսի շրջանում Տողատափի կամ Խնուսից հյուսիս՝ Դեղթափի հետ։

264. Թայուրվանա։ Հավանական է, որ լինի Դատվանը, Տուրուբերանի Բզնունյաց գավառում, Վանա լճի հարավ-արևմտյան անկյունում, խլաթից մեկ օթևանով հեռու, ծովեզերքից քիչ հեռու, Նեռան գլխին ունեցել է ամուր բերդ (Ինճիճյան, Աշխարհագրություն, Ա, էջ 181)։

Հանդիսանում է այդ շրջանի նավահանգիստը։ Թովմա Արծրունին հիշում է իբրև Արծրունյաց թագավորների ավան և ամառանոց։

Նույնանուն գավառակը տարածվում է Բիթլիսից դեպի հյուսիս մինչև լճի արևմտյան ափը։

265. Արաբիսոս։ Կատավոնիայի զինվորական կենտրոնն էր, այժմ Յարպուզ, Ալբիստանից մի քանի մղոն դեպի հարավ-արևմուտք, Զեյթունի մոտ։

Բյուզանդական սահմանային գլխավոր անցքը երկարում էր Արաբիսոսից դեպի Մարաշ։

Հին ժամանակ կոչվում էր Եփեսոս, որտեղից է, ըստ ոմանց, Մորիկ կայսրը։ Գանձակեցին հիշատակում է «Արփասուս» անվամբ (էջ 49), Միքայել Ասորին՝ «Արփսուս» (էջ 280)։

266. Ալլուս:— Անորոշ վայր։

267. Ավասիմ:— Խալիֆայական սահմանային նահանգները։

268. Այնթափ:— Յակուտը սխալմամբ նույնացնում է Դլուքի հետ։ Դլուքը (Doliche) հռոմայեցիների ժամանակ ծաղկյալ վիճակ ուներ, մինչդեռ Այնթափը մի պարզ ավան էր, որը իր ծաղկումն ստացավ հարևան քաղաքի անկումից հետո միայն։ Հոնիգմանը այդ քաղաքը նույնացնում է Պտղոմեոսի Tyba-ի հետ (Ցիցերոնի Tybn-ը)։

Խաչակիրները Hamtap, Hatap անուններով են հիշում։ Ենթակա էր Եդեսիայի կոմսության և դարձավ խաչակիրների ապաստան։ Հայ պատմագիրներից Գրիգոր Երեցը հիշատակում է «անուանին և մեծ Անթափ» (էջ 529), նաև «ղանաոիկն Անթափ» (էջ 526)։ Նուրադդինը գրավեց այն 1152 թվականին, հետո անցավ Եգիպտոսի սուլթանների ձեռքը, որից հետո մուսուլմանական ուրիշ իշխանների և ապա ենթարկվեց հայ ու թաթար ցեղերի հարձակումներին։ Այժմ պաշտոնապես կոչվում է Ղազի Այնթեպ։

269. Անարզաբա։ Բառը արաբերեն նշանակում է «հոսուն աղբյուր»։ Սխալվում են «Դեղին աղբյուր» թարգմանողները (Բնաշխարհիկ բառարան, էջ 165)։

Արևմտյան հին մատենագիրների մոտ չենք հանդիպում այդ անվան, թեև «Քաղաքս կայր» և ըստ ոմանց «Կինատ» էր կոչվում։ Օգոստոս կայսրը անվանեց «Կեսարիա Անարզաբեան», Caesarea ad Anazarbon (Ալիշան, Սիսուան, 237)։ Հայերի մոտ անունը մնաց «Անաւարզա», կամ ավելի ընդհանրացած՝ «Անարզարա»։

Կոստանդիանոսի նոր քաղաքական օրենքով, երբ Կիլիկիան երեք մասերի բաժանվեց, Անարզաբան դարձավ Երկրորդ Կիլիկիայի մայրաքաղաքը: «Աշխարհացույց»-ի մեջ Անարզաբան հիշատակվում է որպես Կիլիկիայի մայրաքաղաք՝ Տարսոնի հետ, որը Առաջին Կիլիկիայի մայրաքաղաքն էր:

525 թվականին Հուստինիանոսը նորոգեց երկրաշարժից վնասված քաղաքը և կոչեց Հուստինիանուպոլիս: Նոր երկրաշարժից հետո Հուստինիանոսը կրկին նորոգեց և կոչեց Հուստինոպոլիս:

Արաբների գրավումից հետո, որպես սահմանային զոտու քաղաք, կարևորություն ստացավ: Հարուն խալիֆը վերանորոգեց ու ամրացրեց այն 796 թվականին:

Վասիլ I կայսրը գրավեց Անարզաբան 880 թվականին հալածեց Արզլլա զորավարին և քանդեց մի քանի ամրոցներ: Կարճ ժամանակ այն մնաց Եգիպտոսի Թաթիմյան խալիֆների ձեռքում, մինչև որ 962 թվականին Նիկեփոր կայսրը գրավեց: X դարի վերջում Սայֆադդաուլա Համդանյանը երեք միլիոն դիրհեմ ծախսելով (մոտ 1 միլիոն 200 հազար ոսկի ռուբլի) ամրացրեց քաղաքը, բայց հույները մեկից ավելի անգամներ գրավեցին, մինչև որ այն մնաց իրենց ձեռքում:

XI դարի վերջին խաչակիրները գրավեցին, և ավերակ վիճակի մեջ թողնելուց հետո քաղաքը անցավ Կիլիկիայի հայ իշխանների ձեռքը: Այն եղավ Նորակազմ Ռուբինյան հարստության առաջին ոստանը: Վահրամ Ռաբունին գրում է, որ Թորոս I

«ԶԱնարզաբա ինքն գրաւեալ»...:

Լևոն իշխանը Ռուբինյան իշխանության աթոռը այնտեղ հաստատեց: 1137 թվականի մեծ արշավանքի ժամանակ Հովհաննես Կոմնենոսը մեծ ուժերով պաշարեց քաղաքը: Հայերը հանդուգն հակագրոհներով մեծ վնասներ պատճառեցին պաշարողներին: 37 օր անընդհատ քարանետ մեքենաներից ռմբակոծվելուց հետո, հուլիս ամսին քաղաքը հանձնվեց:

XII դարում Իդրիսին Անարզաբայի դաշտը համեմատում է Դամասկոսի դրախտի հետ (E. Reclus, էջ 659):

Աբու-լ-Ֆիդան հաղորդում է, թե Անարզաբան գտնվում է մի լեռան ստորոտում, նրա վրա տիրում է մի բերդ: Քաղաքը լավ վիճակի մեջ է և բազմամարդ. չորս մղոն կամ մի օրվա ճանապարհ հեռու է Սսից: Ավելացնում է, թե ժողովուրդը քաղաքի անունը փոխելով Նավարզա է կոչում:

Դղյակը կամ բերդը քարաբլրի երկճյուղ գագաթի վրա է, հին ու ամենաամուր բերդերից է:

Թորոսի և Լևոնի նորոգություններից հետո Անարզաբան դարձավ Կիլիկիայի առաջին ամրությունը (Սիսուան, էջ 237):

270. Սայֆադդաուլա: Աբուլ-Հասան Ալի իբն-Համդան:

Համդանյան դինաստիան IX դարից սկսած խալիֆայության սահմաններում գտնված մուսուլմանական դինաստիաներից մեկն էր: Համդանյանները, որ սերած են Համդան իբն Համդունից, Շիա աղանդից, Տաղլիբ ցեղին էին պատկանում: Նախապես հաստատվել էին Հյուսիսային Միջագետքում և Աբբասյան խալիֆաներից բարձր պաշտոններ ստացել: Այդ էմիրներից Աբուլ-Հայջայի որդի Ալին, որ Սայֆադդաուլա (կայսրության սուր) տիտղոսն ստացավ, 944 թվականին գնաց հաստատվեց Հյուսիսային Ասորիքում և Եգիպտոսի Իխշիդյաններից խլեց Հալեպն ու Հեմսը, ապա համաձայնվելով Քաֆուր սուլթանի հետ՝ պահեց Հյուսիսային Ասորիքն իբրև սեփականություն:

Ասորիքը Օմայյանների անկումից ի վեր Աբբասյանների հանդեպ միշտ էլ

դժգոհ ու թշնամական դիրք ունեին։ Սայֆադդաուլան կարողացավ ենթարկել նահանգը։

Իր գահը ապահովելուց հետո Սայֆադդաուլան, 947 թվականից սկսած, տարեկան արշավանքներ կատարեց և մինչև իր մահը, քսան տարի շարունակ, չեղավ մեկ տարի, որ նա հանդուգն ու վտանգավոր խուժումներ չկատարեր կայսրության սահմաններից ներս։

Համդանյան դինաստիան տևեց մինչև 1003 թվականը։ Սայֆադդաուլան մեռավ 967 թվականին, նրան հաջորդեցին զույգ Սաադադդաուլաները՝ մինչև 1001 թվականը։ Ի վերջո բյուզանդացիների ճնշման հետևանքով նրանք Եգիպտոսի Ֆաթիմյանների վասալ դարձան։

Սայֆադդաուլայի դինաստիայի ժամանակ Հալեպը դարձավ իսլամական կուլտուրայի կարևոր կենտրոններից մեկը։ Նրա արքունիքի շուրջը համախմբեցին մի խումբ նշանավոր փիլիսոփաներ, գիտնականներ և բանաստեղծներ։ Դրանցից են փիլիսոփայության և երաժշտության համբավավոր վարպետ Ալ-Ֆարաբին, գրականության և երաժշտության պատմաբան Ալ-Իսպահանին, նշանավոր հռետոր և քարոզիչ Իբն Նուբաթան և ժամանակի հռչակավոր ու մեծագույն բանաստեղծներից՝ Ալ-Մութանաբբին (915—965) և Աբուլ-Ալա-Մաարին (973—1057)։

271. Ծաթեր։— *Ծաթերի մասին տեղեկություններ են հաղորդում Թաբարին, Իբն ալ-Աթիրը և Մասուդին։* \

*Ծաթերի մասին խոսել են նաև հայ պատմիչներից առաջին անգամ Ուխտանեսը՝ X դարում, Պողոս Տարոնեցին՝ XI դարում, Մխիթար Այրիվանեցին՝ XIII դարում։ Սրանց տվյալներն ամփոփված են Ն. Ադոնցի «Հայ Ծաթերի ծագման մասին» հոդվածի մեջ (Հանդէս Ամսօրեայ, 1912, էջ 258 և հաջորդ)։*

*Ըստ Ն. Մառի եզրակացության, «Ծաթ են կոչվում հայ քաղկեդոնականները»։ Ադոնցը մերժելով այս տեսակետը, հայտնում է, թե Ծաթերը («զոտտ» կամ «ջուտտ» կոչված) Եվրոպայում ապրող գնչուների նախնիքներն են Հնդկաստանից գաղթեցված ու մի ժամանակ բնակեցված Միջագետքում։ Սրանք* Sindi *հնդիկ ցեղից են։ Հնդկական «Ջատտ» արաբների մոտ դարձել է «Ջաթ» և հայկական տառադարձությամբ էլ «Ծաթ»։*

*VII դարում, ըստ Բելազուրի պատմիչի, Ծաթերը բնակվում էին Բասրայում։ Նրանց այնտեղ փոխադրելու մասին Ֆիրդուսին «Շահնամեում» ասում է, իբր թե Բահրամ Գուր պարսից թագավորը (420—438) Հնդկաստանի թագավորից խնդրեց, որ իրեն ուղարկի տաս հազար տղամարդ և կին ճարտար վին նվագողների, իսկ Բելազուրին հաղորդում է, թե այդ «սայաբիջաները» Պարսից Ծոցի այս կողմի նավահանգիստների մեջ բնակեցվեցին։*

*670 թվականին Մուավիա խալիֆը Ծաթերի մի մասին տեղավորեց Անտիոքում և շրջակա գավառներում։ Դեռ XIII դարում Անտիոքի թաղերից մեկը կոչվում էր «Մահալլաթ ուզ-Զուտտ»։ Վալիդ I նրանցից նոր խմբեր տեղափոխեց դեպի Անտիոք և Մսիս։*

*Միջագետքում Ծաթերը այն աստիճան զորացան, որ Հարուն ար-Ռաշիդի մահից հետո ստեղծված խառնակությունից օգտվելով, իրենց գրեթե անկախ հռչակեցին։ Նրանց ապստամբությունը ճնշվելուց հետո 27 հազար հոգի փոխադրվեցին Անարզաբա և Միսիս։ 855 թվականին, երբ բյուզանդացիները հարձակում գործեցին Անարզաբայի վրա և գերի վարեցին այնտեղ ապրող բոլոր Ծաթերին, արաբները բանակցության մեջ մտան բյուզանդացիների հետ և կարողացան համաձայնության գալ ու գերիներին իրենց տեղերը վերադարձնել։ X դարից սկսած Ծաթե-*

րը մտան Հայաստան և հետագետն ձուլվեցին հայերի հետ։ Հայ բոշաները նրանցից են ծագել։

272. Ղատկաղուճա։ Կատավանիայի թեմը։

273. Ցաւ կամ Ալֆիրան։ Արդյո՞ք Փառ գյուղն է՝ համանուն ձորակի վրա, Մոկքից երեք ժամ հեռու (դեպի արևմուտք)։

274. Եփրատ։ Սումերական Buranunu, ասորեստանյան արձանագրություննեի մեջ purattu, հին պարսկերեն ufrātu. Այս գլխում հիշատակված ջրի հոսանքները հետևյալները կարող են լինել. Նահր Լուքիա-Արմուասանչայ, Նահրը Աբրիկ Տիվրիկի գետ կամ Չալթա Իրմաք, Նահրը Անչա Անդու-Չայ, Նահր ադ-Դիբ-Պերի սու, Նահրը Սալքիտ-Սունգյուր, Նահրը Ջարչարի-Կուրուչայ, Նահրը Քուրաքիբ-Տոխմա սու, Նահրը Քուրաքիս-Սուլթան սու, Նահրը Հանձիթ-Բոյուք-չայ, Նահրը Սանջա կամ Նահր էլ Ազրակ-Գյոք սու։

Ինչ վերաբերում է Եփրատի աղբյուրներին, հույն, հռոմայեցի, ինչպես նաև արաբացի աշխարհագրերը, նաև Ինճիճյանը հարևանցի տեղեկություններ են տալիս ճշգրիտ վայրի մասին։ Առաջին անգամ ռուս զինվորականներն էին, որ առանձին տեղեկագրի մեջ տվին ճշգրիտ նշումներ։ Գլխավոր աղբյուրն է Գյավուր դաղը կամ Տումլու դաղը, որ Էրզրումից դեպի հյուսիս խաչկա վանքի կողքից բարձրացող զառիվեր է։ Այդ գագաթից 21 աղբյուրներ են բխում, որոնք կազմում են սկզբնական Եփրատաջուրը։ Այդ աղբյուրներից՝ ամենից ջրառատն է Տումլու սուն, որ միանալով մյուս աղբյուրներից բխած առվակների հետ կոչվում է Կարա սու։ Էրզրումից հյուսիս-արևմուտք հինգ ժամ հեռավորության վրա սրան միանում է Սարչամ սուն։

Շատ կարևոր նկարագրություն ունենք Եփրատի վերին հոսանքի մասին Ibn Serapion -ից, որի տեքստը, թարգմանությամբ, հրատարակվեց Le Strange-ը (Journ. R. AS. Soc, 1895) և որը քննարկեց Տոմաշեկը (Festschrift fur H. Kiepert, 1898, էջ 137—149)։

275. Պերոզապատ կամ Պերոժապատ։ Այժմ էլ նույն անունով վայր։

276. Ֆիլան։ Այժմյան Ղազի Ղումուխի շրջանը Դաղստանի Միջին մասում։

277. Կաղզվան։ Այրարատ նահանգի Գաբեղյանք գավառում կամ Երասխաձորում ավան և բերդ էր։ Վարդանի աշխարհագրության մեջ հիշված է՝ Զորն Երասխայ Կաղզվան է» (Նոր հրտ. էջ 13)։

Ասողիկը կոչում է «Կաղզուան աւան» (էջ 110)։ Ուռհայեցին դնում է Աշոցնեք գավառում՝ «ի գեղն որ ասի Կաղըզուան», որտեղ ՇԽԸ (1099— 1100) թվականին Գրիգոր Կյուրապաղատը հաղթեց սելջուկներին (Ուռհայեցի, էջ 328)։

Վերջին ժամանակները «Փոքր և անկարևոր քաղաք՝ այգեստաններով ու պտղատու ծառերով միայն աչքին ընկնող» (Ն. Սարգսյան, Տեղագրութիւնք, էջ 216)։

278. Կալիկալա։ Հին հայոց մոտ ծանոթ է «Կարնոյ քաղաք» կամ «քաղաք Կարնոյ» անվամբ։ Տել Մահրեն այդ ձևի վրա կոչում է Qalinqala, իսկ Բելաձորին և Իբն Խորդադբեհը՝ «Կալիկալա»։ Նույն ձևով է կոչում Քաթիբ Չելեբին իր «Ջհաննումաում»։ Վրացերեն՝ «Կարնու քալաքի»։ Հույները կոչում են Թեոդոսիոպոլիս կամ Թեոդուպոլիս՝ «Վասն նորոգ շինութեանն ի Թեոդոսէ կայսերէ ի սկիզբն Ե դարու, լինել մայր քաղաքաց բաժնի յունական Հայաստանի, վասն այնորիկ և յայլազգեաց արևելեայց կոչէր Արզի Ռում (Հունաց երկիր) և եղև միջաքաղաք անուանի ըստ քաղաքական վարչութեան ամրութեան և շահաստան վաճառաց» (Ալիշան, Տեղագր. Հայոց մեծաց, էջ 36)։

Հարց է թե՝ «Էրզրումը» պետք է ընդունել հունական հող կամ երկիր ստուգաբանությամբ, ինչպես կարծում է Ալիշանը, թե՝ ավելի ճիշտ՝ Արզն ար Ռում.

հույների Արծն իմաստով. ըստ այն ենթադրության, թե երբ Արծն քաղաքը, որ ի վնաս Թեոդուպոլսի ծաղկած ու բազմամարդ էր դարձած, 1049 թվականին սելջուկներից կործանվեց, կոտորածից փախչող բնակիչները ամրացան Թեոդուպոլսում և քաղաքը կոչեցին «Արծն էր Ռում», այսինքն՝ Ռումի Արծն, ի հիշատակ իրենց ավերված հայրենիքի։ Ավելի ուշ բառը սեղմվելով եղավ Էրզրում։ Կարինը գտնվում է Բարձր Հայք գավառում։ Խորենացին նկարագրում է նրա շինությունը և գիրքի առավելությունները (Պատմություն, գիրք Գ, ԾԹ)։

647 թվականին արաբները գրավեցին և այնտեղ ստեղծեցին զինվորական դաշտ և պահակադոր։ 755 թվականին Կոստանդին Կոպրոնիմոսը գրավեց ու կործանեց քաղաքի պարիսպը և թալանեց գանձերն ու բնակիչներին տեղահանեց (Ասողիկ, էջ 142—143)։ Մոտ երկու տարի հետո Եզիդ խալիֆը վերաշինեց այն։ 950 թվականին Կոստանդին Պերփերուժենը մեծ զորքով Կարին ուղարկեց Ջմշկիկ զորավարին, որը գրավեց քաղաքը (Ասողիկ, էջ 179)։

Էրզրումը իր ռազմագիտական ու առևտրական դիրքով առաջնակարգ նշանակություն է ունեցել։ Արաբների ժամանակ բյուզանդական հարձակումների դեմ պաշտպանել է խալիֆայական հողերը։ Եղել է նաև առևտրական մեծ քաղաք, գտնվելով Ասիայից Տրապիզոն տանող ճանապարհի վրա։

Սելջուկյան տիրապետության ժամանակ ինքնավար սուլթանություն ունեցավ։ 1231 թվականին Խորեզմ շահը գրավեց (Սամուել Անեցի, Շար., էջ 149)։ XIII դարում Իվանեն և Զաքարեն «հարկատու կացուցին զՍուլտանն Կարնոյ քաղաքին» (Կիրակոս, էջ 154), իսկ 1241 թվականին գրավեցին մոնղոլները։

Մուստավֆին հիշատակում է, թե բազմաթիվ գեղեցիկ եկեղեցիներ կային այնտեղ, որոնցից մեկը ուներ 50 ձողաչափ տրամագծով գմբեթ։ Դրա դիմաց կար մի մզկիթ, որը կառուցված էր Մեքքայի Կաբայի օրինակով։

Իբն Բատուտան, որ այցելել է քաղաքը 1333 թվականին, նկարագրում է, որ այն Իրաքի սուլթանի իշխանության տակ էր և մեծ մասամբ ավերակ։

Կարինից ականավոր անձեր են դուրս եկել։ Յակուտը հիշատակում է մասնավորապես գրականագետ Աբու Ալի Իսմայիլ իբն ալ-Կասիմ Կարնեցուն (Ալի-Կալի)։ Նա Արաբացի մեծ բանասեր էր, ծնված 901 թվականին Մանազկերտում և մահացած 967 թվականին Կորդովայում (Իսպանիա)։ 916 թվականին նա գնացել էր Բաղդադ՝ մի խումբ կարնեցիների հետ, որի հետևանքով նա Կարնեցի (Ալ-կալի) կոչվեց։ Բաղդադում արաբերեն լեզուն և գրականությունն ուսանելուց հետո նա 942 թվականին գնաց Իսպանիա և ուսուցիչ կարգվեց։ Գրել է «Քիթաբ ալ-Ամալի Վալ-դայլ Վալ-Նավադիր», որը մի անթոլոգիա է և պարունակում է մեծ թվով բանաստեղծություններ, առակներ և նոթեր։

279. **Կաբագիկ**: Իմա, Կապադովկիա։

280. **Քուբամիր**:— Մելաս գետը, ներկայիս Թոխմախ-սու։

281. **Կապան**: Հավանաբար Սյունիք գավառը, կոչվում է նաև Ձորք։ Ուներ Բաղաբերդ անմատույց բերդը, որ հետո կոչվեց Կապան։ Սյունյաց իշխանության մայրաքաղաքը։ Օրբելյանը կոչում է «Մայրաքաղաք Բաղաց» (էջ 334)։ Այժմ Լափան։

Նույն անունով է նաև գավառը։

282. **Կաֆ**: Խոսքը Կովկասյան լեռների մասին է։

283. **Կաբալա**: Կապաղակ, Զապալա-Նուխի գավառում։ Այժմ՝ Կաբալա գյուղ։

284. **Կարանիսար**: Կան բազմաթիվ զարահիսարներ, բայց այստեղ հիշատակվածը, Քարահիսար Տեքե կամ Քարահիսար ի Ատալիա, գյուղ է՝ Անտիոքի մոտ։

285. **Կուրրան**: Վայրը կարոտ է ստուգման։

286. Կարս: Կարուց քաղաք, Խարս, Դարս կամ Ղարս: Վրացերեն Karl Դուռ անունից. Karis Kalaki դռան քաղաք։

Այսպես է կոչվել իր սահմանային դիրքի պատճառով։ Գտնվում է Շիրակի դաշտի մեջ, Վանանդ գավառում, Մեծամոր գետի վրա։ Որպես քաղաք առաջին անգամ հիշատակում է Կոստանդին Պերփերուժենը (De Adm. Imp. գլ. 44)։

Ղևոնդը հիշատակում է «Գյուղն Խարս» (էջ 171), Բագրևանդի կռվի ժամանակ։ Սմբատ Թագավորի օրով հիշվում է «Բերդն Կարուց», որը Աֆշինը գրավեց և գերիներ վերցրեց։ Աբաս Թագավորի ժամանակ՝ «ի քաղաքին Կարուց» (Ասողիկ. էջ 172)։ Երբ Մուշեղը, Աբասի որդին, Վանանդում անջատ թագավորություն հաստատեց (961) քաղաքը եղավ «Մայրաքաղաքն Կարուց» (Ասողիկ, էջ 196)։

Կարսի վերջին թագավոր Գագիկը (1028—1064) պահեց իր իշխանությունը Անին կայսրության կողմից գրավվելուց հետո էլ։ Իր առևտրական նպաստավոր դիրքի շնորհիվ Կարսն հարստացավ այն աստիճան, որ Լաստիվերտցին կոչում է «Քաղաքն հղփացեալ, որ կոչի Կարս» (էջ 73)։

1054—1055 թվականներին Իբրահիմ իբն Ինալ սելջուկյան իշխանը, որը ապստամբել էր իր հորեղբոր որդի Տուղրիլի դեմ, օգտվելով տոնական օրվա առթիվ ժողովրդի անփութությունից, գիշերով անակնկալ հարձակում գործեց, ավերեց կողոպտեց ու ջարդեց, բայց չկարողացավ միջնաբերդը գրավել, որովհետև Տուղրիլի մոտենալու լուրն ստանալով շուտով հեռացավ.

1064 թվականին Գագիկ Աբասյանը բարեկամություն կնքելով Ալփ Արսլանի հետ՝ փրկեց քաղաքը կործանումից (Ուռհայեցի, էջ 180)։ Տեսնելով սակայն, որ չպիտի կարողանա երկար պահել իշխանությունը, նույն թվին քաղաքը վաճառեց բյուզանդական կայսրին։ Բայց սա էլ չկարողացավ պահել, և նույն տարում սելջուկները տիրացան քաղաքին։

1207 թվականին վրացիները ազատագրեցին Կարսը։ Ջալալեդդինը 1226 թվականին իզուր պաշարեց այն, իսկ մոնղոլները գրավեցին 1236 թվականին, կողոպուտի մատնեցին և կոտորեցին բնակիչներին (Գանձակեցի, էջ 246—247).

287. Կարարղաշ: Հույների Kitharizon, իսկ հայոց Կթառիճը, Հաշտեանք գավառի մեջ։

288. Քիլիզ:— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեբի և Այնթապի միջև։ Ծանոթ է Ասորեստանյան արձանագրություններում Ki-li-zi ձևով, հռոմայեցիների մոտ՝ Cilιza, միջին դարում աննշան քաղաք։ Միքայել Ասորին հիշատակում է Քալազ ձևով։ Այժմյան Քիլիսը հին վայրից մի ժամվա հեռավորության վրա է։

287. Հռոմկլա: Կալաաթ ար-Ռում —հույների բերդ։

Հունարեն անունն է Ρωμαιον κουλα, իսկ քաղաքի հնագույն անունը ենթադրվում է, առանց հիմնավոր փաստի, թե հների «Ուրիմա»-ն լինի, որը Եփրատասիայի նահանգի քաղաքներից մեկն էր և եպիսկոպոսական աթոռ։

Բերդը նկարագրել են զանազան հեղինակներ (տե՛ս Rey. Les colonies franques en Syrie, էջ 318—9)

Հռոմկլան Եփրատի ամենազորեղ բերդերից էր։ Շրջապատված էր չորս շարք պարիսպներով և ուներ յոթ դուռ։ Բերդը անառիկ էր համարվում։ Շնորհալին այսպես է նկարագրում.

«Յալեաց ծովուց ոչ երկնչի,
Ի մարդկանէ ոչ զարհուրի,
Զի ի հնարից անյաղթելի

Զոր տնօրինողն ամենայնի
Տեղ պատրաստեաց ապաւինի
Սուրբ աթոռոյս սքանչելիս»։

Ինչքան էլ բերդը իր բնական դիրքով անմատչելի էր, բերդի տերերն էլ,— կաթողիկոսները, պաշտպանության հավելվածական շինություններ էին կատարել (մասնավորապես Հովհաննես Մեծաբարոյ կաթողիկոսը, որ սրբատեղիների դռհաբեղեններն ու զարդեղենները վաճառեց և նրանց գնով ամրություններ կառուցեց)։

Հռոմկլան պատկանում էր Եդեսիայի կոմսությանը։ Երբ Ջոսլին II Կուրտնեի այրին՝ Բեաթրիս կոմսուհին, իր կալվածները՝ Թլպաշարը, Այնթապը և մյուսները վաճառեց կայսեր, Հռոմկլան նվիրեց Գրիգոր III Պահլավունի կաթողիկոսին, որ Ծովքից այնտեղ փոխադրեց կաթողիկոսական աթոռը։ Հռոմկլան իր շրջակայքով դարձավ կաթողիկոսի ավատական կալվածք, սկսած 1151 թվականից։

Հռոմկլայի հանձնման պարագաները հիշատակում են Գանձակեցին (էջ 101) և ավելի հանգամանորեն Վարդանը (էջ 128)։ Պատմական վկայություններից հետևում է, որ Հռոմկլան բոլորովին ձրի չի տրված հայոց կաթողիկոսին։ Օրբելյանի տեղեկությունը, թե «Սա գանձագին արարեալ ի կնոջէ և յորդւոյ մեծ իշխանին փռանգ որ Ջաւլին կոչիւր, զբերդս զայս» (էջ 445) ստույգ է։

Հռոմկլան հայոց կաթողիկոսների կալվածն ու նստավայրն էր մինչև 1292 թվականը, երբ Եգիպտոսի Մալիք Աշրաֆ սուլթանը պաշարելով գրավեց այն՝ Ստեփաննոս կաթողիկոսի ժամանակ։

288. Լևոնի և կաթողիկոսի վեճը։ Լևոն II և կաթողիկոսի միջև ծագած հակառակության մասին Յակուտը տալիս է մի հստակ պատճառ, որը հայ կամ օտար ժամանակագիրներից և ոչ մեկը չի հիշատակում։ Արաբ հեղինակի տված տեղեկությունը վերին աստիճանի շահեկան է այն տեսակետից, որ լույս է սփռում ֆեոդալական շրջանի բարքերի և բիրտ սովորույթների վրա։ Լևոնի նկարագրի այդ գիծը մատնանշում է նաև Գանձակեցին, երբ թագավորի մասին գրում է «Եւ էր նա ամենայն իրօք բարեկաւագոյն, բայց միայն միով մասամբ. զի էր նա իգասէր» (էջ 151)։

Յակուտը չի տալիս կաթողիկոսի անունը, բայց կարելի է հետեցնել, թե ում և ինչի՞ մասին է խոսքը։

Կաթողիկոսի սերնդի մասին արաբ հեղինակի տված տեղեկությունը համարում է Գրիգոր Պահլավունի Մագիստրոսի սերնդին, որին պատկանող բարձրաստիճան կղերականները Անիում, Ծովքում և Հռոմկլայում հաջորդաբար տիրեցին կաթողիկոսական աթոռին։

Լևոնի տիրակալության շրջանում չորս կաթողիկոսներ հաջորդեցին իրար. Գրիգոր Տղան (1173—1193), Գրիգոր Քարավէժը (1193—1194), Գրիգոր Ապիրատը (1194—1203) և Հովհաննես Սսեցին (1203—1220)։

Առաջինը կանոնավոր պաշտոնավարեց և մահացավ Սսում։ Մյուս երեքը թագավորի հետ վեճ ունեցան։ Վերջինին չի կարելի նկատի ունենալ, որ թեև «ապստամբ էր ի թագաւորէն Լևոնէ ի Հռոմկլայ վասն իրիք պատճառանաց» (Գանձակեցի, էջ 159), բայց նա մնաց աթոռի վրա Լևոնի մահից (1219) հետո էլ և մահացավ 1220 թվականին։ Մնում են Քարավէժն ու Ապիրատը։

Չնայած երկրորդն է տոհմի վերջին կաթողիկոսը, բայց դեպքերի պարագաները ավելի համարում են Քարավեժին, քան 72-ամյա Ապիրատին։

Գրիգոր Քարավէժը Լևոնի ընտրությամբ կաթողիկոսական գահ բարձրացավ, հակառակ իր երիտասարդ տարիքի, 1193 թվականին։ Թագավորը հույս ուներ նրան ենթարկել իր ազդեցությանը, բայց Գրիգորը չենթարկվեց։ Սմբատն ասում է. «Տղայ կաթողիկոսն Տէր Գրիգորիս չհնազանդէր ամենեցուն, այլ ինքնիշխանութեամբ ունէր զհայրապետութիւն»։

Գրիգորի մրցակիցներն էին Ներսես Լամբրոնացին, Գրիգոր Ապիրատը և Հովհաննես Սսեցին, որոնք թշնամական հալածանք սկսեցին կաթողիկոսի դեմ։ Ի՞նչ էր նրանց ամբաստանության հիմքը. Սմբատն ասում է. «Դրէին առ Լևոն թէ ոչ ունի սա իմաստութիւն վարել զհայրապետութիւնն որպէս արժանն էր» (էջ 106)։

Կաթողիկոսի դեմ թշնամացան նաև ազնվականները. «Մախացեալ ընդ նա աւագ մարդիկ գրեն առ Լևոն և չարախօսեցին զնմանէ երեքէ չորս անգամ, մինչև շարժեցին զպարոն Լևոն ի կամս իւրեանց» (Սմբատ, էջ 106)։

Յակուտի հաղորդած ուշագրավ տվյալները հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ հայ ֆեոդալներն էլ ընկնում էին նույն մեղադրանքի տակ, ինչով Գրիգորը ամբաստանում և կշտամբում էր թագավորին։

Ի վերջո, թագավորը Սսի Հովհաննես եպիսկոպոսին ուղարկեց Հռոմկլա և ձերբակալել տվեց կաթողիկոսին։ Զնայած կաթողիկոսական բերդի զինվորները զենք վերցրին թագավորի զինվորների դեմ իրենց տիրոջը պաշտպանելու համար, բայց Հովհաննեսին ընկերացողները ավելի զորեղ գտնվեցին։

Լևոնը հրամայեց, որ երիտասարդ կաթողիկոսին փակեն Կապլտառի բերդում մի առ ժամանակ, այսինքն՝ «մինչև քննութիւն լիցի ճշմարտութեամբ վասն նորա» (Գանձակեցի, էջ 141)։

Տեսարանը համարում է Յակուտի պատմածին, թե՝ թագավորը նրան կեղծավորարար առաջնորդից զրկեց և այնուհետև նա չերևաց։

Սմբատը, Վարդանը և Սամուել Անեցին այնպես են ներկայացնում, թե կաթողիկոսը պարան շինելով գիշեր ժամանակ պատուհանից իջնելու և փախչելու փորձ կատարեց, բայց պարանը կտրվեց, և նա ընկավ ու մահացավ։ Շատ հավանական է, սակայն, ինչպես Օրմանյանն էլ է նշում, որ այդտեղ կազմակերպված ոճիր կա։ Գանձակեցին այդ կասկածը հայտնում է և ավելացնում այս շատ հատկանշական բառերը. «Զճշմարիտն մեք ոչ գիտեմք. այս արդարադատին Աստուծոյ է գիտելի. որոյ ծածուկքն մարդկան յայտնի են նմա» (էջ 141—142)։

Հայտնի է, որ կաթողիկոսի դեմ եղած ամբաստանությունները անհիմն էին, մյուս կողմից թագավորը վճռել էր իր դեմ դատախազ կանգնող այդ եկեղեցականին վերացնել, ուստի դավով սպանել տվեց նրան և ոճիրի կասկածը հեռացնելու համար նրա մահացմանը արկածի ձև տվեց։

289. Կլավդիա։ Բերդ Մալաթիայի մոտ, որը հիշատակում է բնագետ Պլինիոսը։ Բյուզանդացիների ժամանակ սահմանային ծայրամասի բերդ էր Սամոսատի և Մալաթիայի միջև։ Բյուզանդացիները գրավեցին արաբներից X դարի սկզբում և պահեցին մինչև սելջուկների արշավանքը։ Հայկական զինված խմբեր մտան Կլավդիա և հաստատվեցին այնտեղ 1066 թվականին (Michel le Syrien թարգմ. Chabot, էջ 158)։

Ստույգ վայրը հայտնի չէ։

290. Քուրջ, վրացիներ, Գուրջի։

291. Կուր։ Աբու-լ-Ֆիդայի աշխարհագրության գրքում կարդում ենք.

«Կուր գետի անունը, Նահր ալ-Կուր, տրվում է երկու գետերի. առաջինը մե-

ծագույնն է երկուսից և ավելի նշանավոր. քան մյուսը. այն է, որ բաժանում է Ատրպատականը Առանից և կազմում է այդ երկու երկրների սահմանագիծը։ Երկրորդ Կուրը գտնվում է Ֆարսիստանում, Շիրազ գավառում, դա մի գետ է, որ նախորդի համբավը չունի։

Առանի երկրի Կուրը բխում է Բաբ ալ-Աբվաբի լեռների կողերից 66°, ուրիշներ ասում են 63° երկայնության և 41°, ուրիշներ ասում են 44° լայնության տակ։ Այն անցնում է Առանի երկրով և թափվում Կասպից ծովը։ Իբն Հավկալի գրքում կարդում ենք, թե Կուրը անցնում է Պարտավից երեք փարսախ հեռավորությամբ, և նրա մեջ որսում են մի ձուկ, որը կոչվում է «Ռաղեքի»։ Այն անուշ ջրով մի գետ է, բխում է Թիֆլիսի մոտ գտնվող Շամքոր քաղաքի սահմանի վրա մի լեռան կողից»։ Ավելացնում է, թե Բարդաան գտնվում է երկայնության 73° և լայնության 40½° վրա, իսկ Թիֆլիսը երկայնության 73° և լայնության 43° վրա։ Հետևաբար գետը հոսում է հարավից դեպի հյուսիս[1]։

292. Կառկառ: Հիշատակված առաջին Կառկառը գտնվում է այժմ Կառկառ-չայի գետի վրա՝ դաշտային Ղարաբաղում։ Հայ մատենագիրների «Կառկառացոց» դաշտավայրը։ Երկրորդը՝ Եփրատյան սահմանի կարևոր ամրություններից էր Քաբարլրի վրա շինված, այժմ՝ Կեր-կեր-քալասի։

Քաղաքը հայերով բնակված էր XII դարի սկզբից և ավելի առաջ էլ։ Մալաթիայի սուլթանի տեղակալ Բաղաքը՝ համաձայնվեց Կառկառի Միքայել իշխանի հետ որոշ բնատուրք տալու, որպեսզի հայերը չասպատակեն իր երկրները, բայց որովհետև թշնամությունները շարունակվում էին, նա գաղտնաբար հարձակվեց հայերի վրա և գրավեց բերդը 1121 թվականի հունվարին։ (Mich. le Syrien LXVI ch. XII, էջ 206, նաև L, ch.XIII, էջ 210) (Համտ. Ուռհայեցի, էջ 451)։

Երբ Բաղաքը սպանվեց էմիրների ներքին կռիվների ընթացքում, Միքայելը կրկին գրավեց բերդը, և հայերը վերսկսեցին իրենց ավարառությունները։ Մի անգամ թուրքերը հասան Միքայելի ետևից Ջիղոնայի մոտ Եփրատի եզերքին՝ նրան շրջապատեցին ամեն կողմից, և նա չկարողացավ խույս տալ։ Այն ժամանակ մի ժայռի գագաթից նետվեց գետի մեջ իր զրահներն հագած, վահանը ձեռին։ Նա սուզվեց ջրի մեջ մինչև խորը, հետո բարձրացավ և փախուստ տվեց այն կողմերը գտնվող ծանծաղուտների մեջ և չմեռավ։ Նա Կառկառը տվեց կոմս Ջոսլին II և փոխարենը ստացավ Սոփարոսը։ Իսկ Ջոսլենը վաճառեց Կառկառը 500 դինարով հայոց կաթողիկոսի եղբոր Վասիլին։ Հետո Միքայելը զղջաց և որոշեց ետ վերցնել քաղաքը, բայց Ջոսլինը չէր համաձայնվում. այդ պատճառով մի բանակ հավաքեց և Քեսունի գավառի վրա արշավեց։ Ֆրանկները նրա դեմ ելան, և նա սպանվեց 1136 թվականին (Mich. le Syrien, XVI ch. VIII, էջ 244)։

Այնուհետև ֆրանկները տիրեցին Կառկառին։

293. Մուտանաբբի: Ջրկիրի որդի էր, ծնված Քուֆայում 905 թվականին։ Երիտասարդ ժամանակ ինքն իրեն մարգարե հռչակեց և սկսեց հայտնություններ անել Կուրանի նմանությամբ և բավական աշակերտներ էլ հավաքեց։ Բայց բանտարկության ենթարկվելուց հետո հրաժարվեց իր մարգարեական ասպարեզից։ Դրա համար է, որ կոչվում է Մուտանաբբի, որ նշանակում է մարգարեության հավակնորդ։

948 թվականին հաստատվեց Սայֆադդաուլա Համդանյանի արքունիքում (Հալեբում) և եղավ նրա պաշտոնական բանաստեղծը։ Հետևեց նրա արշավանքներին և գովաբանական բանաստեղծություններ գրեց նրա մասին։ Մուտանաբբին նա–

---

[1] Պետք է լինի հյուսիսից դեպի հարավ։

ճանաչված է, որպես արաբացի լավագույն բանաստեղծներից մեկը, թեև նրա ոճը չա-փազանց վերամբարձ է, այլաբանական ու անհասկանալի։

294. Քաֆարրայա: *Ալիշանը հիշատակում է «Քեաֆիր-պինեա» (անհավատից չեն) իմաստով՝ Մսիսի և նրա միջև Ջայհան գետի վրա կա կամուրջ։ Հակ. Նալյանն էլ հիշատակում է Քեֆիր-պինա (Սիսուան, էջ 251)։*

295. Կալան-Ռոդ: *Թերևս Բալան Ռոդ. այս դեպքում կարելի է նույնացնել Բաղան-Ռոդ գավառի հետ։ Պետք է փնտրել այժմյան Բոլկարուտ Ջայի հովտում։*

296. Քալե Քափան: *Մուշից վեց ժամ հեռու Արածանի գետից հարավ Դլակա վանքը, կամ Իննակնյան, կամ Սուրբ Կարապետ։ Թուրքերեն ասում են Ջանկլը Քի-լիսե։ Հին Աշտիշատն է, գավառը Հարք գավառն է, Տուրուբերանի 16 գավառներից մեկը։*

*Բագրատ Խլաթի պատրիկը, միևնույն ժամանակ Հայաստանի իշխանը, նստում էր այնտեղ, Մուշում։*

297. Քալֆավա: *Իսթախրիի ձեռագրի մի ընթերցվածից է ուղղել Մարկվարտը։ Սա Գեղարքունիքն է, ըստ ակադեմիկոս Մանանդյանի՝ Կոթ գյուղաքաղաքի մոտ Դվինից Պարտավ տանող ճանապարհի վրա երկրորդ կայարանն էր՝ Սևանա լճի ափին (Հ. Մանանդյան, Հին Հայաստանի գլխավոր ճանապարհներ, էջ 196)։*

298. Կամախ: *Հին դարերում հիշատակված է* Suppilulima-*ի տարեգրու-թյունների մեջ* Kummana *անվամբ, որպես Հայասայում գտնվող քաղաք։*

*Գտնվում է Բարձր Հայքի Դարանաղի գավառում։ Հետո ամբողջ գավառն էլ կոչվեց նրա անունով Կամախ կամ Քեմախ։ Նույնանում է հների Անի ամրոցի հետ։ Խորենացին կոչում է «Ամուր» և հայտնում է, թե այնտեղ էին պահվում հայոց ար-քունի գանձերն ու թագավորների գերեզմանները։ Ագաթանգեղոսն ասում է «Ամուր տեղին Անի ի թագաւորաբնակ կայանսն հանգստանոցաց գերեզմանաց թագաւո-րացն հայոց»։ Այնտեղ էին պահվում նաև մեհենական պատմությունները։*

*Այս բերդաքաղաքը գտնվում է Արևմտյան Եփրատի ձախ ափի, Թանաձոր կոչ-ված վտակի վրա, Երզնկայից դեպի հարավ-արևմուտք։ Մուստավֆին նկարագրել է որպես մեծ բերդ գետի ափի վրա, «քաղաքի կողքին և նրան ենթակա բազմաթիվ բարեբեր գյուղերով»։*

299. Գանջա: *Գանձակ՝ Աղվանքում։*

300. Քինճվար: *Անձևացյաց երկրում՝ Կանգուար։ Հոփսիմեանց ճանապար-հորդության մեջ Խորենացին հիշատակում է «Կանգուառ բերդ ամուր»։ Նույնանուն բերդ և լեռ, որի հանդիպակաց դաշտը կոչվում է «Ագռաւաց քար» (Խորենացի, Թուղթ առ Սահակ Արծրունի). «Ի վերայ գետոյն մեծի որ կոչի Տիգրիս, հուպ ի բերդն ամուր որ կոչի Կանգուար և միւսոյն Ագռաւաց քար, ուստի ջուրք բազումք հոսին ի լերանց ամրոցին ըստ գարնանային մասանցն»։*

*Թովմայի ակնարկությունից երևում է, որ Կանգուարը Անձևացյաց տիրոջ կենտրոնական ամրոցն է եղել։ «Եմուտ յամուրն Կանգուար և կատարեալ զոր ինչ ախորժեացն տիրեաց Անձաւացեաց մեծաւ զօրութեամբ (Թովմա, էջ 338)։ Այս բերդի առաջ Գուրգեն Արծրունին կռվեց Սահակ Բագրատունու զնդերի դեմ (Թովմա, էջ 245)։*

*Այժմ կոչվում է Քենչեվեր։ Խոշաբ գավառում, Վան-Տոսպի և Հայոց Ձորի սահ-մանակից, արևելյան կողմում (Ա.դո, էջ 50)։*

301. Քանիսա Սալդա: *Սև եկեղեցի։ Հին բերդ Կիլիկիայում, հիմնել են հույ-ները, վերանորոգել է Հարուն Խալիֆը։ Գտնվում է ծովեզերքից քիչ հեռու։ Աբու-լ-Ֆիդան գրում է, թե իր ժամանակ հայերի ձեռքն էր գտնվում այն։*

302. Քիրան: *Վայրը մնում է չճշտված։*

303. Բեսուն։ *Ամուր բերդ Կիլիկիայում, Տավուշ-Սուի (Առաբան) և Փարզմանի միջև՝ Եփրատի արևմտյան կողմը տարածվող դաշտի վրա։ Փիլառտոսը գրավեց այն հույներից (Միք. Ասորի, էջ 329) և Թարանի հետ տվեց Գող Վասիլին (նույն, էջ 406), որից անցավ Տղա Վասիլին. Նրանց կողմից կառավարում էր Քուրտիկը. Տանկրետը 2 տարի պաշարելուց հետո գրավեց։ Այնուհետև մնաց Անտիոքի իշխանության ենթակա։ Նրա մոտ էր Կարմիր վանքը.*

304. Ալլան։ *Այժմյան Հյուսիսային Օսեթիան։*

305. Ալլուզում։ *Մնում է չճշտված։*

306. Լասուբ։ *Այժմյան Աղզանի մոտ։*

307. Ալլուճամ։ *Ամանոսի լեռնաշղթան։ Ալմա-Դաղ։*

308. Լուլվա բերդ։ *Հունարեն* Λουλου *բերդն է։ Այդ բառին իմաստ տալով արաբները կոչել են Լուլու (մարգարիտ)։ Նախկին* Faustinopolis-*ը, որի ավերակները ներկայումս Ուլու Քըշլայի մոտ են գտնվում* (Honigmann, *էջ 45)։ Գտնվում էր Կիլիկիան դռների հյուսիսային ծայրում։ Արաբներն ու բյուզանդացիները երկար կռիվների ընթացքում փոխն ի փոխ գրավեցին այն։ 832 թվականին գրավեց Ալ-Մամուն խալիֆը. «Եւ Մամունն էր ի կողմանս Յունաց զամս եօթն և առնոյր զանհպելի ամուրն Լուլուայ» (Վարդան, էջ 79)։ Հավանական է, որ հայերը Ռուբինյանների առաջին օրից տիրացան այդ բերդին և այն Հեթումյաններին պատկանող Լամբրոնի իշխանության սահմանապահ բերդ դարձավ։ Լևոնի թագադրության հանդեսում 1198 թվականին ներկա էր Լուլուա տեր Շահնշահը՝ Ներսես Լամբրոնացու եղբայրը. 1217 թվականին այս բերդը Լավզադի հետ իբր փրկանք տրվեց Քայքավուս սուլթանին՝ հայ իշխաններին գերությունից ազատելու համար։*

309. Մարտին կամ Սերտին։ *X դարում հռչակավոր էր Մերտինի ամրակառույց բերդը, որը կոչվում էր «Ալբադ», այսինքն՝ Բազե։ Այնտեղ էին ամրացված Համդանյան իշխանները* (Le Strange, *էջ 96)։*

*«Կառուցված է 1200 մետր բարձրության վրա գրեթե կրային մի ժայռի վրա և պսակված սպիտակ բերդով, որը անառիկ լինելու հռչակ ուներ։ Զետեղված լինելով այն կիրճի մոտ, որը ուղղակի հաղորդակցության մեջ է դնում Դիարբեքիրը Միջագետքի դաշտերի հետ, Մերտինը ստրատեգիական մեծ նշանակություն ուներ. սակայն շատ դժվար մատչելի լինելով անհարմար էր առևտրի համար։ Կարավանների ճանապարհը լեռների ստորոտով երկարում և ուղղվում է դեպի արևելք՝ Նիզիբին և Մուսուլ»* (Reclus, *էջ 448)։*

*Տեսնել նաև Իբն Շադդադի ծանոթագրությունների մեջ։*

310. Մատրիս։ *Դվինից Պարտավ տանող ճանապարհի վրա, Դումիսից 12 փարսախ կամ 69 կիլոմետր հեռու։ Ըստ ակադեմիկոս Մանանդյանի, պետք է կարդալ* هدرس *—Հատրիս, սկզբնական* —ه *տառերի շփոթությունն ուղղելով, և սա կլինի ճշտիվ Հաթերք գավառի անունը, որի մեջ գտնվում էր արաբական այս կայանը (Հ. Մանանդյան, Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները, էջ 200)։*

311. Մարաղա։ *Մի ժամանակ Գանձակից հետո եղավ Ադրբեջանի մայրաքաղաքը*

*Յակուտի ստուգաբանությունը, անշուշտ ժողովրդական լինելով, լուրջ հիմք չունի։ Պտղոմեոսը արդեն հիշատակում է Մարգյան* (Margian) *բառը, որով կոչում է Ուրմիայի լիճը և այդ անունը տալիս է շրջակա երկրամասին։ Թովման գրում է, «Մարակայ քաղաք» (էջ 389)։*

*Որը ապստամբվեց Թավրիզի տեր Վաջնա իբն Ռավադը, խուզայմա իբն խազիմը, որը Ադրբեջանի և Արմինիայի կառավարիչ էր նշանակված հիջրի 187 թվա-*

կանին (803) պարսպով շրջապատեց քաղաքը և պահակադոր դրեց այնտեղ։ Երբ Բաբեկը ապստամբվեց Հիջրի 201 թվականին (30 հուլ. 816—19 հուլ. 817), ժողովուրդն այնտեղ ապաստանեց։ Հիջրի 221 թվականին (817—836) Մարաղան հիշատակվում է որպես Աֆշինի ձմեռային գինակայան՝ Բաբեկի դեմ կռիվների ընթացքում։ 893 թվականին դարձավ Սաջյանների կալված, դրանց իշխանությունը ճանաչվեց խալիֆից։

XI դարի սկզբին Ռավադիների քրդական գինաստիայի ձեռքում էր գտնվում. նրանց Վահսուդան իշխանը 1051 թվականին սելջուկյանների վասալ դարձավ։ Նրա սերունդը, Ահմադիլի կոչված, պահեց քաղաքը Յակուտի ժամանակ. XIII դարի առաջին քառորդին, քաղաքում իշխում էին նույն հարստության ներկայացուցիչները։

312. Մրվանի արշավանքները Մուղանի վրա։

728 թվականին խազարների թագավորի որդին մեծ բանակով անցավ Ադրբեջան ու Հայաստան։ Ջարրահ իբն Աբդալլա ալ-Հաքամին, Հայաստանի կառավարիչը, որ 722 թվականին ավերել էր խազարների մայրաքաղաք Բալանջարը, նրանց դիմադրելու բավականաչափ ուժ չուներ։ Արդաբիլի մոտ տեղի ունեցավ բախումը, և նա պարտվեց ու սպանվեց 730 թվականին։ Խազարները տիրեցին Ադրբեջանին և իրենց ավերումները հասցրին մինչև Մուշի դռները։ Հիշամ խալիֆն ուղարկեց Սաիդ իբն Ամր ալ-Հարաշի զորավարին, որը հաղթեց նրանց։ Հետո նրանց դեմ ուղարկվեց Մասլամա իբն Աբդլմալիքը, որը 731 թվականին նրանց հալածեց մինչև Դարբանդ և այնտեղ հաստատեց 14 հազարանոց մի պահակադոր։ Խալիֆը դժգոհ մնաց, որ Մասլաման ավելի վճռական հաղթանակ չէր տարել, ուստի ուղարկեց Մրվան իբն Մուհամմադին։ Սա ընկճեց Արևելյան Կովկասի փոքր իշխաններին, արաբական տիրապետությունն ամրացրեց և խազարների հետ տևական հաշտություն կնքեց։ Խաքանն ընդունեց իսլամական կրոնը 737 թվականին։

Խազարների դեմ այս կռիվներին մասնակցեցին նաև հայերը, ինչպես վկայում են Թաբարին, Իբն ալ-Աթիրը, Բելաղորին, Յակուբին, նաև Միքայել Ասորին (Mich. le Syrien. II, էջ 501)։ Հմմտ. Ղևոնդ, էջ 144—145։

313. Խուզայմա Իբն Խազիմ ադ-Տամիմի։ Երկու անգամ կառավարիչ կարգվեց Հայաստանի վրա։ Առաջինը Մուսա ալ-Հադի խալիֆի օրով և մնաց մեկ տարի և երկու ամիս (755—756), երկրորդ անգամ՝ Հարուն ար-Ռաշիդի օրով և մնաց մեկ տարուց պակաս (800—801)։

Նա շատ վատ հիշատակ թողեց։ Յակուբի պատմիչը գովում է Խուզայմային ասելով, թե նա «կարգ պահեց երկրում, և նրա վարչության տակ երկիրը ծաղկեց ու բնակիչները ճանաչեցին նրա արդարամտությունը»։ Սակայն նույն Յակուբին խոստովանում է, թե Խուզայման իր երկրորդ վարչության ժամանակ, ըստ իր քմահաճույքի, գլխատում էր հայ նախարարներին։ Նույնը խոստովանում է նաև Բելաղորին։ Նա նորոգել տվեց Դվինի և Նախիջևանի զինվորական ճանապարհները՝ երկիրը դյուրավ հսկողության տակ պահելու և հավանական ապստամբությունները հեշտ կերպով ճնշելու համար։

Իր երկրորդ կառավարչության միջոցին Խուզայման փորձեց Հովսեփ երկրորդ կաթողիկոսից (795—806) խլել եկեղեցու կալվածները (Հովհ. կաթողիկոս, էջ 142)։ Մեծ դժվարություններով և ավելի բարձր իշխանության դիմելով միայն կաթողիկոսը կարողացավ հետ ստանալ Կուակերտն ու Հոռոմոց Մարգը, իսկ Արտաշատը մնաց ոստիկանի ձեռքում։

314. Մարրալա։ Մարդաղի։ Այժմ Մատրաղ գյուղ՝ Թեքմանի շրջանում, Էրզրումից դեպի հարավ-արևելք։

**315. Մարտ**: *Թերևս Մարտ գավառը. այժմ՝ Մարգյավար, Ուրմիա քաղաքից դեպի արևմուտք։*

**316. Մուրջ ալ-Խալիջ**: *Վայրը մնում է անտեղելի։*

**317. Մարաշ**: *Գտնվում է հին* Germanica-*ի (կամ Կիլիկյան Անտիոքի) վայրի վրա, Հույների* Marasion *և խաչակիրների* Mares *-ը։ Մուավիա խալիֆը վերանորոգեց քաղաքը, վերջին Օմայյանները ավելի ամրացրին ու Հարունը կրկին ամրացրեց զույգ պարսպով և խրամատով։*

*Ամենահին ժամանակներից Մարաշը, գտնվելով Անտիոքից դեպի Անարզաբա, Մսիս, Ալբիստան, Կեսարիա, Սամոսատ և Մալաթիա տանող ճանապարհների հանգուցակետում, կարևորագույն վայր է եղել։*

*Հին ասորեստանյան արձանագրությունների մեջ էլ է հիշատակված* Markazi *անվան տակ, որպես մայրաքաղաք Գուրգումի թագավորության։ Հայ պատմիչներն էլ տալիս են Գերմանիկէ անունը։*

*Հիջրի 16 թվականի Խալիդ իբն Վալիդը գրավեց և քանդեց այն։ Մուավիան վերաշինեց, բայց Եզիդ I մահից հետո բյուզանդացիների հարձակման հետևանքով բնակիչները հեռացան քաղաքից։ Բյուզանդական և արաբական կռիվների ընթացքում հաճախ ավերվեց և վերաշինվեց, և բնակիչները տեղափոխվեցին։ 916 թվականին Մլեհ Դոմեստիկոսը գրավեց քաղաքը և հիսուն հազար գերի վերցրեց։ Սայֆադդաուլայի դեմ մղված կռիվների ընթացքում, 949 թվականի գարնանը, Հովհաննես Կուրկուասը մի անգամ ևս գրավեց Մարաշը, իսկ 952 թվականին Համդանյան իշխանը հաղթեց նրան Մարաշում։*

*Մանազկերտի աղետից հետո Փիլառտոսը իր նոր հիմնած ընդարձակ իշխանության կենտրոն դարձրեց։ Իսկ հետո, երբ սելջուկները նրան զրկեցին իր ստացվածքից, նա այնուհանդերձ պահեց Մարաշը, որը մինչև մահը մնաց նրա սեփականություն։ Քաղաքը այդ ժամանակ ամբողջովին հայաբնակ էր։ Միքայել Ասորին ասում է, թե Փիլառտոսը իր իշխանության կենտրոն դարձրեց Մարաշի մոտ Շիրբազ կոչված գյուղը, որտեղ ծնվել էր* (Mich. le Syrien, III, *էջ 173—174*)։

*Փիլառտոսի մահից հետո քաղաքի տերը մնաց Վասիլ Տղան։*

*1097 թվականի հոկտեմբերի 13-ին հայերը քաղաքը հանձնեցին խաչակիրներին։ Ըստ խոստման, խաչակիրները քաղաքը միացրին Բյուզանդիայի կայսրության, և կայսեր կողմից 1104 թվականի սկզբներին կառավարիչ կարգվեց Թաթուլ իշխանը։ Թլպաշարի տեր Ջոսլին դը-Կուրտնեն և Անտիոքի Բոհեմոնդ իշխանը զրկեցին Թաթուլին Մարաշի սեփականությունից (Ուռհայեցի, էջ 370, Վարդան, էջ 113)։ Այնուհետև այն դարձավ Եդեսիայի իշխանության գլխավոր ավաններից մեկը։*

*Քաղաքը ամֆիթատրոնի ձև ուներ, Ախուր-դաղ լեռան հարավային լանջի երեք բլուրների վրա հաստատված։ Քաղաքի ճիշտ մեջտեղը բլրակի վրա գտնվում էր բերդը. «Միքայել Ասորու քրոնիկի մի ակնարկությունից հետևում է, որ Մարաշը պարիսպ չէ ունեցել և միայն դղյակներով էր պաշտպանված», ասում է Ռեյը* (Rey *317*), *որը սակայն հակասում է արաբական աղբյուրների տեղեկություններին։*

*1149 թվականի սեպտեմբերի 11-ին Մասուդ սուլթանը գրավեց քաղաքը։ Կլըջ Արսլանը իր հոր հետ մասնակցում էր այդ պաշարմանը։ Շնորհալին գրում է իր Ողբում.*

> *«Թուական հայոց հինգ հարիւր և ութ*
> *Նաև ութսուն երկու և ութ...*
> *Ի ժամանակ յոյժ անբարի*
> *Մինչ Գերմանիկն առեալ լինի*

*Ժամանեցին աշխարհի դոյժ*
*Քրիստոնեից դոլով անոյժ»։*

*Սուլթանը ֆրանկ պահակազորին խոստացավ ազատ անցք դեպի Անտիոք, եթե նա բերդը կամովին հանձնի։ Բայց երբ ֆրանկները, հավատալով խոստումին, հեռանում էին քաղաքից, սուլթանը նրանց ետևից զինված ուժեր ուղարկեց և ջարդեց։ Երբ Նուրադդինի իշխանությունը տարածվեց այդ կողմերում, 1152 թվականին Մարաշը տրվեց Կլըչ Արսլանին։ Երբ Կլըչ Արսլանը 1156 թվականին մի հայկական գյուղի վրա հարձակում էր գործում, Թորոսի եղբայր Ստեփանն հարձակվեց Մարաշի վրա, ավերեց և բնակիչներին գերի վերցրեց։ Նույն թվականին Թորոս իշխանը տիրացավ Մարաշին, իսկ որոշ ժամանակ անց Նուրադդինը կրկին վերցրեց այն Կլըչ Արսլանից և տվեց իր զինակցին՝ Թորոսի եղբայր Մլեհին։ Մարաշը հետո դարձյալ ընկավ սելջուկների ձեռքը։ Ղիադատադդինը, Կլըչ Արսլանի որդին, 1208 թվականին գրավեց այն, և մոտ հիսուն տարի նրա և հաջորդների կողմից նշանակված կառավարիչների ձեռքում մնաց՝ մինչև 1258 թվականը, երբ կրկին ընկավ հայերի ձեռքը։ Որոշ ժամանակ էլ Անտիոքի լատին իշխանության սեփականություն դարձավ։*

*1266 թվականին Հեթումը խլում է այն սելջուկներից, 1298 թվականին Եգիպտոսի սուլթան Մալիք Մանսուրը հետ վերցրեց Հեթումից։ 1300 թվականին Ղազան խանի արշավանքներից օգտվելով հայերը կարճ ժամանակով նորից տիրացան քաղաքին։*

*Քաղաքը սկզբում այժմյան Մարաշից չորս ժամ դեպի արևելք էր գտնվում։ Այժմյան Մարաշից մեկ ժամ դեպի արևելք Սայֆադդաուլան կառուցել էր մի ուրիշ քաղաք՝ հին Մարաշի փոխարեն, որը Կարա-Մարաշ անվամբ է ծանոթ։ Քաղաքն այժմյան վայրը փոխադրվեց XVII դարում։*

*318.* **Մրվան ալ—Հիմար:** *Օմայան վերջին խալիֆի ժամանակակիցները տվել են նրան «ալ-Հիմար» (էշ) մականունը։*

*Նա կոչվում էր նաև «ալ-Ջադի», ալ Ջադ աստվածաբանի հետևող լինելու համար։ Այդ թեորիան ընդունում էր մարդկային կամքի ազատությունը և ժխտում Ղուրանի հավիտենական ու անստեղծ լինելը։*

*319.* **Կլըչ Արսլան:** *Հեղինակը չի նշտում, թե ո՞ր Կլըչ Արսլանի մասին է խոսքը։ Բայց հավանական է, որ Կլըչ Արսլան II լինի, որը Բարքիարուքի կողմից ուղարկվեց Փոքր Ասիա և դարձավ Իկոնիայի սուլթան։*

*320.* **Մարանդ:** *Ըստ «Աշխարհացույցի» այն գտնվում էր Վասպուրականի սահմաններում, Թավրիզից 40 մղոն դեպի հյուսիս, հույները կոչել են Մարունդա։*

*Արաբական գրավումից հետո Ռաբիա ցեղից մի մարդ, Հալբաս կոչված, գրավեց Մարանդը. իր որդին՝ Բայթը ամրացրեց քաղաքը, իսկ այս վերջինի որդի Մոհամմադը դղյակներ կառուցեց, ամրացրեց նաև Ուրմիայի Շահի կոչված բերդակղզին՝ (որտեղ հետո թաղվեց Հուլաղուն և ուր պահված էր նրա գանձը։ Նույն Մոհամմադը Իբն Ռավադներից գրավեց Թավրիզը։*

*Մուտավաքիլի խալիֆայության ժամանակ Իբն Բայթը մի ոճիրի համար բանտարկվեց, բայց հետո Բուղայի միջնորդությամբ և երաշխավորներով ազատ արձակվեց։ 848 թվականին նա փախուստ տվեց Մարանդ ու ամրացավ այնտեղ։ Մարանդը շրջապատող պարիսպը երկու փարսախ շրջագիծ ուներ, և շրջակայքի անտառներն էլ պաշտպանում էին քաղաքը։ Խալիֆի բանակը ութ ամիս պաշարեց քաղաքը, մինչև Բուղան եկավ և կարողացավ բռնել Բայթին ու տանել խալիֆի մոտ։*

Մուտավաքիլը հրամայեց գլխատել, բայց այս վերջինը սկսեց արաբերեն ոտանավորներ արտասանել, ու խալիֆը, ապշած նրա բանաստեղծական շնորհներից՝ խնայեց նրա կյանքը։ Իբն Բայթը մնաց բանտում։

Նա պարսկացած արաբներից էր և գրում էր պարսկերեն բանաստեղծություններ։ Իբն Բայթի շարժումը կարելի է դիտել իբրև այդ դարում ծավալվող կրոնական բնույթի ազատագրական շարժումների երկար շղթայի մի օղակը։

Արաբ աշխարհագիրներ Իսթախրին և Իբն Հավկալը X դարում Մարանդը դասում են Ադրբեջանի փոքր քաղաքների շարքում։

321. Կահիրեի հայ բնակչությունը XIII դարում։

Նախիսլամական դարերից սկսած արաբները Մրսր անունով ճանաչում էին Նեղոսի հովիտը։ Այդ երկրի Ֆաթիմյանների օրոք կառուցված մայրաքաղաքը նույնպես կոչվեց «Մըսր ալ Կահիրա», որ նշանակում է Հաղթական քաղաք։ Այժմ քաղաքի հնագույն մասը կոչվում է «Մըսր ալ Կադիմա»։

Ֆաթիմյանների խալիֆայության շրջանում, մասնավորապես X դարի վերջից մինչև XII դարի վերջը, հայերը շատ նպաստավոր դիրք ունեին Եգիպտոսում։ Երկրի վարչական ու ռազմական բարձրագույն պաշտոնների մի մասը հայերի ձեռքում էր գտնվում, և մինչև 30 հազարի հասնող մի հայկական գաղութ էր ստեղծվել այնտեղ։ Հայազգի մեծ վեզիրները՝ Բադր ալ-Ջամալին և հաջորդները՝ մանավանդ Վահրամ Պահլավունին նպաստում էին հայկական տարրի այնտեղ հաստատվելուն։

Բայց, երբ Սալահադդինը վերջ տվեց Ֆաթիմյանների իշխանությանը և իր ձեռքը վերցրեց երկրի ղեկը, նա բարեկամական վերաբերմունք չունեցավ հայերի հանդեպ, որոնց համակրանքը նախորդ դինաստիայի նկատմամբ ակտիվ կերպով էր արտահայտվում։ Իր իշխանության սկզբի տարիներին նա քրիստոնյաների և Շիա աղանդավորների դեմ հալածանք սկսեց Եգիպտոսում։

Աբու Շամաթ պատմիչը, քաղելով Կադի ալ-Ֆադլի նամակից՝ ուղղված Ասորիքի աթաբեկին, գրում է. «Այնտեղ գտանք մի բանակ, բաղկացած հայերից, որոնք հավատարիմ էին մնացել քրիստոնեական կրոնին, մինչդեռ զերծ էին գլխահարկից, լավ էին զինված ու խանդավառ էին... Բայց ալլահի կամքը կատարվեց, և նրա օգնությունը մեզ հաղթանակ շնորհեց։ Պարտադրեցինք մեր օրենքը Հայաստանից եկող այդ ցեղերին»։

Հայերի դեմ եղած հալածանքի հետևանքով հայ գաղութի մի մասը ցրվեց, վանքերն ու եկեղեցիները գրավվեցին և հանձնվեցին կոպտերին (ղպտիներին), իսկ Եգիպտոսի հայոց պատրիարքը հեռացավ Երուսաղեմ։

Աբու Սահլը գրում է. «Այն օրից, երբ ոչ մի հայկական հեղինակություն չէր մնացել Եգիպտոսի մեջ, սուլթանի հրամանով ղպտիները սեփականացրին այս ընդարձակ և հին եկեղեցին» (Զուհրի և Բասատին հայոց հոչակավոր եկեղեցիների մասին է խոսքը— Հ. Ն.)։

Պետք է ասել, որ Եգիպտոսից դուրս, թե՛ Երուսաղեմում, թե՛ նույնիսկ Ասորիքում, Սալահադդինի վերաբերմունքը հայերի նկատմամբ այնքան աննպաստ չէր։ Կիլիկիայի վրա իր մի քանի զինական ձեռնարկներից դուրս նա հայերի հետ բարեկամական հարաբերություններ մշակեց։ XIII դարում Եգիպտոսի գլխավոր քաղաքների մեջ հայերը իբր արհեստավորներ, հանքագործներ և առևտրականներ, նշանակալից դեր էին կատարում և ակտիվորեն մասնակցում էին երկրի տնտեսական կյանքին։

Այուբյանների շրջանում էլ պետական պաշտոնների մեջ հանդիպում ենք հայ անձնավորությունների (օրինակ, Հուսամադդին Լուլու ծովակալը, Շարաֆադդին Քարաքուշ ալ-Արմանի անվանի դատավորը և ուրիշներ)։

Սալահադդինի մահից հետո Կիլիկիայի և Եգիպտոսի քաղաքական հարաբերությունները մի որոշ ժամանակ խաղաղ ընթացք ունեցան։ XIII դարի առաջին քառորդին Եգիպտոսի մեջ և եգիպտական իշխանության տակ ապրող հայերը, շնորհիվ իրենց տնտեսական ազդեցության, կարողացան մասամբ վերստին տեր դառնալ իրենց կորցրած եկեղեցական վայրերին ու կալվածքներին։

322. Մսիս: Մասիսա, Մոպսուեստիա, Մամեստիա անուններով է ծանոթ այս քաղաքը։ Կառուցված է Դաշտային Կիլիկիայում, Ջայհանի աջ ափի վրա։

Հին հեղինակների մոտ վայրը «Մոպսոս» առասպելական անունն է կրում։ Մոպսուեստիա անունը առաջին անգամ Կիկերոնի մոտ ենք հանդիպում։ Այստեղ հռոմեական բանակ էր հաստատված։

Կոստանդին կայսեր կողմից կառուցված և Հուստինիանոսից նորոգված քաղաքի հին համբավավոր կամուրջի նշանները մնում են մինչև այժմ։ V դարում քաղաքի եպիսկոպոսն էր Նեստորի աշակերտ Թեոդորը, որ համբավավոր եղավ դավանական վեճերի մեջ։

Արաբական արշավանքների ժամանակ Աբդալլա իբն Աբդլմալիքը գրավեց, ամրացրեց ու պահակազոր դրեց այնտեղ. «Ի ՃԽԱ (մԹ. 646) շինեաց Մսլիմն զՄամեստիա որ է Մսիս բարձր պարսպօք»,— գրում է Սամուել Անեցին (էջ 84)։ Այստեղ, անշուշտ, ժամանակագրական սխալ կա. քաղաքը վերակառուցեց Աբդըլմալիքը 703 թվականին, հաջորդ տարին բերդում դրվեց մի պահակազոր՝ երեք հարյուր մարտիկից բաղկացած և կառուցվեց Տալ-ալ-Հիսն կոչված միջնաբերդի բլրի մզկիթը։ Աբու-լ-Ֆիդան գրում է, թե Մսիսը կառուցվեց ալ-Մանսուր (754—775) խալիֆի կողմից.

Ամեն տարի Անտիոքի պահակազորից 1500—2000 զինվորներ ձմեռում էին այս բերդում (Mich. e Syrien, III, էջ 478)։

Օմար II (717—720) Ջայհանի հանդիպակաց ափի վրա շինեց մի երկրորդ քաղաք՝ Քաֆր Բայա կոչված։ Երրորդ մի թաղամաս էլ Ջայհանի արևելյան ափի վրա պարսպով ու խրամատով շրջապատված կառուցեց Օմայան վերջին խալիֆ Մրվանը (744—750) և կոչեց Ալ-Խուսուս։ Առաջին Աբբասյան խալիֆ Աբուլ-Աբբասը պահակազորը ավելացրեց 400 զինվորներով, որոնց տվեց հողային պարգևներ։ Հարունը (786—809) վերակառուցեց Քաֆր Բայան և միացրեց Մսիսին քարե կամուրջով, և քաղաքը կոչվեց Ալ-Մամուրիա։

Ալ-Մամունը ավելացրեց պահակազորը հազար մարդկանցով և նրանց հողեր տվեց։ Պահակազորի մեջ կային պարսիկներ, սլավներ և արաբ քրիստոնյաներ (Նաբաղյաններ)։ Ալ Մահդի խալիֆի ժամանակ պահակազորի վրա երկու հազար նոր զինվորներ ևս ավելացան։

Արաբների ձեռքից քաղաքը գրավեց Նիկեփորը. «Սա քաջապէս յաղթեաց իսմայելական զօրուն յոլով քաղաքս հանեալ ի նոցանէ զՄսիս ի ՆԺԲ (963 թ.) և զՏարսոն ի ՆԺԴ (965) թուականին» (Ասողիկ, էջ 183)։

Ռուբինյանների իշխանության սկզբում Մսիսը պատկանում էր խաչիկ Արծրունու որդի Աբլղարիբին, որը կայսեր կողմից Կիլիկիայի կողմնակալ էր նշանակված։ Խաչակիրների արշավանքի ժամանակ Լամբրոնի տիրոջ՝ Օշինի օգնությամբ և բնակիչների համաձայնությամբ Տանկրետը տեր դարձավ Մսիսին.։

Մսիսի, ինչպես և Դաշտային Կիլիկիայի քաղաքներից Տարսոնն ու Ադանան ենթարկվեցին հաճախակի արշավանքների, բյուզանդացիների ու խաչակիրների կողմից գրավվեցին ու վերագրավվեցին փոխնիփոխ, մինչև որ Ռուբինյանները տիրացան քաղաքին և երկու հակառակորդներին էլ հեռացրին այնտեղից։ 1132 թվականին Լևոն իշխանը գրավեց այն։

Երբ Թորոս իշխանը Կոստանդնուպոլսից փախչելով վերագրավեց իր հոր կալվածները, 1151 թվականին վերցրեց նաև Մսիսը, գերի բռնելով բյուզանդացի զորավար Թովմասին։ 1152 թվականին Անդրոնիկոս կայսրը պաշարեց քաղաքը, բայց Թորոսը «պատառեաց զպարիսպն Մսսայ ի գիշերի և յարձակեալ առիւծաբար ի վերայ նոցա և ի սուր սուսերի մաշէր զնոսա... և զթուլամորթ յոյնսն կալեալ՝ մերկացուցանէին և արձակէին. և տիրեաց Թորոս Մսսայ անհաղութեամբ և ամենայն գաւառացն զոր ունէր»։ Այդ կռվի մեջ հույների զինակից հայ իշխաններից սպանվեց Պապեռոնի Սմբատը, գերի ընկան Օշին Լամբրոնեցին և ուրիշները։

Կոմնենոսի դրդումով Կլըչ Արսլան II երկու անգամ հարձակում գործեց քաղաքի վրա (1153 և 1156 թթ.), բայց չկարողացավ գրավել։ Գրիգոր Երեցը (էջ 509) դեպքը պատմում է Մասուդ սուլթանի անվամբ, սակայն արշավողը Կլըչ Արսլանն է եղել։

Քիչ հետո Կոմնենոս կայսրն ինքը մեծ պատրաստությամբ առաջացավ և գրավեց Մսիսն ու Անարզաբան։ Ապա Մլեհը վերագրավեց բյուզանդացիներից, իսկ Լևոնը 1188 թվականին քաղաքը ավատ տվեց Զորտուանել Սասնեցուն, իր եղբոր աղջկան՝ Ալիծին կնության տալով նրան։

Քաղաքի կարևորությունը նկատի ունենալով, պատմիչները նույնիսկ «մայրաքաղաքն» են կոչել այն (Ալիշան, Սիսուան, էջ 249)։

Իբն Հավկալը նշում է, որ Մսիսը բաղկացած է երկու քաղաքներից, որոնցից մինը բուն Մսիսն է, իսկ մյուսը Քաֆրբայա է կոչվում. յուրաքանչյուրը Ջայհանի մի ափի վրա է կառուցված։ Նրանք մի քանի կամուրջներով կապված են իրար հետ։

Աբուլ-լ-Ֆիդան տեղեկացնում է, թե Մսիսը կառուցված է մի բարձունքի վրա, որտեղից կարելի է տեսնել մոտ չորս փարսախ հեռուն։

Մսիսն իր հարավային դիրքով ավելի մոտ լինելով Եգիպտոսի սուլթանի երկրներին, նրա հարվածներն ընդունում էր առաջինը և տուժում։ 1274 թվականին Ֆնդուխտարը քանդեց Մսիսի կամուրջը։ Սմբատ Գունդստաբլն ասում է. «Աւերեաց զՄսիսայ կանդարայն»։ Դրանից քիչ առաջ, 1266 թվականին Մարրի ճակատամարտից հետո, եգիպտացիները այրեցին քաղաքը Սսի հետ։

323. Ալ-Մուհալլաբի: Ապրում էր X դարում։ Աբբասյան խալիֆների վեզիրն էր։ Ծանոթ է այն բանով, որ ինքը գրող լինելուց ավելի, քաջալերել է մի շարք գրողների։

324. Մոկք: Ամիանոսի Moxoene-ն։ Նահանգ Հայաստանում՝ Աղձնյաց արևմտակողմում և Վանա լճի հարավակողմում։ «Լերինս բարձրաբերձ և Փապարս անտառախիտս ունի երկիրն Մոկաց»։ «Խորափետ դժուարաժայռ և ամուր աշխարհ», ասում է Հովհաննես կաթողիկոսը։

Անցյալում առանձին նախարարություն էր կազմում, որը հետո դարձավ Վասպուրականի թագավորության վասալ։

Հին պարսիկները մոկացիներին նրանց անօրինակ խիզախության համար կոչում էին դիվազղի (Խորենացի, գիրք երրորդ, Ծե)։

325. Մոկաց իշխանը։ Ունէին առաջնորդ իրենց զՎարդիկ իշխանն Մոկաց՝ որ կոչէր Ակնիկ» (Սեբէոս. էջ 175)։ Արաբների առաջին արշավանքի ժամանակ օգնեց նրանց՝ Մեծամորի կամուրջը անցնելիս։

326. Մալաթիա, կամ Մելիտինե։

Հռոմեական շրջանում Մելիտինեն արևելյան սահմանագլուխը տանող ռազմական ճանապարհի վրա, Եփրատի դիմաց, ռազմական կենտրոնատեղի էր։

Նրա ստեղծման ու զարգացման—ընդարձակման մասին Պրոկոպիոսը ուշագրավ տվյալներ է հաղորդում։ Նրա պատմածով հին դարերում այնտեղ կանգնած էր հռոմեական զինվորների մի զորամաս։ Տրայանոսի ժամանակ այդ վայրը քաղաքի կոչում ստացավ և դարձավ Փոքր Հայքի մայրաքաղաք։ Շուտով քաղաքն ընդարձակվեց ամրությունններից դուրս։ Այնտեղ կառուցվեցին «Տաճարներ, շենքեր, կառավարչական հիմնարկներ, առևտրական հրապարակ, տարբեր ապրանքների համար կրպակներ ու սրահներ, բաղնիքներ, թատրոններ, և այն բոլորը, ինչ ծառայում է մեծ քաղաքի հարդարմանը» (Прокопий Кесарийский о постройках, III, 4,15--18).

536 թվականին Հուստինիանոսի նոր բաժանմամբ այն դարձավ Երրորդ Հայքի մայրաքաղաք (Հյուրշման. Հանդէս ամսօրեայ, 1904, էջ 300)։

,Արաբական արշավանքների ժամանակ ընկավ նրանց տիրապետության տակ, բայց Բելազորին ասում է, թե Աբդալլա իբն Զուբայրի օրերին բնակիչները դատարկեցին քաղաքը, և հույները գրավեցին ու ավերեցին, բայց նրանց հեռանալուց հետո հայերը և Նաբաղյանները (քրիստոնյա արաբներ) եկան ու բնակություն հաստատեցին այնտեղ։

Արաբների ժամանակ սահմանային պաշտպանության կարևորագույն քաղաքներից մեկն էր։ Բելազորին հիշատակում է, որ քաղաքից երեք մղոն հեռու Քուբաքիր գետակի վրա գտնվող կամուրջը մեծաթիվ մնայուն պահակախմբի պաշտպանության տակ էր գտնվում։

Քաղաքը վերակառուցվեց Ալմանսուր խալիֆի կողմից 756 թվականին, այնտեղ նա դրեց չորս հազար մարդկանցից բաղկացած մի պահակախումբ։

X դարում Իսթախրին նկարագրում է Մալաթիան որպես մեծ քաղաք՝ շրջապատված բլուրներով և պտղաստաններով։ Հետո գրավվեց հույներից և Յակուտի ժամանակ դեռ նրանց ձեռքն էր գտնվում։ Հաջորդ դարում Մուստավֆին խոսում է Մալաթիայի մասին՝ որպես գեղեցիկ քաղաքի, ամուր բերդով։

Նիկեփոր կայսրը Ասորիքը գրավելուց հետո ուզեց վերաբնակեցնել Մալաթիան, որը անպաշտպան ու ամայի էր մնացել։ Խոստումներ տվեց Հակոբիկյան ասորիներին, որ կրոնական հալածանքներ չհարուցի նրանց դեմ, և նրանք ամեն կողմից փութացին վերադառնալ։ Կարճ ժամանակում բնակչությունը բազմացավ, բազմաթիվ վանքեր և եկեղեցիներ կառուցվեցին։ Կայսրը, սակայն, չպահեց իր խոստումը ու Հակոբիկյանները դարձան մուսուլմանների կողմը։ 973 թվականին Մլեհ Դեմեստիկոսը տիրացավ քաղաքին (Ուռհայեցի, էջ 17), իսկ 976—977 թվականներին Վարդ Սկլերոսը ինքն իրեն կայսր հռչակեց Մալաթիայում՝ ընդդեմ Ջմշկիկի։

Մալաթիան մնաց բյուզանդացիների ձեռքում մինչև 1057 թվականը, երբ սելջուկների կողմից գրավվեց ու կործանվեց։ Լաստիվերտցին նկարագրում է այդ աղետը (գլ. ԻԱ), նույնպես և Ուռհայեցին (էջ 153—156)։

Այնուհետև քաղաքն անցավ Փիլառտոսի իշխանության տակ։ Նրա անկումից հետո, դեռ 15 տարի ևս՝ մինչև 1101 թվականը Գաբրիելը շարունակեց տիրել՝ Բաղդադի խալիֆից ստացած իշխանությամբ (Mich. le Syrien, III, էջ 179—181)։

1125 թվականին քաղաքին տիրացավ Դանիշմանյան Ղազին։ 1178 թվականին տիրեց Կլըչ Արսլան II և 1189 թվականին տվեց իր որդուն՝ Մուհղըզադդին Քայսաշահին, որը պահեց իշխանությունը Սալահադդինի օգնությամբ իր եղբայր Կուտբադդին Մալիք շահի դեմ և իր դիրքը ամրացնելու համար ամուսնացավ Սալահադդինի որդու՝ Մալիք Ադիլի աղջկա հետ։ 1200 թվականի հունիսին Եվդոկիայի տերը՝ Ռուքնադդին Սուլայմանը իր եղբայր Մուհղադդինին զրկեց Մալաթիայի իշխանությունից և տիրեց քաղաքին։ Իր հաջորդները նույնպես շարունակեցին իշխել այնտեղ։

327. Դոմնատիկ: Ակնարկում է Դեմեստիկոս հայազգի Մլեհին, որը 972 թվականին գրավեց Մալաթիան և Ամիդը։

328. Մանազկերտ: Քաղաքի անունը հիշատակվում է զանազան ձևերով։ Ըստ Բելքի և Լեհմանի՝ իր անունը ստացել է Ուրարտուի Մենուաս թագավորի անունից։ Պարթևների ժամանակ կոչված պետք է լինի Մենուասակերտ (Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անուններ, «Հանդէս ամսօրեայ», 1907, էջ 15)։

Բյուզանդի մոտ հիշվում է «Մանաւազակերտ, որովհետև Մանավազյան տոհմի բնակավայրն էր։ Թովմա Արծրունին կոչում է «Մանաւազեան քաղաք»։ Բյուզանդացի պատմիչների կողմից կոչվել է «Մավրոկաստրոն», միջին հայերենում «Մանծկերտ» (Ուռհայեցի), իսկ արաբական ձևով՝ Մալազջերտ և այլն։

Ոմանք տեղադրում են Տուրուբերանի Ապահունյաց գավառում, իսկ ուրիշները՝ Հարք գավառում։ Ավելի ճիշտը պետք է ընդունել, որ գտնվում է այս երկուսի սահմանի վրա։

Երբ Բագրևանդի աղետից հետո (774) հայ նախարարությունների մի մասին վերջ տրվեց, Գնունիները Վահան իշխանի մահից հետո լքեցին իրենց կալվածները և ապաստարվեցին Տայքում, Բագրատունիների հովանու տակ։ Օգտվելով առիթից, Կայիսյան ցեղից էմիր Ջահարը գրավեց Մանազկերտը և հաստատեց մի էմիրություն։

913 թվականին նրա հաջորդներից Աբու Սևադան Մանազկերտ, Խլաթ, Բերկրի և Արճեշ քաղաքներով հպատակություն հայտնեց Բյուզանդիայի կայսեր (Porph. De adm. Imp., CXX, էջ 193 և հաջորդ)։ Հետո Մանազկերտը դարձավ Դավիթ Կյուրապաղատի կալվածը, որն անժառանգ մեռնելով քաղաքը կտակեց Վասիլ կայսեր (Վարդան, էջ 93)։

1000 թվականին Մանազկերտը, Ապահունիք գավառով, Վասիլ II կայսրը ավատ տվեց Սենեքերիմ Արծրունուն, բայց 1022 թվականին Արծրունյաց թագավորության հետ միացվեց կայսրությանը։

Սելջուկյան արշավանքների ժամանակ քաղաքը հիշատակվում է երկու կարևոր առիթներով։ Առաջին անգամ 1054 թվականի տակ, երբ Տուղրիլը պաշարեց մեծ ուժերով և զինական մեքենաներով, բայց չկարողացավ գրավել քաղաքի հրամանատար Աբու Կարի որդի Վասիլի պաշտպանության և ժողովրդի հերոսական դիմադրության շնորհիվ (Ուռհայեցի, էջ 142—145)։ Երկրորդ անգամ՝ 1071 թվականի օգոստոսի 26-ի տակ, երբ Բյուզանդիայի կայսր Ռոմանոս Դիոժենը Մանազկերտի մոտ ջախջախիչ պարտություն կրեց Ալփ Արսլանից։

Մելիք շահը քաղաքը ավատ տվեց Էրզրումի և Խլաթի մի մասի հետ, իր Սելջուկ եղբորը։ Շահիարմենների կարճատև տիրապետությունից հետո, 1226 թվականին քաղաքը գրավեց Ջալալեդդինը։

Այդ քաղաքի մասին Իբն Հավկալը ասում է, թե իր մեծությամբ հավասարվում է Խլաթին և Նախիջևանին։

Աբու-լ-Ֆիդան ասում է, թե փոքր քաղաք է, որի տները սև քարերով են կառուցված:

«Հնում յայտնի բերդաքաղաք էր, շրջապատված ամուր պարիսպներով, որոնց բեկորները մինչև այժմ էլ պահպանվել են: Քաղաքի արևելյան կողմում գտնվում է միջնաբերդը իր գեղեցիկ և ամուր պարիսպներով» (Ա—Դո, էջ 48):

Լինչը գրում է. «Մանազկերտ. այդ քաղաքը ներկայացնում է տարօրինակ կերպով արտահույզ պատկերը ընկած մեծության մի կուլտուրայի, որն անհետացած է: Ավելի հուզիչ է այն հակադրությունը, որը կա ներկայի դատարկության վիճակի և հնուց մնացած հիշատակարանների պերճախոս լռության մեջ: Այդ հիշատակարանների մեջ մենք կարողանում ենք վերականգնել միջնաբերդի շքեղությունը, որը թերևս պալատն էր կազմում, կրկնակ պարիսպների վեհությունը, նկարչագեղ աշտարակներով և եկեղեցիների նրբանկարները: Հրաշալի կամուրջը, սալահատակված ճամփան: Մի հայկական հանճար արտադրել է այս աշխատանքները, և մի թուրք ավերել է նրանք»:

329. **Ալ-Մանազի**: Յակուտի հիշատակած Աբու Նասր ալ-Մանազիի մասին Իբն Խալլիքանի մոտ գտնում ենք հետևյալ տեղեկությունը.

«Աբու Նասր Ահմադ իբն Յուսուֆ աս-Սուլայքի ալ-Մանազին ականավոր գիտնական և հռչակավոր բանաստեղծ էր: Նա վեզիրության պաշտոն վարեց Մուֆարգինի և Դիարբեքրի տիրոջ՝ Աբու Նասր իբն Մրվան ալ-Քուրդիի մոտ: Արժեքավոր մտավորական էր, որ քանիցս պատգամավոր ուղարկվեց Կոստանդնուպոլիս: Շատ գրքեր հավաքեց և նվիրեց զանազան քաղաքների մզկիթներին և մատենադարաններին: Մաարաթ ան-Նուման: մեջ հանդիպում ունեցավ Աբուլ-Ալա Մաարրու հետ, որը դժգոհություն հայտնեց իր վիճակի առթիվ, ասելով, թե ինքը հեռացել է մարդկանցից, որովհետև նրանք անիրավություն են անում իրեն: Մանազին ասաց.— Դեռ ի՞նչ են ուզում քեզանից, երբ իրենց ես թողել այս աշխարհն ու հանդերձյալը:

— Հանդերձյա՞լն էլ,— հարցում տվեց Աբուլ-Ալան, այս խոսքը կրկնելով մի քանի անգամ և այդ մասին ցավ զգալով («Իբն Խալլիքան, Վաֆայաթ ալ այան. բնագիր, էջ 77):

Մանազին մեռել է 1046 թվականին:

330. **Մուշ**:— Գավառ և քաղաք: Մշո դաշտը կազմում է Արածանիի ձախ վտակի, Մեղրագետի հովիտը:

Շարաֆ-խան Բիթլիսիի տվյալներով «Մուշ» բառը հայերենի մեջ «խոնավ, թաց գետին, մամուռ» է նշանակում (Տոմաշեկ, էջ 16): Բնակիչները կարծում են, թե անունը Մշուշ բառից է առաջացել, որովհետև առավոտները ամբողջ տարածությունը ծածկված է լինում մշուշով: Ըստ ռամկական առածի.

«Մշո դաշտ մշուշ է,
Իր հողն ու ջուրն անուշ է»:

«Ջհաննումաում» Քյաթիբ Չելեբին ենթադրում է, թե Մուշ բառը հայերենում նշանակում է բուք (Ինճիճյան, Աշխարհագրութիւն, Ա, էջ 150):

Չենորը տեղ-տեղ կոչում է «Մուշ ավան», «Մուշ քաղաք»: Ասորի պատմիչներ, ինչպես Թովման, ասում են պարզապես «Քաղաքն Տարոնոյ»:

Աբու-լ-Ֆիդան գրում է. «Այդ երկրի բնակիչների ասելով Մուշը մի փոքր վայր է, որը շրջապատված չէ պարսպով և գտնվում է մի սարի ստորոտում, գետարև-

րանի մոտ։ Այն ունի ընդարձակ դաշտ, որը ծանոթ է Մշո դաշտ անվամբ և որը կարելի է կտրել երկու օրվա ճանապարհով»։

Մուշը Մամիկոնյանների հին տիրույթներից էր։ Արաբական տիրապետության շրջանում Բագրատունիները իշխեցին Մուշի և Տարոնի վրա։

331. **Մուֆարղին** կամ Միաֆարղին։ Ասորական «Մայֆարքաթ» բառի աղավաղումն է, որ նշանակում է «բաժանված ջրեր»։ Միջին հայերենում կոչվել է Մուհարկին, Մուփարկին, նաև Նփրկերտ։

Քաղաքը Բաթման Սուի մոտ է։ «Ի հնումն Ութա կամ Ոտայեցւոց երկիր կոչէր», ըստ աւանդութեան ասում է Ալիշանը, և ավելացնում, թե ըստ տեղացիների խոսքի «Ընծայեալ է ի Նուֆարսոյ շնէ Տիգրանայ Հայկազնոյ» (Ալիշան, Տեղագրութիւն Հայոց մեծաց, էջ 43)։

Քաղաքը ծանոթ է նաև «Մարտիրոպոլիս» (Martyropolis) կամ Մարտիրոսաց քաղաք» անվամբ։ Հովհաննես կաթողիկոսը գրում է. «Եւ զչորրորդն կոչեցեալ Հայք՝ յորում մայրաքաղաք Մարտիրոսաց Պօլիս» (էջ 88)։ Ասողիկը՝ նույնպես. «Ի Մարտիրոսաց Պօլիս որ է Նփրկերտ» (էջ 193)։ Կոչվել է նաև Նեփրետ։

Ասորիները կոչում են «Մեդինաթ Սանդէ» (վկաների քաղաք)։

Հուստինիանոսը նորոգեց քաղաքը և Չորրորդ Հայքի մայրաքաղաք դարձրեց, կոչելով Հուստինիանուպոլիս և այնտեղ պահակազոր դնելով։ Խորենացուն վերագրված աշխարհագրության մեջ Նփրկերտը զետեղվում է Աղձնյաց նահանգում։ Հուստինիանոսի ժամանակ (527—564) գավառը կոչվում էր Ծոփք։

«Խորենացիի աշխարհագրութիւնը կը յիշէ Աղձնիքի մէջ, որովհետև 591 թուին պարսիկները ստիպուեցան Աղձնիքը հռոմայեցւոց տալ. Մեծ Ծոփքը նոյն ատենուան Դ. Հայքէն բաժնուելով միացուեցաւ Աղձնեաց և Միջագետաց սահմանակից մասին հետ և կազմեց Հռոմայեցւոց Վերին Միջագետքի գաւառին կամ առաջին Չորրորդ Հայոց մէկ մասը, իսկ նախկին Չորրորդ Հայոց միւսալ գաւառները (Ծոփք, Անձիտ և այլն) կազմեցին Երկրորդ Չորրորդ Հայքը։ Նոյն ժամանակները Մեծ Ծոփք անունն ալ գործածութենէ կը դադրի և գաւառը Նփրկերտ անուան տակ երնծայուի Աղձնիք գաւառին» (Հյուբշման, Հանդէս ամսօր. 1905, էջ 124)։

Քաղաքը ամրացված էր պարիսպներով, բայց Պրոկոպիոսի ասելով պարիսպները սկզբում շատ ամուր չէին, միայն չորս ոտնաչափ լայնություն և 20 ոտնաչափ բարձրություն ունեին։ Հուստինիանոսը լայնացրեց այդ պարիսպները։

X դարում Մուկադդասին նկարագրում է որպես գեղեցիկ քաղաք, շրջապատված քարե ժանիքավոր պարսպով և խոր փոսով, արվարձաններով շրջապատված։ Շինությունների քարերը առավելապես սպիտակ էին։

1046 թ. նոյեմբեր ամսին Մուֆարղին այցելեց Նասիրի Խոսրովը։ «Մուֆարղինը,— գրում է նա,— շրջապատված է մեծ պարսպով, շինված սպիտակ քարերից, որոնցից յուրաքանչյուրը 500 ման կշիռ ունի, մեծ աշտարակները նույնպես սպիտակ քարից են, իրարից 50 կանգուն հեռավորության վրա։ Պարիսպը իր ամբողջ երկարության վրա ժանիքավոր է և այնքան լավ է պահպանված, որ կարծես աշխատավորները գեռ նոր են ավարտել կառուցումը։ Այս քաղաքը ունի մեկ դուռ միայն, որը նայում է դեպի արևմտյան կողմը։ Մեծ դուռ է այն, որի վրա երկաթե կամար կա, և այնտեղ փայտի ոչ մի հետք չի տեսնվում։ Քաղաքից դուրս տարածվում են արվարձանները, այնտեղ են գտնվում քարվանսարաները, շուկաները,

բաղանիքները։ Գտնվում է Մուֆարղինից ընդամենը ինն փարսախ հեռավորության վրա» (Սաֆարնամե, էջ 369)։

Արաբական արշավանքների առաջին տարիներում քաղաքն ընկավ նրանց տիրապետության տակ։ X դարում բյուզանդացիների ձեռքում էր։ Այնտեղ տիրում էր կայսեր կողմից նշանակված Բատ ամիրան (Ասողիկ, էջ 192)։ Նրան մահից հետո հաջորդեց իր որդի Արումսարը։ X դարի վերջում քաղաքի բնակչությունը մեծ մասամբ բաղկացած էր հայերից։

Սելջուկյան արշավանքներից հետո քաղաքն ընկավ սելջուկների ձեռքը։ Այնուհետև տեր դարձան Օրտոքյանները։

1260 թվականին Հուլավուն մեծ բանակով, որին մասնակցում էին հայ իշխաններ Պառշ Խաղբակյանը և ուրիշներ, պաշարեց և սարսափելի նեղության ու տառապանքի մատնելուց հետո գրավեց այն։

Լեհմանի և Բելքի քննությամբ Մուֆարղինը հին Տիգրանակերտի վայրն է։ Այդ մասին կարծիք հայտնել էր արդեն Մոլտքեն (Լեհման, Հին Տիգրանակերտի տեղը, Հանդէս ամս., 1907, էջ 21 և հաջորդ)։ Տիգրիսի հյուսիսային կողմում գտնվելը և վայրի բոլոր պարագաները լրացնում են Պլինիոսի և Ստրաբոնի բացատրությունները. սրանով հերքվում է Սախավի այն կարծիքը, թե Տել էրմենն է Տիգրանակերտի վայրը։

Մուֆարղինը ներկայումս Սիլիվան կոչված վայրն է։

332. Մառուքա կամ Մարուսա։

Հիշված է նաև Մարութաս անվամբ։ IV դարի վերջին և V դարի սկզբին եղել է Նփրկերտի եպիսկոպոս։ Նրան է վերագրվում «Վկայք արևելից» ժողովածուի հեղինակությունը, որը թարգմանել է հայերենի Աբրահամ Խոստովանողը, երբ նա Հազկերտի կողմից աքսորվել էր Ասորիքի Շահփուլ քաղաքը։

«Շապուհի մեծ հալածանքը, որը կարճ ընդհատումներով տևեց 39 տարի, 340-ից մինչև 379 թվականը, իրականում սկսվեց 340 թվականին՝ քրիստոնյաների դեմ հրատարակված դեկրետից մի տարի հետո։ Այդ հալածանքների մասին գրված պատմությունը վերագրվում է Մարութային, Մայֆարկերտի եպիսկոպոսին[1], որ ապրում էր IV դարի վերջում և V դարի սկզբում։ Այդ եպիսկոպոսը գրական մեծ կուլտուրայի տեր էր և հայտնի բժիշկ։ Երկու տարբեր առիթներով նա իբրև դեսպան ուղարկվեց Հազկերտ I մոտ՝ Արկադեոսի և Թեոդոս II կողմից. շնորհիվ նրա միջամտության, Պարսկաստանի թագավորի կողմից խաղաղություն տրվեց եկեղեցուն։ Մարութան գրել է նաև հոգևոր ճառեր և ասորերենի է թարգմանել Նիկիական կանոնները» (R. Duval, Anciennes litteratures chretiennes, II, La litterature Syriaque, էջ 122)։

Մարութայի մասին Յակուտի տված տեղեկությունները համընկնում են հայկական Հայսմավուրքում տրված Մարութայի վարքի համառոտ տվյալների շատ կետերի հետ։ Այսպես՝

«Մայիսի 27—«Սուրբն Մարութայ էր ի հօրէ ասորի և ի մօրէ հայ ազգաւ, և էր ի ժամանակի Թեոդոսի փոքուն կայսեր յունաց և Յազկերտի պարսից արքայի։ Եւ էր նա այր սուրբ և նշանագործ, մինչև զի զբաղումս ի կռապաշտիցն դարձոյց նշանօք ի հաւատս Քրիստոսի և բժշկէր զախտաժէտս և փարատէր զամենայն ցաւս ի մարդոց և յանասնոց. և եհաս լուր նորա ի թագաւորն պարսից։ Եւ նա կոչեաց առ ինքն զՄարութայ և մեծաւ պատուով ընկալաւ զնա։ Եւ էր որդի մի Յազկերտի

---

[1] Թեև այս վերագրումը հիմնավորված չի թվում։

այսահար և սուրբն Մարութայ ազօթիւք բժշկեաց զնա, այլ և զցաւս գլխոյ արքային փարատեաց և յոյժ սիրեցաւ ի թագաւորէն: ... Եւ արար սէր և բարեկամութիւն ընդ կայսերն Յունաց Թեոդոսի փոքուն և յուղարկեաց զսուրբն Մարութայ մեծաւ պատուով: Եւ նա եկեալ յերկիրն Ծոփաց և հրամանաւ Թէոդոսի կայսերն Յունաց շինեաց զքաղաքն Մարտիրոսաց և անուանեաց Նփրկերտ որ արդ ասի Մուֆարղին և անդ բազում նշխարս ժողովեաց մարտիրոսաց ի պարսից, ի հայոց. ի յունաց և յասորոց և յամենայն երկրէ թուով ՌՃՁՌ որ կեան և են արդ ի պարիսպ քաղաքին՝ և ի հիմունս եկեղեցեացն»:

333. Մեկն էր Մուհամմեդի փասք հավատարմյալներից: Նա առաջին օրից ընդունեց իսլամը և աջակցեց նրա տարածմանը: Օժանդակեց Աբուբաքրին՝ խալիֆայական ընտրության մեջ: Աբուբաքրը նրան ուղարկեց դեպի Ասորիք, բազմաթիվ բանակների հրամանատար կարգելով: Երբ Օմարը եղավ խալիֆ, Ասորիքի զորագնդերի գլխավոր հրամանատարությունը հանձնեց նրան: Նա էր, որ գրավեց Դամասկոսը, Հեմսը Անտիոքը և Հալեբը: Մեռավ 639 թվականին:

334. Միմազ, կամ Մայմայ: Բելազորին «Նվաճումների գրքում» ասում է, թե երբ Հոզայֆան Օմար խալիֆի ժամանակ արշավեց Ադրբեջանի վրա տեղի մարզպանը նրան դիմադրեց՝ Բաջարվանի, Մայմազի և շրջակա այլ վայրերի կռվողներից բաղկացած գնդերով: Հավանաբար պետք է նույնացնել ներկայիս Վարազաբի կամ Արասբարանի կենտրոն՝ Ահար քաղաքի հետ:

335. Նախջուան: Նախիջևան: Պտղոմեոսի Naxuana-ն: Ըստ Խորենացու, Աժդահակի ժամանակից ամրոց էր՝ Նախջաւան կամ Նախճաւան ձևով (Պատմութիւն, Գիրք Առաջին, Լ.): Արշակ թագավորի ժամանակ «շեն» էր «որ ի շինին Նախճաւանի» (Խոր., Պատմ., Գիրք Երրորդ, ԼԲ):

Ըստ «Աշխարհացույցի», Վասպուրական նահանգումն էր գտնվում՝ «Նախ- ...աւան» անվամբ: Նույնը հաստատում է և Բելազորին:

Փարպեցին ասում է գյուղ, ուրիշ անգամներ՝ քաղաք և ոստան:

Գտնվում է Արաքսի մոտ, հյուսիսից դեպի հարավ (Իրաք) տանող մեծ ճանապարհի և գետի կողքով ընթացող ճանապարհի խաչաձևման վայրում: ․իրքի կարևորության պատճառով արաբական տիրապետության ժամանակ, 8000 զինվորից բաղկացած արաբական պահակազոր էր պահվում այնտեղ: Կառավարվում էր հատուկ էմիրով: IX դարի սկզբին Նախջուանի էմիրներն էլ մասնակցեցին խալիֆայության դեմ ծավալվող շարժմանը: Օրինակ, Եզիդը միացավ Թիֆլիսի Մոհամմադի բն Հատտարի գլխավորած հակախալիֆայական շարժմանը (829 թվին):

Քաղաքը վեճի առարկա դարձավ Սյունյաց և Արծրունյաց իշխանների միջև. որոնք 901 թվականին Բախվեցին նրան տիրելու համար:

336. Նաշավա: Արաբ հեղինակները, ինչպես և Յակուտը, այս քաղաքը նույնացնում են Նախիջևանի հետ: Լուսաբանության կարոտ մի շփոթ կետ կա Պետվինգերյան քարտեզի Արտաշատ — Խոյ ճանապարհի վրա նշանակված է Nasabi կայարանը: Ակադեմիկոս Մանանդյանը այս վայրը նույնացնում է Նվարսակ գյուղի հետ: Երկու անունների բավականին շեշտված տարբերությունը նա վերագրում է լոկ նմանաձայն տառերի շփոթությանը (Հ. Մանանդյան, Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները, էջ 63): Պետք է գիտել, սակայն, որ Նասաբի-ն ավելի նույնանում է Նաշավայի հետ ս-շ և բ-վ-ի լծորդությամբ: Հարց է ծագում, թե արդյո՞ք նույն անվամբ երկու տարբեր քաղաքներ չեն եղել:

337. Նփրկերտ: Հայ պատմիչներին ծանոթ Մծբինը

Ուռհայեցին կոչում է Նսևպ և ներկայացնում որպես բերդ (էջ 224)։ Միքայել Ասորու «Ժամանակագրության» թարգմանության մեջ «Նսերին» (էջ 428)։

«Նիսիբինը Տիգրանի աթոռանիստ քաղաքներից էր։ Հռոմայեցիները այն գրավելուց հետո վերածեցին միջնաբերդի ընդդեմ պարթևների, իբրև երկրորդ Անտիոքի, որտեղ ըստ ավանդության հարյուր հազարավոր բնակիչներ կային։ Մոտ է Ջախջախ գետակը, որ թափվում է Խաբուր գետի մեջ» (Reclus էջ 448)։ Նիսիբինում էին պահվում Տիգրանի գանձերը։

Նիսիբինի կարևորությունը մեծ է եղել որպես Տիգրիսի և Միջերկրականի միջև առևտրական ու ռազմական մեծ ճանապարհի վրա եղող կարևոր կայան։ Քրիստոնեության սկզբի դարերում եղավ նաև կրոնական նշանավոր կենտրոն։

1093—1094 թվականներին Տուտուշ սուլթանը գրավեց ու ավերեց այն. «Իսկ զորքն հայոց, որ էին ընդ սուլտանին, արարին կոտորածս ղտաճիկս իբրև բիւր մի» (Ուռհայեցի, էջ 297)։

*338.* **Նկան:** Խիստ ամուր բերդ, ապաստարան Արծրունյաց նախարարական տան։ Գտնվում է Վասպուրական նահանգում, Վանա, Սևանի և Ուրմիո լճերից հավասար հեռավորության վրա։ Հիշվում է Ղևոնդի մոտ։ Գագիկ Արծրունին, երբ սկսեց տիրանալ Վասպուրականին, նախ ամրացավ Նկան ամրոցում, որտեղից ասպատակեց շրջակա վայրերը։ Մուսա իբն Իսա ալ-Հաշիմի կառավարիչը պաշարեց Նկանը և չկարողացավ գրավել, բայց «դաւով ննջեցեալ կոչէր ի խաղաղութիւն» (Ղևոնդ, էջ 166)։

Հիշվում է առանձնապես Բուղայի արշավանքի ժամանակ։ Այնտեղ իր ընտանիքով և վասալ ֆեոդալներով ամրացավ Աշոտ Արծրունին. «Եկին մտին ի բերդն դղեակ, յամրոցն Նկան, որ ի Թոռնաւան գաւառի» (Թովմա, էջ 219)։ Բուղայի անմիջական հրամանատարության տակ մի մեծ բանակ՝ բաղկացած ամեն կարգի զինանոցներից, օժտված մեքենաներով, պարսատիկներով, արկոցներով, նավթի և ծծմբի խառնուրդը պարունակող անոթներով, պաշարեց և հարձակում կատարեց բերդի վրա 852 թվականին։ Աշոտը ապահով էր բերդի ամրությանը և դրա համար արհամարհում էր թշնամու սպառնալիքները (Թովմա, էջ 221—222)։

Բերդը գրավվեց ոչ թե ուժով, այլ միայն իշխանների դավադրությամբ։

*339.* **Նախջուան:** Տես Նախիջևան։ Կարելի է ենթադրել նաև XI դարի վրաց աղբյուրների Ցիխե Նախճավանիը՝ Կախեթում։

*340.* **Նահր ալ-Ազրակ:** Կապույտ գետ-Սանջա գետը։

*341.* **Նահր ալ-Ասվադ:** Սև գետ։ Ջեյհանի մի վտակը արևելյան Կիլիկիայում։ Կա նաև մի ուրիշ Նահր ալ-ասվադ, որն անցնում է Դուրզուկի ներքևից։

*342.* **Նահր Հուրիթ:** Ակ-սու գետակը, որ բխում է Հազաթի լճից և հոսելով դեպի հարավ-արևմուտք, թափվում է Ջեյհան գետը։

*343.* **Նիրան։** Արևելյան Խաբուրի ակունքների շրջանում, այժմ՝ Նիր։

*344.* **Վան:** Վասպուրական նահանգում և Տոսպ գավառում։ Փավստոսը հիշատակում է «Ամուր քաղաքն Վան որ է ի գաւառին Տոսբայ» (Դպրութիւն Դ, գլ. ԾԵ)։ Խորենացին կոչում է «Վանն Տոսպայ» (Պատմութիւն, գիրք Գ, գլ. ԼԵ)։

Գտնվում է Վանա լճի արևելակողմում «ի ձորաձև դաշտի խոնարհելոյ ի ծովն կոյս» (Ալիշան, Տեղագիր Հայոց մեծաց, էջ 49)։ Ավանդությամբ կոչվում է նաև Շամիրամակերտ։

Թովման անվանում է «Մեծն Վան»։ Արծրունյաց թագավորներ Աշոտը, Գագիկը, Դերենիկը գեղեցկացրին և ամրացրին քաղաքը Վասպուրականի ուրիշ վայրերի հետ, «Ջանմատոյց ամրոցն զՇամիրամաշէնն, զաւանն Վան և զերկնապիշ և գլխավորանոցատանց զանառիկ բերդն զԱմիւք» (Թովմա, էջ 498)։

Վասպուրականի վերջին թագավոր Սենեքերիմը Վանը և Վասպուրականի նահանգը վաճառեց Բյուզանդիայի կայսեր և ինքը ժողովրդի մի մասի հետ գաղթեց Բյուզանդիայի հողերը։

Արաբական աղբյուրներում Վան անվանը խիստ հազվադեպ ենք հանդիպում։ Միայն Իբն Հավկալն է հիշատակում Արծրունի Իբն Դայրանին (Դերանիկի որդուն) որպես Ջավազանի, Վանի և Ոստանի իշխան։ Յակուտը Վանը հիշատակում է որպես միայն բերդ և չի կարողանում ճիշտ որոշել նրա տեղադրությունը։

**345. Վարդանիս:** Եփրատից արևելք, Ակնա արևելյան կողմում, այժմյան Վարդենիքը։ Ըստ Կիպերտի՝ Ձմշկածագի հյուսիսակողմում, իսկ ըստ Լինչի՝ հարավ-արևմտյան կողմում (Հյուրշման, Հին Հայոց տեղւոյ անունները, «Հանդէս Ամսօրեայ», 1907, էջ 180)։

**346. Վարդանաներտ:**

Պատմական տվյալներից երևում է, որ եղել են երկու Վարդանակերտներ, մեկը Այրարատյան նահանգում, որտեղ 703 թվականին ժողովրդական ապստամբության ժամանակ, Սմբատ Բագրատունու գլխավորությամբ հայերը հաղթեցին արաբներին (այժմյան Ասլանտաղի գետանցքի մոտ՝ Արաքս գետի հարավային ափ), իսկ մյուսը, որի մասին խոսում են Յակուտը և Խորենացին,— Փայտակարան նահանգում։

Արաբ մատենագիրները ընդհանրապես խոսում են այս վերջին Վարդանակերտի մասին. օրինակ, Բելաձորին գրում է, որ երբ Մրվանը Դերբենդից այս կողմ՝ խազարներին նվաճելուց հետո վերադարձավ Արդաբիլ, նրա տեղապահ Մուսաֆիրը ապստամբություն բարձրացրեց. նրան միացան իր համախոհները Բաջարվանում, Վարդանակերտում և Փայտակարանում։

Մուհամմադ իբն Օբայդուլլահը, երբ ըմբոստացավ խալիֆի դեմ, խալիֆայական զորքերը Սմբատ Բագրատունու օգնությամբ 836 թվականին նրան ընկճեցին նույն Վարդանակերտում։

**347. Հարունիա:** Կազմում է սահմանային բերդերի շղթայի մի օղակ և «Հարուն» կամ «Հարունիա» անվամբ, խաչակրաց ժամանակագիրների մոտ Aronie, Alrone, Haronia և այլն։ Հեթումը այդ բերդը պարգևեց Տևտոնյան ասպետներին՝ վավերական հրովարտակով, փոխարեն նրանց խոստման՝ պաշտպանելու Հայոց թագավորությունը (Ալիշան, Սիսուան, էջ 206—207)։

793 թվականին Հարունը կառուցեց կամ նորոգեց այն։ Բյուզանդացիք գրավեցին 959 թվականին, այնուհետև Սայֆադդաուլան վերաշինեց 967 թվականին, իսկ հետո գրավեցին հայերը, և այն մնաց որպես Կիլիկիայի հայ թագավորների սեփականություն։ Ստույգ վայրը հայտնի չէ, բայց այն գտնվում է Մարաշի և Անարզաբայի միջև, առաջինից մի օրվա հեռավորության վրա։

**348. Հանձիթ.—** Գավառ Չորրորդ Հայքում։ Խեթական արձանագրությունների Anzitu երկիրն է, որի ժողովուրդը Alzi կամ Anzi էր կոչվում։ Հայասայի և Իսուվայի թագավորությունների հետ այդ թագավորությունը ներկայանում է որպես պատմական Հայաստանի տերիտորիայում ծանոթ ամենահին պետություններից մեկը (1400—1200 մ. թ. ա.)։ Մենուայի արձանագրության մեջ՝ Al-zi-nini. Այդ անվան իրանական ձևն է Արզունեն, իսկ հայկականը՝ Աղձնիք։

Պտղոմեոսի մոտ՝ Անզիտինի, ասորական դրությունների մեջ՝ Հանաձեթ։ Փավստոսի և Խորենացու մոտ՝ Անձիտ և այլն։

**349. Յունան:** Տեղադրվում է այժմյան Աղդամի մոտերքը։

## ԱԲՈՒ-Լ-ՖԻԴԱ

Իսմայիլ իբն Ալի Իմադադդին Աբու-լ-Ֆիդա արաբ պատմագիրն ու աշխարհագիրը Սալահադդինի հոր՝ Այուբի սերունդից էր. ծնվել է 1273 թվականին Դամասկոսում։

Նա փոքր տարիքից ստացավ զինվորական և գրական կրթություն. մասնակցեց մի շարք արշավանքների ու պատերազմների։ 1310 թվականին սուլթան Մալիք Նասրը նրան վարձատրեց Համաթի իշխանությամբ՝ ի դիմաց այն ծառայությունների որ մատուցել էր նա, կռվելով սուլթանի հակառակորդի՝ Բիբարսի և մոնղոլների դեմ։ Աբու-լ-Ֆիդան մեռավ 1333 թվականին, քսան տարի իշխելով Համաթում։

Նրա գլխավոր գործը՝ «Համառոտ պատմություն մարդկային ցեղի», որը տարեգրության ձև ունի, սկսվում է առասպելական ժամանակներից և ավարտվում 1328 թվականին։ Այդ ընդարձակ աշխատությունը նախորդ պատմագիրների գործերի մի կոմպիլիացիա է, և շատ դժվար է ճշտել, թե այստեղ որն է իրապես հեղինակի բաժինը։

Նրա երկրորդ կարևոր գործն է «Աշխարհագրությունը»։

Աբու-լ-Ֆիդայի նկարագրությունները ինքնատիպ են, առավելապես այն երկրների վերաբերմամբ, որտեղ ինքն անձամբ է եղել, ինչպես՝ Ասորիքը, Եգիպտոսը, Արաբիայի մի մասը, Կապադովկիան՝ մինչև Կեսարիա։ Մնացած երկրների մասին, որտեղ ինքը չի եղել, նա, ինչպես հայտնի է, օգտագործել է իրենից առաջ ապրած բազմաթիվ աշխարհագիրների գործերը, որոնցից են Իբն-Հավկալը, Յակուբին և ուրիշներ։

Աբու-լ-Ֆիդայի «Ժամանակագրության» այն մասերը, որոնք վերաբերում են Հայաստանին, հայերին և հարևան երկրներին, թարգմանել ենք արաբերեն բնագրի Կ. Պոլսում 1860 թվականին կատարված հրատարակությունից։

## ԱԲՈՒ-Լ-ՖԻԴԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

### ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

*էջ 97*

*Հայերի երկիրը Հայաստանն էր և երկրի մայրաքաղաքն էր Խլաթը։ Երբ մուսուլմանները տիրեցին այդ վայրերին, հայերը հպատակ դարձան նրանց։ Հետո հայերը տիրեցին սահմանային ամրություններին և մուսուլմաններից գրավեցին Տարսոնը, Մսիսը և իշխեցին բոլոր այն երկրներին, որոնք այսօր ծանոթ են Սիսի[1] անվամբ։ Իսկ Սիսը մի քաղաք է, որ մի ամուր բերդ է և ներկա ժամանակում հայոց թագավորության մայրաքաղաքն է։*

*Վրացիների երկիրը սահմանամերձ է Խլաթի երկրին. սկիզբ է առնում Կ. Պոլսի Ծոցից (Սև ծով) և տարածվում է դեպի հյուսիս, նրանք ունեն անմատչելի լեռներ։ Վրացիները բազմամարդ են. նրանց մեջ տիրապետում է քրիստոնեական կրոնը։ Ունեն ամուր բերդեր և ընդարձակ քաղաքներ։ Նրանց մոտ արքայական գահը ժառանգում են թագավորական տան տղամարդիկ և կանայք։*

*էջ 225*

*Հիջրի 133 թվականին (750 թ. օգ. 9—751 թ. հուլ. 29) Ռումի թագավորը, որի անունն էր Կոստանդին[2] գրավեց Մալաթիան և Կալիկալան։*

### ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

*էջ 16*

*Հիջրի 181 թվականին (797 մարտ 5—798 փետրվար 22) Ռաշիդը մտավ հույների հողը և գրավեց Սաֆսաֆ բերդը։*

էջ 32

Հիջրի 215 թվական (830 թ. 28 փետրվար—831 թ. փետրվար 18) Մամունը[3] արշավանք կատարեց հույների վրա և հասավ Մամբիջ[4], հետո Անտիոք, հետո Մսիս և Տարսոն և այնտեղից մտավ հույների երկիրը։

էջ 37

Հիջրի 226 թվական (840—841)։ Մոտասիմը[5] ձերբակալեց Աֆշին Հայդար Իբն Քավուսին և բանտարկեց նրան։ Նա մեռավ բանտում, որից հետո դուրս բերին նրա դիակը, խաչեցին ու ապա մարմինն այրեցին[6]։ Սա այն Աֆշինն էր, որ կռվեց մոգապաշտ Բաբեկի դեմ, որն իշխում էր Թաբարստանի լեռնագավառում 20 տարի շարունակ. նա այնտեղ ամրացրել էր իր իշխանությունը և շատ անգամներ հաղթել Մոտասիմի բանակներին։ Ի վերջո Մոտասիմը նրա դեմ ուղարկեց հիշյալ Աֆշինին, որը երկար և բուռն կռիվներ մղեց նրա դեմ և հաղթելով նրան, գրավեց Բաբեկի Ալբադ քաղաքը, գերի վերցրեց Բաբեկին, տարավ Մոտասիմի մոտ, որն սպանեց նրան։

էջ 51

Հիջրի 256 թվական (870)։ Իսա Իբն ալ-Շեյխը[7] Ասորիքից պաշտոնանկ արվեց։ Նա տիրել էր այդ կողմերին և ընդհատել էր հարկերի առաքումը Բաղդադ։ Իսային տրվեց Հայաստանի կառավարչությունը։

էջ 78

Հիջրի 316 թվական (927 մարտ 8—928 փետրվար 24)։ Դումուստուկը[8] մեծ բանակով Ռումից հասավ Ախլաթ, և նրանք (արաբները) խնդրեցին խաղաղություն, և [հույները] համաձայնվեցին այն հիման վրա, որ մզկիթի մինբարը[9] վերացնելով փոխարենը խաչը դրվի։ Հետո մեկնեց Բիթլիս և նույն կերպով վարվեց նրա հետ։ Դումուստուկը այն պաշտոնյան էր, որի հրամանի ներքո էին գտնվում Կոստանդնուպոլսի ծոցից դեպի արևելք տարածվող երկրները։

էջ 86

Հիջրի 322 թվականին (934) Դումուստուկը արշավեց իսլամական երկրների վրա և երկար պաշարելուց հետո տիրեց Մալաթիային, որ անձնատուր եղավ։ Բնակիչներին դուրս հանեց քաղաքից և տեղափոխեց ապահով տեղ։ Այդ տեղի ունեցավ Ջումադալ—Ուխրա

*ամսի սկզբներին (934 մայիս 19—հունիս 17)։ Հույներն այնտեղ գործեցին զազրելի արարքներ մուսուլմանների հանդեպ, և այդ երկրների մեծ մասը անցավ նրանց ձեռքը։*

*էջ 96*

*Հիջրի 332 թվականին (943—944) մի խումբ ռուսներ ծովից անցան և Կուր գետով հասան մինչև Պարտավ քաղաքը, որին տիրեցին... ապա նավերով վերադարձան դեպի իրենց երկիրը[10]։*

*էջ 112*

*Հիջրի 355 թվականին (966) հույները, դուրս գալով իրենց սահմաններից, հասան Ամիդ և պաշարեցին այն։ Ապա հեռանալով այնտեղից գնացին Նիսիբին և ավարի մատնեցին։ Նիսիբինի բնակիչները փախուստ տվեցին։ Այնուհետև հույները Ջեզիրեից ուղղվեցին դեպի Ասորիք և հասան Անտիոքի առաջ, որտեղ մնացին երկար ժամանակ և այնտեղից վերադարձան Տարսոն[11]։*

*էջ 116*

*Հիջրի 359 թվականին (966 նոյ. 14—970 նոյ. 3) հույները արշավեցին Ասորիքի վրա և սրի ուժով գրավեցին Անտիոքը[12], սպանեցին բնակիչներին և մեծ չարիք հասցրին։ Հետո ուղղվեցին դեպի Հալեբ, որտեղ Կարավիան՝ Սայֆ-ադ-Դաուլա Իբն-Համդանի[13] ստրուկը տիրում էր այն օրից, երբ Աբիլ-մաարի իբն Իստազան այնտեղից վտարվեց։ Կարավիան ամրացավ միջնաբերդում, իսկ հույները տիրեցին Հալեբ քաղաքին և պաշարեցին միջնաբերդը։ Հետո հաշտություն կնքվեց այն հիման վրա, որ Կարավիան հույների թագավորին հարկ վճարի, և այդ հարկը ծանրանա նաև Հալեբից կախում ունեցող շրջակա մյուս քաղաքների վրա, այսինքն Համաթի[14], Հոմսի[15], Քաֆրդաբի[16], Մաարաթի, Աֆամիայի, Շայզարի և նրանց միջև գտնվող մյուս քաղաքների վրա։ Հալեբի ժողովուրդը դրամով վճարեց երաշխավորագինը, և հույները մեկնեցին Հալեբից, որից հետո մահմեդականները վերստին տիրեցին այդ վայրին։*

*Նույն այդ թվականին հույների թագավորը մի բանակ ուղարկեց Հայաստանում գտնվող Մանազկերտ քաղաքի վրա և պաշարեց ու սրով գրավեց այն, որից հետո ամբողջ երկիրը մնաց անպաշտպան։*

*էջ 165*

*Հիջրի 422 թվականին (1031) հույների թագավորը տիրում է Ուռհային[17]։ Ուռհան Օթայրի սեփականությունն էր, որը Բանու-Նումայրներից էր։ Աբու Նասր-Իբն-Մրվանը, Դիարբեքիրի տերը, Խառանին տիրելուց հետո պատրաստվեց կռվել Ուռհայի տիրոջ Օթայրի դեմ։ Այդ առթիվ Սալիհ իբն Մարդասը միջամտեց Աբու Նասր իբն Մրվանի մոտ, որպեսզի համաձայնվի կես առ կես բաժանելու Ուռհան՝ իբն Օթայրի և իբն Շիբլի միջև։ Այդ միջնորդությունն ընդունվեց և քաղաքը նրանց հանձնվեց 416 թվականին (1025—1026) ու մնաց նրանց ձեռքում մինչև այն թվականը (1031), երբ Օթայրը մարդ ուղարկելով հույների թագավոր Արմանուսի մոտ՝ նրան վաճառեց իր բաժինը, դրա հետ և մի շարք գյուղեր՝ 20 հազար դինարով։ Հույներն եկան ստանձնելու Իբն Օթայրի բերդ, իսկ իբն Շիբլի կողմնակիցները փախան, և հույները տիրեցին քաղաքին, կոտորեցին մահմեդականներին և ավերեցին մզկիթները։*

*էջ 178*

*Հիջրի 441 թվականին (1049 հունիս 5—1050 մայիս 25) հույների թագավորը շքեղ նվերներ ուղարկեց Տուղրիլ բեկ սուլթանին և նրանից զինադադար խնդրեց, և փոխադարձ համաձայնություն կայացավ։ Նա շինեց Կոստանդնուպոլսում մի մզկիթ, և նրա մեջ աղոթք կատարվեց (խութպա ասվեց) Տուղրիլ բեկի անվամբ[18].*

*էջ 181*

*Հիջրի 446 թվականին (1054 ապրիլ—1055 ապրիլ 1) Տուղրիլ բեկը արշավեց Ադրբեջան և շարժվեց դեպի Թավրիզ։ Կառավարիչ Հաշվազանը հնազանդվեց նրան, և նրա անվամբ աղոթք կատարվեց այնտեղ։ Նա սուլթանին գոհացրեց տուրքերով։ Նրա նման վարվեցին այդ կողմերի բոլոր իշխանները։ Երբ նա հաստատվեց Ադրբեջանում, այնտեղից արշավեց Հայաստանի վրա և պաշարեց Մանազկերտը, որը հույներին էր պատկանում, բայց չկարողացավ գրավել։ Հետո անցավ դեպի Ռումի երկիրը, ներխուժեց այնտեղ, կողոպտեց, ջարդեց և ծանր հետքեր թողեց[19]։*

*էջ 189*

*Հիջրի 449 թվականին (1057—1058) մեռավ ալ-Կայիմ խալիֆի մայրը, որը մի հայ ստրկուհի էր և, ասում են, թե կոչվում էր Կաթր ան-Նադա[20]։*

*էջ 193*

*Հիջրի 455 թվականին (1063) Դամասկոսի կառավարիչ կարգըվեց Ամիր ալ-Ջույուշ* Բադրը[21], Եգիպտոսի խալիֆ Մոստանսիր Ալավու կողմից։ Այնուհետև բանակը իր դեմ ըմբոստացավ, ուստի նա ցրեց այն։*

*էջ 196*

*Հիջրի 463 թվականին (1070 հոկտ. 9—1071 սեպտ. 28) հույների թագավոր Արմանուսը այլացեղ գնդերի բազմությամբ՝ բաղկացած հույներից, ռուսներից, չերքեզներից և այլն, առաջացավ մինչև Մանազկերտ։ Նրա վրա եկավ Ալփարսլանը և զինադադար խնդրեց հռոմների թագավորից, բայց մերժում ստացավ։ Կռվում հույներից շատ մարդ սպանվեց և նրանք խուճապահար փախուստ տվեցին, և նրանցից սպանվածները անհամար էին։ Արմանուս թագավորը գերի բռնվեց, և Ալփարսլանը պայման դրեց, որ նա դրամական տուգանք վճարի և գերիներին ազատ արձակի։ Արմանուսը համաձայնվեց, և Ալփարսլանը՝նրան ազատ արձակեց[22]։*

*էջ 205*

*Հիջրի 479 թվականին (1086—1087) Իկոնիայի, Աքսարայի և Ռումի երկրի այլ վայրերի տեր Սուլայման իբն Կութուլմիշ Սելջուկը գնաց դեպի Ասորիք և տիրեց Անտիոք քաղաքին՝ այնտեղի քրիստոնյա կառավարչից ծածուկ պահելով իր այդ արշավանքը[23]։ Անտիոքը հույների ձեռքն էր գտնվում 359 թվականից (968—969) ի վեր։*

*էջ 213*

*Հիջրի 486 թվականին (1093) Տուտուշը դուրս եկավ Դամասկոսից ձեռք բերելու համար սուլթանությունը՝ իր եղբոր Մելիք-Շահի մեռնելուց հետո[24]։ Նրա հետ համաձայնվեց Հալեբի տեր Ակ-Սոնկուրը, նրա անունով քարոզ կատարել տվեց նաև Անտիոքի տեր Բաղի Սիանն և Ուռհայի տեր Պուզանը։*

*Տուտուշը Ակ-Սոնկուրի ընկերակցությամբ, առաջացավ և զենքի ուժով գրավեց Նիզիբինը։*

*էջ 214*

*Հիջրի 486 թվականին (1093) Տուտուշը գնաց և գրավեց Դիարբաքրը, ապա շարժվեց դեպի Ադրբեջան։ Այդ երկրների մեծ մասի*

* *Ամիր-ալ-Ջույուշ-զորավար։*

վրա նախապես տարածվում էր Բարքիարուկի իշխանությունը։ Վերջինս իր հորեղբայր Տուտուշի ձեռնարկությունը արգելելու համար արշավեց նրա դեմ։

Ակ-Սոնկուրը հայտարարեց՝ մենք հպատակվեցինք Տուտուշին, կարծելով, որ սուլթան Մելիք-Շահի որդիներից ժառանգորդ չկա, բայց եթե սուլթանի որդի Բարքիարուկն է իշխում, մենք, բացի նրանից, ուրիշ ոչ մեկի կողմ չենք լինի։ Այս կերպով Ակ-Սոնկուրը լքեց Տուտուշին և միացավ Բարքիարուկին, որի հետևանքով Տուտուշի ուժը թուլացավ և նա վերադարձավ Ասորիք[25]։

էջ 214

Հիջրի 487 թվականին (1094 հունվ. 21—1095 հունվ. 10) մահացավ Մոկտադի բի-Ամր Ալլահ Աբուլ-Կասիմ խալիֆը[26], որի մայրը հայուհի էր և կոչվում էր Արջիվան։

էջ 215

Հիջրի 487 թվականին (1094) Տուտուշը տիրեց Խառանին և Ուռհային[27] և այնտեղից առաջացավ դեպի Միջագետք, որին տիրեց, ապա տիրեց Դիարբաքրին, Խլաթին և այնտեղից գնաց Ադրբեջան, ուր և իշխեց։

Հիջրի 487 թվականի ռաբիլ-ավալ ամսում (1094 մարտ 21—ապրիլ 19) Կահիրեում մահացավ Ամիր ալ-Ջույուշ Բադր ալ-Ջամալին[28]։ Նրա տարիքը 80-ից անց էր, և նա էր, որ կառավարում էր Մոստանսիրի տերության մեջ։ Երբ նա մեռավ, նրան հաջորդեց իր որդին՝ ալ-Աֆդալը։

էջ 220

Հիջրի 490 թվականին (1097) ֆրանկները հասել էին Կլըչ Արսլան իբն Սուլայման իբն Կութուլմիշի երկիրը, որն Իկոնիայից և այլ վայրերից է բաղկացած։ Կլըչ Արսլանի և ֆրանկների միջև տեղի ունեցան կռիվներ, և Կլըչ Արսլանը պարտվեց ու փախուստ տվեց[29]։ Ֆրանկները շարժվեցին դեպի Լևոն հայի երկիրը, որտեղից դուրս եկան դեպի Անտիոք որը պաշարեցին 9 ամիս և զենքի ուժով տիրեցին քաղաքին։ Բաղի Սիանը գիշերով դուրս եկավ Անտիոքից և սարսափահար փախավ։ Երբ առավոտ եղավ, նա սթափվեց իր երկյուղից, փորձեց վերադառնալ, գլջալով, որ իր ընտանիքին, զավակներին և մուսուլմաններին լքել էր այդպես, բայց իր կատարած ճիգերը նրան ուժաթափ արեցին, ու ընկավ ձիուց։ Նրա ընկերակիցները ջանացին նրան բարձրացնել ձիու վրա, բայց հնարավոր

չեղավ, որ նա կարողանար սանձը ամուր բռնել, ուստի նրան լքեցին այդ վայրում։ Այդ միջոցին Անտիոքի տիրոջ՝ հիշյալ Բաղի Սիան իբն Մուհամմադ իբն Ալա իբն Ալբ Արսլանի մոտով անցնում էր մի հայ փայտահատ, և մինչդեռ նա վերջին շունչն էր ապրում, մոտեցավ ու գլուխը կտրելով տարավ Անտիոք՝ ֆրանկների մոտ, որոնք արդեն տիրել էին քաղաքին։ Այս տեղի ունեցավ նույն տարվա (491) ջումադալ-ուլա ամսում (1098 ապրիլ 6—մայիս 5)։ Ֆրանկները կոտորեցին մուսուլմաններին և ավարի մատնեցին նրանց ունեցվածքը[30]։

էջ 222

Հիջրի 493 թվականին (1099 նոյ. 17—1100 նոյ. 5) Մալաթիայի, Սվազի և այլ վայրերի իշխան Կումուշտիկին իբն Դիլուն բանակ կազմեց։ Նա ճանաչված է իբն ալ Դանիշմանդ անվամբ, որ նշանակում է Դանիշմանդի որդի, որովհետև նրա հայրը թուրքմեն ուսուցիչ էր, և նրանց մեջ ուսուցչին կոչում են դանիշմանդ։ Նա բարձրացրեց իր որդուն, մինչև այդ երկրի թագավոր կարգեց։ Նա ջարդեց ֆրանկներին, որոնք արշավել էին Մալաթիայի կողմերը, և նրանց վրա հարձակվելով նրանց թագավորին գերի վերցրեց[31]։

էջ 223

Հիջրի 493 թվականին (1099—1100) Սուքման ալ-Կոթբին իշխեց Խլաթի վրա...[32]։ Մինչև այդ Խլաթը պատկանում էր Դիարբաքրի իշխանության տեր Մրվանյաններին[33], որոնք մեծ չարիքներ էին գործում Խլաթի բնակիչների դեմ և երբ նրանք ծանոթացան Սուքման ալ-Կոթբիի արդարության ու արժանիքներին, գրեցին նրան և նրա հետ համաձայնվեցին, որի հետևանքով Սուքմանը (Մարանդից մեկնելով) գնաց նրանց մոտ։ Նրանք բաց արին նրա առաջ Խլաթի դռները և նրան հանձնեցին քաղաքը։ Մրվանյանները փախուստ տվեցին այնտեղից, և Սուքման ալ Կոթբին քաղաքի վրա իշխեց իբրև թագավոր, մինչև որ մահացավ 586 թվականին (1112—1113)։ Նրանից հետո Խլաթի վրա իշխեց իր որդին՝ Զահիր ադդին Իբրահիմ իբն Սուքմանը։

էջ 237

Հիջրի 506 թվականին (1112 հունվ. 28 —1113 հունիս 17) մահացավ Վասիլ հայը[34], Հայոց երկրի իշխանը։ Նրա վրա հարձակվեց Անտիոքի Ֆրանկ իշխանը, որպեսզի տիրի Հայոց երկրին, որ այսօր ծանոթ է Սսի երկրի անվամբ։ Բայց նա ճանապարհին մահացավ, և նրա փոխարեն թագավորեց Սիրջալը։

Դարձյալ նույն թվականին մահացավ Մուքման ալ Կոթբին[35], խլաթի տերը, որը խլաթի վրա թագավորեց 493 թվականին։ Երբ մեռավ Սուքմանը, խլաթի իշխանության վրա նրան հաջորդեց իր որդին՝ Զահիրադդին Իբրահիմ իբն Սուքմանը։ Նա շարունակեց իր հոր գործը, մինչև որ մեռավ 521 թվականին (1127—1128)։ Նրան հաջորդեց եղբայրը՝ Ահմադ իբն Սուքմանը։ Ահմադը իշխանության վրա մնաց տասն ամիս և մեռավ, ապա իշխեց իր մայրը՝ Այնանջ խաթունը, որն Արքամանի դուստրն էր։ Նա որպես բռնակալ իշխում էր խլաթի վրա իր թոռան՝ Սուքման իբն Իբրահիմ իբն Սուքմանի հետ, որը վեց տարեկան էր։ Եվահա տատն ուզեց սպանել իր թոռանը, որպեսզի մենակ իշխի։ Երբ պետության մեծամեծներից տեսան նրա վատ մտադրությունը իր թոռան նկատմամբ, իրար հետ միաբանությամբ խեղդեցին նրան 528 թվականին, և իշխեց նրա թոռը՝ վերոհիշյալ Շահրիման* Սուքման իբն Իբրահիմ իբն Սուքմանը, որը մեռավ 579 թվականին։

էջ 243

Հիջրի 514 թվականին (1120 ապրիլ 2—1121 մարտ 21) վրացիները արշավեցին իսլամական երկրների վրա և սրի ուժով տիրեցին Թիֆլիսին[36]։

էջ 248

Հիջրի 517 թվականին (1123—1124) ֆրանկները տիրեցին խարբերդին, որտեղ բանտարկված էին Ջոսլինը և ուրիշ ֆրանկներ, և նրանց ազատեցին խարբերդից։ Խարբերդը պատկանում էր Բալակին[37], որը շուտով հետ վերցրեց ֆրանկներից։

ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ

էջ 5

Հիջրի 526 թվական (1131—1132)։ Սպանվեց Աբու-Ալի իբն Աֆդալ իբն Բադր ալ-Ջամալին[38], ալիական խալիֆ Հաֆիզ Լիդին Ալլահի վեզիրը։ Հիշյալ Աբու Ալին բանտարկել էր Հաֆիզին, դադարեցրել նրա անվան հիշատակումը քարոզում և փոխարենը իր անունն էր հիշատակել տալիս։ «Ազան»-ից էլ վերցրել էր «Եկեք

---

* شاهرمن «Շահրիման» կարելի է կարդալ նաև «Շահիրման». հավանաբար աղավաղումն է «Շահի արման» (թագավոր հայոց) խոսքի։

բարիք գործելու» բանաձևր, և այդպիսով Շիաների սրտերը սառեցրել էր նրանցից։ Նրա վրա հարձակվեցին մի խումբ մամլուքներ, երբ նա զբաղված էր գնդախաղով, և սպանեցին նրան և նրա պալատն էլ ավարի մատնեցին։ Հաֆիզն էլ բանտից դուրս եկավ և սպանվողի գույքերի մնացած մասը փոխադրեց իր պալատը։ Աբու Ալիի սպանության օրն իսկ, Հաֆիզը կրկին բարձրացավ խալիֆական գահը և վեզիրության պաշտոնին կանչեց Աբուլ-Ֆաթհ Յանիս[39] ալ-Հաֆիզին։ Այդ Յանիսը կարճ ժամանակ մնալով պաշտոնում՝ մահացավ։

Էջ 9

Հիջրի 529 թվականին (1134 հոկտ. 22—1135 հոկտ. 10) մեռավ Հասանը և Հաֆիզ խալիֆը վեզիրություն տվեց Թաջադդաուլա Վահրամին[40], որը քրիստոնյա էր։ Նա կառավարեց ու հայերին պաշտոններ տվեց։

Էջ 14

Հիջրի 532 թվական (1137 սեպտ. 29—1138 սեպտ. 18)։ Հուսամադդին Թիմուրթաշ իբն Իլղազին Մարդինի իշխանը, տիրացավ Ալ-Հինախ բերդին՝ Դիարբաքրում։ Նա այդ քաղաքը գրավեց Դիարբաքրի իշխան ռանու մրվանների վերջին շառավղից[41]։

Հույների թագավորը բանակներով դուրս էր եկել իր երկրից հիջրի 531 թվականին (1136—1137) և կռվել հայերի ու Անտիոքի և այլ վայրերի ֆրանկների դեմ, իսկ 532 թվականին (1137—1138) նա մտավ Ասորիք...[42]։

Էջ 17

Հիջրի 539 թվական (1154 մարտ 18—1155 մարտ 6)։ Իմադադին Զանգին[43] բռնի ուժով գրավեց Ուռհան ֆրանկներից[44], որոնք 28 օր պաշարումից հետո հանձնվեցին։ Այնուհետև հանձնվեց Սրուջ[45] քաղաքը։ Նա գրավեց նաև Եփրատի արևելյան կողմն ընկած այն վայրերը, որոնք ֆրանկների ձեռքում էին։ Իսկ ինչ վերաբերում է Բիրային, նա պաշարեց այն, բայց թողեց ու վերադարձավ՝ Մուսուլում իր տեղակալի սպանության պատճառով, որը Նասիր ադ-դին Ջուկարն էր։

Էջ 40

Հիջրի 556 թվականի ռամադան ամսին (1161 օգ. 24—սեպտ. 22) սպանվեց Մալիք Սալիհ, Աբուլ-Ղարատ Թալայի իբն Ռուզիք հայը[46], ալ-Ադիդ ալ-Ալավի խալիֆի վեզիրը։ Ադիդի հորաքույրն

էր կազմակերպել այդ սպանությունը։ Երբ նա մտնում էր պալատ, նրա վրա հարձակվեցին սրերով, բայց նա այդ ժամին չմահացավ, նրան փոխադրեցին տուն. նա խալիֆին բերել տվեց իր մոտ և նրա դեմ իր զայրույթն հայտնեց, իսկ Ադիդն երդվեց, թե ինքը ոչ մի տեղեկություն չուներ կատարվածի մասին։ Ադիդը իր հորաքրոջը ուղարկեց Թալայի մոտ, որը նրան սպանեց և միևնույն ժամանակ պահանջեց Ադիդից, որպեսզի իր որդի Ռուզիքին դնի վեզիրության պաշտոնի։ Սա ստացավ այդ պաշտոնը «ալ Ադիլ» տիտղոսով։ Երբ Թալաին մահացավ, վեզիրության պաշտոնում իրեն հաջորդեց ուրեմն իր որդին՝ ալ Ադիլ Ռուզիքը։ Ռուզիքը ընտիր բանաստեղծ էր։ Սրանից էր փառքի մասին գրված հետևյալ բանաստեղծությունը.

«Մերժեց ալլահը մեզ շնորհել երջանկություն
Եվ զլացավ մեր գործերին հաջողություն ու բարգավաճում,
Սովորեցինք, որ հարստությունն է լրացնում մեր իղձերը,
Բայց երբ կորչում է այն, մեզ մնում է վիշտ ու տանջանք։
Ազնվություն և թշվառություն խառնեցինք իրար։
Մինչև դարձանք ամպեր, որոնք գտան կայծակ, որոտ և
անձրև»։

էջ 41

557 թվականին (1161 դեկտ. 21—1162 դեկտ. 9) եկան վրացիք* մեծ բազմությամբ և մտան իսլամի երկիրը, գրավեցին Դվինը, որն Ադրբեջանի կողմերից էր և կողոպտեցին այն։ Ապա Ադրբեջանի տերը՝ Ելտկուզը մեծ բազմությամբ հարձակվեց և հաղթեց վրացիներին։

էջ 41

Հիջրի 560 թվականին (1163 նոյ. 30—1164 նոյ. 17) Իկոնիայի և Ռումի երկրում նրա շրջակայքի քաղաքների թագավորի և Մալաթիայի ու Ռումի երկրում նրա շրջակայքի թագավորի Դանիշմանդ որդի Բաղի Արսլանի միջև բուռն պատերազմ տեղի ունեցավ, որից փախուստի մատնվեց Կլըջ Արսլանը։ Սակայն այդ ժամանակ Բաղի Արսլանը մեռնելով, Մալաթիային տիրեց եղբորորդին՝ Իբրահիմը։

* Սա Գեորգի Գ-ի արշավանքն է 1162 թվականի օգոստոսին։

էջ 56

Հիջրի 568 թվական (1172 օգ. 23—1173 օգ. 11)։ Նուրադդին Մահմուդը, Զանգիի որդին, հարձակվեց Կլըչ Արսլանի որդի, Մասուդի որդի Կլըչ Արսլանի վրա և տիրեց Մարաշին, Բեհեսնիին, Մարզվանին և Սվազին։ Կլըչ Արսլանը մարդ ուղարկեց նրա մոտ հայտնելով բարեկամություն և խնդրելով հաշտություն։ Նուրադդինը համաձայնվեց այն պայմանով միայն, որ Մալաթիան վերադարձնի Դանիշմանդի որդի Զուլնունին, որից Կլըչ Արսլանը գրավել էր այդ քաղաքը։ Նա հոժարեց նվիրել նաև Սվազը ու հաշտություն կնքեց Նուրադդինի հետ։ Բայց երբ Նուրադդինը մեռավ, Կլըչ Արսլանը վերստին տիրացավ Սվազին և այնտեղից վտարեց Դանիշմանդի որդուն[47]։

էջ 61

Հիջրի 570 թվականին (1174—1175)՝ Թավրիզ քաղաքի վրա իշխեց Բահլավան Ելտկուզը, վերցնելով այդ քաղաքը իբն Ակ-Սոնգուր Ահմադիլիից[48]։

Հիջրի 575 թվականի զիլկադա ամսում (1180 մարտ 29—ապրիլ 27) մեռավ Մոստադի բի-Ամր Ալլահ Աբու Մուհամմադ ալ Հասան իբն Յուսեֆ իբն Մոստակիդը[49]. Նրա մայրը հայուհի էր[50]։

էջ 66

Հիջրի 576 թվականին (1180 մայիս 28—1181 մայիս 16) սուլթան Սալահադդինը հարձակվեց Կլըչ Արսլանի որդի, Մասուդի որդի Կլըչ Արսլանի՝ Ռումի երկրի տիրոջ վրա[51] և հասավ մինչև Ռաբան[52] և հաշտություն կնքվեց։ Այնուհետև Սալահադդինը արշավեց Լևոն-հայի որդու երկրի վրա և ասպատակ սփռեց։ Լևոնի որդին հաշտություն խնդրեց դրամական տուգանք վճարելով և գերիներ վերադարձնելով։

էջ 69

Հիջրի 578 թվականին (1182—1183) Սալահադդինը... Այդարի ծոցում նավատորմ կազմեց և ուղարկեց Հուսամադդին ալ Հաջիբ Լուլուի, եգիպտական նավատորմի ծովակալի հրամանի տակ. Նա մեծահոչակ ու քաջարի մարդ էր...[53]։

Հիջրի 579 թվականին (1183—1184) Սալահադդին սուլթանը երկար պաշարելուց և կռիվներ մղելուց հետո տիրեց Ամիդի բերդին՝ մոհարրամ ամսի առաջին տասնօրյակին և այն հանձնեց Հիսն

Քայֆի տիրոջը՝ Նուրադդին Մուհամմադ իբն Կարա Արսլան իբն Դավուդ իբն Սուքման իբն Օրտոկին։

Էջ 71

Հիջրի 579 թվականի (1183 ապրիլ 26—1184 ապրիլ 13) վերջերին մեռավ Խլաթի տեր Շահրիման Սուքման իբն Զահիրադդին Իբրահիմ իբն Սուքման ալ-կոթբին։ Հիշյալ Շահրիմանը թագավորեց 521 թվականին (1127) և երբ մեռավ 64 տարեկան էր։ Նրա մահվան լուրն առավ իր մամլուք Բեկթիմուրը, որը գտնվում էր Մուֆարղինում, շուտով ճամփա ելավ և հասավ Խլաթ, որի բնակիչների մեծ մասը փափագում էին, որ նա լինի իշխան, և Շահրիմանի մամլուքներն էլ համաձայնվել էին նրա հետ, ուստի հազիվ հասած, նրան թագավոր կարգեցին Խլաթի վրա և նստեցրին Շահրիմանի գահը։ Նա մնաց Խլաթի իշխանության վրա մինչև սպանվելը 589 թվականը, ինչպես պիտի հիշատակենք իր տեղում[54]։

Էջ 73

Հիջրի 581 թվականին (1185—1186) մահացավ Հիսնի և Ամիդի տեր Նուրադդին Մահմուդ իբն Կարա Արսլան իբն Դավուդը. նրան հաջորդեց իր որդին՝ Սուքմանը, որը կոչվեց Կոթբ ադդին։ Նա փոքր էր տարիքով, և գործերի վարիչ նշանակվեց Ալկուվամ իբն Սամակա Աղերդցին։ Սուքմանը գնաց Սալահադդին սուլթանի մոտ, որը Մուֆարղինի մոտ էր գտնվում և որը նրան հաստատեց իր հոր՝ Նուրադդին Մուհամմադի ավատի վրա, ընկերակցելով նրա հոր հիշյալ Սուքմանի բարեկամներից մի էմիրի։

Երբ սուլթանը Մուսուլից գնաց Խլաթ, նա ճանապարհը ուղղեց դեպի Մուֆարղին, որը պատկանում էր Մարդինի նոր մահացած տիրոջը. այնտեղ գտնվում էր մի տեղապահ՝ Խլաթի տիրոջ, մահացած Շահրիմանի կողմից նշանակված։ Սուլթանը պաշարեց Մուֆարղինը և գրավեց այն ջումադալ-ուլա ամսի վերջում[5] (1185 թ. օգոստոսի վերջերին)։ Ապա սուլթանը հրաժարվելով Խլաթի վրա արշավելուց, վերադարձավ Մուսուլ։

Էջ 74

Հիջրի 582 թվականին (1185—1187) Սալահադդին սուլթանը իր եղբոր որդուն՝ Մալիք Մուզաֆֆար Թակիադդին Օմարին ավատ է տալիս Մնբիջը, Մաարաթը, Քաֆրթաբը, Մուֆարղինը, Ջապաղջուրը ամբողջ շրջակայքով, իսկ իր եղբոր Մալիք Ադիլին տվեց Խառանը և Ուռհան։

էջ 81

Հիջրի 585 թվականին (1189—1190) մուսուլմանական նավատորմը Հուսամադդին Լուլուի հրամանատարությամբ ծովից հասավ և պարտության մատնելով ֆրանկներին՝ մուտք գործեց Աքքա[56]։

էջ 82

Հիջրի 586 թվականին (1190 փետր. 8—1191 հունվ. 28) մուսուլմաններին լուր հասավ, թե Ալամանների թագավորը իր երկրից, որը Կոստանդնուպոլսից այն կողմն է գտնվում, դուրս է եկել հարյուր հազար ռազմիկներով և շարժվում է մուսուլմաններին ջախջախելու համար։ Դամասկոսում հուսահատություն տիրեց։ Բայց ալլահը հարվածեց թշնամիներին ծարավով և ժանտախտով, և նրանց մեծ մասը մահացավ ճանապարհին, իսկ երբ նրանց թագավորը հասավ Հայոց երկիրը, իջավ գետը լողանալու, խեղդվեց[57]։ Նրան փոխարինեց իր որդին։ Զինվորների մի մասը այդ պատճառով վերադարձան իրենց երկիրը, մի խումբ էլ հակառակելով նոր թագավորին լքեցին նրան և իրենք էլ վերադարձան իրենց երկիրը։ Ալամանների թագավորի որդու հետ Աքքայի ֆրանկների մոտ հասան միայն հազար ռազմիկ։

էջ 84

Հիջրի 587 թվական (1191)։ Մալիք Մոզաֆֆար Թակիադդին Օմար իբն Շահնշահ իբն Այուբը առաջացել էր դեպի այն երկրները, որոնք հետ էր դարձրել Քուքբուրին և որոնք իրեն ավատ էր տվել իր հորեղբայր սուլթանը, այսինքն՝ Եփրատի այն կողմում գտնվող երկրները, խառանը՝ այլ վայրերով։ Մալիք Մուզաֆֆարը ցանկացավ յուրացնել նաև շրջակայքի մյուս վայրերը. այսպես նա գրավեց Սուայդան, Հանին և արշավելով Խլաթի տիրոջ Բեկթեմուրի վրա, հաղթեց ու պաշարեց նրան Խլաթում, գրավեց շրջակայքը, ապա վերադարձավ այնտեղից, ընաց Մանազկերտի վրա, որը Բեկթեմուրին էր պատկանում, և պաշարեց այն։ Նրան ընկերանում էր որդին՝ Մալիք Մանսուր իբն ալ Մալիք ալ-Մուզաֆֆար Օմարը։ Այդ միջոցին Մալիք Մուզաֆֆարը հիվանդացավ և վիճակը ծանրանալով՝ մահացավ այդ տարվա ռամադան ամսի վերջից 11 օր առաջ, ուրբաթ օրը։ Իր որդին, Մալիք Մանսուրը գաղտնի պահեց նրա մահը և Մանազկերտից նրա մարմինը տարավ Համաթ, որտեղ թաղեց նրան։

Նույն տարվա շաբան ամսում (1191 օգ. 24—սեպտ. 21) սպանվեց Կըզըլ Արսլանը, որի իսկական անունը Օթման իբն Ելտ-

կուլ էր, դա նա էր, որ իշխեց Ադրբեջանում, Համադանում, Սպահանում և Ռեյում, իր եղբոր՝ Մուհամմադ Բահլավանից հետո։

Այդ թվականին Ռումի երկրի տեր Մոյիզադդին Կայսար Շահ իբն Կլըչ Արսլանը գնաց Սալահադդին սուլթանի մոտ։ Պատճառն այն էր, որ նրա հայրը բաժանել էր երկիրը իր տասը որդիների մեջ և այդ որդուն տվել էր Մալաթիան։ Եղբայրներից մի քանիսը ճընշում գործ դրին իրենց հոր վրա, որպեսզի Մալաթիան վերցնի իրենց եղբորից, նա էլ վախենալով այդ բանից, գնաց ապաստանելու սուլթանի մոտ։ Սուլթանը նրան լավ ընդունեց և ամուսնացրեց իր՝ Մալիք Ադիլ եղբոր աղջկա հետ, որից հետո Մոյիզ ադդինը գնաց Մալաթիա։

էջ 88

Հիջրի 588 թվականին (1192) [Իկոնիայի Իզզադդին Կլըչ Արսլան իբն Մասուդ սուլթանը մեռնելով, երկիրը կտակեց իր որդիներին, որոնցից մեկը...] Կոթբադդին Մելիքշահը արդեն իր հորից ավատ էր ստացել Սվազը։ Նա ցանկացավ ձերբակալել իր հորն ու եղբայրներին և տիրանալ սուլթանական գահին, այդ ծրագրի գործադրության համար նրան օգնեց Երզնկայի տերը...։

էջ 93

Հիջրի 589 թվականին (1193) ջումադալ-ուլա ամսի առաջին օրը (1193 մայիս 5) Խլաթի տեր Սայֆադդաուլա Բեկթիմուրն սպանվեց։ Նրա սպանման և Սալահադդինի մահվան միջև երկու ամիս էր անցել[38]։ Նախապես, Բեկթիմուրը լսեց սուլթան Սալահադդինի մահը, մեծ հրճվանք ցույց տվեց և այդ լուրը տարածեց իր երկրի մեջ երաժշտական նվագարաններով և մեծ խրախճանքներ կատարեց։ Նա պատրաստել տվեց մի գահ, որի վրա նստելով ինքնիրեն «Սուլթան Մուազզամ Սալահադդին» հռչակեց, մինչդեռ իր անունը պարզապես Բեկթիմուր էր, իսկ նա ինքն իրեն տալիս էր «Մալիք ալ Ազիզ» տիտղոսը։ Բարձրյալ ալլահը, սակայն, աննկրող գտնվեց նրա հանդեպ։

Սակայն Բեկթիմուրը Զահիր ադդին Շահրիմանի մամլուքներից էր, նա ուներ մի մտերիմ՝ Հազար Դինարի (հազար դինարանոց) կոչված, որը իր դիրքն ամրացնելով ամուսնացավ Բեկթիմուրի աղջկա հետ և ցանկանալով գրավել իշխանությունը, մարդ ուղարկեց և սպանել տվեց Բեկթիմուրին։ Երբ Բեկթիմուրը մեռավ, Խլաթի և շրջակա մարզերի վրա նրան իբր հաջորդ թագավորեց հիշյալ Հազար Դինարին։ Սույն Հազար Դինարի իսկական անունն



121—15

էր Բադրադդին Ակ-Սոնկուր, Շահրիմանը նրան գնել էր գերեվաճառից և կոչել էր Հազար Դինարի։ Երբ Բեկթիմուրը իշխանության գլուխ անցավ, Հազար Դինարին դարձավ առաջնակարգ անձնավորություն, ամուսնացավ Բեկթիմուրի աղջկա՝ Այնա խաթունի հետ։ Երբ Բեկթիմուրն սպանվեց թողեց մի ժառանգ, բայց Հազար Դինարին այդ տղային և մորը բանտարկեց Մուշի Արզաս բերդում։ Սույն Բեկթիմուրը 67 տարեկան էր։ Բադրադդին Ակ-Սոնկուր Հազար Դինարին Խլաթի իշխանության վրա մնաց մինչև իր մահանալը։

էջ 99

Հիջրի 594 թվականին (1197 նոյ. 13—1198 նոյ. 2) մահացավ Խլաթի իշխանը Բադրադդին Ակ-Սոնկուր Հազար Դինարին, որը ինչպես նախապես հիշատակեցինք, Խլաթի վրա իշխան դարձավ հիջրի 589 թվականին (1193 հունվ. 7—դեկտ. 26)։ Երբ Հազար Դինարին մեռավ, նրանից հետո Խլաթի վրա իշխեց Խեշտաշահ Կութլուղը, որը մի հայազգի մամլուք էր, ծագումով Սանասնայից[59]։ Նա իշխեց շուրջ յոթն օր. նրա վրա հարձակվեց ժողովուրդը, նրան իջեցրին բերդից ու սպանեցին։ Երբ Կութլուղը սպանվեց, պետության մեծամեծները խորհրդակցեցին և բերդից իջեցրին Մահմադ իբն Բեկթիմուրին, որը այնտեղ բանտարկված էր և որի անունը Արզաս էր նրան կարգեցին Խլաթի իշխան և անվանեցին Մալիք Մանսուր։ Պետության գործերի վարիչ նշանակվեց Շուջաիդդին Կութլուղ Դավադարը, այդ Կութլուղը ազգով ղպչախ էր, իսկ դավադար նշանակվեց Շահրիմանը՝ Սուկման իբն Իբրահիմի կողմից։ Այս կերպով Բեկթիմուրը հաստատվեց գահի վրա մինչև հիջրի 602 թվականը (1205 օգ. 18—1206 օգ. 7)։ Այն ժամանակ ձերբակալեց իր Կութլուղ աթաբեկին, բանտարկեց և սպանեց նրան։ Դրա հետևանքով Շահրիմանի մամլուքներից մեկը, որը կոչվում էր Ըզզադդին Բալբան, հարձակվեց նրա վրա, և բանակը համաձայնվեց Բալբանի հետ ու ձերբակալեցին Մուհամմադ իբն Բեկթիմուրին, բանտարկեցին և խեղդամահ անելուց հետո բերդի պարսպից ցած գցեցին նրան, ասելով, թե նա ինքն է իրեն ցած գցել[60]։ Սրանից հետո շուրջ մի տարի Բալբանը մնաց Խլաթի իշխանության վրա, ապա նրան սպանեցին Արզնի տեր Տուղրիլ բեկ Կլըչ Արսլան Շահի մի քանի համախոհները։ Հիշյալ Տուղրիլը, ուրեմն, որոշեց գրավել Խլաթը, բայց նրան բուռն կերպով դիմադրեց ժողովուրդը, ուստի նա վերադարձավ Արզն։ Այնուհետև հասավ ալ-Մալիք ալ-Ահվադ Այուբ իբն ալ-Մալիք ալ-Ադիլ Աբի Բաքր իբն Այուբը և ստանձնեց Խլաթը և·

իշխեց այնտեղ մոտ ութ տարի, ինչպես որ պիտի հիշատակենք 604 թվականի գլխում։

Էջ 106

Հիջրի 597 թվականի ռամադան ամսին (1201 հունիս 5—հուլիս 4) Մալաթիա քաղաքի իշխանության գլուխ անցավ Ռոքնադդին Սուլայման իբն Կըլըչ Արսլանը, որը Մոյիզադդին կայսար Շահ իբն Կըլըչ Արսլանի եղբայրն էր։ Այնուհետև Ռոքնադդինը արշավեց Էրզրումի վրա, որտեղ տիրում էր Մուհամմադ իբն Սելթուկին, և սա այն տոհմից էր, որը երկար ժամանակ իշխել էր Էրզրումում։ Հիշյալ իշխանը դուրս եկավ Էրզրումից, որպեսզի խաղաղության համար բանակցի, բայց Ռոքնադդինը բռնեց նրան և խլեց նրա երկիրը։ Այդ Մուհամմադը իր տոհմի իշխաններից վերջինը եղավ։

Էջ 110

Հիջրի 599 թվականին (1202 սեպտ. 20—1203 սեպտ. 9) վրացիները գրավեցին Ադրբեջանի Դվին քաղաքը...[61]։ Այդ քաղաքը, ինչպես և ամբողջ Ադրբեջանը, պատկանում էր էմիր Աբուբաքր իբն Բահլավանին։ Նա գիշեր ու ցերեկ շարունակ զբաղված էր հարբեցողությամբ և պետության գործերին հոգ չէր անում։ Այդ մասին էմիրներն ու տեղակալները հանդիմանում էին նրան։

Հիջրի 600 թվականին (1203 սեպտ. 10—1204 օգ. 28) Հայոց Լևոն թագավորը պաշարեց Անտիոքը[62], Հալեբի իշխան Մալիք Զահիրը շարժվեց և հասավ Հարիմ[63]։ Այդ պատճառով Լևոնը թողեց Անտիոքն ու ետ դարձավ։

Էջ 113

Հիջրի 602 թվականին (1205—1206) Աբուբաքր Բահլավանն ամուսնացավ վրացիների թագավորի աղջկա հետ, բայց նա ավելի շատ հարբեցողությամբ էր զբաղվում և պետության գործերով չէր մտահոգվում։ Նա շեղվեց դաշինքի պայմաններից, դրա համար վրացիները լքեցին նրան։

Էջ 114

Հիջրի 604 թվականին (1207 հուլիս 28—1208 հուլիս 15) Խլաթում իշխեց Ալ-Մալիք ալ-Awհադ Այուբը, Մալիք Ադիլի որդին։ Խլաթի տերն էր Բալբանը։ Ալ-Մալիք ալ-Ավհադը մեկնեց Մուֆարղինից և տիրեց Մուշ քաղաքին։ Նրանք կռվեցին իրար դեմ, և Բալբանը փախուստ տվեց և գնաց օգնություն ստանալու Էրզրումի իշխանից, որը Մուղադդին Տուղրիլ շահն էր՝ Կըլըչ Արսլան Սելջուկի

որդին։ Տուղրիլ շահը և նրա հետ Բալբանը ճամփա ելան և փախուստի մատնեցին ալ-Մալիք ալ-Ավհադին։ Սրանից հետո Տուղրիլ շահը լքեց Բալբանին և սպանեց նրան, որպեսզի տիրի նրա երկրին, ու պաշարեց Խլաթը, բայց չկարողացավ գրավել այն, որովհետև բնակիչները չհանձնվեցին։ Այնուհետև պաշարեց Մանազկերտը, բայց այն էլ չհանձնվեց, ուստի Տուղրիլ շահը ձեռնունայն վերադարձավ իր երկիրը։ Այնուհետև Խլաթի բնակիչները բանակցեցին ալ-Մալիք ալ-Ավհադի հետ, որը գնաց այնտեղ, ու Խլաթ քաղաքը հանձնվեց նրան[64]։

Էջ 117

Հիջրի 605 թվականին (1208 թ. Հուլիս 16—1209 թ. հուլիս 5) Մարաշ եկավ Ղայադադդին Քայ Խոսրով Կլըչ Արսլան Սելջուկի որդին, Ռումի երկրի տերը, հարվածելու համար Լևոնի որդու երկիրը։ Ալ-Մալիք Ազ-Զահիրը նրան օգնություն ուղարկեց և Քայ Խոսրովը մտավ Լևոնի որդու երկիրը, ավերեց ու գրավեց Ցիրկուս կոչված բերդը։

Էջ 119

Հիջրի 607 թվականին (1210 հունիս 25—1211 հունիս 14) վրացիները Խլաթի վրա եկան և պաշարեցին ալ-Մալիք ալ-Ավհադ իբն ալ-Մալիք ալ-Ադիլին. և այնպես պատահեց, որ վրացիների թագավորը գինի խմած ու հարբած Խլաթ հասավ միայն 20 ձիավորներով։ Նրա վրա գնացին մուսուլմանները, և նա գերի ընկավ նրանց ձեռքը։ Նրան տարան ալ-Մալիք ալ-Ավհադի մոտ։ Եվ նա հանձնեց մի քանի բերդեր և արձակեց հինգ հազար գերիներ, վճարեց հարյուր հազար դինար և դաշինք հաստատեց մուսուլմանների հետ երեսուն տարվա համար։ Պայման դրվեց նաև, որ նա իր աղջկանը ամուսնացնի ալ-Մալիք ալ-Ավհադի հետ ու այս կերպով ազատագրվեց[66]։

Նույն տարին մահացավ ալ-Մալիք ալ-Ավհադ Այուբը՝ Մալիք ալ-Ադիլի որդին. Նրա եղբայրը՝ Մալիք ալ-Աշրաֆը տեր դարձավ Խլաթին և իշխանությունը պահեց մի առժամանակ, պահելով նաև արևելակողմի այն երկրները, որոնք իր ձեռքումն էին գտնվում։

Էջ 114

Հիջրի 608 թվականին (1211—1212) Խլաթի բանակը ըմբոստացավ իր իշխանի՝ Բեկթիմուրի որդու դեմ. Աթաբեկն էր Շահրիմանի մամլուք Կանլուղը, որին Բեկթիմուրի տղան ձերբակալել էր, դրա հետևանքով պետության ավագները նրան բռնելով բանտար-

կեցին և իշխանությունն հանձնեցին Շահրիմանի մի ուրիշ մամլուքին՝ Բալբանին։

Էջ 121

Հիջրի 609 թվականին (1212 հունիս 3—1213 մայիս 22) Կլըչ Արսլանի որդի Տուղրիլ շահը, Էրզրումի տերը, հարձակվեց Սվաղի վրա, իր եղբոր որդու՝ Ռումի սուլթան Քայքաուսի դեմ։ Քայքաուսը օգնություն ստացավ ալ-Ադիլի որդի ալ-Աշրաֆից։ Հորեղբայրը՝ Տուղրիլը վախեցավ և հետ դարձավ։

Քայքաուսն ուներ մի եղբայր, Քայկոբադ կոչված։ Երբ պատահեց ինչ որ պատմեցինք, Քայկոբադը գնաց տիրելու Անկարային, որը իր Քայքաուս եղբոր քաղաքներից էր։ Սա հարձակվեց իր եղբոր՝ Քայկոբադի վրա, գրավեց Անկորան, բռնեց իր եղբորը և բանտարկեց։ Բռնեց նաև նրա էմիրներին, նրանց մորուքն ու գլուխը ածիլեց և յուրաքանչյուրին մի ձիու վրա նստեցնելով՝ նրանց ամեն մեկի առջևից, և ետևից, մի մի պոռնիկ նստեցրեց յուրաքանչյուրի ձեռը տալով մի կաշի փոկ, որով նրանք թակում էին էմիրների գլուխներին, և մունետիկները հայտարարում էին ժողովրդին, թե այդ կատարվել է իրենց տիրոջ սուլթանի հրամանով։

Էջ 133

Հիջրի 617 թվականին (1220 մարտ 8—1221 փետրվ. 24) հիշյալ Մալիք Մուղաֆֆարի ձեռքում էին Ուռհան, Սրուջը, իսկ Մուֆարղինն ու Խլաթը՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆի ձեռքում։ Որովհետև ալ-Մալիք ալ-Աշրաֆը որդի չուներ, իր եղբորը՝ Ալ-Մալիք ալ Մուզաֆֆար Ղազուն տվեց Մուֆարղինն ու Խլաթը, որը հռաշալի մի նահանգ է և նմանում է Եգիպտոսին։ Փոխարենը ալ-Մալիք ալ-Աշրաֆը նրանից առավ Ուռհան և Սրուջը։

Էջ 139

Հիջրի 620 թվականին (1223 փետրվ. 4—1224 հունվ. 23) վրացիների թագավորը մեռել էր[67] և արքայական ընտանիքից ուրիշ իշխան չէր մնացել, բացի մի աղջկանից. ուզեցին նրան ամուսնացնել թագավորական ցեղից մի տղամարդու հետ, որը իրենց վրա թագավորելու արժանի լիներ, բայց չկարողացան իրենց շրջանում գտնել մի հարմար մարդու։ Այն ժամանակ Էրզրումի իշխանն էր Մուղիսուդդին Տուղրիլ շահ Կլըչ Արսլան Սելջուկին, բարձր ու պատվական տոհմից։ Թագուհին նրան լուր ուղարկեց՝ առաջարկելով

*ամուսնանալ նրա որդու հետ և համաձայնվելու համար պայման դրեց, որ նա քրիստոնյա դառնա։ Հայրը հավանեց, որ նա քրիստոնեություն ընդունի, և նա գնաց Վրաստան և ամուսնացավ թագուհու հետ...։*

*էջ 140*

*Հիջրի 621 թվականին (1224 հունվ. 24—1225 հունվ. 12) Ալ-Մալիք ալ-Աշրաֆը իր եղբորը՝ Ալ-Մալիք ալ-Մուզաֆֆար Ղազուն շնորհել էր Խլաթը, որը սքանչելի մի երկիր է՝ Հայաստանի նահանգներից։ Այն ժամանակ թշնամություն ծագեց Դամասկոսի տիրոջ՝ Մալիք Մուազզամ Իսայի և նրա եղբայր ալ-Քամիլ ալ-Աշրաֆի միջև, նրա՝ Համաթից փոխադրումի պատճառով։ Այն ժամանակ Մուազզամը օգնություն ուղարկեց իր եղբորը՝ Մուզաֆֆար Ղազուն՝ Խլաթի տիրոջը, որը ապստամբվել էր իր եղբայր ալ-Մալիք ալ-Աշրաֆի դեմ։ Մալիք Մուզաֆֆարը համաձայնվել էր այդ բանին, երբ հաջորդեց իր եղբայր ալ-Մալիք՝ ալ-Աշրաֆին։ Համաձայնություն կնքվեց նաև Արբիլի տիրոջ՝[68] Մուազզամի և Մուզաֆֆար Ղազու Մուզաֆֆար Ադ-դին Քուքբուրի իրն Զայնադդին Ալի Քուչաքի հետ։ Իսկ Բադրադդին Լուլուն հակված էր դեպի ալ-Մալիք ալ-Աշրաֆը։ Արբիլի տեր Մուզաֆարադդինը գնաց պաշարելու Մուսուլը այդ տարվա ջումադալ ուխրա ամսի 13-ին (1224 հուլիս 2) տասն օր, որպեսզի զբաղեցնի ալ-Մալիք ալ-Աշրաֆին, որ նա չհարձակվի իր եղբոր վրա Խլաթում։ Հետո Մուսաֆարադդինը վերադարձավ Մուսուլի պաշարումից, և ալ-Մալիք ալ-Աշրաֆը նրան երբեք չներեց Մուսուլը պաշարած լինելու համար ու գնաց Խլաթի վրա և պաշարեց իր եղբորը՝ Շահարադդին Ղազուն, և Խլաթ քաղաքը նրան հանձնվեց։ Ղազին ամրացավ բերդի մեջ մինչև գիշեր, ապա ցած իջավ եղբոր՝ Մալիք Աշրաֆի մոտ և թողություն խնդրեց։ Նա ներեց նրան և նրան թողեց միայն Մուֆարդինի իշխանությունը, իսկ մնացած երկրները նրանից վերցրեց։ Խլաթի գրավումը Մալիք Աշրաֆի կողմից և եղբոր գերի բռնվելը տեղի ունեցավ ջումադալ ուխրա ամսին, նույն տարվա մեջ[69]։*

*էջ 143*

*Հիջրի 623 թվականին (1226 հունվար 2—դեկտեմբեր 21) Ջալալադդին[70] սուլթանը վրացիներից գրավեց Թիֆլիսը, որը լավագույն քաղաքներից էր։ Հետո Ջալալադդինը նույն տարում եկավ պաշարելու Խլաթը։ Սա առաջին պաշարումն էր, և շատ մարդիկ սպանվեցին երկու կողմից։ Խլաթում ալ-Աշրաֆի տեղակալն էր*

Հաջիբ Հուսամադդին Ալի ալ-Մուսիլին։ Հարձակումը տեղի ունեցավ զուլկադա ամսի 13-ին (1226 նոյ. 6)։ Նա այնտեղից հեռացավ ամսի լրանալուց յոթ օր առաջ, նույն տարվա մեջ, ձյան առատության պատճառով։

Նույն այդ տարում Ռումի երկրի տերը՝ Ալայադդին Քայկոբադը, որդի Քայխոսրովի, որդի Կլըչ Արսլանի, շարժվեց դեպի Որդոկյան Մալիք Մասուդի՝ Ամիդի տիրոջ երկիրը։ Քայ Կոբադը իջավ Մալաթիա, որը իրեն էր պատկանում, և այնտեղից գնդեր ուղարկեց, որոնք գրավեցին Հիսն Մանսուրը և Հիսն Կախտան[7], որոնք Ամիդի տիրոջ սեփականությունն էին։ Նույն տարվա զուլհիջա ամսի 15-ին (1226 դեկտ. 6) Ջալալադդինը պաշարեց Խլաթ քաղաքը, որը պատկանում էր ալ-Մալիք ալ-Աշրաֆին, և որտեղ փոխանորդ էր կարգված Հուսամադդին Ալի ալ-Հաջիբը։ Այս եղավ երկրորդ պաշարումը, և նրանց միջև մեծ նախճիր գործվեց, և ցուրտը վրա հասնելով այնտեղից մեկնեց հիշյալ տարին։

էջ 144

Հիջրի 624 թվականին (1226 դեկտ. 22—1227 դեկտ. 12) Հաջիբ Հուսամ-ադ-դին Ալին, որը ալ-Մալիք ալ-Աշրաֆի փոխանորդն էր Խլաթում, նրա զորքերով հարձակվեց Ջալալադդինի երկրի վրա և գրավեց Խոյը, Սալմաստը և Նախիջևանը։

էջ 148

Հիջրի 625 թվականին (1227 դեկտ. 12—1228 նոյ. 30) Ջալալադդինը թաթարների հետապնդումից փախչելով գնաց Խլաթի կողմերը և կողոպուտի մատնեց երկիրը և զազրելի արարքներ գործեց։

էջ 149

Հիջրի 626 թվականին (1228 նոյ. 30—1229 նոյ. 19) ալ-Մալիք ալ-Աշրաֆը Խլաթ ուղարկեց Իզզադդին Այբաք ալ-Աշրաֆի մամլուքին, որը իր ավագ էմիրն էր և որը հարձակվեց Հաջիբ Ալի ալ-Մուսիլու վրա, բանտարկեց նրան և հետո սպանեց։ Այդ Հուսամադդին Ալի Հաջիբը Մոսուլի բնակիչներից էր և ծառայել էր ալ-Մալիք ալ-Աշրաֆին, որը նրան փոխանորդ էր կարգել Խլաթում։ Նա բարիք էր արել հպատակներին, պաշտպանել երկիրը և գրավել էր նաև Ադրբեջանի մի քանի քաղաքները, ինչպես օրինակ՝ Նախիջևանը և ուրիշ վայրեր մինչև որ պատահեց այն, ինչ որ հիշատակեցինք։

Իսկ ալ-Մալիք ալ-Աշրաֆը նրան սպանել տվեց։ Ասում են, որ դրա պատճառը ոչ ոք չգիտի և ծանոթ է միայն ալ-Մալիք ալ-Քամիլին և ալ-Մալիք ալ-Աշրաֆին։ Այդ Հուսամադդին Հաջիբը շատ բարիք էր գործել և երախտիքի արժանի գործ կատարել։ Նա էր կառուցել այն խանը (իջևան), որ Խառանի[72] և Նիսիբինի մեջտեղն է, և այն խանը, որ Հոմսի և Դամասկոսի մեջտեղն է և ծանոթ է Խան Բիրիհ ալ-Աթշ* անվամբ։ Երբ սպանվեց տերը, Հուսամադդին Հաջիբը, նրա մամլուքներից մեկը փախուստ տվեց և միացավ Ջալալեդդինին, իսկ երբ Ջալալեդդինը տիրեց Խլաթին, ինչպես որ պիտի հիշատակենք, բռնեց հիշյալ Այբակին ու հանձնեց հիշյալ մամլուքին, որն իր տիրոջ վրեժը լուծեց՝ նրան սպանելով։

էջ 152

Հիջրի 626 թվականին (1228—1229) Խվարիզմի թագավոր Ջալալեդդինը գնաց պաշարելու Խլաթը. այնտեղ էր գտնվում ալ-Մալիք ալ-Աշրաֆի տեղակալ Այբակը։ Պաշարումը շարունակվեց մինչև այդ տարվա վերջը։

էջ 153

Հիջրի 627 թվականը (1229 նոյ. 20—1230 նոյ. 8) այն տարին է, որ երկարեց Ջալալեդդինի կողմից Խլաթի պաշարումը, նա սաստկացրեց այն ու սրով հարձակվեց և ջարդեց ժողովրդին, գերեց և աղետներ գործեց, ճիշտ թաթարների նման։ Հետո հարձակվեց ալ-Մալիք ալ-Աշրաֆի տեղակալի վրա, որը Մամլուք Այբակն էր, ու նրան հանձնեց Հուսամադդին Հաջիբ Մամլուքին, որն սպանեց՝ իր տիրոջ վրեժը լուծելով։

Երբ պատահեց այդ բոլորը, այսինքն Ջալալեդդինի կողմից Խլաթի գրավումը, Ռումի երկրի տերը՝ Քայկոբադ իբն Քայխոսրով իբն Կլըչ Արսլանը համաձայնվեց ալ-Մալիք ալ-Աշրաֆ իբն ալ-Մալիք ալ-Ադիլի հետ։ Ալ-Մալիք ալ-Աշրաֆը գումարեց Դամասկոսի զինվորներին և ուղղվեց դեպի Սվազ։ Այնտեղ իրեն միացավ Ռումի երկրի տերը՝ Ալայադդին Քայկոբադը, և երկուսը միասին արշավեցին Խլաթի վրա։ Բանակներն հանդիպեցին իրար այդ տարվա ռամադան ամսի 29-ին (1230 օգ. 11)։ Խորեզմները նահանջեցին, ու Ջալալեդդինը փախուստ տվեց, կորցնելով իր զինվորների մեծ մասը, որոնք ցրվեցին իրենց ճանապարհի վրա գտնվող սարերի մեջ։ Այնուհետև տկարացավ Ջալալեդդինը, և զորացան Թա–

* Նշանակում է՝ անջրդի։

*թարները։ Ալ-Մալիք ալ-Աշրաֆը ետ առավ Խլաթը՝ ավերված ու ամայացած[73]։ Հետո բանակցություններ տեղի ունեցան ալ-Մալիք ալ-Աշրաֆի, Քայկոբադի և Ջալալեդդինի միջև, և հաշտվեցին այն հիման վրա, որ յուրաքանչյուրը պահի՝ ինչ որ ձեռքումն ունի և նրանցից ոչ մեկը մյուսի ունեցածը չցանկանա։*

*Նույն այդ տարին Արզնի վրա (որը Դիարբաքրի մասն է կազմում) կառավարիչ կարգվեց Ալ-Մալիք ալ-Մոզաֆֆար Ղազին, իբն ալ-Մալիք ալ-Ադիլը։ Այդ քաղաքը տարբեր է Ռումի Արզնից։*

*Դիարբաքրի Արզնի տերն էր Հուսամադդինը։ Նրանից քաղաքը գրավեց հիշյալ ալ-Մալիք ալ-Մուզաֆֆար Ղազին և վերադարձավ դեպի Հանի քաղաքը։ Այդ Հուսամադդինը այն հռչակավոր տոհմից էր, որը կոչվում էր Բայտ ալ-Ահդաբ և Արզնը իրենց ձեռքից դուրս չէր եկել սելջուկյան սուլթան Մալիք շահի օրերից մինչև այդ ժամանակ։*

*էջ 154*

*Հիջրի 628 թվականին (1230 նոյ. 9—1231 հոկտ. 28), երբ թաթարները ամրացան Ադրբեջանում, Ջալալեդդինն ուղղվեց դեպի Դիարբաքր՝ խալիֆի մոտ գնալու և նրանից պաշտպանություն գտնելու և միևնույն ժամանակ կապ հաստատելու համար այդ կողմերի իշխանների հետ՝ թաթարների դեմ։ Բայց նրանց բռնելիք դիրքը անորոշ լինելով, նա իջավ Ամիդի արևմտակողմը։ Նա և իր մարդիկ չնշմարեցին, թե թաթարները իրենց պաշարել էին գիշեր ժամանակ, ուստի բանակը շփոթության մատնվեց, և Ջալալեդդինը փախուստ տվեց ու սպանվեց։*

*Երբ նա սպանվեց, թաթարները տիրեցին երկրին, և այդ տարի կռվելով առաջացան մինչև Եփրատ։ Դամասկոսում հուզում տիրեց նրանց՝ Եփրատին հասնելու պատճառով։ Հետո նրանք ասպատակ սփռեցին դեպի Դիարբաքր և Ջազիրա, ավեր ու սպանդ գործելով։*

*էջ 157*

*Ապա Ջալալեդդինը տիրեց Ադրբեջանին, հետո Գանձակի և Առանի երկրի մնացած մասերին։ Այնուհետև Ջալալեդդինը իր հոր դիակը Ջազիրայից փոխադրեց Ազդեհան բերդը և այնտեղ թաղեց, իսկ երբ թաթարները տիրեցին հիշյալ բերդին, հողի տակից հանեցին մարմինը և այրեցին։ Այսպես էին վարվում նրանք թագավորների մարմինների հետ, երբ գտնում էին նրանց գերեզմանները։*

*Ջալալեդդինը Խլաթը գրավելուց հետո իջավ դեպի Ամիդի մերձակա կամուրջը, այնտեղից օգնություն ուզեց ալ-Մալիք ալ-Աշրա-*

ֆից, բայց մերժում ստացավ։ Այն ժամանակ Ջալալեդդինը որոշեց գնալ Սպահանի կողմը։ Բայց հրաժարվեց այդ ծրագրից։ Նա մտավ մի տուն՝ գիշերելու և սաստիկ խմեց ու հարբեց գլուխը կորցնելու և շնչարգել լինելու աստիճան։ Առավոտը, երբ նա և իր զինակիցները դեռ քնել էին, թաթարները պաշարեցին նրանց։

էջ 158

Թաթարական հրոսակախմբերը պաշարեցին Ջալալեդդինի տաղավարը, երբ նա հարբած—քնած էր այնտեղ, և հարձակում գործեցին։ Պահակների պետ Արխանը և իր թիկնապահներից մի քանիսը շուտով մտան ներս և նրա ձեռքից բռնելով դուրս բերեցին՝ գլխին սպիտակ գդակ դրած, թաթարների կողմից տաղավարը գրավելուց առաջ։ Արխանը հեծավ Ջալալեդդինի հետ և փութով մեկնեցին՝ հետապնդվելով թաթարներից։ Ճանապարհին Ջալալեդդինը ասաց Արխանին, հեռացիր ինձանից, այնպես որ թաթարները զբաղվեն քեզնով և հետապնդեն քեզ քո խմբի հետ։ Այս անշուշտ մի սխալ քայլ էր իր կողմից։ Արխանին հետևեցին մի խումբ զինվորներ, մոտավորապես 4000 հեծյալ։ Նա ուղղվեց դեպի Սպահան և մի ժամանակ իշխեց այնտեղ։ Երբ Ջալալեդդինը բաժանվեց Արխանից, գնաց դեպի Ամիդ, բայց չկարողացավ մտնել քաղաք։ Այնտեղից նա գնաց դեպի Մուֆարղինի գյուղերից մեկը, ապաստան խնդրելով Մուֆարղինի տեր Շահաբադդին Ղազի իբն ալ-Մալիք ալ-Ադիլից։ Թաթարները նրա ետևից հասան այդ գյուղը, և Ջալալեդդինը փախավ դեպի Հանկ, որտեղ քուրդ ավազակներ կային, որոնք բռնեցին նրան, մերկացրին և ուզեցին սպանել։ Այն ժամանակ Ջալալեդդինը ասաց նրանցից մեկին, թե «Ես եմ սուլթանը, թույլ տուր, որ ապրեմ, և քեզ թագավոր դարձնեմ»։ Քուրդը առավ նրան և տարավ իր կնոջ մոտ և նրան այնտեղ պահեց։ Երբ այրը գնաց սարը իր գործերի համար, եկավ մի քուրդ մարդ, որը նիզակ ուներ ձեռքին և ասաց կնոջը, թե «Ինչո՞ւ չես սպանում այդ խորեզմին»։ Կինը ասաց, թե «չի կարող անել այդ բանը, որովհետև ամուսինը իրեն էր վստահել նրան»։ Քուրդն ասաց, թե «դա սուլթանն է» և թե վաղուց չէ, ինչ սպանել է այդ կնոջ եղբորը՝ Խլաթում։ Մի՞թե նա ավելի արժեք ունի քան իր հարազատ եղբայրը. և նիզակով զարկեց նրան ու սպանեց։

Ջալալեդդինը թխամորթ էր և կարճահասակ։ Թուրք էր և բացի թուրքերենից իմանում էր նաև պարսկերեն։

Էջ 162

Հիջրի 631 թվականին (1233 նոյ. 7—1234 հոկտ. 26) Ռումի երկրի տերը՝ Քայկոբադ իբն-Քայխոսրովը արշավեց դեպի Խլաթ։ Նրա վրա իր զորքերով Եգիպտոսից եկավ ալ-Մալիք ալ-Քամիլը և իր շուրջը հավաքվեցին իր տոհմակից իշխանները*, իսկ Քայկոբադը ամրացրել էր կիրճերը իր ռազմիկներով, այնպես որ սուլթանը չկարողացավ մտնել Ռումի երկիրը Նահր ալ-Ազրակի կողմից և իր զինվորների մի մասր ուղարկեց Հիսն Մանսուր, որը Քայկոբադի երկրումն է և որը հիմնահատակ քանդեցին։

Էջ 179

Հիջրի 641 թվականին (1243—1244) Թաթարներն արշավեցին Ղիաթեդդին Քայխոսրով իբն Քայկուբադ իբն Քայխոսրով իբն Կլըչ Արսլան Սելջուկյանի, Ռումի երկրի տիրոջ վրա, նա օգնություն խնդրեց հալեբցիներից, նրանք էլ օգնական զորք ուղարկեցին Նասիհադդին ալ-Ֆարսիի հրամանատարության տակ և ամեն կողմից հավաքված վորալյանների օժանդակությամբ։ Ռումի բնակիչները չարաչար պարտվեցին, և թաթարներր նրանցից շատերին սպանեցին ու մեծ թվով գերի վերցրին։ Այդպիսով, թաթարները տիրեցին այդ երկրին։ Բացի այդ, նրանք տիրեցին Խլաթին և Ամիդին։ Ղիաթեդդին Քայխոսրովը փախավ և թաքնվեց, բայց հետո թաթարներին մարդ ուղարկելով հաշտություն խնդրեց և մտավ նրանց հպատակության տակ։ Դրանից հետո հիշյալ Ղիաթեդդին Քայխոսրովր մահացավ հիջրի 654 թվականին, և նրան հաջորդեցին իր երկու անչափահաս որդիները՝ Ռուքնեդդինն ու Իզզեդդինը։ Այնուհետև Իզզեդդինր փախուստ տվեց Կ. Պոլիս, և Ռուքնեդդինին մնաց իշխանությունը, թաթարների գերիշխանության ներքո։ Նրան խնամակալ կարգվեց Փարվանա Մուինեդդին Սոլիմանը։ Պարսկերեն լեզվով Փարվանա են կոչում պետական խորհրդականին։ Նրանից հետո Փարվանան սպանեց Ռուքնեդդինին և իշխանության գլուխ դրեց նրա փոքր որդուն։ Սուլթանր անցավ Եփրատր և գնաց Սուայդիեի վրա։

Էջ 185

Հիջրի 646 թվականին (1248 ապրիլ 26—1249 ապրիլ 15) Ալ-Մալիք ան-Նասր Հալեբի սուլթանը հայազգի Շամսեդդին Լուլուի հրամանատարության տակ[74] բանակներ ուղարկեց, որոնք Հեմսում երկու ամսի չափ պաշարեցին Ալ-Մալիք ալ- Աշրաֆ Մուսային։ Նա հանձնեց Հիմսր և փոխարենն ստացավ Թիլ Բաշարր. մեջր լինելով

* Թվարկված են Աաորիքի 16 մելիքների անունները։

ինչ որ կար նրա ձեռքում Տադմորից և Ռահբայից։ Երբ ալ-Մալիք աս-Սալիհ Նաջմադդին Այուբը լսեց այդ բանը, ընդդիմացավ և առաջացավ դեպի Ասորիք, որպեսզի հալեպցիներից ետ առնի Հեմսը, բայց այդ միջոցին նա հիվանդացավ։

(Նույն ժամանակ լուր հասավ, թե ֆրանկները Դամիետի վրա են հարձակվում, ուստի սուլթանը վերադարձավ Եգիպտոս)[75]։

էջ 201

Հիջրի 655 թվականի ռաբի ալ ախար ամսի 16-ին (1252 հունիս 26) սպանվեց Շաջարաթ ադ-Դորը[76], և նրա մարմինը նետվեց պարսպից դուրս և թաղվեց այն շիրիմում, որը նա ավարտել էր։ Նա ազգով թրքուհի էր. ոմանք ասում են, թե հայուհի էր։

## ՀԱՏՈՐ ՉՈՐՐՈՐԴ

էջ 3

Հիջրի 664 թվականին (1265 հոկտ. 13—1265 հոկտ. 1), երբ Մալիք Զահիրը[77] ավարտեց Սաֆադի[78] գրավումը, արշավեց Դամասկոսի վրա։ և երբ մտավ այնտեղ ու հաստատվեց, մեծ թվով բանակներ համփա հանեց, որոնց գլուխն էր Համաթի տեր Ալ-Մալիք ալ-Մանսուրը և հրամայեց նրանց, որ գնան Հայոց երկրի վրա։ Նրանք ճամփա ելան ալ-Մալիք ալ-Մանսուրի հրամանատարության տակ և հասան Սսի երկիրը՝ նույն տարվա զուլկադա ամսում (1266 օգ. 4 սեպտ. 2)։ Սսի թագավորն էր Բասիլի որդի, Կոստանդնի որդի Հեթումը, որը ամրացրել էր իր կիրճերը քարանետ մեքենաներով և այլ զենքերով և այնտեղ դրել էր զորքեր՝ իր երկու որդիների գլխավորությամբ, որպեսզի դիմադրեն մուսուլման զինվորներին և արգելեն նրանց մուտքը։ Բայց մուսուլման զորքերը հաղթեցին նրանց, սպանեցին շատերին և գերեցին[79]։ Սպանվեց Սսի թագավորի մի որդին և գերի բռնվեց մյուս որդին, որ Լևոն իբն Հեթում էր կոչվում, հետո մուսուլման զինվորները ասպատակ սփռեցին Սսի երկրում և գրավեցին Երկու Սյուների բերդը[80], սպանեցին բնակիչներին և ապա զինվորները վերադարձան հարուստ ավարով։

Երբ այդ փառավոր հաղթանակի լուրը հասավ ալ-Մալիք ալ-Զահիր Բիբարսին, նա ճանապարհվեց Դամասկոսից և գնաց դեպի Համաթ ու այնտեղից դեպի Աֆամիա և դիմավորեց իր գնդերի հաղթական վերադարձը[81] և հրամայեց, որ հանձնեն գերիներին, որոնց մեջ էր Լևոնը՝ Սսի թագավորի որդին։ Երբ նա գերի բռնվեց, ալ-Մալիք-ալ-Մանսուրը նրան հանձնել էր իր եղբոր ալ-Մալիք ալ-

Աֆդալի հսկողության ու խնամքին, մինչև որ նա հանձնվի սուլթանին։ Այնուհետև նրանք ճամփա ընկան դեպի Եգիպտոս, Քարաքի ճանապարհով։ Ճանապարհին ալ-Մալիք ալ-Զահիրը ձիուց ընկավ Զիզա լճի մոտ, և փշրվեց նրա ազդրոսկրը։ Նրան պատգարակի վրա փոխադրեցին մինչև միջնաբերդ։

Նույն այդ տարին, երբ Ալ-Մալիք ալ-Զահիրը Դամասկոսից գնաց իր բանակներին հանդիպելու, որոնք վերադառնում էին Սսի երկրի արշավանքից, նա գնաց պաշարելու նաև Կարան[82], որը գտնվում էր Դամասկոսի և Հեմսի միջև։ Նա հրամայեց կողոպտել բնակիչներին և սպանել նրանց պետերին։ Երբ գրավեցին քաղաքը, սպանեցին շատերին, որովհետև նրանք քրիստոնյա էին և կողոպտում էին մուսուլմաններին ու գողանալով պատանիներին գաղտնորեն վաճառում էին ֆրանկներին։ Փոխադարձաբար մուսուլմաններն էլ բռնեցին նրանց պատանիներին և մամլուք դարձրին։ Նրանք մեծացան Եգիպտոսում թուրքերի մեջ և նրանցից զինվորներ ու էմիրներ դուրս եկան։

էջ 5

Հիջրի 666 թվականին (1267 սեպտ. 22—1268 սեպտ. 9) Ալ-Մալիք ազ-Զահիր Բիբարսը գրավեց Բաղրասը, իսկ շավալ ամսում (1268 հունիս 14—հուլիս 12) հաշտություն կայացավ ալ-Մալիք ազ-Զահիրի և Սսի տիրոջ՝ Հեթումի միջև, այն հիման վրա, որ եթե Սսի տերը թաթարների մոտից բերի Սոնկուր ալ-Աշքարին[83], որոնք նրան գերի էին տարել Հալեբի բերդից այն ժամանակ, երբ Հուլաղուն տիրել էր այդ տեղին, և բացի այդ հանձնի Բեհեսնին, Դարպսակը[84], Մարզբանը, Դաբանը, Շիհել Հադիդը[85], ապա սուլթանն էլ ազատ կարձակի նրա որդի Լևոնին։ Ապա Սսի տերը ներկայացավ Աբաղային, թաթարներին և նրանից խնդրեց Սոնկուր ալ-Աշկարին։ Նա էլ հանձնեց նրան, և Սոնկուր ալ-Աշկարը վերադարձավ ալ-Մալիք ալ-Զահիրի ծառայությանը և Դարպսակը, ինչպես և մյուս վայրերը, որոնք հիշեցինք, հանձնվեցին, բացի Բեհեսնիից։ Ալ-Մալիք ալ-Զահիրն էլ ազատ արձակեց Սսի տեր Հեթումի որդուն՝ Լևոնին ու վերադարձրեց իր հորը։ Այնուհետև ալ-Մալիք ազ-Զահիրը վերադարձավ Եգիպտոս և հասավ այնտեղ նույն տարվա զուլհիջջա ամսին։

էջ 9

Հիջրի 675 թվականին (1276—1277) ալ-Մալիք ազ-Զահիր Բիբարսը[86] մեծ բանակով Ասորիք գնաց։ Նա Եգիպտոսից դուրս

եկավ այդ տարվա հինգշաբթի օրը, ռամազան ամսի 20-ին և հասավ Հալեբ: Այնտեղից գնաց դեպի Նահր ալ-Ազրակ, ապա՝ Աբուլուստայն, որտեղ հասավ Զուլկադա ամսում։ Այնտեղ հանդիպեց մոնղոլական բանակի ընտրյալ մասը կազմող թաթար զորախմբերի, որոնց հրամանատարն էր Թանավունը։ Երկու բանակներն իրար բախվեցին Աբուլուստայնի առաջ, ուրբաթ օրը, զուլկադա ամսի 10-ին (—1277 ապրիլ 15)։

Թաթարները պարտվեցին և մուսուլմանների սրի ճարակ դարձան։ Սպանվեց նրանց հրամանատար Թանավունը, և նրանց մեծերից շատերը գերի վերցվեցին։

Այդ միջոցին Ռումի երկրում կառավարում էր Մուինեդդին Սուլեման Փարվանան։ Նա գաղտնապես գրել էր ալ-Մալիք ազ-Զահիրին, որ երբ նա հասնի Կեսարիա, Փարվանան կգա նրան ընդունելու ըստ իրենց գաղտնի համաձայնության։ Մալիք Նասրը հասավ Կեսարիա, սակայն Փարվանան չեկավ, յոթն օր սպասեց Փարվանային։ Այնտեղ մզկիթում քարոզը կարդացվեց սուլթանի անվամբ։ Ապա վերադարձավ Կեսարիայից զուլկադա ամսի 22-ին, և բանակները մեծ նեղություն կրեցին հոգնությունից, սննդի և կենդանիների կերի պակասից։ Նրանց ձիերի մեծ մասը սատկեց, մինչև հասան Հարիմի Ամկը, որտեղ մնացին մեկ ամիս։

Երբ լուրն հասավ Հուլաղուի որդի Աբաղային, նա բազմաթիվ մոնղոլական գնդերով հասավ Աբուլուստայն, որտեղ դաշտի վրա գտավ իր ընկած զինվորներին, բայց Ռումի զինվորներից ոչ մեկին սպանված չգտավ և դրա համար սաստիկ զայրացավ ու հրամայեց ասպատակ սփռել Ռումի երկրի վրա և սպանեց հանդիպած մուսուլմաններին։ Սրանից հետո Աբաղան գնաց Օրդու՝ Մուինեդդին Փարվանայի ընկերակցությամբ։ Երբ հասավ Օրդու, հրամայեց, որ իրեն ներկայանա Փարվանան, և սպանել տվեց նրան, ինչպես նաև ավելի քան երեսուն անձանց՝ նրա մամլուքներից և զինակիցներից։

էջ 27

Հիջրի 691 թվականին (1291 դեկտ. 24—1292 դեկտ. 12) սուլթան ալ-Մալիք ալ-Աշրաֆը[87] Եգիպտոսից գնաց Ասորիք և խմբեց եգիպտական և սիրիական գնդերը։ Ալ-Մալիք ալ-Մոզաֆֆար Մահմուդը և նրա հորեղբայր ալ-Մալիք ալ-Աֆդալը մտան նրա հրամանի ներքո և ժամադիր եղան Դամասկոսում։ Նրանց կանխեց դեպի Համաթ՝ Մալիք Մոզաֆֆար Համաթի իշխանը՝ նրանց հյուրընկալելու և ընդունելության ու ընակության պատրաստություններ

տեսնելու համար։ Երբ սուլթանը Համաթ հասավ, վրան զարկեց քաղաքի հյուսիսակողմը՝ Սալմիայի ջրանցքի մոտ, և ալ-Մալիք ալ-Մոզաֆֆարը ղմայլելի գործեր սփռեց հրապարակի վրա ու սուլթանի վրանը կանգնեցրեց այնտեղ։

Այնտեղից սուլթանը գնաց դեպի Հալեպ, որտեղից և ուղղվեց դեպի Հռոմկլա[88] և պաշարեց այն նույն տարվա ջումադաախար ամսի առաջին տասնօրյակին (1292 մայիս 20—29)։ Այդ բերդը Եփրատի մոտ էր և մեծապես ամրացված էր։ Բերդի դիմաց նա հաստատեց քարանետ մեքենաները, և այդ պաշարումը շատ ավելի խիստ եղավ, քան բոլոր պաշարումները, որոնց մասին վկայում են ականատեսները։ Համաթցիները հաստատվեցին մի սարի գագաթի վրա, որը ձգվում էր դեպի բերդը արևելյան կողմից և այդտեղից, երբ ջարդն սկսվեց մենք ականատես եղանք բնակիչների վիճակին, նրանց երթևեկին, շարժումներին, նրանց վարքին ու փախուստին։ Բերդը սրի ուժով գրավեցին նույն տարվա շաբաթ օրը, ռաջաբ ամսի 11-ին (1292 հունիս 28)։ Բնակիչներն սպանվեցին, և նրանց երեխաները հափշտակվեցին։ Այնտեղ էր ապաստանել կաթողիկոսը, հայերի խալիֆան, որ բնակվում էր բերդում, այնտեղ էին ապաստանել նաև փախստականները։ Համաթցիները քարանետ մեքենաներ ղետեղեցին սարի գագաթի վրա, որը երկարած էր դեպի բերդը, և սուլթանից հրաման եկավ Համաթի իշխանին, որպեսզի մեքենաներով նրանց վրա արձակի (քարեր) և երբ լարեցին, որպեսզի ռմբակոծեն, նրանք հաշտություն խնդրեցին սուլթանից, և խնդրանքն ընդունվեց այն պայմանով, որ իրենց կյանքը կապահովվի միայն գերի հանձնվելու պարագայում։ Նրանք համաձայնվեցին և գերի վերցվեցին, կաթողիկոսը և բոլոր նրանք, որոնք սակավ թվով մնում էին միջնաբերդում, մինչև վերջին մարդը[89]։ Սուլթանը նշանակեց Ալամադդին Սանջար ալ-Շուջային վերանորոգելու համար բերդը և քանդված պարիսպները։ Նա նորոգեց ամբողջությամբ ու վերաշինեց ամրոցը։ Այնուհետև սուլթանը վերադարձավ Հալեպ։

էջ 36—37

Հիջրի 697 թվականին (1297 հոկտ. 19—1298 հոկտ. 8) Հուսամադդին Լաչինը, որ այժմ ալ-Մալիք ալ-Մանսուր[90] է կոչվում, ահագին բանակ հավաքեց Եգիպտոսից։ Նրան ընկերացան Բադրադդին Բեկթաշ ալ Ֆախրին՝ որ հայտնի էր Ամիր Սլահ[91] անվամբ, նրա հետ էին նաև Ալամադդին Սանջար Դավադարը[92], Շամսադդին Կրետան, Հուսամադդին Լաչին Ռումին՝ որը ծանոթ է Հուսամ

Օստադար[93] անվամբ և բոլորն էլ մեկնեցին դեպի Դամասկոս։ Հիշյալ Լաչինը հրամայեց, որ Դամասկոսի գնդերն էլ միանան նրանց։ Ճամփա ելավ Ալբեկի ազ-Ջահրին՝ սուլթանական տեղակալը Սաֆադում, որոշ ժամանակ անց Սայֆադդին Ղփչախը, որ սուլթանական տեղակալ էր Դամասկոսում։ Ղփչախը մի խումբ զինվորներով եկավ Հեմս, և զորագնդեր ուղղվեցին դեպի Հալեպ։ Ճամփա ելավ նաև ալ-Մալիք ալ-Մոզաֆֆար Մահմուդը՝ ջումադալ-ախըր ամսի 23-ին, երկուշաբթի օրը (1298 ապրիլ 7), որը համապատասխանում է Նիսան ամսի 7-ին, և բոլորն էլ շարժվեցին Սսի երկրի վրա։ Համաթի տերը և Դավադարը և իրենց հետ եկող գնդերն անցան Մարիի կիրճից, իսկ մնացած զորքերը ուղղվեցին դեպի Բաղրասի կողմը և անցան Իսկենդերունից և նրանց միացումը կատարվեց Ջայհան գետի մոտ, որտեղից սկսեցին արշավել Սսի երկրի վրա ռաջաբ ամսի երկրորդ տասնօրյակին (1298 ապրիլ 23—մայիս 2)։ Նրանք ավերեցին ու կողոպտեցին երկրի այն մասը։ Հետո վերադարձան և Բաղրասի կիրճից անցնելով մտան Անտիոքի դաշտը ռաջաբ ամսի 21-ին (1298 մայիս 4), որը համապատասխանում է այար ամսի 4-ին։ Համաթի տեր ալ-Մալիք ալ-Մուզաֆֆարը ուղղվեց դեպի Համաթ, մինչև հասավ Կաստուն[94]։ Այդ միջոցին Լաչինից հրաման ստացվեց վերստին հավաքել գնդերը Հալեպում և երկրորդ անգամ մտնել Սսի երկիրը։ Այս արշավանքին մասնակցեցի ես անձամբ և ականատես եղա դեպքերին սկզբից մինչև վերջ։ Հասնելով Հալեպ, կիրակի օրը, ռաջաբ ամսի 28-ին (1298 մայիս 11), դադար առանք ։ Հետո այնտեղից դուրս եկանք ռամազան ամսի 3-ին (1298 հունիս 1) և շարժվեցինք դեպի Սսի երկիրը, մտանք Իսքենդերունի կիրճից և դիրք բռնեցինք Համուսի[95] առաջ նույն տարվա ռամազան ամսի 9-ին, ուրբաթ օրը (1298 հունիս 20), որը համապատասխանում է հազիրան ամսի 20-ին։ Այնտեղ ժամանեցին նաև Բադրադդին Բեկթաշ Ամիր Սլահը, Համաթի տեր Մալիք Մոզաֆֆարը և նրա հրամանի տակ գտնվող գնդերի օժանդակությամբ, որոնց գլուխն էր կանգնած Ռոքնադդին Բիբարս ալ-Աջամին՝ ծանոթ ալ-Ջալիկ անվամբ։ Պաշարեցինք Համուսը և սեղմեցինք խստորեն, իսկ մնացած դնդերն իջան Համուսից ցած, դաշտի կողմից, ու այս կերպով պաշարման վիճակը շարունակվեց մինչև որ ջուրը պակասեց Համուսի մեջ։ Բերդում ապաստանել էին բազմաթիվ հայեր և այնտեղ մտցրել էին նաև մեծ թվով դրամ։ Ժողովրդի մեծ մասը ծարավից մեռնում էր և երբ կացությունը վատթարացավ, ու պաշարվողները տեսան երեխաների ու կանանց մա-

հանալը, նրանցից մոտ 1200-ը բերդից դուրս հանեցին ամսի 25-ին (1298 հուլիս 6), մեր պաշարման սկսելու 17-րդ օրը։ Մեր զինվորները բաժանեցին նրանց իրենց մեջ և ես իմ բաժինս ստացա՝ երկու մանկամարդ աղջիկ և մեկ տղա։ Այդ միջոցին պատեց մի թեթև մշուշ և մի քիչ անձրև տեղաց. այդ պատճառով Մալիք Մոզաֆֆարը թեթև անհանգստություն զգաց, և որովհետև նրան չէր ընկերանում իր բժիշկը, թույլ տվեց ինձ, որ խնամեմ իրեն և շնորհիվ ալլահի նա առողջացավ և ինձ ցույց տվեց մեծ երախտագիտություն ու լցրեց իր բարյացակամության արտահայտություններով։ Նրա վրանը կանգնեցված էր Համուսի դիմաց և շինված էր անբիծ կարմիր մաղրաբի կտավից, ներսի կողմը կանաչ նրբին թելերով նախշված[96]։ Կարգադրեց, որ այն էմիրները, որոնք պաշարում էին Համուսը, կարևոր դեպքի պարագայում, երբ հարկ տեսնեին խորհրդակցելու, բարձրանային սարի վրա և հավաքվեին Մալիք Մոզաֆֆարի վրանում և նրա հետ որոշեին անել՝ ինչ որ պահանջում էր կացությունը։ Պաշարման գործը շարունակվեց այս կերպով. մինչև որ գրավվեց Համուսը և մյուս վայրերը, ինչպես պիտի հիշատակենք[97]։ Քաղաքը գրավվեց Լևոնի որդու՝ Դանդինի ժամանակ։ Այդ քաղաքը հանձնելու առթիվ տեղին է, որ մի քանի խոսք ասենք Հայոց երկրի թագավորության մասին։

Սրանից առաջ, հիջրի 664 թվականի տակ ասեցինք, թե Հեթումի որդի Լևոնը գերի բռնվեց, երբ Համաթի իշխանի ալ-Մալիք ալ-Մանսուրի բանակները Սսի երկիրը մտան՝ ալ-Մալիք ազ-Զահիր Բիբարս Բոնդուկդարի Սալհիի իշխանության օրերին, և թե ինչ կերպով տեղի ունեցավ Լևոնի ազատագրումը և ինչ վճարեց նրա հայրը իբրև փրկագին, որպեսզի նա վերադառնա իր հոր՝ Սսի թագավորի մոտ։ Հիշյալ Լևոնը թագավորեց իր հոր՝ Հեթումի մահից հետո և մնաց մի առ ժամանակ գահի վրա։ Երբ մեռավ, նրան հաջորդեց իր մեծ որդին՝ Հեթումը, հետո Թորոսը, հետո Սմբատը, հետո Դանդինը, հետո Օշինը։

Ուրեմն, երբ մեռավ Լևոնը, նրան հաջորդեց մեծ որդին՝ Հեթում իբն Լևոնը։ Այդ Հեթումը մնաց գահի վրա մի որոշ ժամանակ. նրա եղբայր Սմբատը հավաքեց իր կուսակիցներին և հարձակվեց իր եղբայր Հեթումի վրա, ձերբակալեց նրան և մի աչքը փորելով կուրացրեց, բայց մյուս աչքը պահեց անեղծ ու պահեց նրան բանտի մեջ։ Հիշյալ Սմբատը հարձակվեց իր մյուս եղբոր՝ Թորոսի վրա և սպանեց նրան։ Հիշյալ Թորոսը թողեց մի անչափահաս որդի։ Իսկ Սմբատը ամրապնդեց իր իշխանությունը։ Սակայն այնպես

պատահեց, որ մահմեդական զորքը մտավ Սսի երկիրը և պաշարեց Համուսը Սմբատի իշխանության ժամանակ։ Հայերը նեղվեցին այս բանից, մանավանդ որ մուսուլմանները գրավումներ էին կատարել և շատ հայերի սպանել, ինչ որ վերագրվեց Սմբատի հոռի ընթացքին ու մուսուլմանների հանդեպ հայտնաբերած անկարողությանը։ Հայերը համաձայնություն կայացրին իրենց մեջ՝ նրա փոխարեն գահի վրա դնելու նրա Լևոն եղբոր որդի Դանդինին և ձերբակալել Սմբատին։ Հայերը խմբվեցին Դանդինի շուրջը, իսկ Սմբատը տեսնելով այդ բանը, փախուստ տվեց Կոստանդնուպոլսի կողմերը։ Գահը մնաց Դանդինին, որը կոչվում էր նաև Կոստանդին[98]։

Երբ հիշյալ Դանդինը գահակալեց, նա Սսում գտնվող գնդերը ուղարկեց Համուսի և ուրիշ վայրերի վրա։ Ապա սուլթանը, որը իրեն այդ երկրների մուսուլմսնների ներկայացուցիչն է համարում, պահանջեց, որ Ջայհան գետը սահման կազմի մուսուլմանների և հայերի միջև, և գետի հարավակողմը գտնվող բերդերն ու քաղաքները իրեն հանձնվեն։ Դանդինը համաձայնվեց այդ առաջարկին և մուսուլմաններին հանձնեց բոլոր այն քաղաքները, որոնք գտնվում են Ջայհան գետից դեպի հարավ. սրանցից են Համուսը, Տիլ Համդունը[99], Կվայրանը[100], Նողայրը[101], Հաջար Շաղլանը, Սարվանդիքարը[102], Մարաշը,—բոլորն էլ անմատչելի բերդեր։ Հանձնըվեցին նաև մյուս քաղաքները։ Համուսի հանձնումը տեղի ունեցավ հիջրի 697 թվականի շավալ ամսի 19-ին, ուրբաթ օրը (1298 հուլիս 30), ինչ որ համապատասխանում է աբ ամսի 8-ին։ Այնուհետև հանձնվեցին Տիլ Համդունը և մնացած քաղաքները, ինչպես հիշեցինք։ Հուսամադդին Լաչինը, որ ալ-Մալիք ալ-Մանսուր է կոչվում, հրամայեց վերաշինել այդ քաղաքների շենքերը, և այդ կարգադրությունը անշուշտ սխալ դատումի արդյունք էր, ինչպես որ պիտի տեսնվի, քանի որ նրանք վերադարձվեցին հայերին, երբ Ղազան խանը մտավ այդ երկրները։

Երբ մուսուլմանները հաստատվեցին այդ քաղաքներում, սուլթանը այնտեղ նշանակեց իր էմիրներից մեկին, հետո նրան հեռացրեց պաշտոնից և կառավարիչ նշանակեց Սայֆադդին Ոստադմարին։ Այնուհետև բանակները հեռացան սուլթանի հետ, իսկ հիշյալ Ոստադմարը հաստատվեց Տիլ Համդունում։

Տիլ Համդունի հանձնվելուց հետո Համաթի իշխան ալ-Մալիք ալ-Մուզաֆֆար Մահմուդը մեկնեց այնտեղից նույն տարվա զուլկադա ամսի սկզբին։ Բանակը ճամփա ելավ, և ամենքս էլ մտանք

Հալեր 697 թվականի զիլկադիա ամսի 9-ին, երեքշաբթի օրը (1298 օգ. 18), որը համապատասխանում է ար ամսի 10-ին։ Երբ Հալեբ հասանք, Հուսամադդին Լաչին Մալիք Մանսուրից հրաման եկավ Սայֆադդին Բալբան Տաբախուն, որ նա ձերբակալի այն էմիրներին, որոնք հեռացել էին իրենց զինվորների հետ։ Երբ Ղփչախը, որ Հոմսում էր, լսեց այդ բանը, վախենալով Լաչինից, փախուստ տվեց։ Փախուստ տվեց նաև Հալեբից Ֆարսադդին Ալբակին, որ սուլթանական տեղակալն էր Սաֆադում և գտնվում էր դեպի Հալեբ հեռացող զորքերի խմբում։ Նույն կերպով փախուստ տվեց Բեկթիմուր Սլահդարը, Բուրլարը և Ղազաղը։ Հասնելով Հոմս, նրանք համաձայնվեցին Սայֆադդին Ղփչախի հետ, որպեսզի ապստամբեն։

Այդ թվականին մոնղոլների պետ Սլամշը, որ Ռումի երկրումն էր, լուր ստացավ, թե Ղազանը ուզում է սպանել իրեն։ Նա փախավ ու գնաց ալ-Մալիք ալ-Մանսուր Հուսամադդին Լաչինի մոտ, որը նրան լավ ընդունելություն ցույց տվեց։ Սլամշը օգնություն ստացավ ալ-Մալիք ալ-Մանսուր Լաչինից, որ վերադառնա Ռումի երկիրը, Ռումի ժողովրդին իրեն շուրջը հավաքելու նպատակով։ Նրա հետ Սայֆադդին Բեկթիմուր Ջելմու հրամանի տակ Հալեբից մեկնեցին զինվորներ և գնացին Սլամշի հետ, մինչև որ անցան Սսի երկրի սահմանները։ Նրանց դեմ ելան թաթարները, և կռվի մեջ սպանվեցին Ջելմին ու մուսուլման զինվորների մի մասը, իսկ մնացածները փախուստ տվեցին։ Սլամշը ապաստանվեց Ռումի երկրի մի բերդում, ուր և ամրացավ։ Նրա վրա ուժեր ուղարկեց, Ղազանը, որոնք պաշարեցին նրան և սպանեցին։

Էջ 44

Հիջրի 698 թվականին (1298 հոկտ. 9—1299 սեպտ. 27) մահացավ Շամսադդին Կրիդան, մեկը այն հրամանատարներից, որոնք Սսի երկիրը մտան և գրավումներ կատարեցին, ինչպես սրանից առաջ հիշատակեցինք*։

Էջ 46

Հիջրի 699 թվականին (1299 սեպտ. 28—1300 սեպտ. 15), երբ Դամասկոս հասավ Ղազանը՝ մոնղոլական բանակով, հայերը ուզե-

* Հեղինակը այս թվականին հաջորդող դեպքերի կապակցությամբ խոսում է Ղազան խանի արշավանքի մասին, որին մասնակցեցին, ասում է. վրացիները և ուրիշներ, առանց որոշակի հիշատակելու հայերի մասնակցության մասին։

ցին հետ ստանալ այն քաղաքները, որոնք մուսուլմանների կողմից գրավվել էին ավելի առաջ և որոնք մուսուլմանները չկարողացան պաշտպանել՝ թուլացած լինելով։ Այս կերպով հայերը վերստին տիրեցին այդ քաղաքներին և հետ վերցրին Համուսը, Տիլ Համդունը, Կվայրան, Սարվանդիքարը, Նողայրը և մյուս վայրերը, իսկ բերդերից մուսուլմաններին մնաց միայն Հաջար Շաղլանը։ Հայերը տիրեցին նաև ուրիշ բերդերի և քաղաքների, որոնք Ջայհան գետի հարավակողմն են գտնվում։

Այդ տարի, կամ մի տարի առաջ, երբ Հայոց երկրում Դանդինը գահակալեց, նա աղատ արձակեց իր եղբայր Հեթումին և գահը վերադարձրեց նրան։ Հեթումը, որի մեկ աչքը կուրացրել էր իր Սմբատ եղբայրը, ինչպես նախապես ասացինք, մի ժամանակ հետո դավեց Դանդինի դեմ և ամենաստոր վերաբերմունքը ցույց տվեց և ուզեց ձերբակալել նրան, որի հետևանքով Դանդինը փախուստ տվեց դեպի Կոստանդնուպոլիս, և Հեթումը մնաց գահի վրա։ Քիչ անց նա գահ բարձրացրեց իր Թորոս եղբոր անչափահաս որդուն, այսինքն այն Թորոսին, որը, ինչպես հիշված է, իր մյուս եղբայր Սմբատի կողմից սպանվել էր։ Իսկ այդ անչափահաս տղայի խնամակալությունը վերցրեց ինքը։ Այդպես մնաց այնքան ժամանակ, մինչև որ նրանց սպանեց Բիրլուղան, Ռումի երկրի մոնղոլների պետը, ինչպես պիտի պատմենք։

էջ 48

Հիջրի 701 թվականին (1301 սեպտ. 6—1302 օգ. 25) Կահիրեից ճամփա ելան Բադրեդդին Բեքթաշ Ամիր Ալահը և Այբակ Խազնադարը, և նրանց հետ զորագնդեր, որոնք ուղղվեցին դեպի Համաթ։ Հրաման հասավ Զայնադդին Քետբուղային, որը սուլթանի տեղակալն էր Համաթում, որպեսզի իր գնդերով շարժվի Սսի երկրի վրա։ Հիշյալ Քետբուղան Համաթից դուրս եկավ, նրա հետ ելանք և մենք, շաբաթ օրը, շավալ ամսի 15-ին, որը համապատասխանում էր Ռումի ամիս հազիրանի 23-ին։ Բանակը Զայնադդինի ընդհանուր հրամանատարության տակ ճանապարհվեց, և մտանք Հալեպ հինգշաբթի օրը, զուլկադա ամսի առաջին օրը. Հալեբից դուրս եկանք զուլկադայի երրորդ օրը (1302 հունիս 30) և մտանք Բաղրասի կիրճը նույն ամսի 7-ին։ Հետո առաջացանք Սսի վրա... և այնտեղ կանգ առնելուց հետո վերադարձանք Դարբանդից և հասանք Հալեբ նույն տարվա զուլկադա ամսի 19-ին, երկուշաբթի օրը (1302 հուլիս 16)։ Հետո դարձանք Համաթ, որտեղ մուտք գործեցինք հիշ-

յալ ամսի 27-ին, երեքշաբթի (1302 հուլիս 24), որը համապատասխանում է թիմուզ ամսի 24-ին՝ ըստ Ռումի տոմարի։ Հազիվ էինք մտել Համաթ, երբ սկսվեց Զայնադդին Քիտբուղայի հիվանդությունը[103]։

էջ 53

Հիջրի 703 թվականի (1303 օգ. 15—1304 օգ. 3) վերջերին Կահիրեից բանակներ եկան, որոնց միացան Սայֆադդին Ղպչախը Համաթի զորքերով և Կարա-Սոնկուրը՝ Հալեբի զորքերով։ Նրանք մտան Սսի երկիրը և պաշարեցին Տիլ Համդունը, որը գրավեցին ներսինների անձնատվությամբ, այսպիսով, այն հետ վերցրին հայերից,— քանդեցին ու դետնին հավասարեցրին։ Ես չմասնակցեցի այդ արշավանքին, որովհետև գտնվում էի Հիջազում[104]։

էջ 53

Հիջրի 705 թվականի մուհարրամ ամսի սկզբներում (սկիզբը՝ 1303 թ. օգ. 15), որը համապատասխանում է թիմուզ ամսի վերջին տասնօրյակին, Հալեբի սուլթանական տեղակալ Կարա Սոնկուրը զորքեր ուղարկեց Հալեբից Կուշթիմուր Մամլուքի հետ, որպեսզի գրավեն Սսի երկիրը։ Նրանք դուրս եկան այնտեղից հիշյալ ամսի առաջին օրը։ Սույն Կուշթիմուրը մի թեթևամիտ ու անկարող անձ էր և իրեն տվել էր հարբեցողության։ Նա զորքերի հանդեպ անփույթ գտնվեց և ոչ մի փորձ չարեց թշնամիներից տեղեկություններ ձեռք բերելու և այդ տեղեկություններից օգտվելու։ Մինչդեռ Սսի թագավորը շատ մարդիկ հավաքեց թաթարներից, և երբ նրանք միացան, հայերը և ֆրանկները անակնկալ հարձակվեցին հիշյալ Կուշթիմուրի վրա, որի հետ էին Հալեբի էմիրներն ու գնդերը։ Բախումը տեղի ունեցավ Այասի մոտ, և Հալեբցիները չկարողացան ոչինչ անել, իսկ հայերն ու թաթարները նրանց ճանապարհը կտրեցին, շատերին սպանեցին ու գերի վերցրին և կատարյալ հաղթանակ տարան։ Ոմանք կարողացան փախչել դեպի սարերը և ազատվել, իսկ շատ քչերը միայն կարողացան Հալեբ հասնել մերկ և առանց ձիու։ Այդ տարի Սսի թագավորն էր Հեթումի որդի, Լևոնի որդի Հեթումը, նույնը, որին իր եղբայր Սմբատը բռնել էր և կուրացրել։ Բայց մի աչքն էր միայն վնասվել, ինչպես նախապես հիշատակեցինք 699 թվականի ներքո։

էջ 56

Հիջրի 707 թվականին (1307 հուլիս 3—1308 հունիս 20) Բիրլուղան, որ Ռումի երկրում բանակած մոնղոլների զորավարն էր,

սպանեց Սսի թագավոր՝ Հեթումի որդի, Լևոնի որդի Հեթումին, նախապես սպանելով նրա եղբայր Թորոսի որդուն, նրա կրծքի վրա։ Հայոց երկրի գահի վրա հաստատվեց Լևոնի որդի Օշինը, այսինքն՝ Հեթումի եղբոր որդին, իսկ Հեթումի մյուս եղբայր Ալինախը գնաց Խարբենդեի մոտ և գանգատվեց Բիրլուղայի մասին, Խարբենդեն հրամայեց, որ սրախողխող անեն Բիրլուղային[150]։

էջ 67

Հիջրի 711 թվականին (1311 մայիս 20—1312 մայիս 8) ժամանեց Սսի դեսպանը բերելով որոշված տուրքը ապրանքներով, որը պարտավոր էր վճարել ամեն տարի։ Ասորիքի տեղակալներին բերեցին սովորական ընծաները, իսկ ինձ բերեցին ջորիներ և կերպասեղեն։

էջ 68

Այդ ժամանակ Սսի թագավորն էր Օշինը՝ Լևոնի որդին, Հեթումի որդին։

էջ 90

Հիջրի 720 թվականին (1320 փետրվ. 12—1321 հունվ. 20) հրաման ստացվեց սուլթանից՝ արշավել Սսի երկրի վրա և այդ գործողությանը մասնակցեցին Ասորիքի մուսուլմանական գնդերը՝ Դամասկոսից շարժվեցին մոտավորապես 2000 հեծյալներ, ճամփա ելավ Շահաբադդին Կորթայ էմիրը՝ Սահիլի զինվորներով, Համաթից ելան Թաբլխանեի էմիրները, որոնք գտնվում էին այնտեղ իրենց զինվորներով։ Նրանք Համաթից դուրս եկան նույն տարվա ռաբի ավալ ամսի առաջին տասնօրյակին և հասան Հալեբ (1320 ապրիլ 20)։ Այդ գնդերը, մինչև վերջին զինվորը, դուրս եկան Հալեբից սուլթանական տեղակալ Ալթուն Բուղայի հրամանատարության տակ և շարժվեցին դեպի Հարիմի մոտի Ամկը, որտեղ մնացին որոշ ժամանակ։ Հետո այնտեղից ճամփա ելան և մտան Սսի երկիրը նույն տարվա ռաբի ախար ամսի 7-ին (1320 մայիս 26), որը համապատասխանում է այար ամսի 24-ին։ Առաջանալով նրանք հասան Ջայհան գետը, երբ այն հորդած էր ու կուրորեն նետվեցին գետի մեջ, որտեղ մեծ թվով զինվորներ խեղդվեցին, և որոնց մեծ մասը թուրքմեններ էին, որոնք Սահիլի բանակի մասն էին կազմում։ Ջայհան գետն անցնելուց հետո նրանք գնացին Սսի բերդը պաշարելու։ Նրանք հասան պարսպին, որի մեծ մասին տիրացան, հետո ավերեցին շրջակայքի գյուղերը ոչնչացրին ցանքսը և վերադարձան, անցնելով Ջայհանից, որն արդեն ծանծաղել էր և հասան

Բաղրաս նույն տարվա ռաբի ախար ամսի 29-ին, շաբաթ օրը մինչև որ ցրվելու հրաման եկավ, և ամեն ոք դարձավ իր երկիրը[106]։

էջ 92

Նույն այդ տարին, ջումադալ ավալ ամսին (1320 հունիս 8—հուլիս 8) մահացավ Սսի թագավորը՝ Լևոնի որդի Օշինը, իր երկրի վրա կատարված արշավանքից անմիջապես հետո։ Նա հիվանդ էր արդեն, երբ մուսուլման բանակները մտան իր երկիրը։ Ինքն ականատես եղավ երկրի հրդեհումին, շենքերի ավերումին, իր հպատակների մահացումին, արջառի հափշտակությանը և ժողովրդի տկարացմանը։ Նրան հաջորդեց փոքր որդին. որը դեռ անչափահաս էր, և հայ մեծամեծների կողմից գործերի մի վարիչ նշանակվեց[107]։

էջ 93

Հիջրի 721 թվականին (1321) Բարձր Դուռը ժամանեց մի դեսպան Տեմիրտաշ իբն Չոբանի կողմից, որը Ռումի երկրի տեղակալն էր։

Նույն տարին հիշյալ Տեմիրտաշը իր զորքերով մտավ Սսի երկիրը և ասպատակեց ու ջարդեց, իսկ Սսի տերը փախավ Այասի բերդը, որը գտնվում էր ծովի վրա։ Տեմիրտաշը մոտ մի ամիս շարունակ կողոպուտի մատնեց երկիրը և վերադարձավ[108]։

էջ 94

Հիջրի 722 թվականին (1322 հունվ. 20— 1323 հունվ. 9) եգիպտական, ասորիքյան և Սահիլի[109] զինվորներից զորաբաժիններ շարժվեցին, որոնց միացան Համաթի զորքերը և գնացին դեպի Հալեբ մեծ քաղաքը, որտեղ նրանց իր գնդերով դիմավորեց Հալեբի կառավարիչ Ալթուն Բուղան։ Նրանք իրենց ճանապարհը շարունակեցին մինչև հասան Այաս[110], Սսի երկրում, որը պաշարեցին և տիրեցին։ Նրանց դիմադրեց ծովի վրա գտնվող բերդը, որի վրա մուսուլմաններն հարձակվեցին բազմաթիվ քարանետ մեքենաներով և ծովից նավերով հարձակում գործեցին երկու ուղղությամբ, մինչև որ ավերեցին բերդը և թափանցեցին ներս, որը գտան հրդեհված։ Մուսուլմանները տիրեցին բերդին ռաբի ախար ամսի 21-ին, կիրակի օրը (1322 մայիս 9)... և քանդեցին այն ինչքան որ կարողացան քանդել, այնուհետև զինվորները վերադարձան իրենց երկրները։

էջ 102

Հիջրի 729 թվականին (1328 նոյ. 5—1329 հոկտ. 24) չափահասության հասավ Սսի թագավոր անչափահաս Լևոնը, Օշինի որ-

*դին, որի վրա խնամակալ էր Քարքի* իշխանը։ Սրա կալվածն էր մի բերդ, ծովի մոտ, Սսի երկրի սահմանագլխում, նրա հյուսիս-արևմտյան կողմը, որը սահմանակից է Կարամանի որդու երկրին։*

*Հիշյալ Քարքի տերը իշխանությունն առել էր իբրև խնամակալ Սսի անչափահաս թագավորի, և երբ այդ տարին սույն պատանին տարիքը լրության հասավ, սպանեց Քարքի իշխանին և նրա եղբորը և Քարքի իշխանի գլուխը ուղարկեց սուլթանին[112] և սուլթանը նրան ուղարկեց պատիվներ, զենք, ձիեր՝ թամբ ու սարքով, և այդ ամենը էմիր Շահաբադդին Ահմադ Մուհամմադի ձեռքով, որը Բարձր Դռան միհմանդարն[113] էր։ Երբ հիշյալ Շահաբադդինը գնաց Սսի երիտասարդ թագավորի մոտ, Սսի տերը հագավ խիլան և սուրը քաշելով երկրպագեց ու հեծավ ձին և այդ կերպով ինքն իրեն գոռացած զգաց։ Շահաբադդին միհմանդարը ստացավ բազմաթիվ ընծաներ և վերադարձավ դեպի Բարձրագույն Դուռը։*

*էջ 124*

*Հիջրի 738 թվականին (1337—1338) մուհառամ ամսում մեռավ Նասրադդին Մուհամմադ իբն Մաջդադդին իբն Կարնասը, որը մտել էր Սսի երկիրը՝ որպես քննիչ Ջիհանյան տիրույթների (նվաճումների)։ Նա մեռավ այդ երկրում և թաղվեց այնտեղ գտնվող մուսուլմանների հատուկ գերեզմանոցում։*

*Հիջրի 741 թվականին (1339 հուլիս 9—1340 հունիս 26)։ Ալայադդին Այտղուղա Ալզրակ էմիրը և Հալեբի զինվորների մի մասը գրավեցին Խանդարուս բերդը Ռումի երկրում, որը շատ ամուր վայր էր և որտեղ կային հայեր ու թաթարներ, որոնք ելուզակություն էին անում**։*

*էջ 139*

*Նույն այդ թվականին Այասում մեռավ այնտեղի կառավարիչ ամիր Ալայադդին Մողալթայ ալ-Ղազին, վիրավորված լինելով հայերի կողմից։ Նրան թաղեցին իր սեփական շիրիմի մեջ, Հալեբում։*

*էջ 140*

*Հիջրի 742 թվականին (1341 հունիս 17—1342 մայիս 5)։ Թադայ իբն Սուտայ թաթարը պարտության մատնեց Հասան իբն Տիմուրտաշ իբն Չուբանին ու խուճապահար հալածեց նրան մինչև Հռոմկլա։*

---

* *Իմա Կոռիկոս—*

** *Բառացի ճանապարհներ էին կտրում։*

Էջ 143

Հիջրի 744 թվականին (1343 մայիս 26—1344 մայիս 14) թուրքմենները հաճախակի ասպատակություններ կատարեցին Սսի երկրում, ջարդեցին, կոտորեցին, գերի վարեցին և վրեժ առան այն բռնությունների դիմաց, որոնք հայերը գործել էին Կարամանի երկրում[114]։

Էջ 144

Այդ տարի, ջումադալուլա ամսին (1343 սեպտ. 21—հոկտ. 20) լավ սպառազինված գնդեր առաջացան Սսի երկրի վրա, բայց չհաղթեցին։ Հարուստ և բազմամարդ Ադանան գրավելուց հետո նրանք հազիվ էին հանգիստ առել, երբ Հալեբի բանակի հրամանատար Ակ-Սոնկուրը կաշառվեց հայերից և արգելեց, որ բանակները ավելի առաջանան, առարկելով, որ սուլթանը հրաման չի տվել իրեն այդ բանի համար։ Քիչ ժամանակ հետո Ակ-Սոնկուրը մեռավ վարկաբեկված, և Ալլահը մերժեց, որ նա մահանա Սսի երկրում, արշավանքի ժամանակ։

Էջ 149

Հիջրի 746 թվականին (1345 մայիս 4—1346 ապրիլ 3) հայերը սպանեցին իրենց թագավոր Ֆրանկ Քունդսթաբլին[115], որը անկարող էր վարելու գործերը և չէր պաշտպանում երկիրը, որի հետևանքով մուսուլմանները ավերներ էին գործում։ Նրա փոխարեն թագավորեցրին...*։

Նույն տարվա վերջում թուրքմենները խաբեությամբ տիրեցին Կապանի[116] բերդին, որը Սսի երկրի ամենազորեղ բերդերից էր Ռումի երկրին սահմանակից։ Այնտեղ գտնվող մարդկանց սպանեցին և գերի վերցրին կանանց ու երեխաներին։ Սսի նոր թագավորը փութաց փրկելու բերդը, բայց Իբն Դելղադերը հանկարծակի հարձակվեց հայերի վրա և շատերին սպանեց, իսկ մնացածներին էլ փախուստի մատնեց։

Բանաստեղծն ասել է։

> «Սսի նոր տերը գոչեց. Կապանը կյանքիս արժեքն ունի.
> Մենք ասացինք նրան. ուրիշ բանի մասին խորհիր**,
> Որովհետև հաղթանակները հաջորդելու են հաղթանակներին»։

* Բնագրում նախադասությունը մնացել է անավարտ։

** Այսինքն՝ մոռացիր այդ մասին։

Գրավումից հետո Հալեբի Նաիբը գնաց, որպեսզի դառնա (Կապանի) կառավարիչը։ Սակայն իբն-Դելղադիրը հակառակեց։ Ուստի պատրաստեցին զորագնդեր՝ այդ բերդը քանդելու։ Սակայն հետո՝ 747 թվականին ռաջաբ ամսին (1346 հոկտ. 18—նոյ. 16) հայերը գրավեցին այն՝ իբրև աղետալի հետևանք տրված հրամանին չհնազանդվելու։

էջ 151

Հիջրի 748 թվականի մուհառամ ամսին (1347 ապրիլ 13—մայիս 12) հայերը հարձակումներ կատարեցին Այասի վրա՝ վնասներ հասցնելու նպատակով[***]։ Նրանց դեմ ելավ Այասի էմիրը՝ Հուսամադդին Մահմուդ իբն Դավուդ ալ-Շայբանին, և հայերից սպանվեցին շատ մարդիկ և նրանցից բռնված գերիներն ու պետերը բերվեցին Հալեբ՝ Մաշհուդի օրը։ Փառք ալլահին։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Արաբները Կիլիկիան անվանում են հետևյալ անուններով. Բիլադ Սիս (Սսի երկիր), Բիլադ ալ-Արման (հայերի երկիր), Բիլադ Լևոն ալ-Արմանի (Լևոն հայի երկիր), Բիլադ ալ Դորուբ (Լեռնանցքների երկիր)։ Կիլիկիան շատ անգամներ կոչված է «Թուղուր» կամ «Սուղուր»*, որը նշանակում է սահմանային գոտի։ Բոլոր այն երկրամասերը, որոնք խալիֆաթի ծայրամասերում էին գտնվում կոչվում էին այս անունով։

Կիլիկիան կոչվում էր նաև «Ավասիմ»**, որ «Ասիմա» բառի հոգնակին է, այսինքն՝ պաշտպանություն կամ պաշտպանության գիծ թշնամիների դեմ։ Այս անունը տվեց Հարուն ար-Ռաշիդ խալիֆը, երբ 786 թվականին վերակառուցեց (արաբ հեղինակներն ասում են՝ կառուցեց) Տարսոն քաղաքը։

Աբու-լ-Ֆիդան Ասորիքի մաս է համարում Կիլիկյան Հայաստանի այն շրջանները, որոնք Հալեբի հյուսիսային կողմում են գտնվում։ Իսկ մի ուրիշ հեղինակ՝ Շահաբադդին իբն-Ֆաթհուլլահ ալ-Օմարին (մահացած 1341 թ.) իր «Ատ-Թաարիֆ բիլ-Մոստալա աշ-Շարիֆ» գործում դուրս է թողնում այն Ասորիքի հողերից, բացատրելով, թե «սրանք մաս էին կազմում հայկական այն երկրների, որոնք անցյալում կոչվում էին Ավասիմի կամ Թուղուրի երկիր»։

2. Կոստանդին V Կոպրոնիմոս կայսրը (741—775) հռչակվեց իբրև պատկերամարտության ախոյան։ Իր իշխանության սկզբում նա կռվեց Արտավազդ հայի դեմ, որ իր փեսան էր և ապստամբելով գրավել էր կայսերական գահը։ Նրան հաղթելուց հետո նա պատերազմ սկսեց արաբների դեմ։ Արաբները փորձեցին գրավել Կիպրոսը, բայց 748 թվականին Կերամիայի ծովամարտում բյուզանդական նավատորմը ջախջախիչ հարված տվեց արաբական նավատորմին։ 752 թվականին կայսերական բանակները գրավեցին Մալաթիան և Թեոդոսուպոլիսը (Էրզրում)։ Բայց մի քանի տարի հետո Ալ-Մանսուր խալիֆը ետ վերցրեց այդ քաղաքները։

3. Մամուն խալիֆը (Աբուլ-Աբբաս Աբդալլա ալ-Մամուն) Աբբասյան յոթերորդ խալիֆն էր, որը 813 թվականին հաջորդեց իր եղբորը՝ Ալ-Ամինին։ Նա զարկ տվեց արաբական կուլտուրային, հիմնեց ակադեմիա, հունարեն մի շարք երկեր թարգմանել տվեց արաբերենի, վերանայել տվեց Պտղոմեոսի տախտակները և չափել տվեց խավարման ծիրի (էկլիպտիկա) շեղությունը։ Թեոֆիլ կայսեր (829—842) ժամանակ, 837 թվականին Մամունը արշավանք կազմակերպեց դեպի Բյուզանդիա և մեռավ Կիլիկիայում այդ արշավանքի ընթացքում։

4. Մամբեջ։ منبج Hierapolis կամ Bambyce ասորեստանցիների Nappigu-ն։ Կարևոր դեր կատարեց հելլենիստական և քրիստոնեական դարաշրջանում։

---

* نقور

** عواصم

Այնտեղ էր կատարվում ասորական Հաղաթ և Ատարղաբիս աստվածների պաշտամունքը։ Մամբեջի արևմտյան կողմում, Եփրատի վերևի մասում կառուցված է «Ջիսր Մանբիջ» կոչված կամուրջը, որը կարևորագույն անցք է և պաշտպանված է «Կալաատ ան-Նաջմ» կամ «Հիսն Մանբիջ» կոչվող բերդով։

5. Մոտասիմ Բիլլահ Աբու Իսհակ Մուհամմադ Աբբասյան խալիֆը, Ռաշիդի որդին, ծնվել է 796 թվականին։ Իր եղբայր Ալ-Մամունի մահից հետո գահ բարձրացավ 833 թվականի օգոստոսին։ Բաբեկի դեմ կռիվները վերջացրեց Աֆշին զորավարի միջոցով, ապա արշավեց Բյուզանդիայի հողերի վրա, և հաղթելով հույներին, գրավեց Ամուրիան։ Մահացավ 842 թվականի հունվարին։ Նրան հաջորդեց իր որդին՝ Վաթիկը։

6. Աֆշինը խալիֆաթի ամենանշանավոր զորավարներից մեկն էր։ Ջախջախեց ղպտիների ապստամբությունը Եգիպտոսում 832 թվականին, գերի վերցրեց Բաբեկին՝ 837 թվականին, հաղթեց բյուզանդական բանակին և գրավեց Ամուրիան՝ 838 թվականին։

Աֆշինը ծագումով Անդրկասպյան թուրք իշխանական ցեղից էր. նա մահմեդական չէր, այլ՝ մոգապաշտ, և արհամարհում ու ծաղրում էր Իսլամը։ Նա ամբաստանվեց, իբր խալիֆաթի դեմ նախապատրաստում էր ապստամբություն, այդ նպատակի համար մեծ գումարներ հավաքելով Աշրուսանայում։ Բաբեկի դեմ մղած կռիվների տարիներին, 835—837 թվականներին նա Հայաստանից և Ադրբեջանից տուրք չվերցրեց, որովհետև ծրագրել էր խալիֆաթի դեմ ապստամբական շարժման մեջ ներգրավել նաև Հայաստանը, Ադրբեջանն ու Կասպից ծովի շրջակա երկրները։ Մանրամասնություններ տալիս է Իբն ալ-Աթիրը (VI, էջ 209—210)։ Տե՛ս նաև Michel le Syrien, XII, ch. XXI, էջ 102)։

7. Իսա իբն Շայխ իբն աս-Սալիլ Աբու Մուսա աղ-Ջուհրի աշ-Շայբանին Արմինիայի ոստիկան նշանակվեց 870 թվականին, հեռացվելով Ասորիքից, որտեղ իր բռնած ընթացքով խալիֆին դժգոհություն էր պատճառել։ Նրան ոստիկան նշանակելու թվականը Աբու-լ-Ֆիդան դնում է հիջրի 256 թվականը (870), Իբն ալ-Աթիրը հիջրի 257 թվականը (VII, էջ 94), Թաբարին (էջ 101) և Իբն Խալդունը (III, էջ 301 և 309)՝ 871 թվականը։

Ըստ հայ հեղինակների, Աշոտը նրա միջնորդությամբ թագավորական թագ ստացավ խալիֆից (Հովհ. Կաթ., էջ 175, Վարդան, էջ 85)։

8. Ակնարկում է Դոմեստիկոս Հովհ. Գուրգենի և Մագիստրոս Մլեհի՝ Հայաստանի հարավային սահմանների և հյուսիսային Միջագետքի ուղղությամբ կատարած արշավանքները, Աշոտ II թագավորության ժամանակ։

Պատմական այս դեպքերի մասին տե՛ս Իբն ալ-Աթիր հիջրի 316 թվականը (928—929)։ Դոմեստիկոսի արշավանքի մասին՝ Խլաթի և Բիթլիսի գրավումներով (VII, հատ., էջ 74)։ Հմմ. Const. Porphyr-ը, որը տալիս է ընդարձակ տեղեկություններ (էջ 182 և հաջորդը), Theop. cont. էջ 416։

9. Նշանակում է բեմ։ Մզկիթի մեջ բարձր գիրքով մի մաս է, որի վրա իմամը իր քարոզն է ասում։

10. Ռուսների կողմից Պարտավի գրավման մասին նույն հիջրի 313 թվականի (մեր թվ. 944—945) տակ մանրամասն խոսում է Իբն ալ-Աթիրը, իսկ Կաղանկատվացին ռուսների արշավանքը հիշատակում է հայոց 363 թվականին (914) (տե՛ս Կաղ., էջ 385—386)։ Հավանաբար հայ պատմիչը թվականը շփոթում է և դեպքը նույնն է, որովհետև այդ արաբական աղբյուրները ռուսական արշավանքի

մասին չեն խոսում։ Տե՛ս Միլիքսեթ-Բեկի «Հին Ռուսիա և հայերը» հոդվածը (Լեզվի ինստիտուտի գիտ. աշխատ., № 1, 1946, էջ 116—117)։

11. Մսիսի և Տարսոնի գրավումը տեղի ունեցավ 965 թվականին, Տե՛ս Իբն ալ-Աթիր՝ հիջրի 354 թվականի (965) տակ։ Ուռհայեցին դնում է ՆԺԲ թ. (963—964), էջ 6։ Ասողիկը (էջ 183) Մսիսի գրավումը դնում է ՆԺԳ թվականի իսկ Տարսոնինը՝ ՆԺԴ թվականի տակ։ Համա. Cedrenus, II, էջ 361 և հաջորդ., Leon Diac, էջ 52, 58 ու հաջորդ։

965 թվականին Նիկեփորը արշավեց Կիլիկիա մեծ բանակով, որը բաժանեց երկու մասերի, մեկ զորաբաժինը իր եղբոր՝ Լևոնի հրամանատարությամբ շարժվեց պաշարելու Տարսոնը, մյուսը՝ իր անձնական հրամանատարությամբ գնաց Մսիսի վրա. Մսիսն ուներ 20 հազար բնակիչ, նրա պարենավորումը լավ չէր։ Այդ հանգամանքի պատճառով, եթե ավելացնենք նաև հարձակման սաստկությունը, այն հետևանքն ունեցավ, որ քաղաքը շուտով գրավվեց։ Այնտեղից Նիկեփորը գնաց միանալու իր եղբայր Լևոնին, որը Տարսոնի առաջ ուժեղ դիմադրության էր հանդիպել. հարձակվող բանակի ձախ թևի հրամանատարն էր Զմշկիկը։ Պարենավորումն անբավարար լինելով, քաղաքը անձնատուր եղավ։

12. Արշավանքը, որի մասին խոսվում է այստեղ, սկզբնավորությունն է մի շարք նվաճումների, որոնք կատարվեցին Բյուզանդիայի կայսրության զորության վերահաստատման շրջանում, սկսած X դարի կեսից։ Այդ դարը զուգադիպում է արաբական խալիֆաթի թուլացմանը, նրա բաժանման և մասնատման շրջանին։ Եգիպտոսում Ֆաթիմյան խալիֆայությունն սկսեց ուժեղանալ ընդդեմ Բաղդադի Աբբասյանների։ Իրանում, Իրաքում, Վերին Միջագետքում և Ասորիքում փոքր իշխանություններ կազմակերպեցին։ Կայսրները, հենվելով Փոքր Ասիայի հույն և հայ ֆեոդալների և տեղական տարրերի զինական ուժի վրա, ձեռնարկեցին արշավանքների, նպատակ ունենալով վերահաստատել Բյուզանդական կայսրությունը՝ իր վաղեմի սահմաններով։

971 թվականին Հովհաննես Զմշկիկ կայսրը ուժգին հարձակում սկսեց Միջագետքի և Ասորիքի վրա։ Անցնելով Հայաստանի սահմաններից, նա Աշոտ III Ողորմածից ստացավ 10.000-անոց մի օգնական բանակ և 974 թվականի աշնանը գրավեց Մուֆարղինը, Ամիդը, Նիսիբինը, Եդեսիան, Մանբեջը, առաջացավ դեպի Աֆամիա, Եմեսիա, Բալբեկ և 975 թվականին հասավ Դամասկոս, որի կառավարիչ Իֆտիկինը ընդունեց Բյուզանդիայի կայսեր գերիշխանությունը և հարկ տվեց։ Զմշկիկը չկարողացավ գրավել Տրիպոլիսը, իսկ Անտիոքը, մերժելով հանձնվել, խիստ պատժի ենթարկվեց կայսեր կողմից։

Աշոտ Թագավորին գրած իր նամակում Զմշկիկը մանրամասնորեն տեղեկացնում է այս դեպքերի մասին (Մատթեոս Ուռհայեցի, էջ 25—26)։

Բյուզանդական կայսրությունը չհասավ նպատակին, իր դեմ գտնելով Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆայության դիմադրությունը։ 1001 թվականին Վասիլ կայսեր և ալ-Հաքիմ խալիֆի միջև դաշնագիր կնքվեց, ըստ որի Անտիոքից, Հալեբից ու Ճայզարից բացի մյուս բոլոր գրավումները վերադարձվեցին խալիֆաթին։

Այս արշավանքը կապվում է հույների կողմից Տարոնի սեփականացմանը. Ասողիկն ասում է, թե ՆԺԵ թ. (966—967), Տարոնի Աշոտ իշխանի մահից հետո, հույները տիրեցին Տարոնին (Ասողիկ, էջ 187)։ Նույնը ավելի մանրամասն ավանդում է Կեդրենոսը 968 թվականի ներքև (II, էջ 375), թե՝ Բագրատ և Գրիգոր եղբայրները Տարոնը տվին կայսեր և փոխարենը ստացան մի բարեբեր տիրույթ։ Նիկեփորը հասավ մինչև Մանազկերտ։ Ավելի ուշ՝ 972—973 թվականներին

Մլեհ Դոմեստիկոսը արշավեց Համդանյանների իշխանության ներքո գտնվող վերին Միջագետքի վրա, ավարի մատնեց Ուռհան ու Նիզիբինը, և Ամիդի առաջ ընդհարվելով Մուսուլի Համդանյան էմիր Աբու Թաղլիբի եղբայր Աբուլ-Կասիմի հետ, գերի ընկավ (4 հուլիս, 973 թ.)։ Տե՛ս Ասողիկ, էջ 186, Ուռհայեցի, էջ 17 և հաջորդ։

Նիկեփորի՝ Ասորիքից հեռանալուց հետո Բուրցես և Փոկաս զորավարները, որոնք մնացել էին այնտեղ, կայսեր բացակայությամբ գրավեցին քաղաքը։ Բացի բյուզանդական աղբյուրներից տեսնել նաև Aboul Faradj, Chronique arabe, էջ 205։ Ասողիկը դեպքը դնում է ՆԺԸ (969) թվականի տակ (էջ 183)։

13. Սայաֆադդաուլա՝ Աբուլ-Հասան Ալին, Համդանյան դինաստիայից, եղբայրն էր Մուսուլի էմիր Նասիր ադ-Դաուլայի, որից 934 թվականին ավատ ստացավ Դիարբեքիրը և Մուֆարղինը, իսկ 944 թվականին՝ Հալեբը։ Նա եգիպտացիներից գրավեց Հեմսը և Ասորիքի մի մասը։ Մի շարք արշավանքներ կատարեց հույների դեմ՝ սկզբում հաջողություններ ունենալով, բայց 962 թվականին կորցրեց Անարզաբան, 965 թվականին՝ Միսին ու Տարսոնը, 966 թվականին՝ Անտիոքը։ Մեռավ հաջորդ տարին՝ 967 թվականին։ Նրա օրով Հալեբում ծաղկեց գրականությունը։

Հայ պատմիչները նույնպես հիշատակում են նրա անունը։ Նա էր, որ ՆԸ թվին (959—960) պարտվեց Աշոտ III Թագավորից։ «Յայսմ ամի կոտորեցին զօրքն Հայոց զՀամտուն զօրապետն տաճկաց» (Ուռհ. էջ 331)։

14. Համար կամ Համա։ Մեր պատմիչներից ոմանք կոչում են Եմաթ, որը նույն հնչումով հիշատակվում է Աստվածաշնչի մեջ։ Սելևկյանների ժամանակ կոչվեց Եպիփանիա, ի պատիվ Անտիոքոս Եպիփանի։ Գտնվում է Որոնտեսի հարավակողմում, արևելյան ափի վրա, ամուր քաղաք է, կառուցված բլրի վրա, շրջապատված է պարսպով, ունի ղմայլելի պարտեզներ և օժտված է բնական գեղեցկություններով։ Մուսուլմանական ուժեղ իշխանության կենտրոնը եղավ։

15. Հեմս, կամ Համս, կամ Եմեսիա։ Որոնտեսի արևելյան ափի վրա՝ Տրիպոլսից 63 մղոնով դեպի հյուսիս-արևելք։ Նշանավոր էր միջնաբերդը. քաղաքը շրջապատված էր պարսպով և ուներ վեց դուռ։ Հռոմայեցիների ժամանակ ռազմական և վարչական կենտրոն էր։ Արաբները գրավեցին և տիրեցին մինչև 1098 թվականը, այնուհետև խաչակիրները գրավեցին և պահեցին մինչև 1187 թվականը։ Սալահադդինը նրա հին տաճարը վերածեց միջնաբերդի։

16. Իշխում էր Որոնտեսի ձախ ափի վրա, Յակուբիե և Գենևայե հայաբնակ վայրերի մոտերքում։

17. Եփրատամերձ քաղաքների կառավարիչ Մանիաքեսը, օգտվելով այդ շրջանի արաբ ցեղախմբերի անմիաբանությունից, ծրագրեց գրավել Եդեսիան։ Քաղաքի հրամանատարն էր Սալմանը, որը Մուֆարղինի տիրոջ՝ Մրվանյան Նասրադդաուլայի կողմից էր նշանակված։ Նա կաշառվելով, հույներին հանձնեց քաղաքի երդ բերդերը։ Երբ Իբն Մրվանը լսեց դրա մասին, իր գնդերով շտապեց այնտեղ, բայց չկարողացավ վերագրավել քաղաքը (Ուռհայեցի, էջ 65 և հաջորդը. Լաստիվերտցի, էջ 33—34. Աբուլֆարաջ, Chronique arabe, էջ 225)։

18. Կոստանդնուպոլսի մզկիթի մեջ Տուղրիլ բեկի անվամբ կատարված աղոթքի մասին վկայում է նաև Իբն Խալիքանը («Վաֆայաթ ալ-Այան», բնագիր, II հատ., էջ 441)։

Եգիպտոսի խալիֆի ներկայացուցիչը բողոք է բարձրացնում այդ առթիվ, որովհետև դրանով կայսրության կողմից ճանաչվում էր Եգիպտոսի մրցակից Բաղդադի խալիֆի հեղինակությունը։ Խալիֆի անվան հիշատակությունից հետո հիշվում էր

նաև սուլթանի անունը։ Ըստ արաբական աղբյուրների, Կ. Պոլսի մզկիթը կառուցվել է VIII դարի սկզբում, Մասլամայի արշավանքի ժամանակ։

19. Մանազկերտի պաշտպանության մանրամասնությունները տալիս է Ուռհայեցին (տե՛ս էջ 140—145)։

Մինչև այդ ժամանակ Տուղրիլի գրավումները ասպատակություններ էին։ Սելջուկները չէին կարող մի ամուր վայր գրավել և հաստատվել այնտեղ, բայց Բյուզանդիայի ներքին կռիվները թուլացրել էին կայսրության ռազմական կարողությունը, նպաստելով սելջուկների ձեռնարկներին։ Միքայել VI Ստրատեոստիկոսի և Իսահակ Կոմնենոսի անկարողության հետևանքով սելջուկյան հրոսակները ավերեցին Կապադովկիան և 1059 թվականին գրավեցին Սեբաստիան ու Մալաթիան։

20. Ալ-Կայիմ խալիֆի մոր հայ լինելու մասին վկայում է նաև Իբն ալ-Վարդի պատմիչը, իսկ ալ-Դիմիշկին գրում է. «Ալ-Կայիմ խալիֆի մայրը հայուհի էր և կոչվում էր Բադրալ-Դուջա, կամ Կաթր ան-Նադա» (Քիթաբ ախբար-ուլ-Դուվալ, էջ 172)։ Կաթր ան-Նադա նշանակում է Շողակաթ։

21. Բադր ալ-Ջամալին ծագումով հայ էր, հավանորեն Վերին Ասորիքում հաստատված հայ գաղութից կամ Եդեսիայից (Եդեսիան, ըստ Իբն ալ-Աթիր պատմիչի վկայության, այդ ժամանակ, ամբողջովին հայերով էր բնակեցված)։

Հայտնի է, որ նա սկզբում Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆի կողմից կառավարիչ էր կարգվել Ասորիքում։ Փոքր էմիրները, որոնք կենտրոնական իշխանության դեմ դավադրություններ էին կազմակերպում, դաշնակցելով Բադր ալ-Ջամալու քաղաքականությունից դժգոհ զինական միավորների հետ, 1063 թվականին Դամասկոսում ապստամբեցին նրա դեմ։ Նա ստիպված եղավ հեռանալ պաշտոնից։ 1066 թվականին վերադարձավ և Եգիպտոսի խալիֆի անունից գրավեց քաղաքը։ Կրկին իր դեմ դավադրություն կազմակերպվեց, և ստիպված էր երկրորդ անգամ հեռանալ քաղաքից։ Դրանից հետո նա կազմեց հայ զինվորներից բաղկացած իր անձնական զորագունդը՝ մի բանակ, որի միջոցով 1085 թվականին տիրացավ Եգիպտոսի իշխանությանը։ Այդ բանակի ուժով էր, որ XI և XII դարերում Եգիպտոսի հայ վեզիրները հաստատեցին իրենց իշխանությունը և նպաստեցին հայկական գաղութի հաստատմանը։ Բադրին հաջորդեց իր որդին՝ Աբուլ-Կասիմ Շահնշահ ալ-Աֆդալը։

22. Բյուզանդիայի Ռոմանոս Դիոժեն կայսեր (տեքստում՝ Արմանուս) պարտությունը Մանազկերտում պատմիչների կողմից իրավացիորեն նկատված է իբրև Բյուզանդիայի մեծագույն պարտություններից մեկը։ Այդ պարտության հետևանքով Փոքր Ասիայի դռները բացվեցին սելջուկ թուրքերի առաջ, և նրանց զորագնդերը, որ մինչ այդ միայն ասպատակության նպատակով էին ոտք դնում Բյուզանդիայի հողի վրա, այնուհետև հաստատապես սկսեցին տեղավորվել Հայաստանի, Անատոլիայի և Ասորիքի դավառներում։

Մեր պատմիչները շատ համառոտակի են ներկայացրել այդ աղետալի դեպքը. առանց խորհրդածելու նրա ունեցած ահավոր հետևանքների վրա։ Ուռհայեցին գրում է. «Եւ իջեալ ի վերայ Մանծկերտոյ, եւ առ ի չգոյէ պահապան քաղաքին՝ յաւուր միում առեալ զքաղաքն Մանծկերտ, վասն զի փախեան Հոռոմոց պահապանքն» (էջ 194)։ Գանձակեցին գրում է. «Եւ յութերորդ ամի իշխանութեան նորա, ել Դիուժեն բազում զօրօք ի Պարս ի պատերազմ եկն ի Մանազկերտ և առ զնա, զոր լուեալ բռնաւորին Ալփասլանայ՝ եկն ընդ առաջ եւ եղեւ սաստիկ պատերազմ, և պարտեցաւ Դիուժենն և ըմբռնեցաւ ի նմանէ, և հարկ եդեալ ի վերայ նորա՝ եթող» (էջ 97)։ Նույն բառերով է արտահայտվում նաև Սամուել Անեցին (էջ 14)։ Վարդանը

գրում է. «Եւ չոգաւ ի Մանծկերտ և առ զնա, և դարձաւ սուլտանն ի վերայ նորա և ենար զնա յոյժ, մինչև ըմբռնեցաւ ի նմանէ, որ զի թէպէտ և արծակեաց ողորմութեամբ, այլ ոչ եղև ընկալեալ յազգէն իւրմէ» (էջ 102)։ Միքայել Ասորու հայերեն թարգմանության մեջ ասված է. «Եւ հարան Յոյնք յԱլբասլամայ և ըմբռնեցաւ Դեոժաննն» (էջ 398)։ Սմբատը գրում է. «ՇԺԶ յայսմ ամի շարժեալ Աբասլան սուլտանն՝ ահագին զօրօք զայր հասանէր ի վերայ քաղաքին Մանծկերտոյ և չկայր պահօղ։ Նա ի մէկ օրն էառ զնա և կոտորեաց զամէնն, վասն առաջին հայհոյութեան եղբօրն իւր Տօղրիլ սուլտընոյ» (էջ 69)։

Այս պարտության պատճառը գլխավորապես հունական բանակի փախուստն էր, որը նշել են ուրիշ բոլոր պատմիչները։ Խաչակրաց պատմիչ Տիրացին «L'Histoire d'Eracles»-ի մեջ գրում է. «Հույները այնքան խուճապով և տգեղ կերպով փախուստ տվեցին, որ ոչ ոք չէր համարձակվում հետ դառնալ»։ Իսկ հույն կայսեր հանդեպ Ալփասլանի վերաբերմունքի մասին Լաստիվերտցին գրում է. «Կապանօք առաջի իւր յոտին կացուցեալ կայր իբրև զմի ի ծառայից իւրոց» (էջ 134)։ Այդպիսի նվաստացուցիչ վերաբերմունքի մասին ավելի հստակ գրում է Տիրացին, թե «Բելֆեղը (Աբուլ-Ֆաթհ Ալփասլան) իր առաջ բերել տվեց կայսրին, որը գերի էր ընկել, նստեց իր գահի վրա և իր ոտը դրեց կայսեր վզին որպես պատվանդանի»։

23. Ըստ Ուռհայեցու Փիլառտոսը, որը իշխում էր Անտիոքում, գնացել էր Ուռհա (և ոչ թե Բյուզանդիա)։ Ուռհայեցու ավանդածից հետևում է, որ տեղացի բնակիչները, «Պէ,ետիկ» կոչված, քաղաքի հանձնումի մեջ մեծ դեր ունեցան (Ուռհ., էջ 269 և հաջորդ)։ Ըստ բյուզանդական աղբյուրների, Փիլառտոսի որդին էր, որ Նրա դեմ դավելով գնաց Նիկիա, համոզեց Սուլեյմանին՝ գրավելու Անտիոքը. Սուլեյմանը գաղտնորեն ճանապարհվելով, անակնկալ կերպով հասավ Անտիոք և գրավեց այն (Le beau, XV, livre LXXXIi, 185, Միք. Ասորի, էջ 398, Սամ. Անեցի, էջ 117)։ Հեթումի ժամանակագրությունը այդ գրավումը սխալմամբ դնում է ՇԻԹ (1080) թվականի տակ (Մանր ժամանակագրություններ, էջ 74)։

Գրավումն իսկապես կատարվել է 1085 թվականի հունվար-փետրվար ամիսներին։ Թե ինչպես էր Փիլառտոսը տիրել Անտիոքին, տե՛ս Վարդան էջ 104։

24. Մելիք Շահի մահից հետո նրա եղբայրը՝ Թաջադ-Դաուլա Տուտուշը, որը ավատ էր ստացել Ասորիքը և այնտեղ ամրացրել իր դիրքը, փորձեց օգտվել սուլթանի մահով ստեղծված շփոթ վիճակից ու հավաքեց իր ուժերը՝ սուլթանական գահը գրավելու համար։ Նրան միացան Հալեբի իշխան Կասիմ ադ-Դավլա Ակսոնկուրը, Անտիոքի իշխան Յաղի Սիանը և Ուռհայի Պուզան էմիրը (հմմտ. Ուռհայեցի, էջ 296, Վարդան, էջ 108), ինչպես նաև Հյուսիսային Միջագետքի էմիրները։ Նա գրավեց Նիզիբինը, որը Շարաֆադդաուլա Մուսլիմ Օքայլին էր պատկանում։ Մուսուլի իշխան Իբրահիմը չուզեց ենթարկվել Տուտուշին, և երկուսի միջև բախումը տեղի ունեցավ 1093 թվականի ապրիլի սկզբին։ Տուտուշը հաղթանակ տանելով տիրացավ Մուսուլին։ Հերմես գետի ափին տեղի ունեցած այս ճակատամարտին մասնակցում էին նաև հայերը՝ Տուտուշի կողմից («իսկ զօրքն հայոց, որ էին ընդ սուլտանին, արարին կատարածս զՏաճիկն իբրև բիւր մի», Ուռհ., էջ 297)։ Այնուհետև Տուտուշը Մրվանյաններից գրավեց Դիարբեքիրը և առաջացավ Ադրբեջանի վրա։ Այդ շարժումներից զգուշ, Բարքիարուքը ելավ նրա դեմ. այդ միջոցին էր, որ Ակ-Սոնկուրն ու Պուզանը լքեցին Տուտուշին և միացան Բարքիարուքին (հմմտ. Ուռհ., էջ 295, Վարդան, էջ 108, Կ. Գանձակեցի, էջ 98)։

25. Տուտուշի անհաջողության մասին ընդդեմ Բարքիարուքի՝ տե՛ս Ուռհայեցի, էջ 298 և հաջորդը։

26. Մոկտադի բի-Ամր Ալլահը, Աբբասյան 46-րդ խալիֆը, ծնվել է Բաղդադում, 1055 թվականին, գահ բարձրացել՝ 1075 թվականին։ Նա ենթարկվեց սելջուկների ազդեցությանը, նրա ծառայության մեջ էին Մելիքշահ սուլթանը և նրա տեղակալ Ախսիսը։ Այս վերջինը Ֆաթիմյաններից գրավեց Պաղեստինն ու Ասորիքը։

27. Ուռհայի գրավումը տեղի ունեցավ Ակ-Սոնկուրի և Պուզանի միացյալ ուժերի դեմ Տուտուշի տարած հաղթանակի հետևանքով։ Տուտուշը Ուռհայում նշանակեց հայ կառավարիչ. «Կացուցանէր քաղաքապետ զիշխանն Հոռոմոց զԹորոս որ ասէին Հեթմայ որդի» (Ուռհ., էջ 300)։

Ըստ Ուռհայեցու, երբ Տուտուշը պարտվելով Բարքիարուքից, սպանվեց, Թորոս Կուրապաղատը տիրացավ Ուռհային՝ հենվելով Տուտուշի կողմից նշանակված հայկական զորագնդի վրա (Ուռ., էջ 302)։

28. Բադր ալ-Ջամալին մեռավ խոր ծերության մեջ՝ երբ 80 տարեկան էր, ավելի քան քսան տարի գերագույն իշխանություն վարելուց հետո։ Արաբ պատմագիրները նրա մահվան տարբեր թվականներ են տալիս։ Մակրիզին գրում է, թե նա մահացավ 487 թվականի ռաբի ախար ամսին կամ ըստ ոմանց՝ ջումադալ-ուլա ամսին (Խիթաթ., II, էջ 213)։

29. Խաչակիրները Կ. Պոլսից անցնելուց հետո 1097 թվականի հուլիսի 1-ին Դորիլեումում հաղթեցին Կլըչ Արսլանին և գրավեցին Նիկիան։ Այդ և հաջորդ հաղթանակները նրանց առաջ ճանապարհ բաց արեցին, և Կլըչ Արսլանը չկարողացավ պաշտպանել Իկոնիան (Gesta Francorum)։ Խրոնիկոսը պատմում է Փոքր Ասիայից նրանց անցնելու ժամանակ հայերի ցույց տված աջակցության մասին։

30. Անտիոքի գրավման գործում, ըստ պատմական ավանդությունների, կարևոր դեր է կատարել Ֆիրուզ (Հովհաննես Փիլոս) անունով մի հայ զինվորական, որը քաղաքի պարսպի «Երկու քույրեր» կոչված աշտարակի հրամանատարն էր։ Նա աշտարակն հանձնեց Բոհեմոնդին։ Գուլիելմոս Տյուրացին իր խրոնիկայում տալիս է դեպքի մանրամասնությունները։ Հանձնումը տեղի ունեցավ, ըստ նրա, հունիս ամսի 2-ի լույս 3-ի գիշերը։ Հայ պահակապետի այս արարքի մասին խոսում է նաև Աննա Կոմնենոսը (Alexiade III, էջ 19—21)։

Միքայել Ասորին գրում է. «Ազուսիանը Անտիոքից դուրս եկավ Հալեբ փախչելու համար։ Մի քանի հայեր ճանապարհի վրա հարձակվեցին, նրա գլուխը կտրեցին և ֆրանկներին տարան։ Ուրիշ երկու հայ եղբայրներ, որոնք աշտարակների մեջ պահակ էին դրված, իջան գիշեր ժամանակ և Բոհեմոնդի հետ համաձայնվելով քաղաքը նրան հանձնեցին (Michel le Syrien, XV, ch. VII, էջ 183 նաև Միխ. Ասորու հայեր. թարգմ., էջ 404)։

Քամալադդին պատմիչը «Թարիխ Հալաբ» գրքում գրում է։ «Անտիոքի կառավարիչ Յաղի Սիանն իր անգթություններով և բռնություններով ատելի էր դարձել։ Բնակիչներից ոմանք քաղաքը մատնեցին ֆրանկներին, և Յաղի Սիանի փախչելու ժամանակ հայերը նրան սպանեցին»։

Ուռհայեցին գրում է. «Մի ոմն յիշխանաց քաղաքի հանեալ ի գիշերի մարդ առ Պեմունդն...և գաղտնաբար ի գիշերի տայր զԱնտիոք քաղաքն ի ձեռն Պեմնդին» (Ուռհ., էջ 321)։ Այնուհետև նա գրում է. «Ամիրայն Աղիսիան փախեաւ ի քաղաքէն և սպանաւ ի գեղացեացն մանգաղաւ հատեալ զգլուխ նորա», «Եւ արդ այսպիսի օրինակաւ առաւ քաղաքն Անտիոք, զոր ի Հայոց ազգէն առեալ եղև» (Ուռհ.,

նույն)։ Ակնարկում է Փիլառտոսից դրավված լինելը։ Անտիոքի պաշարումը տևեց 7 ամիս (1097 հոկտ. 21—1098 հունիս 3)։

31. Այս դեպքի մասին Ուռհայեցին գրում է. «Յայսմ ամի (1100—1101) գայր բազում զօրօք ամիրայն Պարսից որ ասէին Դանիշման, որ էր տէր Սեաստու և ամենայն Հոռոմոց աշխարհին... և խաղացեալ բազմութեամբ զօրօք և եկեալ ի վերայ Մելտենոյ քաղաքին և տայր սաստիկ պատերազմ ի վերայ նորա։ ...Եւ յայնժամ Պեմունդն և Ռիչարդն յարուցեալ զօրօք դան ի վերայ Դանիշմանին...։ Եւ ահա գայր Պեմունդն և Ռիչարդն անմտաբար և ամենայն անպատրաստութեամբ լցեալք էին, և զօրք իւրեանց դատարկ թափուրք ի սարուց պատերազմէ, և գային պաճուճեալք՝ որպէս և կանայք զհետ մեռելոյ, վասն զի զսարք պատերազմին պաշտօնեայք նոցա ունէին, և պատերազմողք Ունայնացեալք կային որպէս զգերեալս և յանկարծակի հեղան զօրք Դանիշմանին ի վերայ ֆրանկ զօրացն, և եղև պատերազմ սաստիկ յայնմ աւուր, և եղև կոտորումն ամենայն զօրացն ֆրանկաց և Հայոց, և կալան զՊեմունդն և զՌիչարդն ծառայ» (էջ 333—334)։

1103 թվականին Բոհեմունդ կոմսը հարյուր հազար դահեկան փրկանքով ազատվեց գերությունից՝ Գող Վասիլի միջնորդությամբ։

«Դանիշմանդի զավակների իշխանություն» կոչվող դինաստիան կազմվեց Կապադովկիայի մեջ՝ Կլիչ Արսլանի սուլթանության կողքին։ Նրա երկիրն էին կազմում Կեսարիան, Մալաթիան և Սեբաստիան։ Դինաստիայի հիմնադիրն էր Գումուշտիկինը (որ նշանակում է իր կշռով արծաթի արժեք ունեցող մարտիկ)։ Մատթեոս Ուռհայեցին նրան անվանում է Գոմեշ Տիկին։ Այդ դինաստիան տևեց մինչև 1165 թվականը։

Պատմիչները վկայում են, թե այդ իշխանության հիմնադիրը հայ էր։ «Ի հինգ հարիւր քառասուն և ինն թուին Դանըշման տէրն Սեբաստիոյ, զորմէ ասեն յազգէ Հայոց, եկեալ ի վերայ Մելտինոյ և Պեմունդ և Ռաչարդ, որ կային յՈւռհա՝ եկին ընդդէմ նորա և ըմբռնեցան ի նմանէ և եղան ի բանտի» (Վարդան բարձրաբերդցի, Պատմ. տիեզ., էջ 148)։

32. Սուքման ալ-Կոթբի, տե՛ս ներքևում, ծան. 35։

33. Մրվանյաններ. տե՛ս ներքևում, ծան. 42։

34. Գող Վասիլը մեկն էր այն դինվորականներից, որոնք Վահրամ Փիլառտոսի և մյուսների նման, օգտվելով բյուզանդական դիրքերի լքումից և հենվելով հայ բնակչության վրա, Հյուսիսային Միջագետքում, Կիլիկիայում և Վերին Ասորիքում X և XI դարերում հիմնեցին իրենց իշխանությունները։

Արաբ պատմիչների մոտ մեծ անուն ունի, նաև ճանաչված է دواسيل Քովասիլ անվամբ։ Իբն ալ-Աթիրն ասում է. «Դորաբի տերը, որն իր շուրջ հավաքել էր մեծ թվով դավանափոխ մուսուլմաններ և ուրիշ կռվողներ, տերն էր Ռաբան. Քեյսում և այլ բերդերի՝ Հալեբից դեպի հյուսիս»։

«ՌԾԺԲ (1112) հանգեալ ի Քրիստոս բարեպաշտ իշխանն Գող Վասիլն՝ տէրն Քեսնոյ, Բեհեսնոյ, Մարշայ, Ռապնայ, Փարզմանայ, Հռոմկլային, Մասրոյ և այլ գաւառաց» (Սամուէլ Անեցի, էջ 122)։

«ՇԿԱ (1112—1113) Յայսմ ամի, յարեղ ամսոյ քսան և չորս մեռանի. մեծ իշխանն Հայոց որ կոչեցաւ Գող Վասիլ և եղև սուգ սաստիկ ամենայն տանն Հայոց, վասն զի առ նա էին ժողովեալ, մնացեալ զօրքն Հայոց և ամենայն զօրքն Բագրատունեաց և Պահլաւունեացն և որդիք թագաւորացն Հայոց հանդերձ ազատազունդ զօրօքն առ նա կային հանգուցեալ մեծաւ փառաւորութեամբ... և այլն» (Ուռհայեցի, էջ 404)։

«ՇԿԱ. մեռավ մեծ իշխանն Հայոց և տէրն Հռոմկլային Գող Վասիլն, և եղև սուգ մեծ ամենայն Հայոց, զի մնացեալ իշխանքն Հայոց առ նա էին ժողովեալ և աթոռ հայրապետութեան անդ էր» (Սմբատ Գունդստաբլ, էջ 77—78)։

Գող Վասիլը մահացավ առանց զավակ թողնելու։ Նրա իշխանությունը փոխանցվեց Կամսարական իշխան Տղա Վասիլին, որն իր որդեգիրն էր։

35. Սուկման որդի Արտուկի Արտուկյան կամ Օրտուկյան դինաստիայի հիմնադիրն է։ Արտուկը որդին էր Ախսիսի, որը Մելիքշահի արշավանքներին մասնակցող սելջուկ պետ էր։ Հետո նա մտավ ծառայության Մելիքշահի եղբոր՝ Թաչադդաուլա Տուտուշի, Հալեբի սելջուկյան իշխանի մոտ, որը նրան իբրև ավատ տվեց Երուսաղեմը։ «Այս Ախսիս Թուրք էր և այր քաջ և պատերազմող... և սա էառ ի Մսրայ զսուրբ քաղաքն Երուսաղէմ» (Մ. Ուռհայեցի, էջ 280)։ «Այն որ ունէր յառաջագոյն զսուրբ քաղաքն Երուսաղէմ, որ և յայտնի երեւի նշան Արդուխին ի սուրբ Յարութեանն աստուծոյ, զի երեք նետք հարեալ, կայ նորա ի ձեղունսն եկեղեցւոյն մինչև ցայսօր» (Ուռհայեցի, էջ 369)։ Բայց 1096 թ. հալազզի Բադր ալ-Ջամալին նրան վռնդեց Երուսաղեմից։ Նրա երկու որդիները՝ Սոկմանն ու Էլղազին իրենց զինվորներով նահանջեցին դեպի Միջագետք։ Սուկմանը 1101 թվականին հիմնեց մի փոքր իշխանություն Հիսն-Քեֆում, որը տևեց մինչև 1231 թվականը, երբ Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ալ-Քամիլը գրավեց Ամիդը և գահազուրկ արեց այդ դինաստիայի վերջին իշխանին՝ Մալիք Մասուդին։ Էլղազին իր եղբոր մահից հետո 1104 թվականին իշխեց Մարտին քաղաքին և նրա շրջապատին։ Այդ իշխանությունը տևեց բավականին երկար, մինչև 1328 թվականը։

1100 թվականին Սուկման ալ-Կոտբին, որն իշխում էր Մարանդում, գրավեց Ապուհունիքի և Տարոնի նահանգներն էլ, ինչպես և Խլաթը, Մանազկերտը, Արճեշը ու այլ քաղաքներ և ստացավ Շահարմեն (պարսկերեն՝ «թագավոր հայոց») տիտղոսը։ Շահարմենների դինաստիան հիմնվեց հիջրի 506 թվականին (1112)։ Այդ դինաստիայի վերջին ներկայացուցիչը եղավ Բիլբան Իզադդինը՝ հիջրի 604 թվականին (1208)։

Սուկման ալ-Կոթբին մահացավ հետևյալ պարագաներում։

1109 թվականին Մելիքշահի որդին սուլթան Մուհամմադը, որը Պարսկաստանի սելջուկյան կայսրության ղեկավարն էր, մի մեծ բանակ կազմակերպեց ֆրանկների դեմ ուղարկելու համար։ Նրան միացան Խլաթի ու Մուֆարղինի տեր Սուկման ալ-Կոթբին և Մարտինի ու Դիարբեքիրի տեր Էլղազին, նպատակ ունենալով գրավել Եդեսիան։ Այդ արշավանքի ժամանակ էր, որ Սուկման ալ-Կոթբին ծանր հիվանդանալով մեռավ։ Երբ նրա դագաղը փոխադրում էին իր երկիրը, ճանապարհին հարձակում կրեցին Մարտինի էմիր Էլղազի Օրտուքյանի կողմից, որը ուզում էր տիրանալ հանգուցյալի գույքերին։

36. Վրացի թագավոր Դավիթ II անձամբ հաղթեց Մելիքշահ սուլթանին և վերագրավեց Թիֆլիս մայրաքաղաքը 1122 թվականին։ Նրանից առաջ քաղաքը երկար ժամանակ մնացել էր արաբ էմիրների ձեռքում։

Մատթեոս Ուռհայեցին ՇՀ (1121) թվականի դիմաց գրում է. «Յայսմ ամի էառ Դաւիթ թագաւորն զքաղաք Տփղիս ի Պարսից» (էջ 439)։

Օրբելյանը գրում է. «Եւ արդ յետ բազում ժամանակաց ի թագաւորութեանն Դաւիթ հզօրի՝ որդւոյ Գէորգիի, մեծ սպասալարն Օրբելեան Իւանէ յոյժ արիացեալ ընդարձակեցոյց զսահմանն Վրաց պատերազմեալ ընդ Տաճկաստան. զի առին զՏփղիս ի Տաճկէն և զՏավուշ, զԳագ, զՏէրունականն, զԼաւռէ և զԱնի ի 572 թուականին» (էջ 379)։

37. Բաղակը Մալաթիայի իշխանի օժանդակությամբ հաղթել էր Կամախի և շրջակայքի իշխան Մանգուչակին (Մանուչե՝ Շեդդադյան ցեղից) և գրավել էր նրա կալվածքները, որոնց մեջ նաև Հիսն-Զիադը կամ Խարբերդը։ Կառկառի հայ իշխան Միքայելը մեծ նեղություն էր տալիս Բաղակին, բայց ի վերջո նա ստիպվեց Կառկառը հանձնել Ջոսլին թագավորին։ Ջոսլինը իր բանակով եկավ Բաղակի վրա, և Սանջա գետի եզերքին դարանակալ սպասող սելջուկները նրան գերի վերցրին իր զինակիցներով, Գալերանը և այլն (տե՛ս Michel le Syrien, XV, ch. XIII, էջ 210)։ Բաղակը գրավեց Հիսն Մանսուրը և Կառկառը։

Խարբերդից Ջոսլինին ազատելու փորձեր կատարվեցին անակնկալ հարձակումներով (տե՛ս Ուռհայեցի, էջ 443 և հաջորդը)։ Իրականում Ջոսլինը և Պաղտին թագավորը, որը Շնջեռ կամրջի մոտ բախումի ժամանակ նույնպես գերի էր վերցվել, չազատվեցին հարձակումի հետևանքով։ Բաղակի մահից հետո, երբ Թիմուրտաշը տիրացավ Խարբերդին, փրկանքով ազատ արձակեց թագավորին և Ջոսլինին։

38. Աբու Ալի Քեղեֆաթը ալ Աֆդալ վեզիրի որդին է. վերջինս հաջորդել էր իր հորը՝ Բադր ալ Ջամալուն։ Աֆդալի սպանումից հետո, 1121 թվականին, ալ Ամիր խալիֆը բանտարկել էր նրա ընտանիքի անդամներին, բայց երբ 1130 թվականին զինվորական ապստամբության ժամանակ Ամիրը սպանվեց, Աբու Ալին դուրս եկավ բանտից և բանտարկեց հաջորդ խալիֆ ալ-Հաֆիզին և բացարձակ տեր դարձավ։ Նա սպանվեց, ըստ Մակրիզու տեղեկության, հիջրի 526 թվականի մոհառամ ամսի 16-ին, երեքշաբթի օրը (1131 դեկտ. 8) (Խիթաթ., II, էջ 250)։

39. Յանեսը պալատի վերակացուն էր և մասնակցեց Աբու Ալիի սպանությանը։ Մակրիզին պատմում է, որ խալիֆը վարձատրեց նրան վեզիրության պաշտոնով։ Բայց Յանեսի դեմ էլ կասկածներ ունենալով, մի բժշկի միջոցով թունավորել տվեց նրան 1132 թվականին, 9 ամիս և մի քանի օր միայն վեզիրության պաշտոն վարելուց հետո (Մակրիզի, Խիթաթ, III, էջ 26—27)։

10. Վահրամ Պահլավունի, بهرام الارمنى = Բահրամ ալ-Արմանի։ Պահլավունյաց ցեղից, սերած է Գրիգոր Մագիստրոսից (տե՛ս Ճյուղագրությունը՝ Ալիշան, «Շնորհալի և պարագայ իւր»)։

Իր հայրենի կալվածից՝ Բջնուց հեռանալով, Գրիգոր Մագիստրոսը, որպես դուքս, ստացավ Միջագետքի կառավարչությունը։ Նրա ժառանգական կարգը շարունակվեց իգական ճյուղով։ Մագիստրոսի չորս թոռները ժառանգեցին Ծովքի իրենց հայրենական իշխանությունը, Անդրանիկը՝ Ապիրատը մնաց հայրենի կալվածի վրա, Գրիգորը դարձավ Եգիպտոսի հայոց առաջնորդ (Բադր ալ-Ջամալու օրով), իսկ Վահրամն ու Վասակը մտան Եգիպտոս արշավող հայկական զորագնդերի շարքը։ Ներսես Շնորհալին այս երկու հորեղբայրների մասին հետևյալն է գրում իր «Վիպասանության» մեջ.

> «Ըզ համազգիս ըզկնի ձրգեալ
> Զարի եղբարս իւր քաջացեալ,
> Որոյ Վահրամ վերաձայնեալ,
> Միւսոյն Վասակ անուանադրեալ,
> Որք վեհագոյն փառս ընկալեալ
> Եւ մեծարգի պատւոյ հասեալ
> Ըզպատերազմ ազանց վանեալ,
> Հակառակաց յաղթող գտեալ
> Վասն այսորիկ շքեղացեալ
> Եւ աշխարհին նոցունց տիրեալ»։

Վահրամը վեզիրության պաշտոն ստանձնեց 1135 թվականի ապրիլ ամսին և Ալ-Հաֆիզ խալիֆի կողմից ստացավ «Թաջադդաուլա» (պետության թագ) տիտղոսը։ Վահրամին հաջողվեց կարգ ու կանոն հաստատել իշխանության մեջ, բայց շուտով նրա դեմ դժգոհություններ ծագեցին, որի հետևանքով նա պաշտոնանկ եղավ՝ կարճատև իշխանությունից հետո։

41. Բանու Մրվանները Հումայդա ցեղին պատկանող քրդեր էին, որոնք Համդանի ցեղի արաբներից գրավեցին Դիարբեքիրը, ինչպես նաև Մուֆարղինը, Հիսն Քեյֆը և ուրիշ քաղաքներ։ Նրանք մի ժամանակ տիրեցին նաև Մանազկերտի, Խլաթի, Արճեշի և Վանի գավառներին։ Հայերը նրանց տվեցին Ապահունյաց ամիրա տիտղոսը (տե՛ս Ասողիկ, էջ 247), որովհետև նրանք իրենց կենտրոնը հաստատել էին Ապահունյաց նահանգում։

Այդ դինաստիան վերջ գտավ 1085 թվականին։ Մելիքշահի վեզիր ու նրա բանակների հրամանատար Ֆախրադդաուլան գրավեց Ամիդը, Մուֆարղինը, Խլաթը, Ջազիրա իբն Օմարը և գահընկեց արեց դինաստիայի վերջին իշխան Մանսուրին։ Մի քանի փոքր իշխաններ նույն ցեղից, ըստ երևույթին, շարունակել են իշխել Ամիդի շրջակայքում, որովհետև Աբու-լ-Ֆիդան տեղեկացնում է, թե Հուսամադդին Տիմուրտաշը, Մարդինի Օրդուքյանների իշխանը, հիջրի 533 թվականին (1138—1139) գրավեց Մրվանյաններին պատկանող Հանախ (կամ Հաղախ) բերդը։

42. 1137 թվականին Բյուզանդիայի Հովհաննես II Կոմնենոս կայսեր արշավանքի մասին Միք. Ասորին ասում է, թե նա արշավեց Կիլիկիա՝ «Լևոն Հայի դեմ, գրավեց Տարսոնը, Ադանան, Մսիսը և մնացած երկրամասերը, Լևոնին և կնոջն ու երեխաներին ուղարկեց Կ. Պոլիս։ Այնուհետև կայսրը եկավ գրավելու Անտիոքը. Ջոսլինը համաձայնվեց նրա հետ՝ Անտիոքի առթիվ» (Michel le Syrien, XVI, ch. VII, էջ 245)։

Իր սեփականատիրական իրավունքները Անտիոքի նկատմամբ կայսրը ուզում էր իրականացնել, հենվելով խաչակիրների համաձնարարության վրա, որոնք այս քաղաքը թողնում էին կայսեր։ Հայոց Լևոն իշխանը հույներից գրավել էր Մսիսը, Ադանան և Տարսոնը, որոնք ետ վերցրեց կայսրը, բայց Անտիոքի Ռեմոնդ իշխանի հետ անհաջող կռիվներ ունեցավ։ Վեճը հարթվեց Եդեսիայի Ջոսլին II կոմսի միջնորդությամբ։ Այդ դեպքերի մասին տե՛ս Cinnamus, Migne, Patrologia, CXXXIII, էջ 126 և շար. Nicetas, Histoire de Jean Comnene, Migne, CXXXIX, էջ 346—348։ Գուլիելմոս Տյուրացի, XIV, 24, 30, Սմբատ Գունդստաբլ, էջ 89 և Վահրամ Ռաբունի։ Վարդանը (էջ 125) դնում է Հայոց 590 թվականի տակ (1141), նույնը նաև Սամ. Անեցին (էջ 130)։ Այս երկուսի տված թվականը չի համապատասխանում դեպքերի իրական թվականին։

Իբն ալ-Վարդի պատմիչը հիջրի 531 թվականին (1136—1137) գրում է. «Հաֆիզ խալիֆը պաշտոնազրկեց հայազգի քրիստոնյա վեզիր Վահրամին, որովհետև նա հայերին էր տալիս կարևոր պաշտոնները։ Վահրամը այնուհետև կրոնական կարգ մտավ»։

43. Աբուլ Ջուդ Իմադադդին Զանգի իբն Ակսոնկուրը Մուսուլի էմիրն ու Հալեբի աթաբեկն էր։ Սկզբում միջամտեց սելջուկյան դինաստիայի հաջորդության վեճերին, թեկնածուներից մեկի՝ Մասուդի կողմը բռնելով, և պարտվեց Տեկրիտի ճակատամարտում։ Իր կյանքը փրկվեց նույն քաղաքի կառավարիչ, ազգով քուրդ, Նաջմադդին Այուբի օգնությամբ։ Այս եղավ այն սերտ կապի պատճառը, որը միացրեց իրեն և իր որդի Նուրադդինին՝ Այուբի և նրա որդի Սալահադդինի հետ։ Զանգին

կարողացավ այդ տարիներին մի զորավոր բանակ կազմել և ննդություն պատճառել Ասորիքի խաչակիր իշխաններին։

Զանգին հավակնություն ուներ Ասորիքը գրավելու, բայց անկարող էր իրականացնել իր մտադրությունը, որովհետև Հովհաննես Կոմնենոս կայսրը, գրավելով Կիլիկիան 1137 թվականին հասել էր մինչև Հյուսիսային Ասորիք։ Երբ կայսերական վտանգը հեռացավ, Զանգին իր առաջին զոհը նկատեց Եդեսիան և գրավեց այն։

44. Ուռհայի գրավման թվականի հարցում տարաձայնություններ կան։ Գրիգոր Երեցը նշում է 1144 թվականի դեկտեմբերի 23-ին շաբաթ օրը, հուլյան տոմարով (էջ 469)։ Զամչյանը ավելացնում է՝ 15-րդ ժամին։ Իբն Խալլիկան ճշտում է. «539 թվականի ջումադալ ուլա ամսի 25-ին, շաբաթ օրը գրավվեց Ուռհան, որը պատկանում էր հայազգի Ջոսլինին» (Իբն Խալլիքան, հատ. 1, էջ 344)։ Այս թվականը՝ հուլյան տոմարով համընկնում է 1144 թվականի նոյեմբերի 23-ի, հինգշաբթի օրվան։ Իբն ալ-Աթիրը դեպքը դնում է նույն տարվա ջումադալ-ուխրա ամսի 16-ին, որը համընկնում է դեկտեմբեր ամսի 14-ին, հինգշաբթի օրը։

45. Արուճ կամ Սարուճ, سروج Եդեսիայից հյուսիս-արևմուտք մի հին քաղաք է, որը կոչվում էր Bathnae։ Խաչակրաց ժամանակագիրները կոչում են Sarugi կամ Sororgia։

46. Թալաի իբն Ռուզիք Աբուլ-Ղարատ ալ-Մալիք աս-Սալիհը, որ կրում էր «իսլամության ասպետ և հավատի պաշտպան» տիտղոսը, ծագումով հայ էր, ծնվել էր 1102 թվականին։ Նրա պապը Հայաստանից էր եկել Եգիպտոս Բաղր ալ-Ջամալու հետ։ Նա ունեցել էր բազմաթիվ զավակներ ու հետնորդներ և էմիրների շարքում գրավել էր նշանավոր տեղ։ Իբն Ռուզիքը փոքր տարիքից մտավ խալիֆի արքունիքը, այնտեղ ստացավ իր կրթությունը և վարեց վարչական ու զինվորական մի շարք պաշտոններ։ Նա դարձավ վեզիր ու այդ պաշտոնը վարեց ալ Ֆայեզ և ալ-Ադեդ խալիֆների օրոք։

Խաչակիրների դրդումով Եգիպտոսի մեջ Թալայու թշնամի էմիրները ըմբոստություններ առաջ բերին։ Նրանք դավադրություն կազմակերպեցին խալիֆի հորաքրոջ մասնակցությամբ և նրան սպանեցին։ Թալաին բանաստեղծ էր և քաջալերում էր գրականությունը։ Ալ-Իմադ պատմիչն ասում է. «Նրա մահից հետո առաքինությունները, տաղանդը և արժանիքները իրենց հարգը կորցրին, գրագետները արհամարհվեցին, գիտությունները անարգվեցին, Եգիպտոսի փառքը խավարեց և ամեն կողմից փորձանքներ տեղացին երկրի գլխին»։

Թալաին նշանավոր եղավ նաև իր կառուցել տված շենքերով։

47. Այդ հարձակման պատճառը հետևյալն էր։ Կըլըչ Արսլանը դաշինք էր կնքել Մանուել Կոմնենոս կայսեր հետ և մերժել ընդառաջ գնալ Նուրադդինի կոչին՝ միանալու մուսուլմանների զինակցությանը։ Ընդհակառակը, 1172—1173 թվականներին նա պայքար էր մղում հարևան դանիշմանների դեմ, ջանալով գրավել նրանց մայրաքաղաք Սեբաստիան։ Դանիշմանյան էմիր Զուլնունը, արդեն նախորդ տարին Դամասկոս գնալով, Նուրադդինից խնդրել էր միջամտել այդ հարցի կարգավորման համար։ Նուրադդինը Մլեհ իշխանի և հայ զորքերի օժանդակությամբ պատերազմ հայտարարեց սելջուկյան սուլթանի դեմ և Սեբաստիան վերադարձրեց դանիշմաններին։ Նրանից գրավեց նաև Մարաշը (Միքայել Ասորի, էջ 468)։

48. Ակ-Սոնկուր II Ահմադիլին նրանից առաջ մի շարք կռիվներ էր մղել Աթաբակ Բահլավան իբն Ելտկուզի, Ադրբեջանի տիրոջ դեմ։ Ահմադիլիների կամ Մահմեդիկների զինաստիան հիմնեց Վահսուդան Ռավադիի թոռը։ Դա սելջուկյան վասալ

իշխանություն էր, որը տարածված էր Սահանդ լեռան շուրջը, ընդգրկելով Մարաղան ու Թավրիզը։ Իբն ալ-Աթիրն ասում է (XI, 280), թե հիջրի 570 թվականին Բահլավանը պաշարեց Ռուինդուզն ու Մարաղան, որոնք Աք-Սոնկուրի որդի Ֆալաքադդինին էին պատկանում։ Հաշտությունը կնքվեց՝ Թավրիզը Ելտկուզյաններին հանձնելու գնով։

49. Մուստադի բի-Ամրալլահ Աբու Մուհամմադ Հասան, Աբբասյան դինաստիայի 52-րդ խալիֆը, որը ծնվել է Բաղդադում 1141 թվականին, իր հորը հաջորդեց Մուստանջիդ Բիլլահին. 1170 թվականին։

50. Խալիֆների և սուլթանների հարեմներում կային բազմաթիվ գերի հայ կանայք, որոնցից երկուսի մասին Աբու-լ-Ֆիդան հիշատակում է, թե խալիֆների մայր են եղել։

51. Կիլիկիայում այդ ժամանակ իշխում էր Ռուբենը, որը հաջորդել էր իր հորեղբայր Մլեհին։ Շեղվելով Մլեհի քաղաքականությունից, նա դաշնակցեց ֆրանկների հետ։ Այս կապակցությամբ 1180 թվականին Կըլըչ Արսլանը ասպատակեց Կիլիկիան (Տե՛ս Միք. Ասորի, էջ 487—488)։

Իբն Խալիքանը Սալահադդինի կենսագրության գլխում գրում է. «Այդ պահին հասավ հունական երկրների տիրոջ՝ Կըլըչ Արսլանի պատգամավորը, որը հաշտություն խնդրելով միաժամանակ գանգատվեց հայերի դեմ։ Կըլըչ Արսլանին օգնելու համար Սալահադդինը մտադրվեց արշավել Իբն Լևոնի երկրի վրա»։ «Դեպի վերոհիշյալ վայրը ճամփա ելնելով Սալահադդինը կանչել տվեց Հալեբի բանակը, որովհետև հաշտության պայմանագիրը տրամադրում էր, որ այդ բանակը կանչվելու դեպքում պետք է նրա հրամանին ենթարկվեր։ Մտնելով Իբն Լևոնի երկիրը, ճանապարհի վրա մի բերդ գրավեց, որը քանդեց, և քանի որ նրանից հաշտության խնդրանք կար, նա հաշտություն կնքեց և ետ վերադարձավ» (Վեֆայաթ, III, էջ 470)։

Այս մասին տեսնել նաև Իբն Շադդադի ծանոթագրությունների շարքում։

52. Քաղաք՝ Քեսունի հյուսիս-արևմտյան կողմում, մտնում էր Գող Վասիլի կալվածների մեջ։

53. Հուսամադդին Լուլու ալ Հաջիբ, ծագումով հայ էմիր, եգիպտական նավատորմի կազմակերպիչն ու հրամանատարն էր՝ Սալահադդինի ժամանակ։ Մեծ հեղինակություն ձեռք բերեց ֆրանկ ասպետների հարձակումից մարգարեի գերեզմանը փրկած լինելու համար։ Հիջրի 578 թվականին (1182—1183) Քարաքի իշխան Ռենո դը Շատիյոնը Կարմիր ծովի եզերքից արշավեց, նպատակ ունենալով Մուհամմադի գերեզմանը գրավել և նրա մարմինը փոխադրել Եվրոպա։ Լուլուի հրամանի տակ եգիպտական նավատորմը հետապնդեց նրան ու Մեդինայից մեկ օրվա հեռավորության վրա հանդիպելով մեծ ջարդ տվեց արշավողներին։

Լուլուն մահացավ 1200 թվականին։ Նրա մասին արաբ պատմիչները մեծ գովեստով են խոսել։

54. Սուքմանյան դինաստիան ընդհատվեց ժառանգորդների սպառված լինելով և կողմնակի գծով գահի հավակնորդներ չլինելու հետևանքով. Բեկտեմուր ստրուկը, որ Սուկման II խնամակալն էր, օգտվեց իր առանձնաշնորհյալ դիրքից ու տիրացավ Խլաթի իշխանությանը։ Նախորդների նման Բեկտեմուրն էլ շարունակեց կոչվել Շահի Արմեն։

55. Սալահադդինը տիրեց Մուֆարղինին՝ Մուսուլի վրա իր հարձակումների կապակցությամբ։ Ինչպես պատմիչն ասում է, նա տիրեց նաև Ամիդին։ Նրա ձեռնարկները Խլաթի և Մանազկերտի նկատմամբ չհաջողվեցին։ Մուֆարղինը մնաց Այուբյանների ձեռքում մինչև 1260 թվականը։

56. 1189 թվականի վերջին Աքքայի առաջ ուժեղ բախում տեղի ունեցավ Սալահադդինի և Անգլիայի թագավոր Ռիչարդի զորքերի միջև։ Խաչակիրները պաշարել էին քաղաքը ծովից և ցամաքից, խիստ դժվարին վիճակի մատնելով եգիպտացիներին, երբ Եգիպտոսից մի նավատորմ հասավ Հուսամադդին Լուլուի հրամանատարությամբ։ Վերջինիս հաջողվեց ֆրանկներից նավ գրավել, նրանով մտնել Աքքա և իր ներկայությամբ քաջալերել պաշարվածներին։

57. Սալահադդինի կողմից Երուսաղեմը գրավվելուց հետո խաչակիրների մի նոր արշավանք կազմակերպվեց Եվրոպայում։ Արշավանքի գլուխն անցան Գերմանիայի կայսր Ֆրեդերիկ Շիկամորուսը, Անգլիայի թագավոր Ռիչարդ Առյուծասիրտը և Ֆրանսիայի թագավոր Ֆիլիպ Ավգուստը։ Ֆրեդերիկի բանակները ցամաքի ճամփով եկան, իսկ մյուս երկուսը եկան ծովով և պաշարեցին Աքքան։

Ընդունված է կարծել, որ Ֆրեդերիկը խեղդվել է Կյուգնոս գետի մեջ լողանալիս։ Մեր պատմիչներն էլ կրկնում են նույնը։ «Եւ եկեալ ի Սելևկիայ, գտեալ հուն անցին ընդ գետն ամենայն զօրն. և թագաւորն ոչ անց ընդ հունն, այլ ասաց ննջել յայնկոյս գետոյն, սակաւ մի։ Եւ յորժամ խաղաղեցան մեծամեծք նորա, յարեաւ ինքն և երկու արամբք եմուտ ի գետն և զմինն ի նոցանէ խլեաց գետն և տանէր. եւ թագաւորն օգնելով նմա չպահեաց և ինքն, կորոյս զքրիստոննեայք և հեղձաւ ի գետն և զմարմինն առեալ տարան ի Սիս» (Վարդան, էջ 136)։ «ՈԼԹ (1190) Կայսրն Ալամանաց Ֆրտիկ խեղդեցաւ ի գետն Սելևկիոյ և թաղեցաւ յԱնտիոք» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 77)։ «Ի ՈԽԱ թվին շարժեցաւ տունն Ֆռանկաց գալ ի թափումն Երուսաղէմի և ի ճանապարհին կոտորեցին զԿօնն և յոլովս հազարացոցն և եկեալ ի Սելևկիա թագաւորն նոցա լողացեալ ի գետն Սելեֆկիոյ անդ խեղդեցաւ» (Սամուել Անեցի, էջ 143)։

Տարբեր կերպով դեպքն ավանդում է Իբն Շադդադ պատմիչը, ասելով, թե կայսրը գետի սառը ջրի մեջ լողանալով, ցրտից հիվանդացավ և մի քանի օրից մեռավ։ Դեպքն այս կերպ կատարված լինելը ավելի հավանական է թվում, որովհետև դժվար է պատկերացնել, որ մի կայսր, իր մեծաթիվ բանակների, զինակիցների և թիկնապահների աչքերի առաջ գետի մեջ խեղդվեր, առանց որևէ օգնություն ստանալու։

Մուջիրադդինը Ֆրեդերիկի մահվան մասին գրում է. «Կայսրը իր բանակի հետ ուզում էր անցնել մի հարմար անցքից, բայց, որովհետև գետի հոսանքը շատ ուժեղ էր նրա դեմքին մի ծառի ճյուղ զարնվեց և ճակատը ճեղքվեց ու նա խեղդվեց։ Շատ աշխատեցին նրան ջրից դուրս բերելու համար և երբ դուրս բերին՝ հիվանդացավ ու քիչ հետո մահացավ»։

Գերմանացի հեղինակ Mutius-ը պատմում է, թե Ֆրեդերիկը կամեցել է Հայաստանի մեջ գազաններ որսալ և այս որսորդության ժամանակ Սելևկիայի լեռներում սաստիկ հոգնելով մտել է Սելիֆ գետը հունիս ամսի շոգերին ու այնտեղ խեղդվել է (Michaud, II, էջ 328—329)։

Ֆրեդերիկի մահից հետո նրա բանակը կազմալուծվեց. մի մասը վերադարձավ Գերմանիա, մի փոքր մասն էլ հետևեց կայսեր որդուն մինչև Անտիոք և գնաց միանալու մյուս խաչակիրներին, որոնք ափ էին իջել Աքքայի մոտ և պաշարել էին քաղաքը։ «Եւ ի զօրացն բազումք նաւեցին ի յերկիրն իւրեանց, քանզի էր և որդի մի կրտսեր թագաւորին, և այն եւս մեռաւ երթեալ ի յաքայ» (Վարդան, էջ 136)։

Եգիպտոսի սուլթանությանը պատկանող Աքքա հռչակավոր ծովային բերդաքաղաքի պաշարումը ցամաքի և ծովի կողմից եղավ շատ խիստ։ Եգիպտոսի ծառայության մեջ գտնվող հայազգի ծովակալ Հուսամադդին Լուլուն մի քանի անգամ ճեղքելով պաշարման շղթան մտավ Աքքա՝ պարենավորելու և պահակազորը թար-

մացնելու համար, բայց ի վերջո խաչակիրները գրավեցին այն։ Պաշարումը տևեց մոտ երկու տարի և ավարտվեց 1191 թվականի հուլիսի 17-ին։

58. Սալահադդինը մահացել է հիջրի 589 թվականի սաֆար ամսի 27-ին (1193 մարտի 4-ին)։ Պատմիչի հաղորդումը նրա և Բեկտիմուրի մահվան միջև ընկած ժամանակի մասին ստույգ է։

59. Հայկական Սասուն կամ Սանասուն գավառը։

60. Բեկտիմուրի սպանումից հետո, որը մի յոթ տարեկան զավակ էր թողել, Սուկմանի ստրուկը՝ Բադրադդին խաշղաշ, Ակսոնկուր Հազար Դինարին, որը ամուսնացել էր Բեկտիմուրի աղջկա՝ Այնա խաթունի հետ, գրավեց գահը և զրկեց մանուկ ժառանգորդին։ Կուտլուղ հայ գերին, որը ծագումով Սասունից էր, գրավեց գահը յոթն օր։

«Եւ ի գալ ի միւսոյ ամին (1185 թ.) մեռաւ Շահի Արմենն անորդի, և աւեր ու սուր և գերութիւն բազմացաւ ի վերայ աշխարհի նորա ի շրջակայ ազգացն։ Եւ զի թոռն Վիգենոյ՝ Շահնշահ քեռորդի Տեառն Գրիգորի կաթողիկոսի առընթեր կայր մահուան շահին, առեալ զիւրսն անկանի ի Սասունս, և անդ անկաւ ի ձեռս նորա Բեկտամուրն, որ էր իշխան ամենայն տան Շահին, առնու ի նմանէ զբերդն որ Թառձևան կոչի և ուխտիւ արձակեաց զնա, որ և ստեաց ուխտին ի տիրելն աթոռոյ շահին և զայն ևս և զամենայն Սասունք եհան ի նմանէ և արկ ընդ հարկաւ զեկեղեցիս և զուխտս» (Վարդան, էջ 133)։

Այս տեղեկությունները համապատասխանում են Աբու-լ-Ֆիդայի տված տեղեկություններին. Խիշտաշահ՝ Շահնշահն է, իսկ Սանասուն՝ Սասունը։

Ալ-Մալիք ալ-Մանսուր Մոհամմադը՝ Բեկտիմուրի անչափահաս որդին, պետության ավագների կողմից գահ բարձրացվեց, և կառավարության ղեկը հանձնվեց ծագումով ղփչախ մի ստրուկի՝ Շուջաադդին Կուտլուղին, որ կոչվում էր Դավադար։ 1205 թվականին Մուհամմադը նրան սպանել տվեց, իսկ 1206 թվականին Շահարմենի նախկին գերի Իզզադդին Բալաբանը սպանեց Մուհամմադին և գրավեց գահը, որը մի քանի ամիս միայն պահեց։ Հետո նա սպանվեց Էրզրումի սելջուկյան իշխան Մալիքադդին Տուղրիլ շահի կողմից, որը փորձեց գրավել Խլաթը, բայց բնակիչները մերժեցին նրան և հրավիրեցին Սալահադդինի ցեղից ալ-Մալիք ալ-Ավհադ Նաջմադդին Այյուբին, որը Սալահադդինի եղբոր՝ Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ալ-Ադիլի որդին էր։ Այս Մալիք Ավհադը այդ ժամանակ Մուֆարղինի տերն էր։

61. Ըստ Աբու-լ-Ֆիդայի, Դվինի գրավումը տեղի է ունեցել 1203 թվականին։ Օրբելյանը չի հիշատակում թվականը, բայց հայտնում է, որ կատարվեց Թամար թագուհու ամուսնու Գիորգու կողմից. «Սա էառ զԴուին քաղաք» (էջ 391)։ Իսկ որոշ ժամանակ անց (նույն էջը) Զաքարեն և Իվանեն են գրավում Դվինը, բայց չի հիշատակվում, թե Ելտկուզ աթաբեկի որդու Փահլավանի ձեռքից է գրավված այն. Օրբելյանն ընդհանրապես Փահլավանին ներկայացնում է իբրև բարեկամ իշխանի։

Կ. Գանձակեցին առանց թվականի հիշատակման գրում է, թե «Յաւուրս ժամանակաց թագաւորութեան Լևոնի» Զաքարեն և Իվանեն գրավում են Դվինը (էջ 154)։

Միքայել Ասորու մոտ՝ «Յայնմ ժամանակի թագաւորն Վրաց Գէորգի էառ զԴուին և կոտորեաց զպարսիկսն, որ ի նմա և քակեաց զմինարայսն, զոր շինեալ էին պարսիկք ոսկերօք և արեամբ քրիստոնեից» (էջ 446)։

Վարդանը գրում է. «Եւ վեց հարիւր հիսուն և երկու թուին առին զԴուին» (էջ 138)։ Թվականը համապատասխանում է Աբու-լ-Ֆիդայի տվյալին։

Սամուել Անեցու ժամանակագրության լրացնողներից մեկը գրում է. «Ապա ի

միւս ամին ի ՈԺԱ թուին յօգոստոսի ԻԱ (այլք՝ Ա) էառ նոյն Գորգի զԴրւին բաղաք և ԿՌ գերեաց և քանդեաց զսուտ աղօթանոցս նոցա» (էջ 137)։ (Այստեղ աղավաղված է. պետք է համարել հավանարար եղել է ՈՄԱ։ Ձեռագրում «Մ» և «Ժ» տառերի շփոթումը հաճախ է պատահում):

Ստեփանոս եպիսկոպոսի տարեգրությունը տալիս է ՈՄ թվ. Հայոց (1201). «Մեծ սպարապետքն հայոց և վրաց Իւանէ և Զաքարէ առին զԴւին և կոտորեցին և թափեցին զաշխարհս հայոց ի Տաճկէն» (Մանր ժամանակագրություններ, հտ. 1, էջ 37)։

62. Սա այն վեճն էր, որը ծագեց Անտիոքի իշխանության ժառանգության շուրջը։ Հայերի և խաչակիրների պատմության մեջ այս վեճի առթիվ ծագած կռիվների կարևորությունը նկատի ունենալով, համառոտակի հիշատակում ենք սկզբից։

Երբ խաչակիրները 1098 թվականի հունիսի 28-ին գրավեցին Անտիոքը, Բոհեմունդ իշխանը քաղաքը իրեն սեփականություն հռչակեց, այն պատճառաբանությամբ, թե ամենախոշոր դերը ինքն է ունեցել նրա գրավման մեջ։ Անտիոքի համար խաչակիր ղեկավարների միջև ծայր առավ մի երկարատև վեճ։

Երբ Բոհեմոնդը Մելիք Ղազի Գումուշ Թիկին Դանիշմանդից գերի վերցվեց, նրան, որպես Անտիոքի տեր, փոխարինեց Տանկրեդը։

Տանկրեդից հետո Անտիոքի իշխանությունը 1131 թվականին անցավ Բոհեմոնդ II։ Վերջինս օգտվելով այն առիթից, որ Թորոս I և հաջորդների միջև վեճեր են ծագել, ձեռնարկեց գրավելու Կիլիկիան և արշավեց Անարզաբայի վրա, բայց սպանվեց՝ կռվի բռնվելով Դանիշմանդի զնդերի հետ։ Նրա կին Ալիծը փորձեց գրավել Անտիոքի գահը, զրկելով իր դստերը՝ Կոստանցին, որը գահի իրավական ժառանգորդն էր համարվում։ Կոստանց իշխանուհին ամուսնացավ Ռեմոնդ դը Պուատիե կոմսի հետ, 1136 թվականին։ Իր իշխանությունը նա սկսեց հայերի դեմ կռվելով։ Լևոն իշխանը գրավել էր Սարվանտիքարը, լատին իշխանը, չկարողանալով Ռուբինյանի հետ համարձակորեն կռվել, հրավիրեց նրան Անտիոք և դավադրաբար բանտարկեց։ Հետո, սակայն, երկուսն էլ հաշտվեցին, որովհետև Կոմնենոս կայսրը սպառնում էր գրավել Կիլիկիան և Անտիոքը։

Արդարև, Հովհաննես Կոմնենոսը մեծ պատրաստությամբ և բազմամարդ բանակով հարձակվեց և գրավեց Կիլիկիան, գերի տանելով Լևոնին։ Հետո նա շարժվեց Անտիոքի վրա, որտեղ 1137 թվականին Անտիոքի իշխանը և մյուս լատին ֆեոդալները ստիպված եղան իրենց հայտարարել կայսեր վասալները։ Անտիոքի իշխանությունն ապա անցավ Բոհեմոնդ III, որի կին Սիբիլը, Լևոն II հետ համաձայնվելով։ 1194 թվականին Բոհեմոնդին թակարդի մեջ գցեց։ Լևոնը բանտարկեց նրան, իսկ հայկական զորքերը մինչև Անտիոք առաջացան։ Բոհեմոնդ III ազատ արձակվեց՝ Բաղրասից մինչև Այաս տարածվող հողամասը հանձնելով Լևոնին և հաշտվեց հայոց իշխանի հետ։ Այդ հաշտության հետևանքով Բոհեմոնդը 1195 թվականին իր անդրանիկ որդի Ռեմոնդին ամուսնացրեց Լևոնի եղբոր դուստր Ալիսի հետ։ Եվ որովհետև Լևոնը արու զավակ չուներ, որոշեց, որ Ռեմոնդից և Ալիսից ծնվող զավակը Անտիոքի իշխանության հետ ժառանգի՝ նաև Կիլիկիայի իշխանությունը։

Այդ ամուսնությունից ծնվեց Ռուբեն-Ռեմոնդը, որին Լևոն II պահում էր իր արքունիքում։ Լսելով Բոհեմոնդ III մահվան լուրը, Լևոնը ճանապարհվեց դեպի Անտիոք իր հետ տանելով մանկահասակ Ռուբեն-Ռեմոնդին։ Մինչ այդ, Անտիոքի ասպետներն ու քաղաքացիները անճապարանքով հրավիրել էին Բոհեմոնդ IV։ Լևոնը, երբ հասավ Անտիոք, Բոհեմոնդ III կրտսեր որդի Բոհեմոնդ IV արդեն տիրացել էր նրան։ Լևոնը ստիպված էր ետ դառնալ։ Բայց շատ չանցած՝ 1203 թվականի նոյեմբերի 11-ին, նա հարձակվեց քաղաքի վրա։

Բոհեմոնդ IV հայերին դիմագրավելու համար դիմեց Հալեպի սուլթան ալ-Մալիք ալ-Զահերի օգնությանը: Այուբյան սուլթանը շտապեց օգտվել իրեն ուղղված հրավերից և մի բանակ ուղարկեց: Երբ այդ բանակը Հարիմից անցնելով հասավ Որոնտեսին, Հայոց թագավորը հրաժարվեց Անտիոքի պաշարումից և ետ դարձավ: Լևոնը վրեժ լուծելու համար 1206 թվականին Ամկ լճի շուրջը ջարդեց Հալեբի սուլթանի զորքերը, որոնք գործում էին Մայմուն ալ-Կասրու հրամանատարության ներքո:

Սակայն 1207 թվականին Ռուբեն-Ռեմոնդը հայկական զորքերով մտավ և գրավեց Անտիոքի իշխանությունը: Բոհեմոնդ IV և Տաճարականները, որոնք, ապաստամբվել էին միջնաբերդում մի ելք գտնելով դուրս եկան և վտարեցին հայերին:

1216 թվականի փետրվարի 14-ին Լևոնը կրկին գրավեց Անտիոքը: Քաղաքը մնաց հայերի ձեռքում մինչև 1219 թվականը: Սակայն Լևոնի մահից հետո Բոհեմոնդ IV կրկին տեր դարձավ այդ իշխանությանը:

63. Խաչակիրների Harrene կոչվածը. Անտիոքի իշխանության ավատ կազմող գյուղ էր և գտնվում էր այդ քաղաքից մի օրվա հեռավորության վրա: Այս երկուսի միջև, կես ճանապարհի վրա էր Ջիսր ալ-Հադիդ կարևոր կամուրջը: Խաչակիրները գրավեցին այն 1098 թվականին և կորցրին վերջնականապես 1164 թվականին: Նուրադդինն այնտեղ հաստատեց երկու լուսավոր ազդանշաններ, որոնք վառվում էին գիշեր ժամանակ, որպեսզի ճանապարհ ցույց տան ֆրանկների հողերից փախչող մուսուլման գերիներին:

1178 թվականին ֆրանկները Ռուբեն իշխանի օժանդակությամբ Հարիմը վերագրավելու անհաջող փորձ կատարեցին:

64. Այս և հաջորդ դեպքերը լավ հասկանալու համար պետք է հիշել, որ առաջին սելջուկյանների անկումից հետո այն դինաստիաները, որոնք հաստատել էին նրանք իրենց կայսրության նահանգների մեջ, սկսեցին ցուցաբերել անջատողական ձգտումներ և պայքար կազմակերպեցին կենտրոնական իշխանության դեմ: Փոքր Ասիայում սելջուկյանների մի ճյուղը և Եգիպտոսում ու Ասիայում Այուբյանները Սալահադդինի ժամանակից արդեն կռվում էին իրար դեմ՝ Ասորիքում, Հայաստանում և Միջագետքում հաստատված դինաստիաների վրա գերիշխանություն ձեռք բերելու համար: Տեսանք, որ Կարա Արսլանը դաշնակցեց Նուրադդինի հետ, և նրա որդի Մուհամմադը դաշնակցեց Սալահադդինի հետ և դարձավ նրա վասալը (ըստ իբն Շադդադի): Նրանից հետո Մահմուդը ենթարկվեց սելջուկյան Քայքավուսին, հետո ալ-Մալիք ալ-Ադիլ Աբուբեքր և ալ-Մալիք ալ-Քամիլ Մուհամմադ Այուբյաններին ու նրանց հաջորդներին Միջագետքում: Վերջապես Մավդուդը ճանաչում էր փոխնիփոխ Քայկոբադ I սելջուկյանին և ալ Մալիք ալ-Քամիլ Մուհամմադ և ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսի Այուբյաններին: Հիջրի 629 թվականին ալ-Մալիք ալ-Քամիլը վճռեց վերջ դնել նրա իշխանությանը, դուրս եկավ Կահիրեից մի բանակով, իր որդի՝ ալ-Մալիք ալ-Սալիհ Այուբի ընկերակցությամբ: Այս վերջինը կանխելով իր հորը, որ կանգ էր առել Ասորիքում, ընդունեց Ամիդի պատվիրակներին և մտավ քաղաք հիջրի 629 թվականի զիլհիջա ամսին (1232 սեպտ. 18-հոկտ. 17): Մավդուդը ուղարկվեց Եգիպտոս, և Դիարբեքիրի կառավարությունը վստահվեց Այուբին: Նա վարեց իշխանությունը, մինչև իր հոր մահը և Եգիպտոս վերադարձավ հիջրը 637 թվականին (Max van Berchem, Amida, էջ 105):

«Մեկնելով Եգիպտոս, Այուբը հանձնեց Դիարբեքիրը իր որդուն ալ-Մալիք ալ-Մուազզամ Թուրան Շահին, որ կոչվում էր նաև Ղայատադդին: Հաջորդ տարին արդեն Թուրան Շահը վտարվեց Ամիդից՝ Հալեբի Այուբյան և Ռումի Սելջուկյան սուլ-

*թանների բանակների կողմից. և Ամիրը մնաց Ռումի սուլթանի ձեռքում մինչև մոնղոլների արշավանքը հիջրի 641 թ.» (Նույն, էջ՝ 109)։*

*Հեղինակն ավելացնում է որպես ծանոթություն, թե այն օրից, երբ Դիարբեքիրը դարձավ Եգիպտոսից կախում ունեցող մի նահանգ, այն ճանաչվեց «Արևելյան նահանգներ» կոչումի տակ, զանազանվելու համար Միջագետքի Այուբյան թագավորից, որի մայրաքաղաքն էր Մուֆարղինը և որը, ասում է հեղինակը, լավագույն կլիներ կոչել «Հայաստանի թագավորություն»։*

*65. «ՈՄԷ (1208) խոսրով Շահ սուլթանն Իկոնիոյ, որդի Ղլիճ Ասլանին էառ զԲերդուսն ի Հայոց և կալաւ զտէր նորա Գրիգորն, որդին Լևոնի» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 78)։*

*Այդ արշավանքը կազմակերպվել էր Հալեբի սուլթան ալ-Մալիք ալ-Զահիրի մասնակցությամբ, որը Անտիոքի խնդրով թշնամացել էր Լևոնի դեմ։ Զահերի ուղարկած բանակը միացավ Սելջուկյան բանակին Մարաշի առաջ և գրավեց Բերդուսը (Ֆերկուս)։ Բայց Լևոնը դիմեց Եգիպտոսի և Դամասկոսի սուլթան ալ-Մալիք ալ-Ադիլին, որը Զահիրի հորեղբայրն էր, և նրա միջամտությամբ հաշտություն կայացավ, պայմանով, որ, ինչպես հիշում էր Քամալադդին պատմիչը, Բաղրասի բերդը Տաճարականներին վերադարձնի և նա Անտիոքի վրա նոր արշավանքներից հրաժարվի։*

*Բերդուզ կամ Բերդուս բերդը գտնվում է Մարաշից հյուսիս, Զեյթունի մոտ։ Սմբատ Գունդստաբլի տարեգրքում (էջ 111) հիշված են Բերդուսի իշխան Լևոնն ու նրա որդի Գրիգորը։*

*66. Վրաց—հայկական զինված ուժերը Սուկման Շահ Արմենի մահից հետո Զաքարեի ու Իվանեի գլխավորությամբ անցնելով Արաքսը, եկան ու պաշարեցին Խլաթը։ «Բայց Իվանէ ըմբռնեցաւ գերի ի Խլաթ և եղբօրն արիական անուամբ՝ ազատեցաւ դարձեալ, զդուստր իւր տալով ի կնութեան Մալիք Աշրաֆին տեառն Խլաթայ» (Վարդան, էջ 138։ Ավելի մանրամասն տե՛ս Կ. Գանձակեցի, էջ 155—156)։*

*Ստեփանոս եպիսկոպոսի տարեգրությունում նույն 1211 թվականի տակ ասված է. «Զիւանէ Աթաբակն ի Խլաթ կալան եւ յոլով աւուրս պահեցին. և զդուստրն Թամթի բազում աղախնաւք և ծառայիւք և յոլով գանձիւք ետ ի գինս իւր յամիրայն և ազատեցաւ» (Մանր ժամանակագրություններ, հտ. 1, էջ 38)։*

*67. Տեղեկությունը վերաբերում է 1223 թվականի հունվարի 18-ին մահացած Գեորգի IV Լաշայի քրոջ Ռուզուդանին, որը ծնվել էր 1208 թվականին ամուսնացել Տողրուլ բեկի հետ 1224 թվականին և մահացել 1247 թվականին։*

*68. Արբիլ, Արբելա։ Պատմության մեջ այդ փոքր քաղաքի անունը կապված է Գավգամելայի ընդարձակ դաշտում՝ այդ քաղաքի մոտ տեղի ունեցած այն հռչակավոր ճակատամարտին, որտեղ Ալեքսանդր Մակեդոնացին հաղթանակ տարավ Դարեհի դեմ 330 թվականին (Ն.Մ.Թ.)։*

*69. Ալ-Մալիք ալ-Ավհադին Խլաթի գահի վրա հաջորդեց իր եղբայրը՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսան, որը 1220 թվականին իշխանությունը փոխանակեց իր եղբոր՝ ալ-Մալիք ալ-Մուզաֆֆար Շահաբադդին Ղազու հետ, որն իշխում էր Եգիպտոսում և Ուռուցում։ Բայց 1224 թվականին այս վերջինը ապստամբեց իր եղբոր դեմ, որի հետևանքով կորցրեց Խլաթը։ Ստեփանոս եպիսկոպոսի տարեգրության մեջ հիշատակվում է ՈՀԳ թ. (1224) «Աշրաֆն զԽլաթ էառ ի Ղազուն» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 39)։*

*Այուբյան երեք եղբայրների միջև խռովություն ծագեց 1226 թվականին և*

Թուրքն էլ դիմեցին ստարների օգնությանը։ Խլաթի իշխան ալ-Մալիք ալ-Աշրաֆը և Դամասկոսի իշխան ալ-Մալիք ալ-Մուազզամը դիմեցին խորեզմներին, իսկ Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ալ-Քամիլը դիմեց Գերմանիայի Ֆրեդերիկ II կայսեր, որը խաչակրաց վեցերորդ արշավանքի գլուխն անցած եկել էր Պաղեստին։ Սուլթանը 1229 թվականի փետրվարի 18-ին կնքված համաձայնագրով ֆրանկներին հանձնեց Երուսաղեմը, Բեթղեհեմը և Նազարեթը՝ մի քանի ուրիշ հողերի հետ, տասը տարի ժամանակով։

70. Մելիք Շահի իշխանության ներքո խորեզմի կամ խորասանի երկիրը կառավարում էր սելջուկյան Կոթբադդին Անուշ Թիկինի որդին, որը 1097 թվականին Բարքիարուք սուլթանից ստացավ խորեզմ Շահ ժառանգական տիտղոսը։ Այդ դինաստիան ավարտվեց 1244 թվականին։

1218 թվականին Չինգիզ խանը հարձակվեց Պարսկաստանի վրա, որտեղ խորեզմ Շահը Մահմադն էր, և նրան պարտության մատնեց։ Մահմադին հաջորդեց իր որդին՝ Ուգնամ Ջալալեդդինը, որը պատերազմեց Չինգիզ խանի դեմ, և պարտվեց Հնդկաստանի սահմանի վրա և այնտեղից եկավ ասպատակելու Հայաստանն ու Վրաստանը։ «Եւ աւերեալ զբազում տեղիս գնաց ի քաղաքն Տրփղիս և ձեռնտու եղեն պարսիկքն, որ ի նմա և առ զքաղաքն և զբազումս կոտորեաց և զևս բազումս բռնադատէր թողուլ զքրիստոնեութիւն» (Կ. Գանձակեցի, էջ 213)։ «Յայսմ ժամանակի եկին խորազմիքն և պաշարեցին զմեծ քաղաքն Վրաց զՏփխիս, և պարսիկքն որ կային ի քաղաքին, ետուն զքաղաքն ի ձեռս խորազմեացն» (Միքայել Ասորի, էջ 523)։ Վարդանը Հայոց 674 թվականի տակ (1225) գրում է. «Գայ ի կողմն դաշտավայրացն Դադայ ի Տփխիս և բազումս ոճիրս գործեալ դառնայ, ի վերայ Խլաթայ» և ավելացնում. «եւ առեալ նա», ինչ որ չի համապատասխանում արաբ պատմագրի տեղեկությանը, որը Խլաթի գրավումը դնում է 1230 թ. տակ։

Ավելի ստույգ է Ստեփաննոս Եպիսկոպոսի ժամանակագրությունը, որտեղ ՈՀԵ (1226) թվականի տակ գրված է. «Խորազմքն ի Խլաթ եկն և խ (40) օր պաշարեաց և չկարաց առնել» (Մանր ժամանակագրություններ, հտ. I, էջ 40)։

71. Կախրա կամ Քիախրա: Միքայել Ասորու մոտ «Կաղտա» (էջ 423)։ Ամուր վայր է Կարկառի, Հիսն Մանսուրի և Մալաթիայի շրջակայքում, որտեղ հայերը հաստատվեցին XI դարի կեսում։ Խաչակիրների և Նուրադդինի կռիվներից հետո Եդեսիայի Ջոսլին կոմսը գրավեց այն, և երբ նա 1150 թվականի մայիսին գերի բռնվեց, Կախտան և շրջապատի ամրոցները ընկան Խարբերդի տեր Կարա Արսլանի ձեռքը, իսկ նրա վերջին կառավարիչ Գրիգորը ստացավ մի ուրիշ ավան (Mich. le Syrien, III, էջ 158, 198, 205, 294)։

1226 թվականին Ալայադդին Քայկոբադը Կախթայում հաղթեց Օրդոքյան Մասուդին և տիրեց քաղաքին, ու այն դարձավ Ռումի սուլթանների սեփականությունը։ Եգիպտոսի սուլթանի և Լևոն II թագավորի միջև կնքված դաշնագրում հիշատակվում է այս բերդը, որից հետևում է, որ հայերը ևս մի ժամանակ տիրել են նրան։

Կախթայի բերդը, որ կառուցված էր սև քարից, մինչև օրս էլ կանգուն է։

72. Ուռհայից 90 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք շատ հին քաղաք է։ Այդ քաղաքի մոտ Կրասոսը մեծ պարտություն կրեց հայ պարթևական զնդերից։ X դարում այնտեղ արաբերենի թարգմանվեցին մեծ թվով հունարեն գրքեր։

73. «ՈՀԸ (1229) եկն խորազմն և ժ ամիս սղարեալ զԽլաթ և էառ զնա, նոյնպէս և զԿարնոյ քաղաք և ետ Մելիք Կարնոյ քաղաքոյ զՍուլման և գնացեալ ի Միջագետս եհաս մինչև ի Հալապ և յոյժ աւերեաց զնա և գերեաց. իսկ Ալադին սուլթանն և Աշրաֆն մարտեան ընդ սոսա և կոտորեցին զնոսա յոյժ և Սուլման ամիրային՝ որ առաջնորդէր խորազմին՝ կալան և սպանին» (Սամուել Անեցի, էջ 149—150)։

Իկոնիայի Ալաադդին Քայկոբադ I և ալ-Աշրաֆը սելջուկյան ու ասորական զնդերով արշավեցին Խլաթի վրա և Երզնկայի առաջ հանդիպելով Ջալալեդդինին 1230 թվականի օգոստոսի 10-ին ծանր պարտության մատնեցին նրան։ Ջալալեդդինը փախուստ տվեց։ Այդ կռվին մասնակցում էին նաև Կիլիկյան հայ զնդերը, ինչպես նաև ֆրանկները (Կ. Գանձակեցի, էջ 215—216, տե՛ս Մ. Չամչյան, հատ. III, էջ 204)։

Ստեփ. եպիսկոպոսի ժամանակագրությունը, նույնպես տալիս է ՈՀԹ թվ. (—1230) «Խորազմն զԽլաթ աւերեաց» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 40)։ Վարդանի մոտ ասված է. «Յորոյ ի վերայ հասանէ վազվազակի տաթարն որ հանեալ էր զնա իւրմէ աշխարհէն յառաջագոյն և անտի դարձուցանէր զնա ի փախուստ դէպի յԱմիթ. և յանդէտս մեռանի ի փախչելն թէ սրով թաթարին, և թէ որպէս ասեն՝ յիւրայոցն ումն ի զորոյ մերձաւոր սպանեալ էր ի կարճոյ և սրտաւռեալ կայր վասն այնորիկ...» (Վարդան, էջ 144)։ Գանձակեցին գրում է. «Իսկ Ջալալեդդին սուլտանն դարձաւ մեծաւ ամօթով յաշխարհն Աղուանից ի բերրի և յարգաւանդ դաշտն որ կոչի Մուղան, և անդ զետեղեալ՝ կամէր զօր ժողովել, ապա թաթարն որ եհան զնա յերկրէ իւրմէ փախստական, զհետ մտեալ նորա՝ տարեալ վարեաց զնա մինչև յԱմիթ. և անդ ի՞նչ զզօրս նորա սատակայլս. կորեաւ և անօրէն իշխանն, թէ ի նմին պատերազմի, և թէ՝ որպէս ոմանք ասեն՝ երթայր յետիոսս փախստական. գիմեալ նմա առն միոջ և գիտացեալ թէ նա է, սպան զնա փոխանակ արեան մերձաւորի իւրոյ, զոր սպանեալ էր նա յայլում աւուր, և այսպէս բարձաւ չարն չարեաւ» (Կ. Գանձակեցի, էջ 217)։

Ջալալեդդինի կողմից Խլաթը գրավելուց քիչ ժամանակ անց, Դամասկոսի սուլթան ալ-Մալիք ալ-Աշրաֆը գրավեց այն և քաղաքը պաշտպանելու համար դինակցեց Ալաադդին Քայկոբադի հետ ու նրա աջակցությամբ հաղթեց Ջալալեդդինին։ Իսկ 1231 թվականին ալ-Մալիք ալ-Աշրաֆը Խլաթը տվեց իր եղբայր՝ Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ալ-Ադիլին։ 1232 թվականին Իկոնիայի սուլթան Ալաադդին Քայկոբադը գրավեց Խլաթը, որը մնաց սելջուկների ձեռքը մինչև 1243 թվականը, երբ թաթարները գրավեցին այն և հանձնեցին Վրաց զորավար Իվանեի աղջիկ Թամթային (Խլաթի նախկին իշխան ալ-Մալիք ալ-Մանսուր Մուհամմադի այրին)։

Ստեփաննոս եպիսկոպոսի ժամանակագրության մեջ 1235 թվականի տակ գրված է. «Հոռմցին էառ զԽլաթ» (Մանր ժամանակագրություններ, հատ. I, էջ 41)։

74. 1236 թվականի նոյեմբերին վախճանվեց Հալեպի սուլթան ալ-Մալիք ալ-Ազիզը, նրան հաջորդ կարգեցին յոթնամյա որդուն՝ ալ-Մալիք ան-Նասր Յուսուֆին։ Անչափահաս իշխանի խնամակալությունը հանձնվեց Շամսադդին Լուլու հայ զորավարին, որը միևնույն ժամանակ Դամասկոսի բանակի հրամանատարն էր։

Երբ Եգիպտոսի Այուբյան դինաստիայի վերջին սուլթանը մահացավ, նրա հոմանուհին՝ Շաջարատ ադ-Դուրը ստանձնեց գործերի ղեկավարությունը մինչև սուլթանի գերատի որդու Ղայադայդին Թուրան շահի ժամանումը։ Բայց նա փաստորեն չկառավարեց։ Մամլուք պետերը դավադրություն կազմակերպեցին ու սպանեցին նրան։ Շաջարադ ադ-Դուրր իրեն հռչակեց Եգիպտոսի թագուհի և ամուսնացավ Այբեկ մամլուք էմիրի հետ։ Այսպիսով, այդ կնոջ միջոցով Այուբյան դինաստիայի իշխանությունը փոխանցվեց մամլուքներին, և նոր սուլթանը, առաջինը մամլուք սուլթանների շարքում՝ ստացավ ալ-Մալիք ալ-Մոյիզ տիտղոսը։

Եգիպտոսի մեջ տեղի ունեցած դահի այդ փոփոխության կապակցությամբ, Հալեպի Այուբյան ալ-Մալիք ան-Նասր սուլթանը օգնության կանչեց Այուբյան մյուս իշխաններին, որոնք այդ ժամանակ իշխում էին Դամասկոսում, Հեմսում և Խլա-

թում, և այդ բոլոր ուժերը, ծագումով հայ Շամսադդին Լուլուի հրամանատարությամբ 1250 թվականի դեկտեմբերի 11-ին շարժվեցին դեպի Եգիպտոս։ 1251 թվականի փետրվարի 3-ին եգիպտական բանակը (Այբեկի հրամանատարությամբ), հանդիպեց Ասորական բանակին ալ-Աբբասայի մոտերքում։ Եգիպտացիք սկզբում փախուստի դիմեցին, բայց ասորական զնդերի մի մասը վերջին րոպեին թշնամու կողմն անցավ, և կռվի արդյունքը փոխվեց։ Լուլուն գերի բռնվեց և, ինչպես հաղորդում է Աբու-լ-Ֆիդան, հենց տեղում գլխատվեց Այբեկի ներկայությամբ։

75. Օգտվելով մուսուլման իշխանների ներքին կռիվներից, 1249 թվականին կազմակերպվեց խաչակրաց յոթերորդ արշավանքը, որի գլուխն անցավ Ֆրանսիայի Լյուդովիկոս IX թագավորը։ Վերջինս 1249 թվականի հունիսի 5-ին Եգիպտոսի Դամիետ նավահանգստի մոտ ափ իջավ և հաջորդ օրն իսկ գրավեց քաղաքը։ Ֆրանսիացիք այդտեղ մնացին մինչև դեկտեմբերի 6-ը, սպասելով զինական օգնության, որը Ալֆոնս դը Պուատիե իշխանը պետք է հասցներ, և այդ անշարժության ժամանակ տվեց եգիպտացիներին՝ կազմակերպվելու և ամրանալու։ Ալ-Մալիք աս-Սալիհը շտապեց վերադառնալ Ասորիքից հիվանդ վիճակում, բայց հազիվ հասած՝ մեռավ։ Խաչակիրների զնդերը նոր օգնություն ստանալուց հետո Նեղոսի եզերքով առաջացան և Մանսուրա քաղաքի առաջ հաղթեցին եգիպտացիներին։ 1250 թվականի փետրվարի 18-ին, սակայն, եգիպտական բանակը՝ Բիբարս Բոնդուկտարի հրամանատարության տակ՝ անցավ հարձակման։ Ժանտախտը նոր հարված տվեց խաչակիրներին և թուլացրեց նրանց ուժը. Լյուդովիկոսն ինքն էլ վարակված, նահանջի հրաման տվեց, բայց Ֆարասկուրի առաջ տեղի ունեցավ մեծ ճակատամարտ, որտեղ ֆրանկները մեծ ջարդ կրեցին, իսկ Լյուդովիկոսը մահամերձ, դադարեցրեց մարտը, և ամբողջ բանակը, իր թագավորի հետ ընկավ գերի։ Այսպիսի ողորմելի վախճան ունեցավ խաչակրաց 7-րդ արշավանքը։

76. Բուն անունով Ըսմատ ադդին Օմ Խալիլ։ Կոչված էր Շաջարատ ադ-Դոր (նշանակում է ղոհարեղենների ծառ) իր կրած անթիվ ղոհարեղենների համար, որոնցով նա նմանվում էր թանկագին ակների մի ծառի։ Աս-Սույութին, Մակրիզին և իբն ալ-Վարդին նրան ծագումով թրքուհի են համարում։ Սախավի պատմիչը նրա մասին ասում է թե՝ «ծագումով թրքուհի էր, թեև ոմանք կարծում են թե հայուհի էր»։ Նույնը կրկնում է և Աբու-լ-Ֆիդան։

77. Իմա՝ Ալ-Մալիք ալ-Զահիր Բիբարս ալ-Բոնդուկտարի. Ըստ հայ պատմիչների՝ Փնդուխտար։ Ծագումով ղփչախ։ Նա գնվեց Ալայադդին Բոնդուկտարի կողմից Համաթ քաղաքում, կոչվեց Բայբարս (Հովազ) և իրեն գնողի անունով նաև Բոնդուկտարի (պարսաննետաձիգ)։ Գահ բարձրացավ 1260 թվականին ալ-Մալիք ալ-Մուզաֆֆար Կուտուզի սպանությունից հետո, դավադիրների օժանդակությամբ և ստացավ ալ-Մալիք ալ-Զահիր» կամ «Դահիր» տիտղոսը։ Մահացավ 1277 թվականին։

78. Ամուր քաղաք Պաղեստինում, Թաբարիայի մոտերքում, Տիբերական լճից իջնող գետակի հովտի մոտ, կառուցված էր ձորերով շրջապատված մի սարի դագաթի վրա, Աքքայից 56 կիլոմետր դեպի արևելք։ Այդ ամրոցը խաչակիրների ժամանակ կարևոր դեր կատարեց։ Սալահադդինը անձամբ պաշարեց այն, և տաճարական ասպետները, որոնց հանձնված էր պաշտպանությունը, հինգ շաբաթ դիմադրությունից հետո անձնատուր եղան։ Հետագայում տաճարականները վերստացան իրենց բերդը։ 1260 թվականին վերադրավեց Բիբարսը։

79. Նկատի ունի Մառիի ճակատամարտը։ Մառին կոչված է նաև «Դարբանդ Մարրի»։ Ասորիքից Ամանոսյան լեռնաշղթայից երկու հատվածների՝ Գյուզելդաղի

և Աքմաղաղի ճեղքվածքն է, Pylae Amanides կամ Amanicae։ Այս անցքի վրա էր գտնվում նաև Սարվանդիքարը։

Մառիի հուշակավոր ճակատամարտը տեղի ունեցավ հետևյալ պայմաններում։ Հայոց բանակի զորքերի թիվը 15 հազար էր, որը Հեթումը երկու զորագնդերի բաժանելով հանձնեց իր երկու որդիներին՝ Լևոնին և Թորոսին։ Այդ զորագնդերից մեկը բռնեց Ալեքսանդրետի հյուսիսային անցքը, իսկ մյուսը՝ ավելի հյուսիս ընկած ալ-Մարրի կոչված անցքը։ Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրությունում հիշատակում է, թե «Դարբանդ ալ-Մարրին կես օրվա ճանապարհով դեպի արևելք է Սարֆանդիքցս։ Հայոց բռնած երկու դիրքերի միջև տարածվում էր ստվար և բարձրաբերձ եղևնիների մի անտառ։ Այդ դիրքերին ապավինած, հայերը հույս ունեին արգելել եգիպտացիների մուտքը՝ մինչև թագավորի վերադառնալը։ Հեթումը նախօրոք հզոր աշտարակներ էր կանգնեցրել լեռների բարձունքի վրա և քարանետ մեքենաներ զետեղել ռազմական կետերում, ենթադրելով, որ եգիպտացիները կարող են այդ տեղերից անցնել։ Թշնամին տեսնելով այդ ամուր դիրքերը, այլ ճանապարհ որոնեց և դադտագողի անցնելով հասավ Սևավ լեռան ստորոտի այն տեղը, որ կոչվում է Նիկայոպոլիս, և այնտեղ բանակ դրեց։ Օգոստոսի 23-ին, երկուշաբթի օրը, տեղի ունեցավ բախումը։ Հայերը սկզբում չփոթության մատնվեցին, բայց հետո իջան դաշտ դիմադրելու թշնամուն։ Կռիվը տևեց մի օր ամսի 23-ին։ Հայ զորքերը մի քիչ կռվելուց հետո նահանջեցին, իշխանները լքեցին ճակատը և քաշվեցին իրենց ամրոցները։

Մառիի ճակատամարտի մասին Մուֆազզալ իբն Աբիլ-Ֆազայիլը գրում է հիջրի 664 թվականի տակ։ «Սուլթանը գնաց Դամասկոս և հրամայեց գնդերին, որ արշավեն Սսի վրա...։ Բանակը Դամասկոսից ճամփա ընկավ շաբաթ օրը, զուլկադա ամսի 3-ին (1266 օգ. 6), ընդհանուր հրամանատարությունը հանձնվեց Համաթի իշխան ալ-Մալիք ալ-Մանսուրին և գործողության վերահսկողությունը՝ Շամսադդին Ակ Սոնկուր ալ-Ֆարիկանիին։ Բանակներն հասան Դարբանդ, որտեղից անցնում են Սիս գնալու համար։ Հայոց թագավորը այդ կիրճերի վերև շինել էր ամուր աշտարակներ, որոնց մեջ դրել էր որոշ թվով կռվողներ։ Մահմեդականները գրավեցին այդ դիրքերը, սպանեցին պահապան գնդերի մի մասը, իսկ մնացածը փախուստ տվեց։ Հետո քանդեցին այդ ամրությունները և մտնելով Սսի երկիրը հրի և արյան մատնեցին այն։ Գերի վերցրին Սսի թագավորի որդուն, որը կոչվում էր Լևոն Իբն Հեթում։ Նրանք գերի վերցրին մինչև անգամ նրա եղբոր որդուն և պետության բազմաթիվ բարձրաստիճան անձերի։ Մահմեդականները մտան Սիս քաղաքը, ավերեցին ու գրավեցին ինչ-որ գտնվում էր այնտեղ, ապա ետ քաշվեցին»։

Իբն ալ-Վարդին գրում է. «664 թվականի սաֆար ամսից հետո Զահիր սուլթանը գնաց Դամասկոս մեծ բանակներով, որոնց Համաթի կառավարիչ Մանսուրը առաջնորդեց դեպի հայոց երկիրը։ Նրանց թագավորը՝ Բասիլի որդի Կոստանդինի որդի Հեթումը ամրացրել էր կիրճերը մանգղիոններով և արշավողների դեմ ուղարկեց իր առաջապահ գնդերը, որոնց գլուխն էին իր երկու որդիները։ Այդ գնդերը ջարդվեցին և երկրորդ որդին՝ Լևոնը գերի բռնվեց։ Անցքերը բաց արեցին։ Իբրև պատիժ սպանեցին բնակիչներին և ավարով լցված վերադառնում էին Կահիրե, երբ ճամփի վրա, Աֆամիայում իրենց հանդիպեց Զահիրը։ Նրան իջեցրին ձիուց Ջիզա լճի մոտ և իրենց ուսերի վրա բարձրացրին։

Աբուլֆարաջը գրում է, թե Լևոնը գերի բռնվեց 1266 թվականի օգոստոսի 24-ին (Chron. Syr., էջ 569)։

Բայց ամենից ընդարձակը տալիս է Մակրիզին՝ իր «Մամլուք սուլթանների պատմություն» գրքում, ուր ասված է, թե հիջրի 664 թվականի շավալ ամսի 27-ին (մեր թվ. 1 օգոստոսի 1266) սուլթանը մեկնեց Սաֆադից՝ Դամասկոս գնալու համար: Նա կանգ առավ Հասուրա կոչված վայրում և հրամայեց, որ ոչ մի զինվոր չմտնի Դամասկոս և որ բանակը շարունակի մնալ նույն դիրքում, մինչև Սսի արշավանքի ժամը: Ինքը մտավ Դամասկոս մի թեթև զորախմբի ընկերակցությամբ: Լսած լինելով, որ մի քանի զինվորներ մտել են քաղաք, նրանց դուրս հանել տվեց շղթայակապ: Համաթի իշխան ալ-Մալիք ալ-Մանսուրը դարձավ թշնամու դեմ գործող բանակի հրամանատարը: Բանակի շարքերում գտնվում էին Իզադդին Իղան և Կալավուն էմիրները: Բանակը շարժվեց զուլկադա ամսի հինգերորդ օրը (1266 օգ. 8) և ուղղվեց դեպի Սիս: Երկու բանակները իրար բախվեցին, և Սսի թագավոր Լևոնը գերի բռնվեց: Նրա եղբայրը և հորեղբայրը սպանվեցին: Նրա մյուս հորեղբայրը փախուստ տվեց, իսկ այս վերջինի որդին գերիների թվում էր: Մնացած իշխանները, որոնց թիվը 12 էր, ցրվեցին: Հայերը կորցրին իրենց ամենաքաջ պատերազմիկներին ու լավագույն զինվորներին: Մուսուլմանական բանակը հետապնդեց փախստականներին, ջարդելով և գերելով բոլոր նրանց, ում բռնում էր և ամեն կողմ հրդեհ էր տարածում: Նա գրավեց մի շատ զորեղ ամրոց, որը պատկանում էր Տաճարականներին, Տղամարդիկ բոլորն էլ խողխողվեցին, գերի առնված կանայք բաժանվեցին զինվորների մեջ: Միջնաբերդը բոցերի ճարակ դարձրին իր պարունակած բոլոր գանձերով: Հաղթողները մտան Սիս քաղաքը, հիմնահատակ քանդեցին այն: Այդ գավառում զորքը մնաց մի քանի օր ամենուրեք տարածելով նախճիր և հրդեհ և վերցնելով բազմաթիվ գերիներ: Այնուհետև Ուղան (Իղան) էմիրը ուղղվեց դեպի Ռումի երկիրը և Կալավուն էմիրը դեպի Մասիսա, Ադանա, Այաս և Տարսոն: Երկուսն էլ ջարդեցին բնակիչներին, գերիներ վերցրին, մեծ թվով բերդեր ավերեցին և ամեն ինչ հրդեհի մատնեցին: Համաթի իշխանը մնացել էր Սիս, երկու էմիրներն էլ գնացին նրան միանալու, իրենց հետ բերելով մեծ ավար այն աստիճան, որ մի եզ մատուցվում էր երկու դիրհեմի փոխարեն, և գնող չկար:

Սուլթանը այս հաջողությունների լուրը առավ, երբ որսի մեջ էր Ջիրուդում: Սուրհանդակին նա նվիրեց հազար դինար և Տաբլխանայի էմիրության աստիճան: Հետո Դամասկոսի ճամփան բռնեց և իր պատրաստությունները տեսնելուց հետո գնաց դիմավորելու իր բանակը՝ զուլհիջա ամսի 13-ին (1266 սեպտ. 15):

Մինչ այդ, Սսի արշավանքը կատարող գնդերը հասան: Նրանք ներկայացրին սուլթանին իրենց գրաված ամբողջ ավարը, և սուլթանը այդ ավարը բաժանեց իր զինվորներին: Սսի թագավորը և մյուս գերիները իր կողմից բարյացակամ արտահայտություններով լիացվեցին: Սուլթանը վերադարձավ Դամասկոս ամսի 24-ին (1266—սեպտ. 26), իր առջևից տանելով Սսի թագավորին: Նա խիլա հագցրեց էմիրներին, իշխաններին և զինվորներին: Դամասկոսը լցվեց թանկարժեք իրեղեններով, մեծ քանակությամբ թանկագին ակներ, ձիեր, ալյուր և մետաքսեղեններ վաճառվեցին: Սուլթանը այդ բոլորից ոչինչ չվերցրեց: Համաթի իշխանը գնաց դեպի իր երկիրը Եփրատի կողմից արժանանալով լիուլի և առատաձեռն վարձատրության և ստացավ մեծ թվով ձիեր, արժեքավոր առարկաներ և շորեր: Այդ դեպքերի վրա Արագոնի կողմից ուղարկված դեսպաններ հասան՝ ընծաներ տալու և խաղաղության առաջարկելու համար:

Ճակատամարտի մասին կարևոր տվյալներ են հաղորդում նաև հայ աղբյուրները:

«Ի ՉԺԵ ամին. եկն Մսրցին յաշխարհն Կիլիկիոյ և աւերեաց յոյժ. այրեաց զկէս երկիրն և անթիւ կոտորեաց սրով և բազումս գերի տարաւ ընդ որս և Լևոն

անդրանիկ որդին թագաւորին Հեթմոյ, և միւս որդին եսպան զԹորոս և զօրագլուխն էր Սըմըլմոթ» (Սամուէլ Անեցի շար., էջ 151)։ «Մսրցին եհար զզօրս Հայոց, սպան զԹորոս և գերեաց զԼևոն՝ զորդիսն Հեթում թագաւորին զոր յետոյ թափեցին» (Մխիթար Այրիվանեցի, էջ 68)։

«Իսկ որդիք արքային Հայոց իմացեալ զգալուստ Սարակինոսաց ժողովեցին զամենեսին ոյք կարող էին զէն առնուլ և ելին ընդդէմ եգիպտացւոց և սկսան աջողութեամբ մղել զմարտն։ Այլ ի վախճանի ի պարտութիւն մատնեցան զօրն Հայոց. և յերկուց արքայորդւոց մին ձերբակալ եղև և միւսն սպանաւ ի պատերազմի և այնպէս արշաւեալ Սարակինոսաց ընդ թագաւորութիւն Հայոց, որով զամենայն դաշտավայրս եղծին, ապականեցին և անբաւ բարիս ի բաց տարան անտի, որ եղև վնաս մեծ քրիստոնէից» (Հեթում պատմիչ, էջ 51—52)։

Հեթումի տարեգրության մեջ «Սմընլըմօթն զօրօք անօրինաց կոտորեաց զօրս Հայոց ի Մառին և կալաւ զթագաւորորդին Հայոց զպարոն Լևոնն և միւս որդին Թորոս սպանին և եմուտ յերկիրն Հայոց գերեաց և աւերեաց մինչև ի Բարձներթն և յԱտանայ» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 83)։

Ճակատամարտը տեղի ունեցավ 1266 թվականի օգոստոսի 23-ին։ Հեթումի տարեգրության և մի քանի հայ պատմիչների մոտ չի հիշատակվում Սիս քաղաքի գրավման և ավերման մասին, բայց Հեթում Ա-ի եղբայր Հովհաննես եպիսկոպոսը գրում է իր հիշատակարանում. «Եւ զարքայանիստն Սիս Մեծօն Սոփէօ և զամենայն սահմանս նորա մինչև յԱտանա հրձիգ արար...» (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 97, ծանոթություն 95)։ Նշված է նաև ժամանակագրության Վենետիկի տպագրության մեջ (տես էջ 84)։

Սամուէլ Անեցու շարունակողը չի հիշատակում Սսի գրավումը, մինչդեռ Վարդանը «Յանպատրաստից մտեալ յաշխարհն՝ առնու զՍիս մայր քաղաքաց զարքայանիստն, այրէ զնա եկեղեցեօքն, որ ի նմա և գտանէ զտունն գետնափոր գանձուցն, և առնու յոյժ բազում զոր ի միում ամանի լինել ասէին վեց հարիւր հազար կարմիր »(Վարդան, էջ 162)։

Մառիի ճակատամարտի մասին Սմբատ Գունդստաբլը իր ձեռքով գրել է մի հիշատակարանում, հայոց 717 թվականին (—1268).

«Սկիզբն էր ի չար ժամանակի
Երբ Մսրցին եկն ի Մառի
Վ՚ եսպան զԹորոս թագվորորդի
Եւ այլք բազումք ի նոյն գկնի
Վ՚այրեց ըզՍիս և զՄսիս
Եւ զինչ որ չէն կայր ի միջի.
Եւ զԼևոն աւագ որդի
Հեթմոյ Հայոց մեծ արքայի
Տարաւ ծառայ վ՚ եդ ի բանդի
Ի քաղաքին Եգիպտոսի» (Սիսուան, էջ 72)։

Դեպքի մասին հանգամանորեն գրում է նաև Գրիգոր Ակներցին (Մաղաքիա) (էջ 39—41)։

Դարտելը գրում է. «Եւ իբրև լուաւ սուլթանն Բաբելոնի զդաշն միաբանութեան, զոր արարեալ էր արքայ Հեթում ընդ խանին մեծի, գումարեաց արս պատերազմողս քառասուն և հինգ հազար և յեղակարծում պահու եմուտ ի սահմանս թագաւորութեան Հայոց...։ Եւ եհաս բօթ գուժին առ պարոն Լևոն որդի անդրանիկ արքայի Հեթմոյ, որ վարէրն յայնժամ զիշխանութիւն։ Եւ նորա զօրաժողով արարեալ գումա-

րևաց վաղվաղակի արս հնգետասան հազար, ընդ հետևակ և այրուձի և առեալ ընդ իւր զմի ոմն յիւրայոց իւրոց որ կոչէր պարոն Թորոս, եւ հանդէպ սուլթանին և բանակի նորա, ի պաշտպանութիւն աշխարհին։ Եւ դիպեցան միմեանց բանակին երկորին մերձ յամուրն կոչեցեալ Մարրի զոր կալեալ ունէր պարոն Լևոն և բաղխեցան ընդ միմեանս զաւուրս երկուս. ի յերրորդումն ի պարտութիւն մատնեցան Հայք զի ոչ բաւեցին զդէմ ունել ահագին բազմութեան Սարակինոսացն յարձակելոց ի վերայ նոցա։ Անդ անկաւ ի ճակատամարտի պարոն Թորոս երկրորդ որդի արքայի Հեթմոյ. իսկ անդրանիկն յորդիս նորա պարոն Լևոն ձերբակալ եղեալ ածաւ ի Բաբելոն և եղաւ ի բանտի յաշտարակի անդ բերդին, որ մինչև ցայսօր անուանեալ կոչի աշտարակ պարոն Լևոնի» (ժամանակագրութիւն, էջ 18—19)։

Եգիպտոս գերի տարվողների թվումն էին Պապեռոնի իշխան արքաեղբայր Սմբատ Գունդստաբլի որդի Վասիլ Թաթար իշխանը, Ծիլարտոմը (ըստ Ալիշանի կարող է լինել Շիրարտեն), Ատոմը և ուրիշներ։

80. Ակնարկվում է Ամուդա ամրոցը, Ջայհան գետի աջակողմյան եզերքին, Անարզաբայի մոտ գտնվող կոնաձև քարքարոտ լեռան գագաթին ամուր բերդ էր, որը 1145 թվականին, երբ Թորոս II իշխանը Կ. Պոլսից վերադարձավ և սկսեց վերադարձնել հույներից իր հոր կալվածները.

«Նախ զԱմուտայն եղև առեալ,
Ապա նովաւ այլոց տիրեալ»

ասում է Վահրամ Ռաբունին։

1213 թվականի ապրիլին Լևոն թագավորը հատուկ պարգևագրով այդ բերդը իրեն կցված կալվածներով, գյուղերով և ագարակներով իբրև ավատ շնորհեց Տևտոնյան ասպետներին։ Նրանց ձեռքում մնաց 50 տարի։ 1266 թվականի Մառիի ճակատամարտից հետո եգիպտացիները գետի հունով անցնելով պաշարեցին այն և գրավեցին, այնտեղ ապաստանած 2200 հոգուն կոտորեցին, կանանց և երեխաներին էլ գերի վերցրին։ Նույն հունով Ամուդի մոտից անցան եգիպտացիները 1298 թվականի ապրիլին նմանօրինակ ասպատակություն և ավեր սփռելով։

81. Հոմսից 10 րոպե դեպի հյուսիս, խղճուկ մի գյուղակում է գտնվում Ասորիքին տիրող հաղթական արաբ զորավարի՝ Խալիդ իբն Վալիդի, Մուհամմադի մեծ զինակցի դերեզմանը, որը Բիբարս սուլթանը նորոգել տվեց, երբ գնաց Հոմս՝ Սսից վերադարձող իր հաղթական բանակներին դիմավորելու։ Նա այնտեղ թողեց հետևյալ արձանագրությունը. «Երբ գնաց Հոմս դիմավորելու Սսից վերադարձող հաղթական բանակը, ղուլհիջա 664 թ.» (1265—1266) (Max van Berchem, Memoires presentees a l'Institut Egyptien, Le Caire, 1897. Inscriptions arabes en Syrie, t. III).

82. Հիմսից Դամասկոս տանող ճանապարհի վրա՝ հին Kamokhara-ն։

83. Էմիր Շամսադդին իբն Աբդուլլա Սոնկուր ալ-Աշկար աս-Սալիհին եղել էր Եգիպտոսի Այուբյան դինաստիայի երրորդ սուլթան ալ-Մալիք աս-Սալիհ Նաջմադդին իբն Այուբի գերին և ազատագրյալը։

Սոնկուրը Բիբարսի մտերիմն էր, որով հասկանալի է, թե ինչու նա այնքան մեծ կարևորություն էր տալիս Սոնկուրի ազատմանը։ Երբ Բիբարսը սուլթան եղավ, հաճախ թաթարներից պահանջում էր Սոնկուրին, բայց իր դիմումները անհետևանք մնացին մինչև առիթը ներկայացավ, երբ Հայոց թագավորի միջնորդությամբ ձեռք բերեց նրա ազատությունը։

Սոնկուրի մասին՝ Սղուր անունով հետաքրքիր տեղեկություններ են տալիս Ակներցին, Մաղաքիա աբեղան (էջ 38—39), Դարտելը (էջ 21), Սամ. Անեցին (շար.,

էջ 151), արաբ պատմիչներից՝ Աբու Ֆիդաչը, ան-Նովայրին, Աբուլ-Մահասինը և ուրիշներ։

84. Գրիգոր Տղան «Ողբս առման Երուսաղեմի» մեջ կոչում է Սարայ։ Ամուր բերդ է Սևավ լեռան ստորոտում, Բաղրասի մոտ։ Հեթումի թարգմանիչը կոչում է «Տեմրեզաք»։ Պատկանում էր տաճարականներին։ Սալահադդինը պաշարեց այն 1189 թվականի սեպտեմբերի 2—13-ը և գրավեց։ Լևոնը հետ վերցրեց և հանձնեց Տաճարականներին։ Ապա մի անգամ ևս ընկավ եգիպտացիների ձեռքը, իսկ երբ սելջուկները տիրեցին Ասորիքին, բերդը վերադարձվեց հայերին։ Թվում է, թե Մարիի ճակատամարտից հետո այն մնաց հայերի ձեռքում, որովհետև 1286 թվականի դաշնագրով Բիբարսը Հեթումից պահանջում է այդ բերդը։

85. Նշանակում է ծովափ։ Գտնվում էր եգիպտական հողերի և հայկական Կիլիկիայի սահմանի վրա։ Բիբարսը պահանջում էր Շիհը, թեպետ և էր «տեղի մի աւերակ... և աւէր սուլտանն թէ տուր զտեղին այն՝ զի շինեցից վաճառանոց մեզ և ձեզ և թագաւորն ոչ ետ»։ Երբ Լևոնին գերությունից վերադարձնելու մասին Հեթումը խորհուրդ գումարեց իշխանների հետ, սրանք մերժեցին թագավորին, թե՝ «Շիհ ի՞նչ զտանէ մեզ, որ դու վասն Շիհայ զքո որդիքն կորուսեր և զմեզ նոցա խղճին տիրացուցեր, այն լաւ չէ՞ր թէ այն լեալ բան մեք ամեն աշխարհի զրոյց և ծաղր եղաք» (Մաղաքիա աբեղա, էջ 45)։

86. Այս արշավանքի մասին հայկական աղբյուրներից տե՛ս Սմբ. եպիսկ. տարեգրությունը (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 44), իսկ Ալբիստանի կռվի մասին՝ նույն խրոնիկում ՉԻԶ (1277) թվականի տակ. «Թուական Նորին ԺԵԹ—ու յԱպլասթայն կոտորեցաւ ի Փունդուխտար Սուլտանէն Մսրայ. և զՓարուանայն յԱյստաղն կոտորեցին և այլս բազումս սպանին» (նույն տեղում, էջ 45)։ Նաև Անանուն ժամանակագրություն, էջ 24—25 (Երևան 1940)։

Ըստ Ռաշիդադդինի, Փարվանայի տղան՝ Զիադադդինը 1275—1276 թվականների ամառը գնում է Ասորիք՝ Փնդուխտարի մոտ և նրան դրդում կատարելու այդ արշավանքը։ Ըստ Ռաշիդադդինի, ճակատամարտը տեղի ունեցավ 1276 թվականի հուլիսի 3-ին ուրբաթ օրը։ Փնդուխտարը մնաց Կեսարիայում մեկ շաբաթ։ Այդ միջոցին Մուինադդին Փարվանան գտնվում էր Թոխաթում։ Սուլթանը հրավիրեց նրան իր մոտ, բայց նա չեկավ։ Ռաշիդադդինը վկայում է, թե այդ արշավանքի ժամանակ Փնդուխտարը Երզնկայում կախեց մի քանի հայերի՝ Սարգիս եպիսկոպոսին, նրա որդի Հովհաննեսին և ուրիշ 38 հոգու։ Աբաղան Թավրիզից դուրս գալով, 1277 թվականի գարնանը հասավ Ռումի երկիրը (Рашид-ад-дин, Сборник летописей, М.-Л. 1946, том III, стр. 88).

Մի արաբ պատմիչ՝ Իբն ալ-Ֆուրթին գրում է. «Հիջրի 676 թվականի (1277—1278) ընթացքում Ֆունդուկտար թագավորը բանակով առաջ շարժվեց դեպի Ռումի երկրները, նպատակ ունենալով Փարվանային սպանել։ Այս վերջինը, երբ արշավանքի լուրն ստացավ, ապաստանվեց ծովեզերյա մի բերդում։ Ֆունդուկտարի դեմ գնացին երեք հազար հեծյալ մոնղոլներ, և հանդիպումը տեղի ունեցավ Կեսարիայի առջև, ուր և մղվեց ճակատամարտը։ Ֆունդուկտարը պարտության մատնեց մոնղոլներին. նրանց մեծ մասը սպանվեց, և մնացածները փախուստ տվեցին։ Կեսարիայի դրսի կողմը 15 օր մնալուց հետո, Ֆունդուկտարը մտավ քաղաք, իր բանակը հպատակ ժողովրդին վնաս չհասցրեց։ Նա հայտարարեց հետևյալը. «Ես չեմ եկել այս երկիրը քանդելու, այլ եկել եմ ազատելու այն մոնղոլների ձեռքից»։ Երբ որոշել էր նա գնալ, կողոպտեց քրիստոնյաներին, գերի վերցրեց նրանց զավակներին, բայց ոչ ոքի չսպանեց։ Ապա ճամփա ելավ դեպի իր երկիրը և իր հետ տարավ Փարվա-

նային և նրա կնոջն ու զավակներին» (Թարգմ. Գ. Մսրլյանի: Ալպոյաճյան, Պատմություն Կեսարիոյ, էջ 521—523):

Որ սուլթանը չի ուզեցել ոչ ոքի կյանքի վնաս հասցնել, ինչպես ուզում է հավատացնել Իբն ալ-Աթիրն, դա ճիշտ չէ: Հայկական աղբյուրները հակառակն են ասում:

Դալեճիքի ավետարանի հիշատակարանում, գրիչը՝ Հովսեփ քահանան պատմում է, թե իր հայրը՝ Նահապետ նահատակվել է Կեսարիայում, որտեղ նա ձեռնարկել էր գրել այդ գիրքը. «Ի դառն ժամանակի յորում եկն երկրորդն փարաւոն խորխտալով ի քաղաքս Կեսարիա և ահիւ մեծաւ րմբռնեցան քրիստոնեայք ամենայն և նկուն գարձեալ գնաց յաշխարհն իւր և ի ճանապարհին սատակեցաւ ի թուականութեանս հայոց ՉԻՁ (1277): (Ալպոյաճյան, Պատմութիւն հայ Կեսարիոյ, էջ 559—560):

87. Ալ-Մալիք ալ-Աշրաֆ խալիլը Կալավունի որդին էր, որ հռչակվեց Աքքայի պաշարումով և գրավումով՝ 1291 թվականին և Հռոմկլայի գրավումով՝ 1292 թվականին: Նա սպանվեց 1294 թվականին:

88. Մեր պատմիչներից կոչված է «Կլայն Հռոմէական»: Թուրքերը կոչում են Ռումկալե: Միքայել Ասորու հայերեն թարգմանության մեջ «Հռոմքար»: Եփրատի եզերքի ամենից ամուր բերդաքաղաքը, արևմտյան ափի վրա, Բիրեջիկից դեպի հարավ-արևելք, իսկ Այնթափից՝ հյուսիս-արևելք:

Հայ, եվրոպացի և արաբ պատմիչները հիացմունքով են խոսում նրա մասին, այն համարելով բացարձակապես անառիկ:

Օմարին գրում է իր «Տաարիֆ»-ում «Կալաատ ալ-Մուսլիմին»— նախապես կոչված՝ Կալատ ար-Ռում: Սա մի բերդ է Քեննասրինի Ջունդից՝ Եփրատի հյուսիսարևմտյան կողմի դաշտի մեջ, Հալեբից հինգ օրվա հեռավորությամբ ոտնաքայլով և Բիրայից մի օրվա ճանապարհով դեպի արևմուտք: Եփրատն անցնում է քաղաքի ներքևից: Անառիկ բերդ է, ունի արվարձան և պարտեզներ, որոնց միջից անցնում է Մարզուբան գետակը, որը թափվում է Եփրատի մեջ: ... Այնտեղ էր բնակվում հայերի խալիֆան, և անհավատների կուռքերը մնում էին մինչև ալ-Աշրաֆ խալիլ իբն ալ-Մանսուր Կալավուն սուլթանի արշավանքը, որը եկավ պաշարեց այն ու գրավեց:

89. Հռոմկլայի անկումը մեծագույն աղետ է համարվել ժամանակակիցների կողմից: Հայ պատմիչները խորը կսկիծով են ավանդում դեպքը: «Ի թվին ՌՄՂԲ եկն Մելիք Աշրաֆ սուլտանն Մըսրոյ բազում զորօք ի վերայ Հռոմկլային և պաշարեաց զնա բազում աւուրս՝ մինչև էառ և տարաւ զՏէր Ստեփաննոս կաթուղիկոս և զաջ սուրբ Լուսաւորչին գերի ի Մսր, բազում եպիսկոպոսօք, քահանայիւք և ժողովրդօք և կեցեալ անդէն տարի մի վախճանեցաւ» (Սամուել Անեցի, շար., էջ 153): Բազմաթիվ մանրամասնություններ է բերում Ալիշանը (տե՛ս Հայապատում, էջ 500, 501, 502):

Օրբելյանը դատապարտում է Հեթում թագավորին, եղած դժբախտության մեջ տեսնելով մի աստվածային պատիժ՝ Ստեփաննոսի նախորդ կաթողիկոսի* հանդեպ թագավորի ցույց տված թշնամական վերաբերմունքի համար** (էջ 445): Նույն Օրբելյանը մանրամասն և սրտով պատմում է Հռոմկլայի գրավմանը նախորդող և հաջորդող դեպքերը (էջ 440—446): Դեպքի մասին խոսում են նաև Սմբատ սպարապետը (էջ 117) և Ներսես Պալիենցը (տե՛ս Չամչյան, Գ, էջ 383—384):

Մակրիզին պատմում է.

---

* Ակնարկում է Կոստանդին Կատուկեցուն:

** Որովհետև նա ընդդիմացել էր թագավորի լատինամոլ հակումներին:

«Հիջրի 691 թվականի ջումադա I ամսի 15-ին (1292 մայիս 4) Համաթի տեր Մալիք Մուզաֆֆարը եկավ Դամասկոս, որտեղ սուլթանը զորահանդես կատարեց։ Ասորիքի բանակն էլ շուտով հասավ և Հալեբի ճամփան բռնեց ամսի 28-ին։ Թողեց այդ քաղաքը ջումադա II ամսի 4-րդ օրը ուղղվեց դեպի Կալաաթ Ռում։ Նա բանակեց բերդաքաղաքի պարիսպների տակ՝ երեքշաբթի օրը, ամսի 8-ին (1292 մայիս 27) և բարձրացրեց քսան պատերազմական մեքենաներ, որոնցով քանդում էին պատնեշները։ Դամասկոսի նաիբը, էմիր Սանջար Շուջային, մի շղթա շինել տվեց, որը կապեցին միջնաբերդի կեռիքներին, իսկ մյուս ծայրը ամուր բևեռեցին հողի մեջ։ Զինվորներն օգտագործեցին այն՝ հարձակման ելնելու համար և ամենաբուռն կռրովով կռվեցին։ Վերջապես ալլահի շնորհիվ ամրոցը ռոնի կերպով գրավվեց շաբաթ օրը, ռաջաբ ամսի 11-ին (1292 հունիս 28), պահակազորը մորթոտվեց, կանայք ու երեխաները գերի վերցվեցին։ Հայոց պատրիարքը, որ գտնվում էր բերդում, գերի ընկավ։ Պաշարումը տևել էր 33 օր։ Սուլթանը այդ քաղաքին տվեց «Կալաաթ ալ-Մուսլիմին»* անունը և այդ անունով էլ այն ճանաչվեց։ Այնուհետև 12 հազար գերիներ տարվեցին (դեպի) զինարանը։ Այդ բերդի առջև նահատակվեց Շարաֆ-ադդին իբն Ալխադեր էմիրը։

Երբ Կալաաթ Ռումի գրավման լուրը հասավ Դամասկոս, քաղաքը զարդարվեց հանդիսավոր օրվա պես։ Նվագարանների եղանակներով այդ լուրը հաղորդվեց ամեն տեղ։ Սուլթանը Սանջար Շուջայի էմիրին նշանակեց Ասորիքի տեղակալ, որպեսզի վերաշինի Կալաաթ Մուսլումինը։ Վերաշինեցին ինչ որ պատերազմական մեքենաները և ականները քանդել էին, բայց բերդի մի քառորդ մասը մնաց ավերակ վիճակի մեջ։

Սուլթանը այնուհետև ուղղվեց դեպի Դամասկոս, որտեղ նա մուտք գործեց երկուշաբթի օրը, շաբան ամսի 20-ի (16 օգոստոս) երրորդ ժամին, իր առջևից ընթելով Կալաաթ Ռումի իշխան հայոց պատրիարքին և մեծ թվով գերիների։

Մուֆազզալ իբն Աբուլ-Ֆազայիլ պատմիչը գրում է հիջրի 691 թվականի (1292) տակ. «Ալ մալիք ալ-Աշրաֆը բանակեց Հռոմկլայի դիմաց իր ամբողջ ուժերով երեքշաբթի, ջումադա II ամսի 8-ին (1292 մայիս 27) և պաշարումը անդադար շարունակվեց մինչև ռաջաբ ամսի 11-ի շաբաթ օրը (1292 հունիս 28) ու գրավեց այն։ Սուրհանդակը մեկնեց՝ իր հետ տանելով այդ ուրախալի լուրը ավետող նամակը, որպեսզի ցրվեն բոլոր քաղաքներում և ամրոցներում»։

«էմիր Սայֆադդին իբն ալ-Մահաֆտարը պատմեց, թե պաշարումը տևեց 33 օր և բերդի դեմ ցցված բալիստների թիվն էր 19 բաղկացած հինգ «ֆրանգի» բալիստներից և 14 «սատանայական» կամ «սև ցուլ» կոչված բալիստներից։ Բերդի առաջ սպանվեցին Շարաֆադդին իբն ալ-Խաթիր, Շեհաբեդդին Ահմադ իբն Ռուքնադդին, էմիր Ջանդար՝ զորականները և սուլթանի արքունիքի թիկնապահներից զանազան պետեր»։

«Երբ սուլթանը վերադարձավ Դամասկոս, քաղաքի բնակիչները, ի պատիվ նրա, մետաքսյա կերպասներով զարդարեցին քաղաքը։ Այդ սովորություն էր միայն այն ժամանակ, երբ սուլթանը գալիս էր Եգիպտոսից։ Սուլթանը մուտք գործեց Դամասկոս՝ իր առջևից բերելով գերիներին և Հռոմկլայի տեր կաթողիկոսին»։

Հռոմկլայի գրավման թվականի մասին Մակրիզին, Աբուլ-Ֆիդան, Տաղրիբերդին տալիս են ստույգը, այսինքն՝ հիջրի 691 թվականի ռաջաբ ամսի 11-ը (շաբաթ օրը), որը համապատասխանում է մեր թվարկության 1292 թվականի հունիսի 28-ին։ Ճիշտ թվական է տալիս նաև Հեթում Պատմիչի հիշատակարանը (Հայկա-

* «Մուսուլմանների բերդ»

ական ՍՍՌ ԳԱ «Տեղեկագիր», 1948, № 10, էջ 72—73)։ Սարգիս քահանային վիճագրված ժամանակագրությունը սխալմամբ տալիս է հուլիսի 28-ը (Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 106)։

90. Էմիր Լաչինը, որ երկու տարի (1297—1299) սուլթան եղավ, ծագումով Բալթիական երկրներից էր։ Նա սկզբում որպես զինվոր մասնակցել էր Տևտոնյան ասպետների ռազմական գործողություններին՝ Հյուսիսային Եվրոպայում։ Հետո գնաց Ասորիք՝ մասնակցելու խաչակրաց ձեռնարկներին, ընդունեց իսլամական կրոնը և ծառայեց մամլուքների գնդում։ Ներքին վեճերի առթիվ բանտարկվեց ալ-Մալիք ալ-Աշրաֆ սուլթանի կողմից և մահվան դատապարտվեց։ Սակայն պարանը, որով նրան կախում էին, կտրվեց, և Կարա Սոնկուրը, որը նրա մահապատժի գործադրողն էր, նրան ազատեց։ Նույն այդ Լաչինը հետագայում սպանեց Մալիք Աշրաֆին և գրավեց նրա գահը։ Ինքն էլ զոհ գնաց դավադրության։

91. Ամիր Սլահ — Սլահտարների, այսինքն՝ զինակիրների պետ։ Այդ պաշտոնն ունեցողի գերն էր սուլթանին ներկայացնել զենքերն ու զրահը, երբ նա զգեստավորվում էր։

92. دواتدار (թանաքաման կրող)։ Պալատական դիվանի պաշտոնյա, որի պաշտոնն էր սուլթանների գրած նամակները հասցեագրելով ուղարկել իրենց տեղերը, սուլթանին ներկայացնել խնդիրներ, ծանոթություններ տալ այն անձնավորությունների մասին, որոնք պետք է ընդունվեին սուլթանի կողմից տեսակցության։

93. Պալատի մթերքների տնօրեն և վարիչ, համապատասխանում է եվրոպական մաժորդոմին։

94. Կաստուն, կամ Կաստիմ, գտնվում է Անտիոքի գավառում, լճի մոտակայքում, Կիլիկիայի հարավ-արևելյան սահմանի վրա։ Եռապարիսպ և բրգավոր բերդ է, որը կառուցեցին հույները 1061 թվականին, ապա խաչակիր Տաճարական ասպետների ձեռքն անցավ, որոնցից վերցրեց Լևոն II իր և Տրիպոլսի կոմսի միջև Անտիոքի հաջորդության մասին ծագած վեճի առիթով։

Տաճարականները զինակցելով Տրիպոլսի կոմսին, պատերազմ հայտարարեցին Լևոն II դեմ։ Լևոնը 1213 թվականին Տաճարականներից գրավեց Կաստուն բերդը։ Հռոմի պապը թելադրեց Լևոնին, որ դղյակը վերադարձնի Տաճարականներին, բայց Լևոնը դժգոհ մնաց այդ վճռից և առարկեց։ Պապը լեգատներ ուղարկեց իր վճիռը գործադրել տալու համար և երբ տեսավ, թե չի հաջողվում՝ բանադրանքի զենքը գործածեց Հայոց թագավորի դեմ։ Լևոնը առանց սարսելու այդ հարվածից, իբրև փոխ-վրեժ իր հալածանքները սաստկացրեց Տաճարականների դեմ, մինչև որ պապը ստիպվեց բանադրանքը վերացնել։

Կաստունը ծանոթ է առավելապես Բաղրաս անվամբ։ Նկարագրված է որպես սարի ծայրին, բարձր դիրքով կառուցված դժվարամատչելի բերդ։ Սանուդոն անվանում է Bagaras. Կոչվում էր նաև «Դուռն Անտիոքայ»։

Ըստ Իբն Բատուտայի՝ Բուղրաս. նա գրում է. «Թիհլաթ»-ում, թե «Բուղրասը մի ամուր դղյակ է, որը անառիկ է և որի վրա հարձակվելը ոչ ոքի մտքից չի կարող անցնել։ Նրա մոտ գտնվում են պարտեզներ և ցանված արտեր. այդ կողմից են մտնում Սսի երկիրը»։

«Տաարիֆ»-ում գրված է. «Դարպասակից մի օրվա ճանապարհով, մի սարի վերևն է գտնվում և տիրում է Հարիմի վրա։ Ունի աղբյուրներ և պարտեզներ։ Այն սահմանային կայան էր Հայոց ծովի վրա մինչև այն ժամանակ, երբ Ջահանի գրավումները տեղի ունեցան Նասր Մահմեդի կողմից՝ այդ երկրամասի մայրաքաղաք Ճևասուս»։

95. Բերդաքաղաք Տիլ-Համդունի արևելակողմում, որը 1165 թվականին նվաճեց Թորոս իշխանը։ Սմբատ Գունդստաբլը գրում է. «Ի թուին 613 սպանաւ պարոն Ստեփանէ եղբայր պարոն Թորոսի նենգութեամբ անօրէն Տունին Համուսին»։

Այս բերդի («Նաջիմա բերդ» կոչումով) պաշտպանության մասին Մակրիզին մանրամասն տեղեկություն է տալիս փոքր ինչ տարբեր կերպով։

96. Համաթի իշխանի վրանի շքեղությունը ցույց է տալիս, որ նա առանձնաշնորհյալ մի բարձրաստիճան անձնավորություն էր։

Սուլթանների պատվի նշաններից մեկն էլ այն էր, որ իրենց հագած շորերը կամ գործածած կտավները մետաքսից էին հյուսված լինում և կրում էին անձի անունը կամ պանպան զարդարանքեր՝ մետաքսից և ոսկեթելից։ Կերպասը գործելու ժամանակ հյուսվածքի առաջի կամ թևքանի միջև մտցնում էին ոսկե, արծաթե կամ տարբեր գույնի թելեր։ Սուլթաններն ու խալիֆները նման կերպասներ նվիրում էին իրենց բարձրաստիճան ծառայողներին։

97. Այս արշավանքի մասին Անեցին գրում է. «Ի ՉԽԶ թվին թագաւոր Հայոց Սմբատն էր՝ և Մսրցին եմուտ ի Կիլիկէ և առհասարակ այրեաց զգեօղ և զքաղաք և զրազումս եսպան, և զայլս գերի վարեաց։ Եւ այլք զայս ՉԽԷ (1298) թվին ասեն եղեալ և ճիշտն այն է» (էջ 153—154)։

Լաչին սուլթանը ուզեց օգտվել գահակալական այս կռիվներից, թեև Սմբատը փորձեց բարեկամական հարաբերություններ ստեղծել սուլթանի հետ և նրան իբրև նվեր ուղարկելու համար, իր Մանվել դեսպանի միջոցով, Վենետիկից մի վաճառականից 9 փերթ ոսկեդիպակ գնեց՝ 7300 նոր դրամով։

98. Հեթումի և նրա եղբայրների կռիվների մասին Աբու-լ-Ֆիդան տալիս է արժանահավատ այնպիսի տեղեկություններ, որոնց մասին հայ պատմիչներից ոմանք նախընտրել են լռությամբ անցնել։ Արաբ պատմագրին գրեթե հար և նման է արտահայտվում Սամ. Անեցու շարահարողը (տե՛ս էջ 153—154)։

Սմբատի շարահարողը գրում է. «Ի թուին ՉԽԸ ետ խեղդել Սմբատ դեղբայրն իւր պարոն Թորոս ի Բարձրբերդ և զպարոն Հեթմոյ աչքն ետ աննել ի Մօլիվոնս» (էջ 118)։ «Եւ յետ սակաւ աւուրց բռնեց զպարոն Կոստանդին պարոն Հեթում և զՍմբատն եհան երկրէ իւրմէ» (սույնը, էջ 119)։ «Երբ Հեթումը բանտից արձակվեց, նա ազնիվ վերաբերմունք ցույց չտվեց Կոստանդինին, որ իրեն ազատել էր և բռնելով նրան՝ բանտարկեց. հետո նրան և Սմբատին ուղարկեց Պոլսի կայսեր մոտ, և սույն Հեթումը թագավորության դեկը առավ իր ձեռքը՝ կրտսեր եղբայրների սերմը հատած» (Gestes des Chyprois)։

Հեթումի կուրացման մասին Աբու-լ-Ֆիդայի տեղեկությունը պետք է հավաստի համարել. դրանով վերացված կլինի երկու աչքերի կուրացումից հետո «հրաշքով» բուժված լինելու առասպելը։ Մյուս աչքի թեթևորեն վնասված լինելը հասկանալի կդարձներ նրա բուժումը։

Աբու-լ-Ֆիդայից օգտվելով, Իբն ալ-Վարդի պատմիչը այս դեպքերի մասին նման տվյալներ է հաղորդում.

99. Թիլ Համդուն: تل حمدون Ամենից ամրաշեն բերդերից էր, կառուցված Անարզաբայի հարավ-արևելյան կողմում, մի բլրի վրա։

Աբու-լ-Ֆիդան իր «Աշխարհագրության» մեջ «Տալ Համդուն» անվան տակ գրում է. «Մի ամուր բերդ է, շրջապատված յավ պարսպով և դրավում է բլրի գագաթը։ Ունի արվարձան, այգեստաններ և մի գետ։ Հողը բարեբեր է, և բերքերի առատության հետևանքով կյանքը այնտեղ շատ էժան է։ Մուսուլմանները բանդեցին այն և մինչև այսօր դեռ չի վերականգնված։ Տալ Համդունը մոտ մեկ ճանապարհաչափ

հարավ է Ջահան գետից և մոտ երկու ճանապարհաչափ հեռու՝ Սսից, Տալ Համդունից դեպի արևելք և նրա տեսողության սահմաններում բարձրանում է Համուսի բերդը»։

Թորոսը գրավեց այն 1154 թվականին։ Անդրոնիկոսը չարաչար պարտվեց այնտեղ, Կոնիայի Մասուդ սուլթանը նույնպես պարտություն կրեց 1155 թվականին։ Երբ 1185 թվականին Ռուբեն II դավաճանությամբ բռնվեց Անտիոքի իշխանից, իբրև փրկանք հանձնեցին Թիլը, բայց քիչ անց Լևոնը բռնի ուժով վերագրավեց այն։ Այսա իբրև ավատ նվիրվեց ֆրանկ ֆեոդալներին։ Քաղաքը 1273 թվականից մինչև 1300 թվականը հաճախակի գրավվեց եգիպտացիների կողմից։ Ղազանի արշավանքների ժամանակ հայերը վերագրավեցին այն։

100. Կվեցրա, նաև Կովառա կամ Կովրա։

101. Իմա Նղեյր — Nigrinum, Նղիր, «Նղրոյ բերդ» անուններով հիշված։ Նղրո բերդի առաջին տերն էր Կոստանդինը, որի Պաղտին որդին մարաջախտ էր 1319 թվականին, իսկ նրա ավագ եղբայր Հեթումը ջամբռլայնի պաշտոն ուներ։

102. Ամրոց՝ Ջահան գետի ափին, ձորի մեջ, սեպաձև քարարլրի գագաթին։ Կոչվում է նաև Սարվանի քար կամ Սարվան։ Արաբների մոտ՝ صروندكار Եվրոպացի հեղինակները բառի թարգմանությամբ կոչել են La Roche։ Ըստ Աբու-լ-Ֆիդայի, «Սարֆանդքարը ղորեղ ամրոց է, ժայռի վրա կառուցված, ձորի մեջ։ Այն մի կողմից պարիսպ չունի և ժայռը կատարում է այդ դերը»։

Նրա իրական տեղը հայտնի չէ. ըստ Ալիշանի տեղադրության պետք է լինի մոտավորապես Ալեքսանդրետից մինչև Մարաշ երկարած մի ուղիղ գծի ճիշտ մեջտեղը, Ջայհան գետի արևելակողմում։ Տանկրետը գրավեց այն 1101 թվականին և բերդաքաղաքը միացրեց Անտիոքի իշխանների ֆեոդալական կալվածին։ Լևոն I ետ վերցրեց Անտիոքի իշխանից 1135 թվականին։ Անտիոքի Ռեյմոնդ իշխանը խարդախությամբ բռնեց Լևոնին և բանտարկեց։ Լևոնն ազատվեց երկու ամիս անց, իր հակառակորդին հանձնելով Մամեստիան, Ադանան, Սարվանդիքարը, վճարելով 60 հազար դահեկան և իր որդուն պատանդ տալով։ Ազատություն ստանալով Լևոնը մերժեց բռնությամբ կորզված վայրերի հանձնումը, հարձակվեց Ռեյմոնդի վրա և ետ վերցրեց արդեն հանձնված քաղաքները։

«Եւ ի ՇՁ ամին էառ Լեւոն դքարն Սարւանդի և եղև խռովութիւն ի մէջ ֆրանկին և Լեւոնի» (Ս. Անեցի, էջ 129)։

Մառիի ճակատամարտից հետո եգիպտացիները չկարողացան գրավել այս բերդը, որը կործանվեց որոշ ժամանակ անց երկրաշարժից, բայց շուտով վերակառուցվեց։

103. Իբն ալ-Վարդին նույնպես գրում է հիջրի 701 թվականի տակ. «Կահիրեից մեծ բանակով շարժվեցին Բադրադդին Բեքտաշ Ամրսլահը և Այբեք խազնեդարը և Հասան Համաթ։ Այնտեղ հրաման հասավ քաղաքի կառավարիչ Քետբուղային, որ նրանց հետ շարժվի դեպի Սսի երկիրը։ Նրանք ճամփա ելան շավալ ամսի 25-ին և հասան Հալեպ՝ զուլկադա ամսի առաջին օրը, որտեղից ճանապարհվեցին ամսի 3-ին (1302 հունիս 30) և մտան Բաղրասի կիրճը նույն ամսի 7-ին և արշավեցին Սսի վրա։ Ավերեցին, հրդեհեցին ծառերն ու բերքերը, կողոպտեցին և, ինչպես ասել է հեղինակը (Ալլահը ողորմի նրան), գրավեցինք բերդի շրջակայքից բազմաթիվ ավար, որը թողել էին հայերը ու փախել սարսափից։ Նրանցից հարկ վերցրինք և վերադարձանք Հալեպ զուլկադա ամսի 19-ին, իսկ այնտեղից՝ Համաթ, ամսի 21-ին, երբ սկսվեց Ջայնադդին Քետբուղայի հիվանդությունը»։ Այս արշավանքի մասին խոսելով, Մակրիզին ասում է, թե նրա դրդապատճառն այն էր, որ Սսի թագավորը մերժել էր վճարել տարեկան հարկը և անցել էր Ղազանի կողմը։

104. Այս արշավանքն ու դեպքերը ավանդում է նաև Մակրիզին։ Հայոց թագավորը, ըստ պատմիչի, սաստիկ վշտանում է այդ իշխաններից, որոնք բերդը հանձնել էին և թելադրում է սուլթանին, որ նրանց պատժի՝ իբրև նախորդ տարվա հարկի վճարումը մերժողների։

105. Քաղաքական դեպքերի այս շփոթ և վտանգալից ժամանակ, Հեթումը երրորդ անգամ հրաժարվեց գահից և վանականի զգեստ հագավ։ Ամուսնացած չլինելով՝ իր Թորոս եղբոր որդուն՝ Լևոն IV փոխանցեց գահը, ինքը պահելով թագավորահայր տիտղոսը և գործոն մասնակցություն ունենալով պետական գործերի մեջ։ Երկու թագավորները 1307 թվականին Սսում գումարել տվեցին եկեղեցական ժողով, որտեղ ծիսական և դավանական մի շարք փոփոխություններ մտցրեցին, տեղի տալով լատինների պահանջին։ Որոշ ժամանակ անց Ադանայի ժողովն հաստատեց այդ որոշումները, որոնք երբ սկսեցին գործադրվել, ժողովուրդը հուզվեց, և այդ հուզումը փոխվեց խռովության այն աստիճան, որ նոր կանոնների գործադրությունը անհնար դարձավ։

Իշխաններն էլ, որոնք հակառակ էին թագավորին, օգտվեցին առիթից՝ իրենց առանձին շահերը հետապնդելու համար։ Նրանք դիմեցին թաթարների Պիլարղու զորավարին և դրդեցին նրան Հեթումի և Լևոնի դեմ։ Պիլարղուն քաջալերված այդ բանից, բայց ունենալով նաև այլ նկատառումներ, եկավ Անարզաբա և իր մոտ հրավիրեց Լևոնին, Հեթումին և 40 իշխանների, որոնց մեջ նաև Օշին Գունդստաբլին և սպանեց նրանց 1307 թվականի նոյեմբերի 18-ին։ Այս ոճիրի դրդապատճառը ավելի խորն էր։ Պիլարղուն պահանջում էր Անարզաբայի ամրոցը, որպեսզի այնտեղ ամրանալով՝ հետզհետե ուրիշ վայրեր ևս գրավի։ Հեթումը հասկացավ նրա նպատակը և առարկեց, թե թագավորությունը պատկանում է իր եղբոր որդի Լևոնին և ինքը պաշտոն ունի միայն կառավարելու խորհուրդ տվեց Լևոնին, որ պատասխանի, թե իր բոլոր դղյակները հանձնարարել է աստծուն և պապին, որով չի կարող հանձնել որևէ դղյակ առանց պապի արտոնության։ Երբ տեսավ, թե Պիլարղուն շարունակում է պնդել, իր պարոնների հետ խորհրդակցելու պատրվակի տակ ուշացրեց պատասխանը և այդ միջոցին դեսպան ուղարկեց Կիպրոս և բանակ վարձելով փոխադրեց Կիլիկիա։ Լսելով այդ բանը Պիլարղուն դիմեց դավադրության այն միջոցին, որ տեսանք։

«ՁԾԶ (1307) յամսեանն նոյեմբերի ԺԷ սպանաւ աւագ պարոն Հայոց Հեթում և որդին պարոն Թորոսին եղբօրն աւագ պարոնիս և Լևոն թագաւորն Հայոց և այլ իշխանք զաւով ի գիշերի ի ստորոտն Անարզաբու դղեկին» (Հեթում, Ժամանակագրութիւն, տես՝ նաև Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 88—89)։

Սամուել Անեցին գրում է. «Ի ՁԾԶ թուին եկեալ նենգութեամբ յաշխարհն Կիլիկեցւոց՝ որոյ* աղագաւ անօրէն Նուինն Պուլարղու՝ և կոչեցեալ առ ինքն խորամանկութեամբ՝ իբրև ի խոր՞ուրդ զաւագ պարոնն Հեթում, և նա ոչ գիտացեալ զնենգութիւն նորա, գնաց առ նա՝ ունելով ընդ իւր զնոր օծեալ տղայ թագաւորն Լևոն զեղբօր որդին իւր՝ զՕշին սինէգալն՝ որ յայնժամ Գունդստաբլն էր և զայլ բազում իշխանս, որ իբրև եկին առ նա՝ յարեաւ ի վերայ և եսպան զամենեսին՝ առ ոտս Անարզաբու, և կամէր զԿիլիկիայ յինքն յափշտակել։ Բայց ի խնամոցն Աստուծոյ ոչ տարաւ ընդ իւր զերայրն իւր զՕշինն, որ իբրև լուաւ զեղեալսն՝ իսկոյն եկն ի բերդն Սսայ՝ և ժողովեաց զմնացեալ իշխանսն և զօրս բազումս և մարտուցեալ

* Կարծում եմ, թե լինելու է «որսոյ աղագաւ»— Հ. Ն.։

ընդ պղծոյն՝ եհան ի յերկրէն. և մնաց մինչև եկն եղբայրն իւր Ալինախն* ի Ղանէն զի անդ էր գնացեալ. և ապա օծաւ Օշինն թագաւոր Հայոց» (Սամուէլ Անեցի, էջ 155—156)։ Տե՛ս նաև Սմբատ շար., էջ 119։

Այդ ոճիրի դեմ բողոքելու համար Ալինախը գնաց խանի մոտ. «Ի սոյն ամի կրտսեր եղբայրն պարոն Հեթմոյ՝ Տէրն Տարսնոյ պարոն Ալինախն գնար առ Խարպանտա խանն և ետ սպանանել զՊիլարղունն» (Սմբատ, շար. էջ 119)։ Պիլարղուի ոճիրների մասին Դարտելը վիպական և արկածային պատմություն է հյուսում (էջ 24, 25, 26)։

Լատին ժամանակագիրներից մեկը պատմում է այս դեպքի մասին հետևյալը. «Երբ Լևոն Մանուկը տեսավ, որ սպանում են իր հորեղբորը և մյուսներին, փախավ գնաց՝ կանանց վրանների մեջ իր կյանքը փրկելու համար. բայց այդ չօգնեց իրեն, որովհետև թաթարները գնացին և կանանց մոտից դուրս բերին նրան ու գլխատեցին։ Մանուկը դեռ տասը տարեկան չկար» (Gestes des Chyprois)։ Ըստ ուրիշ աղբյուրների՝ «Երբ մտավ Պիլարղուի վրանը, բռնեցին և նրա գլուխը կտրեցին. հետո սպանեցին նաև փոքր թագավոր Լևոն IV (Թորոսի և Մարգարիտ Լուզինյանի որդուն), Գունդստաբլին, Մարաջախտին, ինչպես նաև վեց հայ ասպետների։ Նա (Պիլարղուն) երեք օր մնաց այնտեղ, հուսալով, որ կկարողանա հայերի թագավորությանը տիրանալ սրանց մահվան հետևանքով»։ Բայց տեսնելով, որ հայերը պատրաստվում են դիմադրել իրեն, նա «վախեցավ և փախավ իր երկիրը» (Cronica di Francesco Amati)։

Պիլարղուի գործունեության մասին Աբուլ-Կասիմ Աբդալլա իբն Ալի ալ-Քաշանին «Տարիխի Օլջայդու»-ի մեջ հետևյալ տեղեկություններն է տալիս (տե՛ս Recueil daes historiens des. Croisades Documents armeniens, t. II. էջ 16, ծան. 3). «Պիլարղու Ղազին կամ Բուլարղուին, Տողաչար Նուինի ազգականը, ստացել էր սուլթան Մուհամմադ Խուդաբենդեհ Օլջայդուից մի զորաբաժնի հրամանատարությունը՝ Իրենչի Նուինի բանակում։ Երբ այս վերջինը հիջրի 606 թվականին (1306) Ռումի երկրի զինվորական կառավարիչ նշանակվեց, Պիլարղուն իր զորամասով եկավ հաստատվելու Կիլիկիայում։ Իր զինվորները մուսուլման էին, ինքն էլ նորադարձի եռանդով լի էր։ Հայերը ախոռի էին վերածել Մամուն խալիֆի աղջկա՝ Այիշեի դերեզմանը, Սսի մոտ։ Սրբապղծված այդ շիրիմը տեսնելով, Պիլարղուն և իր զինվորները զայրացան և ամեն տեսակ ծայրահեղությունների դիմեցին։ Լևոնը դանգատվեց Օլջայդուի մոտ և տեղեկացրեց Եգիպտոսի սուլթան ալ-Մալիք ան-Նասր իբն Կալավունին, թե անկարող է վճարել տարեկան հարկը։ Ալ-Մալիք ան-Նասրը մարդ ուղարկեց Պիլարղուին, որպեսզի նա այդ առթիվ բացատրություն պահանջի Հայոց թագավորից։ Պիլարղուն հրավիրեց Լևոնին, որ գա հանդիպելու իրեն՝ իր վրանում։ Թագավորը գնաց՝ Հեթում II և երեք պարոնների ընկերակցությամբ։ Երբ նա Պիլարղուի առաջ եկավ, Պիլարղուն տեղից բարձրացավ և նրա գլուխը կտրեց սրի հարվածով՝ արտասանելով «Տեքբիրի» բանաձևը**։ Լսելով իրենց զորապետի ձայնը, զինվորները հարձակվեցին Լևոնի հետևորդների վրա և սպանեցին նրանց»։

Նույն հեղինակը ավելացնում է, որ «Պիլարղուն Լևոնից արտոնություն էր ձեռք բերել իր 20 զինվորներին այդ քաղաքը (Անարզաբա) մտցնելու։ Երբ թագավորի սպանման լուրն ստացվեց, քաղաքի կառավարիչը նրանց բոլորին էլ խողխո-

---

* Այս Ալինախը Հեթումի վեց եղբայրներից մեկն էր. մահացավ արկածով 1317 թվականին կոչվում էր նաև Ռուբեն և Տարսոնի, Լամբրոնի, Մոլեվոնի և Կուկլակի տերն էր։

** Այս բանաձևն է «Ալլահու Աքբար» (Աստված մեծ է)։

դեց։ Պիլարղուն եկավ պաշարեց քաղաքը, բայց իր բոլոր հարձակումներն ապարդյուն անցան»։ Gestes des Chyprois-ի մեջ գրված է. «Երբ այդ բանը պատահեց, Հեթումի եղբայրները, Օշինը և Ալինախը ամրացան իրենց դղյակներում. և երբ թաթարները տեսան, թե ոչինչ չեն կարող անել, ետ քաշվեցին՝ զղջալով կատարվածի առթիվ և վախենալով, որ Ղազանը նրանց կվնասի, ինչպես որ հետո եղավ»։

Նույն խրոնիկում ասված է, թե «Ղազան թագավորը մեծ վիշտ զգաց այդ բանից և շատ վրդովվեց կատարված նենգության համար և իր թիկնապահ ձիավորին ուղարկեց Թուրքիա, հանձնարարելով նրան՝ գլխատել այն մարդկանց, որոնք սպանել էին հայոց թագավորին և 11 հետևորդներին։ Այնուհետև Ալինախը վերադարձավ Հայաստան» (Historiens des Croisades, Doc. arm., էջ 868)։

«Թարիխ Օլջայթու»-ում գրված է. «Լևոն թագավորի հորեղբայր Ալինախը գնաց Օլջայթուի արքունիքը արդարություն ձեռք բերելու իր եղբոր որդու սպանության համար։ Պիլարղուն նրան ձերբակալել տվեց Սվազում, բայց Իրենչինը, որ Պարսկաստանից էր վերադառնում, նրան ազատ արձակեց։ Ալինախը և Պիլարղուն ներկայացան մոնղոլ սուլթանի առաջ և պաշտպանեցին իրենց դատը։ Պիլարղուն անպարտ արձակվեց, բայց մի կարճ ժամանակից հետո սպանվեց իր թշնամիների ցուցմունքների վրա» (Recneil des historiens des Croisades, էջ 17, ծան. 1 և 2)։

Խանի առաջ Պիլարղուն արդարանում էր, ասելով թե Հեթումը մերժել է Սսի մեջ մզկիթ կառուցելու իր առաջարկը։ Այդ փաստը, սակայն, չազդեց խանի վրա, որը մահմեդական կրոնն ընդունած լինելով հանդերձ քաղաքական նկատառումներով բավարարություն պետք է տար հայերին, մահապատժի ենթարկելով Պիլարղունին։

106. 1320 թվականի արշավանքի մասին Իբն ալ-Վարդի պատմիչը հիջրի 720 թվականի տակ գրում է. «Տարի 11 ամսում (1320 մայիս 14-հունիս 9) Մալիք Նասր սուլթանը հանձնարարեց իր որդերին, որին բերել էր Ղփչախից*, որպեսզի մեծ թվով մուսուլման զինվորներով ավերի Սսի երկիրը։ Նրանք 17 օր շարունակ ավերեցին, ծառերը կտրատեցին, հրդեհեցին։ Իսկ այդ արշավանքի ընթացքում նրանցից մոտ 1000 ասորի ձիավոր խեղդվեց Ջահան գետի մեջ։ ...Նույն տարվա Ջումադալ-ուխրա ամսում (1320 հուլիս 9—օգոստոս 6) Տրիպոլսի իշխան Կարդայր եգիպտական զորքի հետ արշավեց հայոց երկիրը 20 հազարից ավելի զորքով։ Բայց նրանց մի մասը խեղդվեց Ջահան գետում, դրանց թվում չորս էմիրներ։ Բանակները պաշարեցին Սիսը, հրդեհեցին թագավորի պալատը և կտրատեցին ծառերը։ Նրանք ավերեցին Մսիսը, քանդեցին Այասի պարիսպները, մեծ վնասներ հասցրին նաև Տարսոնին, որտեղ հրդեհեցին ծառերը։ Երբ նրանք վերադառնալիս հասել էին Ջահան գետը, այնտեղ մի մարդ լուր տվեց, թե Սսի թագավորը մահացել է։ Սա նա էր, որ թագավորել էր իր հոր մահից հետո։ Նրա հայրը Ղազան խանի տարին Դամասկոս էր եկել**։

Եգիպտացիների 1320 թվականի արշավանքը XVI դարի պատմիչ Floris Bustron-ը իր „Historia ovvero Commentarii di Cipro“ գործի մեջ դնում է 1318 թվականի տակ, որի հետևանքով, ասում է, բազմաթիվ հայեր գնացին

---

* Հավանորեն ակնարկում է Հալեպի սուլթանական տեղակալ Ալտուն Բուղային։

** Ակնարկում է Օշին թագավորին։ Արաբ պատմագիրը, սակայն, սխալվում է հաջորդ կետում, որովհետև Հեթումն էր, որ մասնակցել էր Ղազանի արշավանքին, իսկ նա Օշինի եղբայրն էր, և ոչ թե հայրը։

տպատանելու Կիպրոսում: Սակայն 1318 թվականին Կիլիկիա են արշավել Կարամանների և Իկոնիայի սելջուկյան հրոսակախմբերը: Նրանք ասպատակեցին Տարսոնի շրջակայքը: Օշինը նրանց դեմ ուղարկեց Կոռիկոսի Օշին Պայլին, որը Պոմպեոպոլսո կամրջի ծայրին հաղթանակ տարավ ու նրանց փախցրեց Կիլիկիայից:

107. Օշինը մահացավ 1320 հուլիսի 20-ին: «Ի թուին ՉԿԹ (1320) հանգեաւ ի Քրիստոս թագաւորն Օշին և ի սոյն ամի եղև շմոր, զի զօրք Մսրայ աւերեցին զԿիլիկիայ: Ի թուին ՉԿԹ կոտորեցին զօրքն հայոց զզօրսն Մսրայ առաջի Մարիքարկու և ի սահմանս Այասու և խոցեալ յանօրինացն մեծ իշխանն տէր Կանչոյն պարոն Կիօզին և մեռաւ» (Սմբատ, շար, էջ 120):

108. Ներքին շփոթությունների մի շրջան էր սա: Օշինի մահից հետո, նրա մանուկ որդին՝ Լևոնը (1320—1342) թագավոր օծվեց և հանձնվեց Կոռիկոսի Օշին իշխանից, նրա ավագ եղբոր պարոն Գունդստաբլ Կոստանդին Պայլից, պարոն Հեթում Նղրեցուց և Կոստանդին Գ. Դրազարկեցի կաթողիկոսից կազմված խնամակալական խորհրդին: Կոռիկոսի Օշին իշխանը թագավորին ամուսնացրեց իր աղջկա հետ, իսկ ինքը ամուսնացավ Հովհաննա մայր թագուհու հետ, իր եղբայր Կոստանդինին էլ սպարապետ նշանակեց ու այսպիսով, գործերը վարեց ինքնագլուխ կերպով: Իշխանները դժգոհելով այս կարգադրությունից՝ վեճեր ծավալեցին, որոնք պատճառ եղան արտաքին նոր սպառնալիքների: «Ի ՉՀ (1321) թուին եկն անօրէն Նուինն Թամուրտաշն որդի Չօպանին յերկիրն Սսոյ՝ և զբազում վնաս գործեաց զբազումս եսպան և զբազումս գերի վարեաց և եղ ի Հոռոմս» (Սամուել Անեցի, շար. էջ 158):

Այդ արշավանքի ժամանակ թագավորը և բազմաթիվ ժողովուրդ ապաստանվեցին Այասի նավահանգստում:

«ՉՀ ի սոյն ամսոյ շաւ զօրօք Հոռմաց պարոն Տամուրտաշն ի Կիլիկիայս առ ի բառնալ զքրիստոնէութիւնն և զբազումս գերեաց և եղ ամաչեցեալ և գնաց» (Սմբատ, շար., էջ 121, տես նաև Չամչյան, էջ 319):

Արտաքին վտանգների առաջն առնելու համար Լևոն թագավորը դիմեց լատիններին, բայց ապարդյուն: 1322 թվականին Նասր սուլթանը և Թիմուրթաշը, որը Իկոնիայի կողմն էր իշխում, համաձայնեցրին իրենց գործողությունները: Թիմուրթաշը մտավ Կիլիկիա և ասպատակեց: Նրա քաշվելուց հետո նոր դեգեր արշավեցին:

Լևոնը կրկին անգամ օգնություն խնդրեց, և սուլթանը ի պատասխան որա կազմակերպեց մի նոր արշավանք: «Իսկ ի ՉՀԱ թվին՝ Մսրցին եկն յաշխարհն Կիլիկիոյ զբազում վնաս և նա գործեաց, ընդ որս և զԱտանայ այրեաց և գրեթէ նորին քակեաց» (Սամուել Անեցի, շար. էջ 158):

109. Իմա Սահել: Այսպես է կոչվում Լիբանանի ծովեզերյա նահանգը: Հայ պատմիչներից հաճախ հիշատակված է «Սահլ» ձևով:

110. Աբու-լ-Ֆիդան իր աշխարհագրության մեջ գրում է. «Փոքր Հայաստանի մեջ է գտնվում Այասը, որ ծովեզերյա մեծ քաղաք է: Ունի գեղեցիկ նավամատույց, որը սպասարկում է ամբողջ երկրին: Պաշտպանության համար ֆրանկները այդ նավահանգստից, ոչ շատ հեռու՝ ծովի վրա կառուցեցին մի բուրգ, որ նմանում է բերդի: Այասից դեպի Բաղրաս երկու օրվա ճանապարհ է, իսկ նույն քաղաքից դեպի Տիլհամդուն՝ մոտ մեկ օրվա ճանապարհ: Այն օրից, երբ մուսուլմանները ֆրանկներից վերագրավեցին ծովեզերյա քաղաքները, ինչպես Տրիպոլիս, Ակրան և այլն, ֆրանկները շատ հազվադեպ են երևում Ասորիքի նավահանգիստներում, որոնք մուսուլմանների ձեռքում են գտնվում: Նրանք իրենց ուշադրությունը դարձրին Այասի վրա, որը պատկանում էր քրիստոնյաներին: Այսպիսով, քաղաքը դարձել է մի հռչա-

կավոր նավահանգիստ և կարևոր հանդիպման վայր ցամաքի և ծովի առևտրականների համար»։

«Կիլիկիայի այս առևտրական մեծ նավահանգիստը հին Եգիպտոսն է՝ Aegee, որը կառուցված է Պյուռամոս գետի արևելյան կողմում, ծովափին, Ռաս ալ-Խանզիր կոչված հրվանդանի վրա, որը ուղղվում է Ասորիքի հյուսիսային կողմը։ Ծովը այդ վայրում սեղմված է երկու ցամաքների միջև, հին ժամանակներում կոչվում էր Իսոսի ծոց։ Միջին դարում այդ ծովը կոչվեց նաև Հայոց ծով, այժմ՝ Ալեքսանդրետի ծոց» (V. Langlois, Rapport sur l'exploration archeologique de la Cilicie et de la Petite Armenie էջ 51)։

Թովմաս Ռարունին անվանում է այն «Պանծալի Այաս», իսկ մի ուրիշ տեղ՝ «Նաւահանգիստ Նաւաց բազմաց»։

Այասը, որ այդ դարում հայկական Կիլիկիայի մեծագույն նավահանգիստ էր, Միջերկրական ծովի բոլոր նավահանգիստների մեջ դրավում էր առաջնակարգ տեղ՝ իր նավակայաններով, ամրարտակներով, ցամաքային և ծովային բերդերով, իր ծովափով, «Բալու» կոչված մթերանոցներով, բաժտունով։ Ծովային բերդը ամրացված էր մի կղզյակի վրա և ամբարտակով միացված էր ցամաքային բերդին։

Այասը միջազգային շուկա էր, որտեղ հայ բնակչության հետ մեկտեղ ապրում էին ամեն ազգի վաճառականներ և արհեստավորներ։ Այստեղ նրանք հաստատել էին իրենց վաճառատները, մթերանոցները, առևտրական և ֆինանսական հիմնարկությունները, հյուպատոսական ապարանքները, եկեղեցիներն ու վանական դպրոցները։

Այասը ուղիղ ճանապարհով հաղորդակցության մեջ էր Սեբաստիայի, Դիարբեքիրի, Էրզրումի, Թավրիզի և Բաղդադի հետ։ Այասում վաճառվում էին նույնիսկ հնդկական ապրանքներ։ Տրապիզոնի և Սև ծովի նավահանգիստների միջոցով նա կապ էր պահպանում Ռուսաստանի և Բուլղարիայի հետ։ Կապ ուներ նաև Հալեպի և Դամասկոսի հետ, որտեղ հանդիպում էին Արաբիայի և Եգիպտոսի կարավանները։ Այդ նավահանգիստն էր, որ եվրոպացի ուղևորների առաջ բացեց Փոքր Ասիայի ճանապարհները՝ սելջուկների տիրապետության ժամանակ։ Այդ էր պատճառը, որ մոնղոլները հովանավորում էին Կիլիկիայի հայոց թագավորներին և պաշտպանում նրանց թուրքերի և եգիպտացիների հարձակումների դեմ՝ իրենց առևտրի ճանապարհը ապահովելու մտահոգությամբ։

111. Կոռիկոսի մանրամասն նկարագիրը տեսնել Ալիշանի «Սիսուան»-ի մեջ, էջ 334 և հաջորդ էջերում։

Նշանավոր բերդաքաղաք էր Կիլիկիայի արևմտյան սահմանի վրա և Միջերկրականի եզերքին։ Արևմտյան պատմիչները կոչում են Courc։ Նա ուներ մի ցամաքային բազմանկյունի բերդ և մի հնգանկյունի ծովային բերդ։ Լևոնը սկսեց կառուցել այն 1206 թվականին, իսկ Հեթումն ավարտեց 1251 թվականին։ Լանգլուան գրում է, թե Կոռիկոսի ծովային ղղյակում հին ժամանակ Արքեղայոսը պահել էր իր գանձերը։ Այդ բերդը ցամաքային բերդին կապված էր ջրմուղով, որ քաղաքի ջուրը բերում էր այնտեղ (V. Langlois, Rapport sur l'exploration archéologique de la Cilicie et de la Petite Armenie, էջ 7)։

Ռաբբի Բենիամին Տուդելացին իր ուղևորության մեջ գրում է. «Կիպրոսից Կոռիկոս երկու օրվա ճանապարհ է և այն սահմանագիծն է Արամի, որը կոչվում է Արմենիա։ Այնտեղ են հասնում Թորոսի, լեռների արքայի, Հայաստանի վեհապետի կայսրության սահմանները»։

112. «Ի ՉԼԹ թվին առաքեաց թագաւորն Լևոն զօրս ի յԱտանայ՝ և ըմբռնեաց զՕշին Տէրն Կոռիկոսու և զեղբայր նորին զԿոստանդին Գունդստապլն՝ և

հսպան ի սայրելոյ իշխանացն՝ և ի քսու արանց՝ եթե խորհեալ են բառնալ զքեզ՝ և ինքեանք թագաւորել։ Եւ առաքեաց զՕշնի գլուխն ի Մըսր առ Մելիք Նասր սուլտանն, և զեղբօր նորին յարևելս առ Բուսայիտ ղանն. եսպան և զթագուհին իւր յաղագս աղտեղի գործոց նորա և էառ իւր թագուհի ի ֆռանգաց զդուստր թագաւորին Սիկիլիոյ կղզոյն» (Սամուել Անեցի, շար., էջ. 158)։

113. Այն պաշտոնյան է, որի պարտականությունն էր կազմակերպել հյուրերի ընդունելությունը։

Հեթումի ժամանակագրության մի տարբերակի մեջ՝ «ՉՀԸ (1329) Լևոն թագաւորն որդին Աւշնի թագօրի էսպան զպարոն Աւշին Կոռիկասոյ տէրն ու զիր եղբայրն, որ էր իր հայրգիր, և ետ զբ (2) ոսին գլուխն տանել ի Մըսր առ Մելէք Նասրն» («Մանր ժամանակագրություններ», հատ. 1, էջ 88)։

Կոռիկոսի իշխան Օշին Պայլը և նրա եղբայր Կոստանդին Գունդստաբլը Հեթում պատմիչի որդիներն էին։ Լևոն IV նրանց սպանեց 1329 թվականի հունվարի 26-ին («Մանր ժամանակագրություններ», հատ. 1, էջ 100 ծանոթ. 134)։

Լևոնի այս արարքի դրդապատճառները մեկից ավելի էին։ Տարակույս չկա, որ նա չափահասության հասած լինելով, ինչպես արաբ պատմիչը մատնանշում է, պետք է ձգտեր ազատվել իրենից վեր գտնվող և իրեն հրամայելու վարժ անձերի ազդեցությունից։ Դարձյալ հավանական է, որ երիտասարդ թագավորը հիմք ուներ կասկածելու, թե Օշինը և յուրայինները ձգտում են տիրանալ գահին։ Կարելի է եզրակացնել, որ Լևոնի լատինամոլ ձգտումները նույնպես դեր են ունեցել այդ գործում, որովհետև «կարգեաց իշխան Կոռիկոսայ զՊռամոնդ Լուսինեան զմի ումն ի լատին ազգականաց իւրոց և կոչեցեալ առ ինքն զհօրաքեռորդի իւր զՅովհաննէս զեղբօր որդի արքային Կիպրոսի՝ զծնեալն ի Զաբլունայ, որ փախուցեալ էր յերեսաց Օշնի Պայլի, զնա կացոյց Պայլ կամ իշխան իշխանաց։ Այս Յովհաննէս է այն՝ որ ի գիրս հայոց Ճիւան կոչի, ի հօրէ լատին և ի մօրէ հայ որ և թագաւորեաց զկնի Լևոնի» (Չամչյան, հատ. Գ, էջ 333)։

114. Հակառակ հայ-եգիպտական դաշնագրի, մուսուլմանների հարձակումները Կիլիկիայի վրա չէին դադարում։

Սուլթան Մալիք Նասրը դաշնագրով կապված լինելով՝ չհարձակվեց, բայց թույլ տվեց այդ անել Հալեբի Ալթուն Բուղա էմիրին։ Սա հալեբյան գնդերով առաջացավ պովեզերյա դաշտային վայրերի վրա, գրավեց Մսիսը, Ադանան, հասավ մինչև Տարսոն։ Ապա, ասում է Իբն Իյասը, «շարժվեց Սսի վրա և 735 թվականի ռամազան ամսի 17-ին (1335 մայիս 12) պաշարեց այն, ավերեց շրջակա գյուղերը և մոտ 300 գերիներ տարավ։ Երբ այս լուրը հասավ Այաս, այնտեղի հայերը բռնեցին բոլոր մահմեդականներին և մի մեծ շենքի մեջ փակելով այրեցին շուրջ հազար հոգու։ Եվ այս պատահեց ճիշտ տոնի օրը»*։ 1337 թվականի մայիսի 5-ին Այասը երեք օրով պաշարվեց, բայց բանակը հրաման ստացավ վերադառնալ՝ հայոց թագավորի հետ համաձայնություն կնքված լինելու պատճառով։ Այդ համաձայնագրով սուլթանին մնում էր Այասը, Ջայհանի արևելյան հողամասը՝ իր բերդերով ու քաղաքներով, որոնց մեջ՝ Մսիսը, Համուդան, Կովեյրան, Հարունիան, Սարվանդիքարը, Փայասը, Նաջիման, Նոդեյրը։ Մահմեդականներն այս առիթով մի անգամ ևս ավերեցին Այասի ծովաբերդը։ Այս կորուստները խիստ ծանր եղան Կիլիկիայի թագավորության համար, որը, ինչպես ասում է Իբն Վարդին՝ «անհոգի մի դիակ էր դառնում կորցնելով այդ երկրները»։ Եգիպտական զորքը Մալիք Յումար էմիրի հրամանի տակ, 16 հազար հեծյալով, մնաց Այասի մոտ՝ մինչև որ այդ հողերը հանձնըվեցին։

* Մայիսի 25-ի մուսուլմանական մեծ տոնը։

115. Ակնարկվում է Գվիդոն Լուզինյանը, որը 1342 թվականին հաջորդեց Լևոն V: Գվիդոնը Լևոնի հորաքրոջ՝ Իզաբելի և Երուսաղեմի Գունդստաբլ* Ամավրի դը Լուզինյանի որդին էր: Նա ուրեմն օտարական էր**, որ համառորեն հետապնդեց լատինների հետ մերձեցման ծրագիրը և կարամանցիների ու եգիպտացիների հետ անհաշտ թշնամության քաղաքականությունը: Հակառակորդ իշխանները սպանեցին նրան 1344 թվականի նոյեմբերի 17-ին: Սպանեցին նաև նրա եղբորը՝ Կոռիկոսի կոմս Բոհեմոնդին և 300 ֆրանկ ասպետների, որոնց իր հետ Կիլիկիա էր բերել Գվիդոնը:

Այս շրջանը Կիլիկիայի հայոց պատմության մեջ բավարար չափով չի լուսաբանվել: Աբու-լ-Ֆիդան ասում է, թե հայերը սպանեցին իրենց թագավոր Գունդստաբլին. արդ Գունդստաբլի պաշտոնը վարում էր Գվիդոնի եղբայր Ժանը, որը առժամաբար վարել էր գործերը՝ մինչև Գվիդոնի Կ. Պոլսից գալը (իր գահը գրավելու համար): Բայց նա, ըստ Դարդելի, արդեն մահացել էր նույն տարվա օգոստոսի 17-ին: Այդ Ժան-Հովհաննեսի որդին էր՝ Լևոն VI վերջին թագավորը: Գվիդոնի մասին Չամչյանը գրում է. «Այնչափ անպիտան և անարի երևեցաւ ի Կիլիկիա եղբայր սորա Յովհաննէս Կոստանդին (?) թագաւոր հայոց. և ոչ միայն անպիտան, այլև խռովարար և անարգու ազգին, որով և ձեռներէց լեալ յանարգ գործս արար բազում ինչ անհաճոյ իշխանաց և զորաց իւրոց. փոփոխեաց և զարքունիս իւր, յայլ իմն տարազ յոռի և խուռն: Ի վերայ այսր ամենայնի ի բաց թողեալ զփոյթ խնամոց ազգին՝ հրաման ետուն սաստիկ զի ամենքին լքեալ զհայութին վարեսցին ըստ արևմտեայց յամենայն ինչս, և եկեղեցականք ի պաշտամունս իւրեանց ըստ ունիթոռացն: Ընդ այս գործ սորա ոչ ևս հանդուրժեալ զորաց հայոց յարեան ի վերայ նորա և սպանին զնա, յետ գալոյ նորա ի թագաւորութեան իբր ամ մի» (Չամչյան, Գ հատոր, էջ 347—348).

Հեթումի ժամանակագրության մի տարբերակում ասված է. «ՌՅԽԱ (1341) մեռ եղբայր Յոհաննիսի ամս Ի: Զսայ ընդ եղբօրն իւր հայերն սպանին» (Մանր ժամանակագրություն, հատ. I, էջ 89):

116. Լևոնային ամրոց, որ գտնվում էր Ջայհանի վտակ Թեքիր-սու գետակի ձորի վերում, Չեյթունի հարավ-արևմտյան կողմում՝ Վահկա բերդի մոտ, որը առաջին օրերից ընկավ Ռուբինյանների ձեռքը և մինչև վերջը մնաց հայերի գերիշխանության տակ. «Հայկական տիրապետության ժամանակ Պյուռամոսի հովտի լեռնանցքը պաշտպանվում էր Կապան դղյակով, որը հայոց իշխանների համար ապահով վայր էր և որտեղ նրանք ապաստանում էին վտանգի ժամանակ ու պահում էին իրենց գանձերը: Այն հանդիսանում էր Արևելյան Կապադովկիայից դեպի Կիլիկիա մուտքի բանալին»:

Այդ տարիներին Կարամանցիները համառ կերպով շարունակում էին իրենց արշավանքները: Գվիդոն թագավորին հաջորդեց Բալդին Նեղեցի Մարաջախտի որդին Կոստանդին II: Այասը, որը դեռ մնում էր հայերի ձեռքում, 1346 թվականին գրավվեց թուրքմեն քոչվորների կողմից և հանձնվեց եգիպտացիներին:

117. Կոստանդին II օգնություն ստացավ Հռոդոս կղզու ասպետներից և նրանց ու կիպրացիների օգնությամբ վերադարձվեց Այասը 1347 թվականին: Բայց դեռ տարին չլրացած, եգիպտական մի նավատորմ պաշարեց Այասը և կրկին գրավեց այն:

* Տյուրոսի տիտղոսավոր իշխան և Կիպրոսի Հյուգ II թագավորի որդին:

** Ալիշանն ասում է՝ «կիսահայ»: Նա հայերեն լեզուն վտարել էր պետական գործածությունից և լատիներենը դարձրել պաշտոնական լեզու:

Այասը Կիլիկիայի պետության համար եկամուտի մեծ աղբյուր էր, որովհետև քրիստոնյա վաճառականները, փոխանակ եգիպտական նավահանգիստների միջոցով կատարելու իրենց տրանզիտային առևտուրը, քաղաքական նկատառումներով և մանավանդ մաքսային տուրքերի ծանրության պատճառով նախընտրում էին Այասը։ Ինչքան արևմտյան վաճառաշահ քաղաքների առևտուրն ավելանում էր Այասի հետ, նույնքան էլ Եգիպտոսի սուլթանների թշնամությունն էր սաստկանում, որովհետև հայկական նավահանգստի մրցակցությունը վնասում էր Ալեքսանդրիայի և Դամիետի գործունեությունը։ Այսպիսով, Եգիպտոսի սուլթանների արշավանքների նպատակը Այասի դեմ, ավելի՝ տնտեսական և շահադիտական էր.

Ներսես Պալիենցը իր «Ժամանակագրության» մեջ 1322 թվականի Թիմուրթաշի կազմակերպած արշավանքը Այասի վրա հետևյալ կերպով է նկարագրում. «Ի, իբրև եկ Դամուրդաշն ի Հայոց ի ձմերայնի գոլով, ի գարունն մերձակայ՝ ապրիլի քսան՝ զօրքն սուլտանին խԹ (40 հազար) հեծեալս և այլ անչափ հետևակս եկին ի նոյն երկիրն Հայոց, և եկեալ ի քաղաքն Եգեիոյ, որ է Այաս, յերկրորդ օրն յօր տօնի սրբոյն Գէորգեայ, 23 ապրիլի, առին զՄինային բերդն, զի ծովն ցամաքեցաւ և ի ներս գնաց և տաճկնին ի ծովէն եկին և կտրեցին զճանապարհն, որ ի ներսի բերդըն և ի ծովն չկարէր ոք գնալ. և գերեցին անթիւ անձինք և անբաւ աւար առին. և ապա նստան սղարելով ի վերայ ներսի բերդին, եդին բաբան և զամենայնն ի փույ ածին։ Եւ զամենայն զրանս և զպէշք նիւթսն քաղաքին բերեալ՝ կարմունճ կապեցին ընդ ծովն ի ներս՝ մինչ եկին մօտ պարսպի բերդին և նետախորով առնէին զմարդիկն՝ որ փայլէին ի դրանն կողմն դըևկին, որով յամենայն կողմանց սաստկացաւ մարտն։ Այլ և Թագաւորն Կիպրոսի առաքեաց խալէս ինն յօգնութիւն քրիստոնէից, որ կորստեան եղեն պատճառ քան փրկութեան. քանզի ամենայն ոք փախչէին ի բերդըն՝ ընդունէին և առնուին, և զամենայն ինչս եւս, որ լինէր իսկ զի ոչ ոք մնաց ի բերդն ի քաղաքացեացն, այլ իւրեանց ընչիւքն գնացին ի խալէքն։ Իբր այս լինէր՝ ի գիշերի հուր արկին ի բերդն և թողեալ ի բաց գնացին ընդ ծովն։ Այդպէս կորեաւ Այաս երկոքին բերդովն իւր գերեալ ի տաճկացն» (Ալիշան, Հայապատում, էջ 532)։

Այասի գրավման այս նկարագրությունը հաստատում են նաև այլ հայ ժամանակագիրներ։ Սամ. Անեցու շարահարողներից մեկը գրում է. «Եմուտ Մսրցին ի Կիլիկիէ և Ի Թ (20 հազար) մարդ գերեաց և զբազումս սպանին և յոլով տեղիս այրեցին և զԱյաս իսպառ ջնջեցին և զՄինիրան և զբերդն քակեցին» (Սամուել Անեցի, շար., էջ 167)։ Սմբատ Գունդստաբլի «Ժամանակագրութեան» հետագայում ավելացված հատվածում կարդում ենք. «Ի Թուին ՉՀԱ. եկն զօրքն Մսրայ ի Կիլիկեցւոց յաշխարհս ի վերայ քաղաքին, որ կոչի Այաս և պաշարեաց զնա և էառ զմին զայն (?)* և բազում քրիստոնեայս գերեցին։ Եւ զկնի երկոտասան աւուր շատ ազգեր հնարիւք և բաբանիւք մարտեան ի վերայ ծղրին։ Նա բեկեցան գլխաւորք զտեղւոյն, գաղտ ի գիշերի մտան ի զալէքն Կիպրոսայ տիրոջն, որ և եկեալ էին իւր հրամանօք հյօգն քաղաքին, և նաւով փախեան՝ ոմանք ի Կիպրոս և ոմանք ի Կոռիկոս։ Իսկ հեծելն որ իջեալ էր առջև կոռւայ՝ կամուրջ կապեալ էին նաւերով ի վերայ գետին. իմացան զգալ զօրացն մեր և անցան յայս կողմս անհամար շատ։ Իսկ զօրք մեր վախեցան և դարձան յետս առաջի Մսսայ՝ իւրեանց զօրագլխովն և անօրէնքն ի յետև և զբազումս սպանին։ Մեռան այն օրն յիշխանացն Հայոց, պարոն Հեթում Ջլկնոցին տէրն և իւր եղբայրն պարոն Կոստանդին և պարոն Վահրամ Ջօտիկ և պա-

---

* Պետք է լինի «զՄինային»։



121 – 19

րոն Օշին՝ Մարաչախտուն որդին և ձիաւոր քսան և մի և փոքր մարդ շատք» (Սմբատ, շար. էջ 121—122)։

Իբն ալ-Վարդի պատմիչը գրում է. «Հիջրի 722 թվականի ռաբի II ամսին ստացվեց Այասի գրավման բարի լուրը։ Եգիպտացիները քարաններով հարվածեցին ծովի վրա գտնված ամրությունները, և երբ հայերը տեսան այդ բանը, իրենց գույքերն ու ընտանիքները փոխադրեցին նավերի վրա, անցնելով տաղավատներով ամրացված կամրջակի վերևից, որի երկարությունը 300 արմնկաչափ էր։ Հայերը ծովի վրա ունեին երեք ռազմանավ՝ «Ատլաս», «Շամա» և «Այաս» անուններով։ Հայերն սկսեցին հայհոյել ու անարգել մարգարեին և Ալլահը նրանց սրտի մեջ սարսափ գցեց և նրանց խուճապի մատնեց։ Բանաստեղծն ասել է այս առթիվ.

«Քանի որ նախատեցին մարգարեին ծանր կերպով
Մահվան սուրը դարձավ նրանց վրա.
Ալլահի սերը մեր վրա է,
Եվ վրեժխնդրությունը՝ նրանց վրա»։

Զինվորները տեսնելով, որ չեն կարող պարիսպները խորտակել, որովհետև նրանք երկաթով և կապարի շաղախով էին ամրացված և ատաղձագործի չափի հաշվով 13 արմնկաչափ լայնություն ունեին, մի քանի կետերի վրա փոսեր բացին և մեջը դրին բամբակի հունտի յուղով օծված փայտեր և այրեցին ու այս կերպով քանդեցին պարիսպները։ Հետո Ջայհանի վրայով տաս նավեր առաջացնելով բանակի վերևի կողմից անցան և այդպիսով բազմաթիվ հայեր սպանվեցին, շատերը գերի տարվեցին, իսկ մեռյալների մոտ երկու հարյուր գլուխներ բերին բերդի դռան մոտ և գցեցին ծովը։ Այնուհետև ասպատակ սփռեցին դեպի Սիս ու վերադարձան»։

Այս հոյակապ քաղաքը, որ «հպարտ էր մի նորահարսի նման», ինչպես ասում է արաբ պատմիչ Կալկաշանդին իր «Սուբհ ալ-Աշա» գրքում, քանդվեց, և այդ ավերումը խոր ու ճնշիչ տպավորություն գործեց ժամանակակիցների վրա։

Մեկնիչ ու շիտնական Բարսեղ Մաշկևորը, որ տվել է Այասի գրավման նկարագրությունը (Ալիշան, Հայապատում, էջ 536, կետ 5, կետ 6) այսպես է նկարագրում այդ ծանր աղետը. «Յորժամ առաւ Այաս և կարծեցաք թէ երկիրս աւերելոց է և ամենքեան սատակելոց եմք, ո՛չ առաւել տրտմէաք»։

Թշնամիների գործած բռնությունների ու ավերածությունների դեմ ծառացավ հայ ժողովուրդը։ Հայկական մի քանի գնդեր փորձեցին հետապնդել թշնամուն, երկու հարյուր քաջերից բաղկացած մի խումբ դարան մտավ մի կիրճի մոտ, որտեղից եգիպտական հեծելազորն էր անցնելու և վեց հազար թշնամի կոտորեց ու գերիներ վերցրեց։ Մի ուրիշ խումբ վեց հարյուր զինյալներից բաղկացած հարձակվեց մամլուքների վրա, որոնք Այասի ավարով բեռնավորված վերադառնում էին, և Ջայհան գետի ափին մի մեծ ջարդ տվեց նրանց, բայց նրա գերազանց ուժի առաջ նահանջեցին մինչև Մսիս։ Այստեղ տեղի ունեցավ ճակատամարտ, որի մեջ սպանվեցին այն հայ իշխանները, որոնց հիշեցինք քիչ վերև։

Այասի գրավումը տեղի ունեցավ հիջրի 722 թվականին։ Ըստ իբն ալ-Վարդի պատմիչի, Այասը գրավվեց ռաբի II ամսում (1322 ապրիլ 19—մայիս 17), ըստ Կալկաշանդիի՝ ռաբի I ամսի չորրորդ օրը (1322 մարտ 23), իսկ ըստ Ներսես Պալիենցի՝ 1322 թվականի ապրիլի 23-ին։

Մամլուքների գրավումից հետո Այասի վրա նշանակված կառավարիչը կոչվում էր «Նայիբ ալ-Ֆութուհաթ ալ-Ջիհանիա, այսինքն՝ Ջայհանյան գրավված վայրերի

տեղակալ (այսպես էր կոչվում Կիլիկիայի այն հողամասը, որ Ջայհան գետի շուրջն էր գտնվում).

Լևոն թագավորը, չստանալով դրսից որևէ օգնություն, ստիպված էր հաշտության բանակցության համար Կոստանդին կաթողիկոսի գլխավորությամբ մի պատվիրակություն ուղարկել Նասր սուլթանի մոտ։ Դաշինքը կնքվեց Հալեբում, 1323 թվականին, 13 տարով։ Նույն թվականին Ֆլորենցիայի Բարդի առևտրական տան Կիպրոսի ներկայացուցիչները տեղեկացնում են իրենց հանձնարարներին Եգիպտոսի սուլթանի և հայոց թագավորի միջև կնքված հաշտության դաշնագրի մասին, հիշատակելով, թե տարեկան մեկ միլիոն երկու հարյուր հազար արծաթ դիրհեմ («թագավորին») հարկ էր հանձն առնում վճարել հայոց թագավորը։ Հաշվելով մեկ դիրհեմը 2, 10 դրամ ոսկի, իսկ մեկ ոսկի ֆլորինը՝ 24 դիրհեմ, ստացվում է, որ վճարելի հարկը հավասար էր 50 հազար ֆլորինի։ Իսկ Կիլիկյան մեկ «թագվորինը» կես ֆրանկ. արծաթ դրամի հավասար լինելով, հայերի վճարելիք տուրքը հավասարվում էր 600 հազար ոսկի ֆրանկի։ Հայերը հանձն էին առնում նաև Այասի նավահանգստի եկամուտի և օտարականներին վաճառված աղի եկամուտի կեսը վճարել սուլթանին։ Սուլթանը իր զորքերը հետ քաշեց Կիլիկիայից, արտոնելով վերաշինել ավերված բոլոր քաղաքները, բացի Այասի ծովային բերդից (Archives de l'Orient latin, 1881).

# ԱԼ-ԿԱԴԻ ԲԱՀԱԵԴԴԻՆ ԻԲՆ ՇԱԴԴԱԴ

*Պատմագիր ու պետական գործիչ Բահաեդդին Աբու-Մահասին Յուսուֆ Իբն Ռուֆդ իբն Շադդադը ծնվել է Մոսուլում, 1145 թվականին։ Կրթությունն ստացել է հայրենի քաղաքում։ 1187 թվականին Սալահադդին սուլթանը լսելով իբն Շադդադի մասին, նրան հրավիրեց իր մոտ և նշանակեց բանակի կադի (դատավոր), ապա Երուսաղեմի դատավոր, իսկ այնուհետև վստահեց վարչական և դիվանագիտական պաշտոններ։*

*Սալահադդինի մահվանից հետո Բահաեդդինը կապվեց սուլթանի երրորդ որդու ալ-Մալիք ադ-Դահիրի հետ, որին ժառանգություն էր ընկել Հալեբը։ Երբ ալ-Մալիք առ-Դահիրը մահացավ, Բահաեդդինը կարգվեց նրա անչափահաս որդի ալ-Մալիք ալ-Ազիզի խնամակալ՝ իշխանությունը փաստորեն վերցնելով իր ձեռքը։ Ալ-Մալիք ալ-Ազիզի գահից հրաժարվելուց հետո, Բահաեդդինը առանձնացած կյանք վարեց մինչև իր մահը, որը տեղի ունեցավ 1234 թվականին։*

*Բահաեդդինը գրել է երկու գիրք։ Առաջինը կոչվում է «Սրբազան պատերազմի օրենքների և ուղղության մասին». սրա մեջ հեղինակը փորձ է անում արդարացնել և հիմնավորել Սալահադդինի մղած արյունալի պատերազմները։ Երկրորդը Սալահադդինի պատմությունն է՝ «Քիթաբ Սիրա Սալահադդին ալ-Այուբի» կամ «Աննավադեր ալ Սուլթանիա վալ-Մահասին ալ-Այուբիա» (անեկդոտներ ու գեղեցիկ գրվածքներ սուլթան Յուսուֆի կյանքից)։*

*Այս աշխատության մեջ հեղինակը, երբեմն խեղաթյուրելով ստույգ եղելությունները, փառաբանում է Սալահադդինին և գովերգում նրա ռազմագիտական ընդունակությունները, չթաքցնելով իր հրճվանքը նրա հրոսակախմբերի ձեռքով կատարված սպանությունների ու կողոպուտի առթիվ։*

*Ստորև թարգմանաբար տրվում են այդ աշխատության՝ Հայաստանին և հայերին վերաբերվող հատվածները։ Թարգմանությունը կատարված է 1839 թվականի Կահիրեի հրատարակությունից։*

# ԻԲՆ ՇԱԴԴԱԴ

## Այյուբյան Սալահադդինի[1] կենսագրություն

*էջ 43*

*Սուրհանդակ հասավ Կըլըջ Արսլանի կողմից, որը թախանձում էր սուլթանին՝ նրա հետ համաձայնություն կնքել, միաժամանակ գանգատվում էր հայերից։ Սուլթանը, Կըլըջ Արսլանին օգնելու համար, արշավեց դեպի Լևոնի որդու երկիրը, և հասավ Կարահիսար և ծառայության առավ Հալեբի բանակները՝ ըստ դաշնագրով եղած համաձայնության։ Բանակները միացան Նահր ալ Ազրակի մոտ, Բիհիսնեյի և Հիսն Մանսուրի[3] միջև, և գետից անցնելով գնացին դեպի Նահր Ասուադը, որը Լևոնի որդու երկրի սահմանն է կազմում և գրավեցին մի բերդ, որը քանդեցին և բնակիչներին սրի քաշեցին։ Թշնամին վերադարձրեց գերիներին՝ հաշտություն խնդրելով։ Երբ հաշտություն կնքվեց, սուլթանը այնտեղից վերադարձավ (նա իրեն փոխանորդ է կարգում Կըլըջ Արսլանին, որպեսզի դաշնագիր կնքի դեսպանների հետ)։ Այդ տեղի ունեցավ Սաքիա-Սանջա[4] գետի վրա, որը թափվում է Եփրատի մեջ, և այդ տեղի ունեցավ 76 թվականի ջումադա ալ-ուլա ամսի 10-ին (1180 հոկտ. 2)։ Այնտեղից սուլթանը գնաց Դամասկոսի կողմը[5]։*

*էջ 46—47*

*Մուսուլի իշխանները նույնպես խոնարհվեցին նրա առաջ և հպատակվեցին։ Նա դուրս եկավ խլաթից, որպեսզի նրանց օգնի ու իջավ դեպի Հարզամ՝ և առաջացավ Մուսուլի տեր Ըզզադդինի վրա, շավալ ամսի 15-ին (1181 մարտ 4)։ Նրան միացավ Մարդինի տերը և սուլթանին դիմավորելու համար մյուս կողմից ժամանեցին Հալեբի մարդիկ։ Այդ միջոցին Շահի Արման Բակտիմուրը բանագնաց*

ուղարկեց սուլթանին՝ հաշտություն խնդրելով Շայխ ալ-Շույուխի միջնորդությամբ։ Բայց նրանց միջև համաձայնություն չկայացավ։ Այնտեղից սուլթանը առաջացավ Շահի Արմանի բանակների վրա, և երբ Շահի Արմանը լսեց սուլթանի գալը՝ նահանջեց դեպի իր երկիրը։ Իզադդինն էլ վերադարձավ դեպի իր երկիրը, և նրա զորքը ցրվեց։ Այնուհետև սուլթանը ուզեց գրավել Ամիդ քաղաքը և նրա վրա շարժվեց, ջարդեց բնակիչներին և գրավեց քաղաքը ութ օրվա մեջ։ Այս տեղի ունեցավ 79 թվականի* մուհառամ ամսի 1-ին (1183 ապրիլի 26)։ Նա Ամիդը տվեց Կարա Արսլանի որդի Նուրադդինին։

էջ 55։

81 թ. ռաբի ալ-ախիր ամսին (1185 հուլիս 2—հոմնիս 30) մահացավ Խլաթի տեր Շահի Արմանը, և նրան հաջորդեց իր ստրուկ Բաքտիմուրը. սա էր, որ որպես դեսպան դիմեց սուլթանին՝ հպատակության առաջարկով։ Նա արդարակորով ու բարեգութ էր Խլաթի ժողովրդի հանդեպ ու իր պարկեշտ կյանքով սիրելի էր դարձել ժողովրդին, որը հնազանդվեց նրան և հակվեց նրա կողմը։ Երբ նա տիրացավ իշխանությանը, շատերը ցանկացան տիրանալ Խլաթին, որովհետև Շահի Արմանը մեռել էր։ Այսպես, նրա վրա հարձակվեց Բահլաուան իբն Իլդիգիզը. երբ նա (Բաքտիմուրը) լուր առավ այդ արշավանքի մասին սուլթանին բանագնաց ուղարկեց, առաջարկելով Խլաթը հանձնել և տալ նրան՝ ինչ որ կամենա։

85 թ. (Սուլթանը պատրաստվում էր հարձակվել քաղաքի վրա և սպասում էր...) Հայերի բանակներին, որոնք ուշացան, որովհետև նրանք զբաղված էին Ֆրանկների հետ հայոց հողի վրա՝ Լևոնի որդու երկրում։

էջ 107։

Սուլթանը մի նամակ ստացավ հայոց առաջնորդ կաթողիկոսից**, որը Եփրատի կողմը գտնվող Հռոմկլայի տերն էր։ Ահա այդ նամակի ընդօրինակության թարգմանությունը.

«Կաթողիկոսը ամենաանկեղծ մաղթանքներ է անում և հաղորդում հետևյալ տեղեկությունները ողորմած սուլթանի տերության. նա որ հավատացյալների պետն է, նա որ բարձր է բռնում արդարության և բարեգործության դրոշը, որը ինքնին խաղաղության հաստատումն է աշխարհի և կրոնի, սուլթանը մահմեդականության և

* Պետք է հասկանալ՝ հիջրի 579 թ.։

** Արաբ աղբյուրներում այս բառը գրվում է՝ «քաթուղիքոս»։

մահմեդականների. Թող աստված տևական դարձնի իր բարգավաճումը, կրկնապատկի իր վեհությունը և հաջողությամբ պսակի իր բոլոր հույսերն ու նպատակները և պահի նրան ճոխության ու կատարելության մեջ։

Խնդիրը վերաբերում է Ալմանների թագավորին և այն ամենին, ինչ պատահեց նրան ճանապարհի ընթացքում։ Մեկնելով իր երկրից՝ նա բռնությամբ մտավ հունգարացիների երկիրը և ստիպեց հունգարացիների թագավորին, որ իրեն հնազանդի և մտնի իր գերիշխանության ներքո. նրանից գրավեց դրամ ու վերցրեց մարդկանց, որքան որ ուզում էր։ Հետո նա մտավ հույների թագավորի երկիրը, գրավեց բազմաթիվ քաղաքներ, կողոպտեց և տեղավորվեց այնտեղ և այնքան երկրներ գրավեց նրանից, մինչև որ ստիպեց հպատակություն հայտնել ու իբրև ավանդ նրանից վերցրեց նրա որդուն, եղբորը և քառասուն մեծամեծների։ Հույներից գրավեց նաև հիսուն կենդինար ոսկի և հիսուն կենդինար արծաթ և ատլասի կերպասեղեններ՝ անսահման արժեքով։ Բռնագրավեց նաև նրա բոլոր նավերը և նրանցով իր բանակները անցկացրեց դեպի այն եզերքը և իր հետ առած պատանդներին չարձակեց, մինչև որ ոտք դրեց Կլըչ Արսլանի երկրի վրա։ Նա շարունակեց իր առաջխաղացումը երեք օր, որի ընթացքում ալ-Ավուջ ցեղի թուրքմենները սկզբում նրան դիմավորելով հայթայթեցին ոչխարներ, կովեր, ձիեր և ապրանքներ, հետո խորհելով, թե մի գուցե կարող լինեն գերազանցել նրա ուժերին, հավաքվեցին և ամեն կողմից բազմաթիվ խմբերով հարձակվեցին նրա վրա։ Թուրքմենների և նրա միջև կռիվներ տեղի ունեցան, և թուրքմենները չդադարեցին նրան հալածելուց իր ճամփի վրա՝ 33 օր շարունակ։ Երբ նա մոտեցավ Կոնիային, Կլըչ Արսլանի որդին՝ Կութբադդինը հավաքեց իր գնդերը և նրա դեմ ելավ. Նրանց միջև սաստիկ ճակատամարտ տեղի ունեցավ, և Ալմանների թագավորը հաղթելով նրան՝ գերի բռնեց, Կոնիայի բանակներին փախուստի մատնեց և առաջացավ դեպի Կոնիա։ Այնտեղ նրա դեմ կռվելու դուրս եկան բազմաթիվ մահմեդականներ, բայց նա ետ մղեց նրանց հարձակումները, և սրի ուժով մտավ քաղաքը, ջարդեց մեծ թվով մահմեդականների ու պարսիկների և այնտեղ մնաց հինգ օր[8]։ Կլըչ Արսլանը նրանից հաշտություն խնդրեց, և թագավորը հաշտություն շնորհեց, ու հաստատվեց ապահովության պայմանագիր։ Թագավորը նրանից վերցրեց քսան պատանդ երկրի ավագներից և նա թագավորին խորհուրդ տվեց գնալ Տարսոնի և Մսիսի ճանապարհով։ Նա այդպես էլ արեց։ Նախքան այդ երկիրը* մտնելը, նա իր դես-

* Խոսքը Կիլիկիայի մասին է։

պանն ուղարկեց մի նամակով, որի մեջ հայտնում էր իր նպատակը։ Հարկ եղավ ուղարկել Հաթիմ Մամլուքին՝ իբրև պատվիրակ, և նրան ընկերացան բազմաթիվ բարձրաստիճան անձնավորություններ, որոնք պետք է հանձնեին նամակի պատասխանը և ջանային համոզել (Ալամանների) թագավորին, որ ետ դառնար դեպի Կլրջ Արսլանի երկիրը։ Թագավորը իր ավագներով ժողով գումարեց և տեղեկացավ հանձնված նամակին. որը իրեն թելադրում էր վերադառնալ։ Թագավորը հավաքեց զինվորներին, իջավ գետափ և այնտեղ ճաշեց. մի քիչ ննջելուց հետո փափագ ունեցավ լողանալ սառը ջրի մեջ, որը և կատարեց, բայց ջրից դուրս գալուց հետո, աստծու կամքով, նրա վրա ծանր հիվանդություն եկավ ջրի սառնության հետևանքով ու մի քանի օր տառապելուց հետո մեռավ։ Մինչ այդ Լևոնի որդին ճամփա էր ելել՝ թագավորին հանդիպելու, բայց այդ պատահարի վրա նրա դեսպանը, որ փախուստ էր տվել բանակից, վերադարձավ ու լուր տվեց նրան՝ կացության մասին. Նա էլ ամրացավ իր բերդերից մեկի մեջ։ Ալմանների թագավորի որդին, որը ընկերացել էր հորը, նրա կողմից նշանակված էր գահի հաջորդ։ Երբ նրանք մոտեցել էին մեր սահմաններին, և լսեց Լևոնի որդու դեսպանների փախուստը՝ նրանց հետապնդել տվեց ու բռնելով ետ տարավ։ Նա խոսեց նրանց հետ այսպես. «Իմ հայրը ծերունի մարդ էր և ոչ մի այլ բան չէր մղում նրան գրավելու այս երկրները, բացի սուրբ վայրերին ուխտ գնալու փափագից։ Այժմ ես եմ, որ վարում եմ իշխանությունը, ես, որ այսքան տառապեցի այս ճամփաների վրա։ Ով որ ինձ կհնազանդի՝ լավ կանի, եթե ոչ՝ ես կարշավեմ նրա երկրի վրա»։ Լևոնի որդին հարկադրվեց տեղի տալ և գնալ դիմավորել թագավորին։ Արդարև, նա գտնվում էր մի մեծաթիվ բանակի գլուխը, որը հավաքել էր արշավանքի համար. այդ բանակը բաղկացած էր քառասուն հազար հեծյալներից և անթիվ հետևակազորից բաղկացած այլազգի ժողովուրդներից։ Նրանք իրենց պետերին կատարյալ հնազանդ էին, և այն աստիճանի խիստ էր կարգապահությունը, որ երբ նրանցից մեկը մի հանցանք գործեր, նրան պատժում էին՝ ոչխարի նման խողխողելով։ Ասում են, թե իրենց պետերից մեկը չափից ավելի խոշտանգել էր իր ծառային՝ ծեծելով նրան։ Քահանաները մի ժողով գումարեցին նրան դատելու համար, և նա միաձայն մահվան դատապարտվեց։ Շատերը միջամտեցին նրա համար թագավորի մոտ, բայց նա բոլորովին տեղի չտվեց. հանցապարտը պատժվեց։ Այս մարդիկ իրենց զրկել են ամեն

հաճույքից, և երբ լսվում էր, որ նրանցից մեկը թույլ է տվել որևէ հաճույք, նա իր ընկերների կողմից հանդիմանության էր արժանանում, և բոլորը լքում էին նրան։ Այս ամենը արդյունք է այն խորը վշտի, որ նրանք զգում են՝ տեսնելով սուրբ երկրի վիճակը։ Վստահեցնում էին, թե նրանցից շատերը երկար ժամանակ կամովին իրենց զրկել են զգեստից և երկաթ են հագել, թեև այդ բանը արգելվեց իրենց պետի կողմից։ Նրանք համբերությամբ կրում են ամենածանր տառապանքները, տքնություն և հոգնություն։

Ձեր խոնարհ ծառան* սրանով կացության մասին տեղեկացնում է ձեզ և եթե սրանից հետո մի նոր բան պատահի, կտեղեկացնի դարձյալ բարձրյալն աստուծո կամքով»**։

Սա է նամակը կաթողիկոսի, և այս բառը նշանակում է խալիֆա. նրա անունն է Բար Քրիքուր*** իբն Բասիլ»[9]։

էջ 106

Քիչ անցած լուր հաղորդեցին, թե Ալմանների թագավորը ժամանել է Կլըչ Արսլանի երկիրը, և այս վերջինը նրան դիմադրելու համար հավաքել էր թուրքմեններից շատ մարդկանց և գնացել էր արգելելու նրա անցումը դեպի այս կողմ, բայց անկարողության է մատնվել (թշնամու) թվի առավելության պատճառով, ինչպես նաև առաջնորդ չունենալու պատճառով։ Թեև Կլըչ Արսլանը դիմադրություն էր ցույց տվել, բայց նա մտադրել էր համաձայնվել նրանց հետ, ուստի, երբ նրանք գետից անցնելով մտան իր երկիրը, նա համաձայնություն կնքեց և հանձն առավ օգնել նրանց ու ճանապարհ ցույց տալ, որպեսզի անցնելով իր երկրից, մտնեն Լևոնի որդու երկիրը։ Ուղարկեց նաև ուղեցույցներ։ Ճանապարհին նրանք ենթարկվեցին սաստիկ սովի, այն աստիճան, որ գցեցին իրենց կերպասեղենի մի մասը։ Ինչպես տեղեկացրին մեզ,—և Ալլահը գիտե, թե ճիշտ է,— նրանք, անկարող լինելով կրել իրենց զենքերը, սաղավարտներն ու զրահները, հավաքեցին ու այրեցին՝ թողնելով երկաթների մի կույտ, որպեսզի նրանցից ոչ մի հատը գործածելի չմնա։ Այդ վիճակում նրանք շարունակեցին ճանապարհը և հասան այն քաղաքը, որը կոչվում էր Տարսոն****. կանգ առան մի գետի մոտ անցնելու համար։ Իրենց թագավորը ցանկացավ լողանալ, բայց ջուրը չափազանց սառն էր, և այդ պատճառով նա սաստիկ հիվանդացավ և մահացավ։ Երբ նա իմացավ, թե ինչ դժբախտություն էր

---

* Բնագրում՝ մամլուքը։

** Բնագրում՝ Ինշա ալլահ.

*** Գրիգոր։

**** Բնագրում՝ Թարսուս։

պատահելու իրեն, հաջորդ նշանակեց որդուն, որն ընկերացել էր իրեն։ Խորհուրդ գումարեցին և որոշեցին հռացնել նրա մարմինը քացախի մեջ և իր ոսկորները մի պարկի մեջ հավաքեցին, որպեսզի փոխադրեն Երուսաղեմ—որի վրա Ալլահի հովանին թող անպակաս լինի—և նրան թաղեն Երուսաղեմում։ Նրա զինակիցները որդուն նշանակեցին իբրև հաջորդ, մինչդեռ անդրանիկ որդին փոխանորդում էր նրան իր երկրում։ Զինվորների մեջ կային այնպիսիք, որոնք կողմնակից էին նրան և նրան ընկերացող որդուն հաստատեցին իբրև պետ, որպեսզի առաջնորդի բանակները։ Երբ Լևոնի որդին լսեց, թե ինչ պատահեց նրանց. այսինքն՝ նրանց թագավորի մահը և այդ բանի հետևանքով նրանց կրած բոլոր տառապանքները՝ քաղցի, մահվան և հիվանդությունների շնորհիվ, չուզեց գնալ նրանց մոտ, որովհետև նախ՝ որ չգիտեր, թե դեպքերը ինչ ընթացք պիտի ստանային. և երկրորդ՝ որ նրանք ֆրանկ էին, իսկ ինքը հայ էր, և քաշվեց իր անառիկ բերդերից մեկը։

Էջ 110

Երբ սուլթանը լուր առավ, թե Ռումի թագավորը հասել է Լևոնի երկիրը և մոտեցել է մահմեդական երկրներին, գումարեց իր պետության ավագներին և խորհուրդ հարցրեց, թե ի՛նչ պետք է անել[10]։ Որոշվեց բանակի մի մասն ուղարկել թշնամուն դիմադրելու իսկ մնացածը թողնել Մանսուրի հրամանատարության տակ։

Բանակների գլուխ անցան, առաջինը՝ Մամբեջի իշխան Նասիր ադդին իբն Տակիադդինը, հետո—Նախորդի որդին՝ Իզադդինը, որը Քաֆր Թաբի, Բարինի և ուրիշ վայրերի իշխան էր, հետո՝ Բաալբաքի իշխան Մաջդուդդինը, հետո՝ Շայզարի իշխան Սաբիկադդինը, հետո՝ Հալեպի Բարուկիայի գնդերը ամբողջությամբ, հետո՝ Համաթի գնդերը, հետո եկավ նաև սուլթանի որդին՝ ալ-Մալիք ալ-Աֆդալը, հակառակ հիվանդությանը, որով տառապում էր, հետո՝ իր պահակազորով Դամասկոսի իշխան Բադրադդինը՝ հակառակ հիվանդությանը, որով տառապում էր, այնուհետև (սուլթանի) որդին՝ ալ-Մալիք ալ-Դահերը գնաց դեպի Հալեպ՝ ճանապարհը հետազոտելու համար և հարկ եղած հրահանգները տալու համար։ Հետո եկավ ալ-Մալիք ալ-Մուզաֆֆարը, պաշտոն ունենալով հոգալ հաջորդ քաղաքների պաշտպանությունը և զբաղվել առաջացող թշնամու շարժումներով։

Այն ժամանակ զինվորների մեջ մեծ հիվանդություն ընկավ։ Հիվանդացավ Խառանի իշխան Մուզաֆֆարադդինը և առողջացավ. նրանից հետո հիվանդացավ ալ-Մալիք ալ-Զաֆիրը և առողջացավ,

և մեծերից շատերը հիվանդացան, ինչպես և ուրիշները։ Բոլոր հիվանդներն էլ առողջացան, փառք Ալլահին, իսկ թշնամիների մոտ հիվանդությունը ավելի տարածվեց և ավելի ծանր եղավ. նրանք բազմաթիվ մեռյալներ ունեցան. այդ պատճառով սուլթանը ավելի վճռապես որոշեց դիմադրել թշնամուն։

(Ալմանների կայսեր) որդին էլ, որը հաջորդեց իր հորը, նույնպես հիվանդացավ և այդ պատճառով մնաց Լևոնի որդու երկրի մի վայրում։ Նրա հետ այնտեղ մնացին 25 ասպետներ և 30 Տաճարականներ։ Բանակը ուղղվեց դեպի Անտիոքի կողմերը, ճանապարհը կտրելու նպատակով։ Զինվորների թվի մեծության պատճառով բանակը բաժանվեց երեք զորաբաժինների։ Առաջին զորաբաժինը՝ Բաղրասի բերդի ներքևից, ավերելով հունձքերը շարժվեց առաջ։ Բաղրասի պահակազորը, որը բաղկացած էր իրենց լավագույն զինվորներից, անակնկալորեն հարձակում գործեց և փախցրեց նրանց, երկու հարյուր մարդ գերեց և կողոպտեց, որովհետև նրանց մի մասը տկարացած էր հիվանդության և բեռնատար ձիերի ու զինական գործիքների անբավարարության պատճառով։ Երբ այս լուրը պատգամավորների միջոցով Ասորիք հասավ այնտեղից օգնության փութացին գնդեր, որպեսզի հետապնդեն թշնամուն. այդ զինվորները հանդիպեցին բազմաթիվ մարդկանց, որոնք բերդից դուրս էին եկել իրենց ձիերին խոտ ճարելու համար և նրանց վրա ուժգնորեն հարձակվելով ջարդեցին և գերիներ վերցրին, որքան որ կարող էին։ Ըստ լրաբերների տված տեղեկության՝ սպանվածների և գերիների թիվը շուրջ հինգ հարյուր էր։

Այն ժամանակ կաթողիկոսի կողմից սուլթանի մոտ հասավ մի երկրորդ պատվիրակություն և նա տվեց տեղեկություններ, ասելով, որ նրանց թիվը շատ մեծ է, բայց շատ են տկարացած և քիչ ձիեր ու պաշար ունեն և իրենց գույքերի մեծ մասը էշերի վրա էին փոխադրում։ Նա ասաց. «Ես կանգնեցի մի կամրջի վրա, որի վրայով նրանք պետք է անցնեին, որպեսզի կարողանամ դիտել նրանց. տեսա, որ քչերը միայն զենք կամ նիզակ ունեին, և երբ նրանց հարցում տվեցի, թե ի՞նչ է դրա պատճառը, պատասխանեցին, թե երկար օրեր վատառողջ վայրում մնացած լինելով, առանց ուտեստի և վառելանյութի շատերը մահացել են ծայր աստիճան թշվառությունից, և իրենք ստիպված են եղել մորթել ձիերը և ուտել, այրել են նիզակները և զենքերի փայտերը. իսկ այն առաջապահները, որոնք մինչև Անտիոք են հասել՝ մեռել են։ Նա պատմեց, թե՝ Լևոնի որդին, երբ տեղեկացավ նրանց այսպես տկար լինելու մա-

սին, օգտվելով թագավորի տկարությունից ու հիվանդությունից և հետևորդների սակավությունից, որոշեց գրավել նաև նրա ունեցվածքը։ Անտիոքի իշխանը, երբ լսեց այդ բանը, Ալամանների թագավորին մարդ ուղարկեց՝ հրավիրելով Անտիոք, որպեսզի թագավորը իր մոտ մեռնի, և ինքը (Անտիոքի իշխանը) յուրացնի նրա ունեցվածքը։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Եգիպտոսի և Ասորիքի սուլթան. Այուբյան դինաստիայի հիմնադիր Աբու-Մուզաֆֆար Յուսուֆ իբն Այուբ իբն Շադի Սալահադդինը ծնվել է 1137 թվականին։ Նրա հայրը՝ Այուբը և հորեղբայրը՝ Շիրքուհը, երիտասարդ հասակում մեկնելով իրենց ծննդավայր Դվինից, գնացել էին Միջագետքի Թիկրիտ քաղաքը և մտել Զանգի Աթաբեկի մոտ ծառայության ու բարձր դիրք գրավել։ Հետո նրանք ծառայության մտան Նուրադդինի մոտ։ 1164 թվականին Նուրադդինը Եգիպտոս ուղարկեց Շիրքուհին, որպեսզի Ադիդ Լիդին ալլահ խալիֆի վեզիր Շավերին վերահաստատի իր պաշտոնի վրա։ Սալահադդինը ընկերացավ իր հորեղբորը։ 1168 թվականին խալիֆը նորից պաշտոնից հեռացրեց Շավերին, որով Սալահադդինը երկրորդ անգամ ընկերացավ իր հորեղբորը՝ դեպի Եգիպտոս։ Ներքին խռովությունների հետևանքով Շավերը գլխատվեց, և խալիֆը վեզիրության պաշտոնը տվեց Շիրքուհին։ Շիրքուհը շուտով մահացավ, խալիֆը նրան հաջորդ կարգեց Սալահադդինին՝ տալով նրան ալ-Մալիք ան-Նասր տիտղոսը։ Այդ պաշտոնի վրա էր դեռ, երբ խաչակիրների դեմ մի արշավանք կատարելով՝ նրանց հաղթեց Գազայում, այդ կռվի մեջ ցուցադրելով ռազմագիտական կարողություններ։ Նուրադդինը, որի նպատակն էր վաղ թե ուշ վերջ դնել Եգիպտոսի խարխլված Ֆաթիմյան դինաստիայի իշխանությանը, հրաման ուղարկեց Սալահադդինին*, որ աղոթքը կատարել տա Բաղդադի խալիֆի անունով և այսպես, լռելյայն, գրեթե առանց որևէ ընդդիմության, կատարվեց մի մեծ հեղաշրջում մուսուլմանների կրոնական և քաղաքական կյանքում։ Վերջ տրվեց Ֆաթիմյանների խալիֆայական դինաստիային։ Նուրադդինը, սակայն, կասկածում էր Սալահադդինի վրա և ուզեց չեզոքացնել նրան, բայց Սալահադդինը նրա ծուղակը չընկավ և կարողացավ Նուրադդինի մահից հետո Բաղդադի խալիֆին ճանաչել տալ իրեն՝ որպես Եգիպտոսի և Ասորիքի իշխան։

Սկզբում Սալահադդինը վախենալով Նուրադդինի կողմից պատժողական հարձակումից, ազրեսիվ քաղաքականություն ցույց չտվեց խաչակիր իշխանությունների դեմ։ Նուրադդինի մահից հետո Սալահադդինը սկսեց մի շարք պատերազմներ. իր իշխանությունը մյուս էմիրների վրա տարածելու և խաչակիրներին մուսուլմանական երկրներից վտարելու համար 1187 թվականի հուլիսի 4-ին Տիբերյադի հռչակավոր ճակատամարտում հաղթեց ֆրանկներին, գերի բռնեց Երուսաղեմի թագավոր Գվիդոն Լուզինյանին և հոկտեմբերի 2-ին գրավեց Երուսաղեմը, մեծագույն հարված հասցնելով խալիֆներին։ Այդ գրավումը արձագանք գտավ Եվրոպայում և խաչակրաց երրորդ արշավանքի կազմակերպման առիթ դարձավ։ Սալահադդինը իր գլխավոր մայրաքաղաքը և բնակությունը հաստատել էր Դամասկոսում, որտեղ մահացավ հիջրի 589 թվականի սաֆար ամսի 27-ին, չորեքշաբթի օրը (1193 մարտ 4)։

---

* Իր թղթակցությունների մեջ Նուրադդինը նրան «Ամիր սպասալար» տիտղոսն էր տալիս։

Նրա տերությունը բաժանվեց իր 17 որդիների, իր եղբայր Մալիք Ադիլի և մյուս ազգականների միջև։ Միջագետքի, Ասորիքի զանազան կենտրոններում և Եգիպտոսում հիմնվեցին Այուբյան դինաստիայի մի քանի սուլթանություններ և էմիրություններ։

2. Կարաճիսար: Տե՛ս Յակուտ 237, ծանոթ. 284։

3. Տե՛ս Յակուտ 114, ծանոթ. 148։

4. Սարխա-Սանջա. տե՛ս Յակուտ 180, ծանոթ. 228։

5. Այս արշավանքի մասին Աբու Շամաթ պատմիչը իր «Քիթաբ ար-Ռոզաթայն» գրքում հիջրի 576 թվականի (1180—1181) տակ գրում է.

«Սալահադդինը մտավ Կիլիկիա, որովհետև թագավորը դրժել էր իր խոստումը թուրքմեն խաշնարածների նկատմամբ, որոնց թույլատրել էր մտնել իր երկիրը՝ հոտերն արածելու համար, բայց հետո նրանց գերի էր վերցրել։ Հայերը տեղի տվեցին և վախից այրեցին Մենաքիր կոչված բարձր բերդը, և մուսուլմանները այնտեղ գտնվող զինամթերքն ու հացահատիկը շտապ վերցնելուց հետո ավարտեցին բերդի լրիվ քանդումը։ Այնտեղ նրանք գտան մի ջրհոր՝ լիքը շատ հին պղնձյա, արծաթյա ու ոսկյա իրերով։ Հայոց թագավորը առաջարկեց սուլթանին, որ իրեն թողնի այդ գանձի մի մասը, որի փոխարեն նա խոստանում էր ազատ արձակել իր մոտ գտնվող բոլոր մուսուլման գերիներին։ Սուլթանը մերժեց այդ առաջարկը և պահանջեց մի ավելի խոշոր գումար, միաժամանակ վերադարձնել 500 գերի մուսուլմանների։ Թագավորը հավանեց և պատանդներ տվեց»։

Նույն հեղինակը գրում է.

«Նույն թվականին Կլըչ Արսլանը օգնություն խնդրեց Սալահադդինից՝ հայոց թագավորի դեմ։ Սալահադդինը մեկնեց Եգիպտոսից և իր ուժերը կենտրոնացրեց Նահր ալ-Ազրակի վրա, Բեհեսնիի և Հիսն Մանսուրի միջև և ուղղվեց դեպի Նահր ալ-Ասվադը, գրավեց մի բերդ, որը քանդեց։ Թագավորը խոստացավ վերադարձնել գերիներին և խաղաղություն խնդրեց, բայց Սալահադդինը մերժեց, մինչև Կլըչ Արսլանը համարեց խաղաղություն կնքել նրա հետ հիջրի 570 թվականի ջումադա I ամսի 10-ին (մեր թվ. 7 դեկտ. 1174 թ.)։

6. Ամիդ կամ Ամիդա, Դիարբեքիր քաղաքն է (տե՛ս Յակուտ 3, ծանոթ. 3)։ Ունի մի միջնաբերդ՝ հյուսիսից, որը տիրապետում է հանդիպակաց ափին։ Այնտեղ մնացած հին արձանագրություններից արժե նշել Եղի-Կարդաշ կոչված աշտարակի ներքևում գտնված հետևյալ արձանագրությունը. Ալ-մալիք աս-Սալիհ սուլթան Դիարբաքրի, Ռումի և Հայաստանի». արաբերեն՝ ...سلطان ديار بكر والروم و الارمن (Van Berchem, Amida, էջ 21)։

7. Այս դեպքերը հասկանալու համար պետք է նշել, որ Սալահադդինի աշխարհակալական ձգտումները հետզհետե ավելանում էին՝ իր հաղթանակների և թշնամիների թուլության շնորհիվ։ Նա իբրև «Ջիհադի»՝ սրբազան պատերազմի առաջնորդ, ինքն իրեն համարում էր Աբբասյան խալիֆի փոխանորդ և ձգտում էր իշխանություն հաստատել բոլոր մուսուլման իշխանների վրա։ Մելիք շահի հաջորդների անկումից հետո՝ սուլթանի գերն ու տիտղոսը փաստորեն վերցրեց Սալահադդինը, որը նրանց տեղն էր բռնել։ Այդ էր Մուսուլի և Հալեպի վրա իր հարձակումների նպատակը։ Սկզբում նա չկարողացավ իրագործել իր նպատակը Մուսուլի նկատմամբ, որովհետև մյուս իշխանները (գլխավորապես Շահի Արմեն Սուկմանը) արգելք եղան դրան։ Երբ Սուկմանը մահացավ, Սալահադդինը 1185 թվականին արշավեց դեպի Խլաթ. բայց չկարողացավ գրավել այն։ Իր դինաստիայի մեջ էլ խռո-

վությունները և մրցակցությունները կային, որոնց առաջն առնելու համար նա հարկադրվեց ավատների հատկացման մեջ փոփոխություններ մտցնել։

8. Վարդան պատմիչը գրում է. «Իսկ որդիքն Խլիջ Ասլանայ ոչ լսելով հօրն իւրեանց՝ Ուճին* Թուրքավն արարին ընդ նոսա պատերազմ երեսուն և երեք օր՝ ոչ մեկնելով ի նոցանէ՝ մինչև հարան և կորեան ի նոցանէ և այնքան սովեցան՝ մինչ զի ութ և տասն օր անսուաղ կացին ի բերոյ և մինչ ի Կօնն կիրան վաթսուն հազար ձի, և առեալ զԿօնն կոտորեաց. և նստաւ անդ» (Պատմութիւն Վարդան վարդապետի, էջ 135)։

9. Արու Շամաթ պատմագիրը «Քիտաբ ար-Ռոդատայն» գրքում հայոց կաթողիկոսի՝ Սալահադդինին ուղղած այս նամակի մասին գրում է. «Հայաստանի պետը, Կալաթ ար-Ռումի տերը, ապահովված այդ ամուր ղղյակի մեջ, շրջապատված Եփրատի հարկատու բնակչությամբ, սուլթանին ուղղեց մի նամակ՝ լի խորհուրդներով ու հոգածությամբ, որի մեջ նա ցույց է տալիս մուսուլման երկրների նկատմամբ իր մտադրությունը, վեր հանելով արշավող բանակի ուժը և նրա դեմ գնացող բանակների թուլությունը»։

Նույն հեղինակը ավելացնում է. «Երբ վերևի նամակն ստացվեց, որի կարևորությունը ամեն ոք ընդունում էր, այդ ցավալի տեղեկությունների ազդեցության տակ մեծ հուզում տիրեց ամեն կողմ։ Ոմանք ընդունում էին այդ տեղեկությունների ստուգությունը, ուրիշները մերժում էին և կեղծ նկատում, վերջապես կարծիքները բաժանվում էին։ Գալով մեզ, հայտարարում ենք, որ լուրերը ստույգ են։ Այդպիսի հայտնի վտանգի առաջ մուսուլմանները, փոխանակ անհաշտ մնալու, պարտավոր են հավաքվել մեր շուրջը...» և այլն։

Այս նամակը մի շարք պատմաբաններ համարում են անվավեր։ Դրանցից է նաև Ղ. Ալիշանը, որն իր կասկածը հիմնավորելու համար բերում է մի քանի փաստարկներ (տե՛ս «Սիսուան», էջ 447—448)։ Այսպես, Լևոնը Ֆրիդրիխին ընդառաջ էր ուղարկել մի պատգամավորություն, որը կոտորվելով թշնամիներից, տեղ չհասավ, դրա փոխարեն շուտափույթ կազմակերպվեցին երկու այլ պատգամավորություններ (Ներսես Լամբրոնացու, Գրիգոր վարդապետի և Կոստանց ու Պազտին Կումարտիաս ֆեոդալների գլխավորությամբ)։ Կայսրը դեռ Կիլիկիա չհասած ստացավ 5060 հայ զինվորների օժանդակություն և այլն։

Այս փաստերից և ոչ մեկը ուժ չի ունենա, երբ ի նկատի ունենանք Կիլիկիայի հայկական իշխանության համար ստեղծված դժվար կացությունը՝ Ֆրիդրիխի գլխավորած խաչակրաց արշավանքի կապակցությամբ։

Հայերի համար գաղտնիք չէր բնավ, որ խաչակիրները Արևելք են արշավում՝ առավելապես երկրներ գրավելու և կողոպտելու նպատակով, «Քրիստոսի գերեզմանը փրկելու» պատրվակի տակ։ Նրանք հարուստ փորձ ունեին նաև այն մասին, որ իրենց քրիստոնյա լինելը գրավական չէ իրենց երկիրը խաչակիրներից ապահով նկատելու համար։ Ուստի, բնականաբար, այն ժամանակ, երբ Կիլիկիայի հայկական իշխանության համար դեռ դժվար էր դուշակել այդ խաչակրության վերջը, նա պետք է դիվանագիտական խաղ խաղար սիրաշահելով և՛ արևմուտքից արշավող խաչակիրներին, և՛ հարևան մահմեդականներին, որոնց առաջին հարվածը (այն դեպքում, երբ Կիլիկիան ցույց տար իր «համակրանքը» խաչակիրների հանդեպ) ուղղվելու էր իր վրա։

---

* Իրն Շադդադի բնագրում՝ اوج

Այսպիսով, կարծում ենք, որ Ալիշանի և մյուսների կասկածը կաթողիկոսի նամակի ստուգության մասին՝ լուրջ հիմքեր չունի։

Նույնպես չի կարելի հիմնավոր նկատել այն կարծիքը, թե նամակի հեղինակը, նայելով բնագրի «Կայֆակոս» ստորագրությանը, պետք է եղած լինի մի ոմն Գագիկ իշխան։ Պետք է նշել, որ այստեղ անվան մեջ անտեղյակ գրչագրի սխալմունքով ագավաղում կա արաբերեն նույնանման տառերի (ف-ի և غ-ի, ب-ի և ث-ի) միջև, և այդ աղավաղված բառը, անտարակույս, կարդացվելու է «Կաթողիկոս»։

Նամակն, ըստ իր տեքստի, ունի ստուգության շատ լուրջ նշաններ. որոշակիորեն հիշատակված է նամակագրի հայոց կրոնական պետ՝ «խալիֆա» լինելը, նրա անունը, Գրիգոր Բարսեղի որդի լինելը, իր աթոռի Հռոմկլայում գտնվելը և այլն։

Ալիշանի կասկածի համար հիմք է ծառայում նաև Լևոնի ուղարկած դեսպանի «Հաթեմ» անունը, որի վրա, սակայն, ոչ մի կասկած չպետք է ծագեր, քանի որ դա նույնն է, ինչ որ Հեթումը*։

10. Երբ գերմանների բանակը Սելևկիա հասավ, դեռ ուներ քառասուն հազար զինվոր։ Ֆրիդրիխի Կիլիկիա հասնելու հետևանքով ստեղծված խուճապը այն աստիճանի էր, որ սուլթանը շտապով դատարկեց իր ամենաթանկագին գրավումներից մեկը՝ Բաղրասի բերդը, մի բերդ, որ այնքան վեճերի նյութ էր եղել իր ռազմագիտական կարևորության պատճառով։ Բաղրասի բերդը դատարկված գտնելով, ֆրանկ ասպետ Ֆուլկ դը Բույոնը (Լևոն II հորաքրոջ որդին) գրավեց այն՝ հայոց իշխանի անունով։

Սալահադդինի շրջապատն էլ երկմտության մեջ էր մնացել ձեռնարկվելիք քայլերի մասին։ Սուլթանը որոշեց «սրբազան պատերազմ» հայտարարել տալ Աբբասյան խալիֆի միջոցով։

---

* Պրոֆ. Աճառյանը այս անձնանվան դիմաց գրում է. «ծագումն անհայտ» (տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, 2-րդ հատոր, էջ 65)։ Հարգելի բանասերը ջանում է այդ անունը ծագեցնել արաբերեն هدمة (Հադամա) բառից, որը նշանակում է բերնի վրա ստացված հարվածի հետևանքով փշրված առաջին ատամներ։ Այդ ստուգաբանությունը տվյալ դեպքում արժեքից զուրկ լինելով, պրոֆ. Աճառյանը գտնում է, որ Հեթումը առաջացել է ուղղակի եվրոպական Othon-Օթոն անունից։ Այս մեկնաբանությունն էլ, ըստ մեզ, չի կարելի ընդունելի նկատել, որով պետք է վերադառնալ կրկին բառի արաբական ծագումին և փնտրել այն ոչ թե هدمة Հադամա բառի մեջ, այլ՝ هيثم Հայթամ (ث տառով, ոչ թե ت տառով), որը արաբերեն նշանակում է արծվիկ կամ անգղի ձագ։

Հայթամը բավականին տարածված անձնանուն է եղել, և այդ անունը կրող բազմաթիվ անձերի ենք հանդիպում արաբ մատենագիրների մոտ։ Հատկապես, Յակուտը իր աշխարհագրական բառարանում և «Գիտնական անձնավորությունների բառարանում» (Իրշադ ալ-Արիֆ) տեղեկություններ է տվել Հայթամ անունը կրող բազմաթիվ անձերի մասին։

## Резюме

Произведения арабских географов и историков являются одним из главных источников для изучения средневековой истории Армении, в частности истории VII—XIV вв. В арабских источниках освещается история арабского владычества в Армении (VII—IX вв.), период царствования Багратидов (IX—XI вв.), послесельджукская эпоха и история Армянского царства в Киликии.

В данном издании даются переводы отдельных отрывков трех арабских авторов XIII—XIV вв.: Йакута, Абул-л-Фиды и Ибн Шаддада.

В географическом словаре Йакута много ценных сведений об экономическом и политическом положении Армении в вышеупомянутых трех периодах (арабский, Багратидский и послесельджукский). У Йакута часто смешиваются сведения разных периодов, и исследователю необходимо различать разные этапы многовековой истории. Например, говоря об административно-географическом делении Армении, он упоминает четыре ее части, а затем добавляет, что Армения делится еще на две части (Великая и Малая). Дело в том, что при арабах провинции «Арминия» разделялась на четыре части: первая—Арран (приблизительно), вторая Джурзан (Грузия), а третья и четвертая—Армения (Восточная и Западная). Упомянутые же две части были т. н. Великая Армения, под которой подразумевалась южная Армения в XIII в., и Малая, т. е.—северная Армения.

Исходя из имевшихся тесных связей Армении с сопредельными странами, составитель данного сборника А. Налбандян включил в работу названия местностей не только Великой

Армении, но и Грузии, Кавказской Албании (Арран), Атрапатакана (Азербайджан), Верхней Месопотамии, Северной Сирии, восточной части Малой Азии (Малая Армения и др.) и территории Киликии, где на протяжении трех столетий (1080—1375) существовало самостоятельное армянское государство.

В Географическом словаре Йакута приведены в основном все названия местностей Армении, которые упоминаются у предшествующих ему арабских авторов. Упоминаются области Бусфурраджан (Васпуракан), Тарун (Тарон), Баграванд (Багреванд), Сисаджан (Сисакан или Сюник), Хаджин (Хачен), Сирадж (Ширак), Басин (Басен) и др., а из городов: Ани, Дабил (Двин), Ван, Вастан (Остан или Востан), Малазджирд (Маназкерт), Хилат (Хлат), Муш, Арзан ар-Рум и др.

Сведения второго автора—Абу-л-Фиды—способствуют изучению истории Армянского Киликийского царства.

Политические отношения и военные столкновения между Армянским царством и Египтом начались при Эйюбидах, но стали более тесны при мамлюках. В приведенных источниках описаны нашествия мамлюков, которые часто опустошали территорию Армянской Киликии (у арабов—страна сына Левона Армянина) при царях Гетуме I (1226—1270), Левоне III (1270—1289), Гетуме II и их преемниках.

Абул-л-Фида рассказывает, как при Гетуме I мамлюки напали на Киликию и взяли в плен его сына Левона, затем по договору между царем Гетумом и султаном Захиром наследник армянского трона был освобожден. Войска мамлюков взяли крепость Калаат ар-Рум (арм. Ромкла), резиденцию каталикоса-патриарха всех армян. К концу века армянские войска в свою очередь взяли целый ряд крепостей, находящихся между Киликией и Сирией. Походы мамлюков продолжались и в первой половине XIV в., но войска армянского царства упорно сопротивлялись, защищая свои крепости и города.

Хронология Абу-л-Фиды содержит интересные сведения об Армении XII—XIII вв., когда на юге Армянского нагорья существовали княжества Сасун и Васпуракан, а также Хлатский эмират Шахарменов. Историк подробно описывает поли-

тические события и бесконечные перевороты в Хлате. В 1207 г. Хлатом овладели Эйюбиды, как малик Авхад и его преемники.

Третий автор — Ибн Шаддад, биограф Салах ад-Дина, описывает события, связанные с походами основателя государства Эйюбидов и с третьим походом крестоносцев на восток.

Составитель сборника А. Налбандян долго изучал разные сведения арабских источников по истории Армении. Он автор ценных статей по истории Армении периода арабского владычества. Данная работа была им сдана перед смертью и является не только обычным переводом источников, но содержит весьма богатые комментарии, составленные на основе данных большого количества арабских, армянских и средневековых европейских источников.

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐ, ՑԵՂԵՐ, ԱՂԱՆԴՆԵՐ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ արևելագիտության սեկտորի
գիտական խորհրդի հանձնարարությամբ

Պատ. խմբագիրներ Հ. Դ. Փափազյան
և Ա. Տեր-Ղևոնդյան
Հրատ. խմբագիր Ռ. Խ. Մանոյան
Նկարչական ձևավորումը Կ. Հ. Ծուլթուջյանի
Տեխն. խմբագիր Մ. Ա. Կափլանյան
Սրբագրիչ Փ. Հ. Մազանյան

ՎՖ 06255 Խ:Խ 860 Հրատ. № 1974 Պատվեր 121 Տպաքանակ 2000

Հանձնված է արտադրության 20/III 1964 թ., ստորագրված է տպագրության
27/VII 1965 թ., տպագր. 23 մամուլ, հրատ. 22,45 մամուլ,
թուղթ $60 \times 92^1/_{16}$: Գինը կազմով 1 ռ. 55 կ.:

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչության տպարան,
Երևան, Բարեկամության 24: